Liguori, Alfonso Maria de

# ԵՐԱՆԵԼԻՈՅՆ

# ԱԼՓՈՆՍՈՍԻ ԼԻԳՈՒՈՐԵԱՅ

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ ՄԱՀՈՒ

Patrastutiwn mahu kam...

ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ

## Ի ՎԵՐԱՅ ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ

---

ԾԱԽԻՒՔ

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԹՈՒԼՈՆԵԱՅ**

ԻՇԽ[illegible]Ն ՀՌՈՎՄԱՅԵՑԻՈՑ ԱՌ Ի ՔԱՂԽԵԼ ՁՐԻ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ
ՄԻՆԻԵԼԵԱՅՑ Ի ՊԱՅԾԱՌՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ
ԵՒ ՈՒՂՂԱՓԱՌ ԿՐՕՆԻՑ

---

319 p.




Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1855

## ՀԵՂԻՆԱԿԻՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆԸ

Շատերը խնդրեցին ինծմէ որ յաւիտենական ճշմարտութեանց վրայ մտածականի գիրք մը շարադրեմ անոնց համար որոնք հոգեւորական կենաց մէջ յառաջադիմութեան և հաստատութեան կարօտ են։ Ուրիշներն ալ եղան որ փափաքը ցուցուցին ծաղկաքաղ համառօտութիւն մը ունենալու այն նիւթերուն՝ որոնք քարոզութեանց և հոգեւոր կրթութեանց հարկաւոր են։ Իսկ ես որպէս զի թէ գրքերը թէ աշխատանքը և թէ [illegible]քը չչափազանցնեմ՝ այս գիրքս շարադրեցի, որ ինչպէս մտադիր ընթերցողը կը տեսնէ՝ երկու նպատակին ալ կրնայ ծառայել։ Որպէս զի աշխարհականաց մտածականի տեղ բռնեն ասոնք, ամէն գլուխ իրեք իրեք մաս բաժնեցի, և ամէն մէկ մասը կրնայ մէկ մտածականի մը տեղ ծառայել. անոր համար ալ է որ ամէն մասէն ետքը առանձին խորհք և պաղատանք դրուած են։ Կաղաչեմ ընթերցողք չզարմանան թէ ինչու ամէն աղօթքի մէջ յարատեւութեան և Աստուծոյ շնորհքը խնդրելու խօսքեր դրեր եմ. վասն զի այս երկու շնորհքները փրկութեան հասնելու ամենահարկաւոր են. Աստուածային սէրը այնպիսի շնորհք մըն է, կըսէ սուրբն Ֆրանչիսկոս Սալեզացի, որ իրեն մէջ ուրիշ ամէն շնորհք բովանդակուած են. վասն զի ով որ զԱստուած կը սիրէ, ուրիշ ամէն առաքինութեանց տէր է. այնպիսին խոնարհ ալ է, հնազանդ, մաքրասէր, մահացեալ. զԱստուած սիրէ, և ուրիշ ամէն ուզածդ ըրէ, կը խրատէ սուրբն Օգոստինոս. վասն զի աստուածասէրը ամէն ջանք կընէ անոր կամացը դէմ բան մը չընելու, և ամէն բանի մէջ զինքը հաճեցնել կը ջանայ։

Յաւիտենական երանութեան պսակը մեզի ժառանգել տըւողը՝ յարատեւութեան շնորհքն է. սուրբն Բեռնարդոս կըսէ թէ արքայութիւնը խոստացուած է անոնց որոնք բարի կեանք

կրօնքին․ բայց իրենց բարի կենացը մէջ յարատեւողներուն կը տրուի արքայութիւնը։ Սակայն այս յարատեւութեան շնորհքը, ինչպէս սուրբ Հարք կը սորվեցընեն, խնդրողաց միայն կը տրուի․ անոր համար է սրբոյն Թովմայի ըսածը՝ թէ երկինք երթալու համար անդադար աղօթից ետեւէ ըլլալու է․ և փրկիչն մեր խրատեց որ միշտ աղօթք ընենք և ամենեւին չձանձրանանք։ Շատ խեղճ մեղաւորներ թէպէտ և իրենց մեղացը թողութիւն կը գտնեն, բայց Աստուծոյ շնորհացը մէջ յարատեւել չեն կրնար․ ներումն կընդունին, բայց որովհետեւ յարատեւութեան շնորհքը Աստուծմէ չեն խնդրած՝ մանաւանդ 'ի փորձութեան, նորէն մեղաց մէջ կիյնան։ Եւ թէպէտ յարատեւութեան շնորհքը ձրի շնորհք մըն է, և մենք մեր գործքերովը արժանաւոր չենք անոր, բայց հայրն Սուարէզ կը սորվեցընէ թէ աղօթիւք հաստատապէս կընդունինք այս շնորհքը, ինչպէս որ իրմէ առաջ սուրբն Օգոստինոս ալ ըսած էր։ — Աղօթքի հարկաւորութիւնը ուրիշ գրքուկի մը մէջ տեղն 'ի տեղը բացատրեր եմ․ և թէպէտ համառօտ գրուածք մըն է ու գինն ալ աժան, բայց վրան շատ աշխատութիւն ունիմ, և ինծի կերեւնայ [illegible] ամէն մարդու համար ամենահարկաւոր է այն գիրքը․ և յաւելու, վասն զի հոգեւորական գրոց մէջ անկէ աւելի օգտակար գիրք մը չի կրնար ըլլալ որ աղօթից հարկաւորութեանը վրայ խօսի։

Որպէս զի այս մտածականները քարոզիչ քահանայից ալ օգտակար կարենան ըլլալ, որոնք քիչ գիրք կամ քիչ ժամանակ ունին կարդալու, աստուածաշնչին և սուրբ հարց խօսքերը մէջ բերի, որ թէպէտ համառօտ են, բայց լի հոգւով, ինչպէս արժան է որ ըլլան ամէն քարոզ․ ուստի ամէն մէկ մտածականին իրեք մասը՝ մէյմէկ քարոզի նիւթ են։ Այս վախճանաւս է որ ամէն հեղինակաց ինծի սրտաշարժ երեցած խօսքերը ժողվեցի, որպէս զի կարդացողը իր սրտին յարմար եկածը ընտրէ և ուղածին պէս լայնցընէ։ Ամէն բան 'ի փառս Աստուծոյ ըլլայ։

Ընթերցողներէն կը խնդրեմ որ այս իմ գիրքս կարդալու ատեն, թէպէտ կենդանի ըլլամ կամ մեռած, զիս իրենց աղօթիցը մէջ յիշեն․ և ես ալ կը խոստանամ որ նոյնպէս զիրենք յիշեմ։ Օրհնեալ ըլլայ Յիսուս մեր փրկիչը, և Մարիամ մեր յոյսը։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Ա.

## ՆՈՐ ՎԱԽՃԱՆԱԾ ՄԱՐԴՈՅ ՄԸ ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Հող էիր, և հող պիտի դառնաս*[1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Մտածէ թէ դուն հող ես, ու հող պիտի դառնաս։ Օր պիտի գայ որ մեռնիս պիտոր, և փոսի մը մէջ պիտի հանգչիս ու փտիս և որդերով պիտի ծածկուիս։ Տակդ ճճիներ պիտի տարածուին ու վրադ որդերը պիտ[illegible]ածին[2]։ Այս բանս ամենուն ալ պիտի ըլլայ[illegible]նուական է եղեր, ռամիկ է եղեր, իշխանազուն[illegible] եղեր, ծառայ է եղեր։ Այն վերջին անգամ բերանը բանալով՝ հոգին մարմինէն ելածին պէս՝ հոգին իրեն յաւիտենականութիւնը կերթայ, մարմինն ալ հող կը դառնայ։ Հոգիներին կառնես անոնցմէ, կը պակասին և հող կը դառնան[3]։

Դիր թէ մարդ մը կը տեսնես որ քիչ մը առաջ հոգին փչեց, նայէ իր մարմնոյն վրայ որ դեռ անկողնոյն մէջ կեցեր է, գլուխը դէպ 'ի առջև ծռած, մազերը խառնափնդորած և մահուան քրտինքէն դեռ թաց, աչուըները խոռոչած, թուշերը ցամքած, երես[illegible]նախը դարձած, լեզուն ու ակռուները սեցած, մարմինը պաղ ու ծանր։ Տեսնողը կը սարսափի ու կը փշաքաղի։ Քանիներ եղեր են, որ իրենց մէկ ազգականը կամ բարեկամը այսպէս մեռած տեսնելով իրենց վարքը փոխեր են, աշխարքէ ալ հրաժարեր են։

1 Հող էիր և 'ի հող դարձցիս։ Ծնն. Գ. 19։

2 Ի ներքոյ քո մեջս տարածեսցեն, և 'ի վերայ քո որդն յարկցի։ Ես. ԺԴ. 11։

3 Հանես զոգի 'ի նոցանէ, պակասին և 'ի հող դառնան։ Սաղմ. ՃԳ. 28։

# ԼԻԳՈՒՈՐԵԱՑ

# ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ ՄԱՀՈՒ

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ

# ԱԼՓՈՆՍՈՍԻ ԼԻԳՈՒՈՐԵԱՑ

# ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ ՄԱՀՈՒ



ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ

Ի ՎԵՐԱՅ ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ

---

ԾԱԽԻՒՔ

ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԹՌՈՒԼՕՆԵԱՑ

ԻՇԽԱՆԻՆ ՀՌՈՎՄԱՅԵՑԻՈՑ ԱՌ Ի ԲԱՇԽԵԼ ՁՐԻ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ

ԱՆԻԵԼԵԱՑ Ի ՊԱՅԾԱՌՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ԵՒ ՈՒՂՂԱՓԱՌ ԿՐՕՆԻՑ

---





Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1855

## ՀԵՂԻՆԱԿԻՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆԸ

Շատերը խնդրեցին ինծմէ որ յաւիտենական Ճշմարտութեանց վրայ մտածականի գիրք մը շարադրեմ անոնց համար որոնք հոգեւորական կենաց մէջ յառաջադիմութեան և հաստատութեան կարօտ են: Ուրիշներն ալ եղան որ փափաք ցըցուցին ծաղկաքաղ համառօտութիւն մը ունենալու այն նիւթերուն՝ որոնք քարոզութեանց և հոգեւոր կրթութեանց հարկաւոր են: Իսկ ես որպէս զի թէ գրքերը թէ աշխատանքը և թէ ...ը չշատցընեմ՝ այս գիրքս շարադրեցի, որ ինչպէս մտադիր ընթերցողը կը տեսնէ՝ երկու նպատակին ալ կրնայ ծառայել: Որպէս զի աշխարհականաց մտածականի տեղ բանեն տանք, ամէն գլուխ երեք երեք մաս բաժնեցի, և ամէն մէկ մասը կրնայ մէկ մտածականի մը տեղ ծառայել. անոր համար ալ է որ ամէն մասէն ետքը առանձին խղճք և պաղատանք դրուած են: Կաղաչեմ ընթերցողք չզարմանան թէ ինչու ամէն աղօթքի մէջ յարատեւութեան և Աստուծոյ շնորհքը խնդրելու խօսքեր դրեր եմ. վասն զի այս երկու շնորհքները փրկութեան հասնելու ամենահարկաւոր են. Աստուածային սէրը այնպիսի շնորհք մըն է, կըսէ սուրբն Ֆրանչիսկոս Սալեզացի, որ իրեն մէջ ուրիշ ամէն շնորհք բովանդակուած են. վասն զի ով որ զԱստուած կը սիրէ, ուրիշ ամէն առաքինութեանց տէր է. այնպիսին խոնարհ ալ է, հնազանդ, մաքրասէր, մահացեալ. զԱստուած սիրէ, և ուրիշ ամէն ուզածդ ըրէ, կը խրատէ սուրբն Օգոստինոս. վասն զի սատուածասէրը ամէն ջանք կընէ անոր կամացը դէմ բան մը չընելու, և ամէն բանի մէջ զինքը՝ հաճել կը ջանայ:

Յաւիտենական երանութեան պսակը մեզի ժառանգել տըւողը՝ յարատեւութեան շնորհքն է. սուրբն Բեռնարդոս կըսէ թէ արքայութիւնը խոստացուած է անոնց որոնք բարի կեանք

կըսկսին․ բայց իրենց բարի կենացը մէջ յարատեւողներուն կը տրուի արքայութիւնը։ Սակայն այս յարատեւութեան շնորհքը, ինչպէս սուրբ Հարք կը սորվեցընեն, խնդրողաց միայն կը տրուի․ անոր համար է որ սրբոյն Թովմայի ըսածը՝ թէ երկինք երթալու համար անդադար աղօթից ետեւէ ըլլալու է․ և փրկիչն մեր խրատեց որ միշտ աղօթք ընենք և ամենեւին չձանձրանանք։ Շատ խեղճ մեղաւորներ թէպէտ և իրենց մեղացը թողութիւն կը գտնեն, բայց Աստուծոյ շնորհացը մէջ յարատեւել չեն կրնար․ ներուած կընդունին, բայց որովհետեւ յարատեւութեան շնորհքը Աստուծմէ չեն խնդրած՝ մանաւանդ 'ի փորձութեան, նորէն մեղաց մէջ կիյնան։ Եւ թէպէտ յարատեւութեան շնորհքը ձրի շնորհք մըն է, և մենք մեր գործքերովը արժանաւոր չենք անոր, բայց հայրն Սուարէզ կը սորվեցընէ թէ աղօթիւք հաստատապէս կընդունինք այս շնորհքը, ինչպէս որ իրմէ առաջ սուրբն Օգոստինոս ալ ըսած էր։ — Աղօթքի հարկաւորութիւնը ուրիշ գրքուկի մը մէջ տեղն 'ի տեղը բացատրեր եմ․ և թէպէտ համառօտ գրուածք մըն է ու գինն ալ աժան, բայց վրան շատ աշխատութիւն ունիմ, և ինծի կերեւնայ [illegible]ամէն մարդու համար ամենահարկաւոր է այն գիրքը․ և [illegible]ուի, վասն զի հոգեւորական գրոց մէջ անկէ աւելի օգտակար գիրք մը չի կրնար ըլլալ որ աղօթից հարկաւորութեանը վրայ խօսի։

Որպէս զի այս մտածականները քարոզիչ քահանայից ալ օգտակար կարենան ըլլալ, որոնք քիչ գիրք կամ քիչ ժամանակ ունին կարդալու, աստուածաշնչին և սուրբ հարց խօսքերը մէջ բերի, որ թէպէտ համառօտ են, բայց լի հոգւով, ինչպէս արժան է որ ըլլան ամէն քարոզ․ ուստի ամէն մէկ մտածականին իրեք մասը՝ մէյմէկ քարոզի նիւթ են։ Այս վախճանաւ է որ ամէն հեղինակաց ինծի սրտաշարժ երեւցած խօսքերը ժողվեցի, որպէս զի կարդացողը իր սրտին յարմար եկածը ընտրէ և ուզածին պէս լայնցընէ։ Ամէն բան 'ի փառս Աստուծոյ ըլլայ։

Ընթերցողներէն կը խնդրեմ որ այս իմ գիրքս կարդալու տեն, թէպէտ կենդանի ըլլամ կամ մեռած, զիս իրենց աղօթիցը մէջ յիշեն․ և ես ալ կը խոստանամ որ նոյնպէս զիրենք յիշեմ։ Օրհնեալ ըլլայ Յիսուս մեր փրկիչը, և Մարիամ մեր յոյսը։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Ա.

## ՆՈՐ ՎԱԽՃԱՆԱԾ ՄԵՌԴՈՅ ՄԸ ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Հող էիր, և հող պիտի դառնաս*[1].

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Մտածէ թէ դուն հող ես, ու հող պիտի դառնաս։ Օր պիտի գայ որ մեռնիս պիտոր, և փոսի մը մէջ պիտի հանգչիս ու փտիս և որդերով պիտի ծածկուիս։ Տակդ ճճիներ պիտի տարածուին ու վրադ որդերը պիտ[illegible]ածկեն[2]։ Այս բանս ամենուն ալ պիտի ըլլայ[illegible]նուական է եղեր, ռամիկ է եղեր, իշխանազու[illegible]եղեր, ծառայ է եղեր։ Այն վերջի անգամ թէ բանը բանալով՝ հոգին մարմնէն ելածին պէս՝ հոգին իրեն յաւիտենականութիւնը կերթայ, մարմինն ալ հող կը դառնայ։ Հողինին կառներ անոնցմէ, կը պակասին և հող կը դառնան[3]։

Դիր թէ մարդ մը կը տեսնես որ քիչ մը առաջ հոգին փչեց, նայէ իր մարմնոյն վրայ որ դեռ անկողնոյն մէջ կեցեր է, գլուխը դէպ 'ի առջև ծռած, մազերը խառնափնդորած և մահուան քրտինքէն դեռ թաց, աչուըները խոռոչած, թուշերը ցամքած, երեսը[illegible]նախիր դարձած, լեզուն ու պռկունքը սևցած, մարմինը պաղ ու ծանր։ Տեսնողը կը սարսափի ու կը փշաքաղի։ Քանիներ եղեր են, որ իրենց մէկ ազգականը կամ բարեկամը այսպէս մեռած տեսներով իրենց վարքը փոխեր են, աշխրքէ ալ հրաժարեր են։

1 Հող էիր և 'ի հող դարձցիս։ Ծնն. Գ. 19։

2 Ի ներքոյ քո մեջս տարածեսցեն, և 'ի վերայ քո որդն յարկեսցի։ Ես. ԺԴ. 11։

3 Հանես զոգի 'ի նոցանէ, պակասին և 'ի հող դառնան։ Սաղմ. ՃԳ. 28։

Աւելի սարսափ մարդուս կու տայ երբոր մեռած մարմինը կըսկսի հոտիլ։ Կտրիճ մը մեռնելէն ետև քսանըչորս ժամ անցած չանցած կըսկսի գարշահոտութիւն բուրել։ Հարկ կըլլայ պատուհանները բանալ, կրակը շատ մը խունկ ձգել, մանաւանդ թէ ճարը տեսնել որ շուտով ժամ տարուի ու հողին տակը թաղուի, որպէս զի բոլոր տունը չապականէ։ Բայց թէ այդ մարմինը մէկ ազնուական կամ թէ հարուստ մարդու մըն է եղեր, ուրիշ բանի չի գար, բայց եթէ աւելի գէշ հոտ բուրելու. ինչպէս մատենագիր մը կըսէ թէ աւելի ծանրահոտ կըլլայ մեծատանց մարմինը։

Տես հիմա, ինչ եղաւ այն հպարտը, այն հեշտասէրը։ Առաջ մարդկանց մէջ պատիւ ունէր ու կը սիրուէր, հիմա իրմէ կը սոսկան ու կը գարշին։ Ազգականները կը փութան զինքը տունէն վռընտել, բեռնակրաց ստակ ալ կու տան որ ճարը դրած գերեզման տանին ու հողուն տան։ Առաջ մեծ համբաւ ունէր թէ ինչ խելացի մարդ է, ինչ աղէկ կերպ ունի, ինչ անուշ լեզու է. հիմա մեռաւ նէ, քիչ ատենէն յիշատակն ալ չի մնար։ Կորաւ անոնց յիշատակը աղաղակաւ[1]։ Մահն որ լսուի նէ՝ ոմանք կըսեն թէ մեծ պատիւ ունէր, ոմանք ալ թէ աղէկ տեղաւորած ձգեց իր տունը, ոմանք կը ցաւին՝ վասն զի մեռնողը իրենց բարիք կընէր, ոմանք կուրախանան՝ վասն զի անոր մահուանէն իրենց շահ կելլէ. քիչ մըն ալ անցնի նէ՝ վրան խօսող ալ չըլլար։ Առջի օրէն ընտանիքը չեն ուզեր որ վրան խօսք բացուի, որպէս զի սրտերնին չելլէ։ Ցաւակցութեան եկողներն ալ ուրիշ բաներու վրայ կը խօսին, [illegible] թէ որ մէկը մեռնողին վրայ խօսք բանայ՝ տնեցիք խօսքը կը կտրեն ըսելով թէ հոգիդ կը սիրես մէյմըն ալ անունը մի տար։

Գիտցիր որ բարեկամիդ և ազգականիդ մեռած ատենը ինչ որ ըրիր նէ դուն՝ քեզի ալ ուրիշները նոյնպէս պիտոր ընեն։ Ողջ մնացողները մէջ կը նետուին, մեռնողներուն ստակն ու ապրանքը ձեռք կը ձգեն. իսկ մեռնողներուն վրայ կամ քիչ և կամ ամեններին ոչ խօսք կըլլայ և ոչ յիշատակութիւն։ Տնեցիք քանի մը օր սուգ կը քաշեն, բայց քիչ ատենէն իրենց բաժին

1 Կորեաւ յիշատակ նոցա աղաղակաւ։ Սաղմ. Թ. 8։

ելած բաներով կը մխիթարուին․ այնչափ որ քանի մը օր կանցնի չանցնիր՝ մահուանդ վրայ կուրախանան․ և նոյն խուցն ուր որ դուն հոգիդ աւանդեցիր, ու Քրիստոսի առեանը պատասատանի ելար, անոնք պար կը բռնեն, հարկինքներ կընեն, կը խաղան, կը խնտան, կը ծիծաղին իբր թէ մեռած չըլլայիր․ իսկ քու հոգիդ այն ատեն ո՞ւր կըլլայ արդեօք։

ԽՂՃ ՆԻ ՊԱՂԱՏԱՆՔ

Փրկիչ իմ Յիսուս, գոհանամ զքէն որ չթողուցիր զիս շնորհքէդ դուրս ընկած ատենս մեռնելու․ չէ նէ աս քանի՞ տարի պիտի ըլլար որ ես դժոխքին մէջ պիտի տանջուէի։ Թէ որ ես այն օրը, այն գիշերը մեռած ըլլայի, ի՞նչ պիտի ըլլար իմ բանս յաւիտեան․ փառք ողորմութեան քո տէր։ Ես իմ կողմանէս սիրով յանձն կառնեմ իմ մահս 'ի քաւութիւն մեղաց իմոց, ան ալ ի՛նչ կերպով որ կուզես ինծի ղրկելու․ բայց որովհետև ինչ[illegible]ն հիմա համբերեցիր ինծի, կաղաչեմ որ քիչ մը[illegible] համբերես։ Յօրայ երանելւոյն ըսածին պէս․ Թող տուր ինծի որ քիչ մը հանգչիմ, իմ ցաւս լամ. զիս պատասատան կանչելէդ առաջ ատեն տուր որ մեղքերս ողբամ, որովք զքեզ դառնացուցի։

Ես չեմ ուզեր մէյմըն ալ քու ձայնիդ դէմ կենալ։ Ո՞ գիտէ, աս խօսքերս որ կը կարդամ վերջի ազդարարութիւնդ ինծի կրնան ըլլալ։ Գիտեմ որ ես արժանի չեմ գթութեան, որովհետև այնչափ անգամ ինծի ներեցիր և ես ապերախտս դարձեալ վշտացուցի զքեզ։ Աստուած իմ, բեկեալ սրտերն ու խոնարհեալ հոգիները դուն չես արհամարհեր[1]․ ահա ես դ[illegible]ճանս զղջմամբ սրտի առ քեզ կը դիմեմ. մի՛ ձգեր զիս տէր քու երեսէդ[2]։ Դու ես որ ըսիր թէ ով որ ինծի կը դիմէ՝ զինքը չեմ վռընտեր[3]։ Ճիրաւի ես զքեզ ուրիշներէն աւելի անարգեր եմ, վասն զի աւելի քան զայլս քեզմէ լոյս և շնորհք ընդուներ եմ. բայց քու սուրբ արիւնդ որ ինծի համար թափեցիր, ինծի սիրտ կու

1 Զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ։ Սաղմ. Ծ։ 17։
2 Մի՛ ընկեններ զիս տէր յերեսաց քոց։ Նոյնն անդ. 12։
3 Որ գայ առ իս, ոչ հանից արտաքս։ Յովհ. Զ. 37։

տայ և Թողութիւն կը շնորհէ՝ թէ որ ես սրտանց զղջալու ըլլամ նէ: Եւ ահա, ով իմ ծայրագոյն բարիս, կը զղջամ ՚ի բոլոր սրտէ քեզի դէմ ըրածներուս վրայ. Ներէ ինծի և շնորհէ տուր զքեզ սիրելու ասկից ետև: Հերիք է որչափ որ զքեզ դառնացուցի. Մնացած կեանքըս, փրկիչ իմ, չեմ ուզեր զքեզ վշտացընելու համար անցընել, քաւ լիցի. հապա կուզեմ միայն լալով անցընել միշտ քեզի տուած վշտերուս համար, և յամենայն սրտէ զքեզ սիրելու, ով Աստուած իմ և տէր, որ անքաւ սիրոյ արժանի ես: Սուրբ աստուածածին, յոյս իմ և ապաւէն, բարեխօս եղիր ինծի համար առ փրկիչն իմ Յիսուս:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Ինչ ըլլալդ ալ աւելի աղէկ հասկընալու համար, ով քրիստոնեայ, կըսէ սուրբն Յովհան ոսկեբերան, գերեզմանները գնա, տես հողը, մոխիրը, որդերը, և հառաչէ. Նայէ թէ ինչպէս այն մեռած մարմինը նախ կը դեղնի ու ետքը կը սևնայ. վերջը կը տեսնես բոլոր մարմինը ճերմկած և հոտած մաշկ մը պատեր է: Ետքը թանձր ու ժահահոտ փտութիւն մը դուրս կու տայ. այն փտութենէն բիւրաւոր որդեր կը գոյանան և կըսկսին մարմինն ուտել. մկներն ալ կու գան կըսկըսին զայն կրծել, ոմանք վրան կը պտըտին, ոմանք ալ բերանն ու աղիքներուն մէջ կը մտնեն: Թուշերը, պռկունքներն ու մազերը մէկիկ մէկիկ կը թօթափին, առաջ կողերը կը բաժնուին, ետքը թևերը, վերջը ոտքերը: Այն որդերը բոլոր մարմինն ուտելէն ու հատցընելէն ետև, իրենք ալ մէկզմէկ ուտելով կը փճանան. անանկ որ այն մարմինէն միայն հոտած կմախք մը կը մնայ, որ ետքը ան ալ կտոր կտոր կըլլայ, ոսկըրտիքը կը քայքային, գլուխն ալ արմատէն կը բաժնուի կիյնայ: Առ հասարակ մանրեցան և ամառուան կալոյ փոշի դարձան. և հովի սաստկութիւնը տարաւ զիրենք ու ցիր ու ցան ըրաւ[1]:

1 Առ. հասարակ մանրեցան և եղեն իբրև զփոշի կալոց ամառայնոյ, և առ. զնոսա սաստկութիւն հողմոյ: Դան. Բ. 35:

Տեսար ինչ բան է եղեր մարդս, կտոր մը փոշի զոր հովը ցիր ու ցան կը տանի։

Ո՞ւր է հիմա այն սապետը, որ ընկերութեան զուարճութիւնը և հոգին կը սեպուէր։ Նստած խուցը մտիր, կը տեսնես որ ալ հոն չէ. Թէ որ իր անկողինը կը փնտռես՝ ուրիշի է տրուեր. իր հագուստները, իր զարդարանքները, անոնք ալ ուրիշները առեր են ու մէջերնին բաժներ են։ Թէ որ զինքը տեսնել կուզես՝ նայէ սա ջնի փոսին մէջ, ինչ կը տեսնես, փտտած ու կտոր կտոր եղած և ոսկորները քայքայած։ Հայ հայ, այն մարմինն որ այնչափ փափուկ մեծցած էր, փառաւոր հագուած ու կապած, ծառաները չորս դին առած էին, ինչ է դարձեր։ Ով երանելի տէրեր, դուք ալ մէկ կը հասկընաք այս բանս, որ Աստուծոյ սիրոյն համար, զորն որ միայն պաշտեցիք երկրիս վրայ, գիտցաք ձեր մարմինը մահացընել. և հիմա ձեր ոսկորները անգին սուրբ մասունքներու պէս պատուով ոսկիներու մէջ կը պահուին, և ձեր երջանիկ հոգիքը զԱ[illegible]ուած կը վայելեն, սպասելով աշխարհիս եղքի օր[illegible] որ իրենց մարմնոյն հետ միանան ընկերանան ՚ի փառս, ինչպէս որ ընկերացան ՚ի խաչ և ՚ի չարչարանս այս կեանքիս մէջ։ Այսպէս կըլլայ ճշմարտապէս սիրել զմարմինը, որպէս զի յաւիտեան երջանիկ ըլլայ, և զրկել զինքը հոս այն հաճոյքներէն որ յաւիտեան զինքը թշուառ կընեն։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով տէր իմ և Աստուած իմ, ինչ պիտի դառնայ եղեր իմ մարմինս ալ, որուն համար զքեզ այնչափ վշտացուցի. որդնոտի ու փտտի պիտի։ Բայց սատր չեմ ցաւիր, տէր իմ, մանաւանդ թէ աղէկ է որ սաանկ փտտի մաչի մարմինս, որ ինծի պատճառ եղաւ քեզմէ հեռանալու՝ որ իմ ծայրագոյն բարիս ես. այն է միայն իմ սրտիս ցաւը, որ ես մարմնաւոր ընդունայն հաճոյքցս համար այնչափ կամքիդ դէմ գործեր եմ։ Բայց քու ողորմութենէդ յոյս չեմ կտրեր, վասն զի կըսպասես ինծի որ թողութիւն տաս. Աստուած կըսպասէ որ զթայ ձեզի, կըսէ Եսայի [1], և կուզես թո-

1 Կանխեսցէ Աստուած զթալ ՚ի ձեզ։ Եւ. Լ. 18։

ղութիւն տալ թէ որ ես զղջալու ըլլամ: Այո տէր, 'ի բոլոր սրտէ կը զղջամ, կը ցաւիմ, ով անբաւ բարութիւն, զքեզ անարգելուս համար, և կաղաղակեմ զենուացի սրբուհւոյն Կատարինեայ հետ. Ով Յիսուս իմ, մէյմըն ալ մեղք չլինամ, մէյմըն ալ մեղք չի գործեմ: Ալ չեմ ուզեր չէ, քու համբերութեամբդ զեղծանիլ: Չեմ ուզեր, խաչելեալ տէր իմ, սպասել այն ժամուն որ մահուանս ատեն խոստովանահայրս զիս յորդորէ որ խաչիդ պլլուիմ. հիմակուընէ ոտքդ կինամ, հիմակուընէ կաւանդեմ քեզի իմ հոգիս. քու ձեռքդ կը յանձնեմ տէր իմ հոգիս: Այնչափ տարի հոգիս աշխրքի հետ կապուած ըլլալով՝ զքեզ չի սիրեցի, լոյս և զօրութիւն տուր ինծի որ մնացած կեանքս զքեզ սիրելով անցընեմ: Չեմ ուզեր սպասել որ մահուանս ատեն զքեզ սիրեմ. հիմակուընէ կը սիրեմ, զքեզ կողջագուրեմ ու չեմ բաժնուիր, և խօսք կու տամ որ մէյմըն ալ զքեզ չեմ թողուր: Ով սուրբ կոյս աստուածածին, կապէ զիս սիրով Յիսուսի հետ, և շնորհք խնդրէ ինծի համար, որ մէյմըն ալ զինքը չի կորսընցընեմ:

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Ով սիրելի եղբայր, մահուան այս պատկերին մէջ զքեզ և ինչ ըլլալիքդ տես: Յիշէ որ հող էիր, և հող պիտի դառնաս. մտածէ որ մէկ քանի տարիէն կամ գուցէ ամսէն կամ օրէն ետև փտտիս ու որդնոտիս պիտի: Աս մտածելով սուրբ եղաւ Յոբ, որ կըսէր. Մահը ինծի հայր կոչեցի, փտութիւնը՝ մայր և քոյր[1]:

Աշխրքիս ամէն բանը կանցնի. և թէ որ հոգիդ մահուան ատեն կորսուի նէ, քեզի համար ամէն բան կորսուած է: Սուրբն Լաւրենտիոս Յուստինեան կըսէ. Դիր թէ արդէն մեռած ես, որովհետև գիտես որ մահը 'ի հարկէ պիտի գայ[2]: Թէ որ մեռած ըլլայիր, ինչ չէիր բաղձար որ ըրած ըլլայիր: Հիմակուընէ քանի որ կենդանի ես՝ միտքդ դիր թէ օր մը զքեզ մեռած պիտի գտնես: Սուրբն Բոնաւենդուրա կըսէ թէ ղեկա-

1 Զմահ կոչեցի ինձ հայր, մայր և քոյր ինձ զորդ: Յոբ. ԺԷ. 14:

2 Յղ. փայտին կենաց: Գւ. Ւ:

վարը նաւը աղէկ կառավարելու համար ծայրը կը կենայ, ասանկ ալ մարդս աղէկ կեանք վարելու համար պէտք է միտքը դնէ թէ միշտ մահուան քովը կայներ է։ Սուրբն Բեռնարդոս ալ կըսէ. Աղջի ըրածներուդ նայէ ու խըպնէ.. այսինքն տես տղայութեանդ մեղքերն ու ամըռնչցիր։ Միջիններուդ նայէ ու հառաչէ. այսինքն մեծութեան ատենի մեղքերդ տես ու լաց։ Վերջդ նայէ ու սոսկա. այսինքն վերջի գալիքները մըտածէ ու դողա և շուտով ճարդ տես։

Սուրբն Կամիլլոս Լելլիսեան երբոր մեռելոց գերեզմաններուն վրայ կը նայէր, ինքն իրեն կըսէր. Թէ որ ասոնք գային ու նորէն կենդանանային, ինչե՜ր չէին ըներ յաւիտենական կենաց համար։ Իսկ ես որ դեռ ժամանակ ունիմ, ի՞նչ կընեմ հոգւոյս համար։ Դիր թէ այն սուրբը խոնարհութեան համար ասանկ կըսէր. բայց վախեմ թէ դուն, սիրելի եղբայր, իրաւամբք կրնաս սոսկալ որ չըլլայ թէ այն անպտուղ թզենին ըլլա[illegible]րուն համար ըսաւ տէրն մեր. Ահա իրեք տարի[illegible]վեր է որ կու գամ թզենւոյդ վրայ պտուղ փընտըռ[illegible]ու և չեմ գտներ[1]։

Դուն իրեք տարիէն աւելի է որ աշխարքիս մէջն ես, ի՞նչ պտուղ տուած ունիս։ Նայէ, կըսէ սուրբն Բեռնարդոս, որ տէրն մեր չէ թէ միայն ծաղիկ կը փնտըռէ, հապա նաև պտուղ ալ կուզէ. այսինքն՝ չէ թէ սոսկ բարի փափաք և առաջադրութիւններ կը փնտըռէ, հապա սուրբ գործքեր ալ կուզէ։ Ուրեմն գիտցիր բանի բերել այդ ժամանակն որ Աստուած իր ողորմութեամբը քեզի կու տայ. բարեգործութիւն ընելու ուրիշ ատենի մի՛ սպասեր. չըլլայ թէ ա՛լ ատեն չմընայ, ու քեզի ըսեն թէ ա՛լ ժամանակ չկայ՝ երթանք, շուտ ըրէ աշխարքէս ելլալու ատենդ է, շուտ ըրէ, ի՞նչ որ ըրիր նէ ըրիր։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ահա տէր իմ, ես եմ այն ծառը, որ շատոնց արժանի էի լսելու, ա՛լ կտրէ զանիկայ, ինչո՞ւ այդ երկիրը կը խափանէ[2]։ Այո այո, վասն զի շատ տարի է որ

1 Ահա երեք ամք են յորմէ հետէ գամ խնդրել պտուղ ՚ի թզենւոջդ և ոչ գտանեմ։ Ղկ. ԺԳ. 7։
2 Արդ կտրեա զդա, ընդէ՞ր և զերկիրդ խափանէ. Անդ։

երկրիս վրայ եմ և ուրիշ պտուղ չի տուի քեզի բայց եթէ մեղացս փուշն ու տատասկը։ Բայց դու տէր՝, չես ուզեր որ ես յուսահատիմ. դուն ըսիր ամենուն՝ ով որ կխս կը փնտըռէ կը գտնէ․ խնդրեցէք և գտանէք։ Ես զքեզ կը խնդրեմ, Աստուած իմ, և քու շընորհքդ կուզեմ։ Որչափ որ զքեզ դառնացուցեր եմ կը ցաւիմ բոլոր սրտանց, կը փափաքէի ցաւէս մեռնիլ։ Առաջ քեզմէ կը փախչէի, հիմա աւելի կուզեմ քու բարեկամութիւնդ՝ քան թէ աշխրքիս բոլոր թագաւորութիւնները։ Չեմ ուզեր մէյմըն ալ դէմ դնել քու ձայնիդ։ Կուզես որ ես բոլորովին քուկդ ըլլամ․, ես ալ զիս բոլորովին քեզի կու տամ, առանց բան մը պահելու։

Դուն զքեզ խաչին վրայ բոլոր ինծի տուիր, ես ալ զիս բոլոր քեզի կու տամ. դուն ըսիր, ինչ որ իմ անուամբս խնդրէք կընեմ [1]։ Արդ Յիսուս փրկիչ իմ,, այս մեծ խոստմանդ ապաւինելով, և քու անուամբդ քու արդիւնքովդ շնորհքդ կը խնդրեմ, սէրդ կ[illegible]րընտըռեմ. տուր տէր որ առաւելուն քու շնորհք[illegible] քու սուրբ սէրդ յիմ հոգիս, ուր առաւելան մեղք։ [illegible]ճանամ զքէն, որ ինծի աս սիրտը տուիր աղօթքս քեզի ընելու. որովհետև դու զիս դրդեցիր, նշան է թէ աղօթքս լսել կուզես. լսէ ինծի, Յիսուս փրկիչ իմ. տուր ինծի որ մեծապէս սիրեմ զքեզ․ տուր ինծի մէկ մեծ բաղձանք մը զքեզ հաճեցընելու, և զօրութիւն ալ տուր 'ի գործ դնելու։ Ով իմ մեծ փաստաբանս, սուրբ կոյս Մարիամ, դու ալ լսէ իմ աղաչանացս, և աղաչէ ինծի համար զՅիսուս։

1 Զոր ինչ խնդրիցէք յանուն իմ, արարից զայն։ Յովհ. ԺԴ. 14։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Բ·

## ՄԱՀՈՒԱՄԲ ԱՄԷՆ ԲԱՆ ԿԸ ԼՄԸՆՆԱՅ

*Վախճան հասաւ*[1] .

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

*Աշխարհասէր մարդիկ բարեբաղդ կը սեպեն զանոնք միայն որ աս աշխարքիս բարիքը, հաճոյքը, ճոխութիւնը և փառքն ու պատիւը կը վայելեն: Բայց մահը վերջ կու տայ այս ամենայն երկրաւոր բախտաւորութեանց: Ի՞նչ բան է ձեր կեանքը, կը գոչէ առաքեալը, մրրկի նման էք որ քիչ մը ատեն կերևնայ ու կ[illegible]նի[2]: Երկրէս դէպ 'ի վեր ցնդած շոգիները երբեմ[illegible]ուն մէջ արեգական ճառագայթներովը լուսաւորուած գեղեցիկ բան մը կերևնան, բայց ո՞րչափ կը դիմանայ այդ երևոյթը. քիչ մը հովը բոլորովին կը ցրուէ ու աներևոյթ կընէ: Ահա քեզի այն մեծ մարդը որ այսօր փառք պատիւ ունի, ամէնը իրմէ կը վախնան, և գրեթէ գինքը կը պաշտեն. մէյմըն ալ վաղը մեռածին պէս կանիծեն, կանարգեն ու ոտքի տակ կը կոխկըռտեն: Մահուանը հետ ամէն բան ա՛լ պիտի թողու: Մեծ ծառայն Աստուծոյ Թովմաս գեմբացի եղբայր մը ունէր, որ կը պարծէր թէ գեղեցիկ տուն մը շինել տուեր է. բայց իր բարեկամներէն մէկը ըսաւ որ շինած տունդ մեծ պակսութիւն մը ունի. — Ի՞նչ է ըսաւ: Պատասխան տուաւ թէ այն է որ դուռ ալ շինել տուեր ես: — Ինքն ալ հարցուր. Ի՞նչ՝ դուռն ալ տան պակսութի՞ւն է մի: — Հրամեր ես, ըսաւ բարեկամը, վասն զի մէկ օր մը դուն այդ դռնէն մեռած դուրս պիտի ելլես, և այնպէս տունդ ալ ու ամէն բանդ ալ պիտի թողուս:*

1 Եհաս վախճան: Եզեկ. Է. 6:

2 Որպիսի՞ իցեն կեանք ձեր. զի իբրև մրրիկ էք որ առ առկաւ մի երևեալ և ապա ապականեալ: Յակ. Դ. 15:

Մահը վերջապէս կը մերկացընէ զմարդ աս աշխըր-քիս ամէն բանէն ։ Այն ինչ տեսարան է , տեսնել իշ-խան մը որ իր պալատէն կը վռընտեն , և մէյմըն ալ չի կրնար ներս մտնալ․ ուրիշները տէր կելլեն իր բա-ներուն ալ , ստըկին ալ , և ուրիշ իր ամէն ունեցածնե-րուն ալ․ ծառաները զինքը կը ձգեն գերեզմանին մէջ և հազիւ մէկ լաթով մը կը թողուն որ մարմինը ծած-կուի․ ալ զինքը բանի մը տեղ դնող չկայ , իրեն շողո-քորթութիւն ընող չկայ , իր տուած հրամաններուն մտիկ ընող չկայ ։ Սալահատտին որ Ասիոյ շատ տէ-րութեանց տիրեց , մեռնելու ատեն ըսած էր թէ մար-մինս երբոր թաղելու կը տանիք , մէկը առջևէն թող երթայ շապիկ մը ձողէ կախած տանելով ու կանչէ․ Այս է միայն որ Սալահատտին իրեն հետ գերեզման կը տանի ։ Իշխանին մարմինը գերեզման դրուելէն ետև միսը կը քայքայի , կմախք մը կը մնայ , որ ուրիշնե-րէն չի տարբերիր ։ Սրբոյն Բարսղի ըսածին պէս , գնա գերեզմանները նայէ , կրնա՞ս որոշել թէ ո՞րն է ծառան , որն է տէրը ։ Մէկ օր մը մեծն Աղեքսանդր տեսաւ որ Դիոգինէս կաշխատէր բան մը կը փնտըռէր մեռելնե-րուն գլուխներուն մէջ․ հետաքրքրութիւնը շարժելով հարցուց Աղեքսանդր , ինչ կը փնտըռես ։ Ան ալ պա-տասխանեց թէ քու հօրդ Փիլիպպոս թագաւորին գը-լուխը կը փնտըռեմ և չեմ կրնար որոշել․ թէ որ դուն կարենաս գտնել , ինծի ցոյց տուր ։ Այս աշխըրքիս վրայ մարդիկ անհաւասարապէս կը ծնանին․ բայց մահուընէ ետև ամէնքն ալ իրարու կը հաւասարին ։ Սենեկա կըսէր թէ աննման կը ծնանինք , նման կը մեռնինք․ Որատիոս ալ կըսէ թէ մահը զթագաւորա-կան զաւազանը բահի կը հաւասարէ ։ Մէկ խօսքով եր-բոր մահը կու գայ՝ վախճանն հասաւ , ամէն բան կը լմըննայ , ամէն բան հոս կը մնայ և աշխըրքէս բան մը գերեզման չենք կրնար տանիլ ։

ԻՂՁ ԵՒ ԳԱՂԱՏԱՆՔ

Տէր Աստուած իմ , որովհետև ինծի լոյս կու տաս ճանչնալու թէ ինչ որ աշխարհքս մեծ բանի տեղ կը դնէ ամէնն ալ ծուխ են բոլորովին և յիմարութիւն՝ ույժ տուր ինծի որ կարող ըլլամ զիս անոնցմէ բաժնելու , քանի որ մահը զանոնք ինծմէ չէ բաժներ ։ Այս ինչ

թշուառ գտնուեր եմ ես . քանի՜ քանի անգամ այս աշխըրքիս ընդունայն հաճոյիցը և բարեաց համար դառնացուցեր և կորսընցուցեր եմ զքեզ , որ իմ ծայրագոյն բարիքն ես ։ Յիսուս փրկիչ իմ , բժիշկդ երկնաւոր , մէյմը դարձուր աչքդ ողորմելի հոգւոյս վրայ . տես իմ անչափ խոցերս , վէրքերս որ ես ինծի տուեր եմ իմ մեղքերովս . գթա և ողորմէ ինծի ։ Տէր , եթէ կամիս , կարող ես զիս սրբել . գիտեմ որ կրնաս ալ , կուզես ալ զիս բժշկել . բայց բժշկուելու համար կուզես որ ես ալ զղջամ իմ քեզի դէմ ըրած մեղքերուս վրայ ։ Այո այո , ես ալ կը զղջամ 'ի բոլոր սրտէ . ուրեմն բժշկէ զիս հիմա որ կարող ես . բժշկէ զիս , քեզի դէմ մեղանչեցի[1] ։ Ես զքեզ մոռցայ , բայց դուն զիս չի մոռցար , ու հիմա ալ կիմացընես ինծի թէ մոռնալ կուզես իմ քեզի դէմ ըրած չարիքներս թէ որ ես ալ զգուիմ անոնցմէ . վասն զի անօրէնը թէ որ դառնայ իրեն ըրած ամէն անօրէնութիւններէն , անոնք պիտի չյիշուի[illegible] Ահաւասիկ ես ալ կը զարշիմ կը զզուիմ բոլոր [illegible]ած մեղքերէս . դուն ալ մոռցիր , ով փրկիչ իմ , որչափ որ զքեզ դառնացուցեր եմ . ասկից ետև պատրաստ եմ ամէն բան կորսընցընել , կեանքս ալ , քան թէ քու շնորհքդ ։ Ի՞նչ բանի կու գան ինծի աշխըրքիս բարիքը առանց քու շնորհացդ ։

Օգնէ ինծի տէր , որ գիտես թէ որչափ տկար եմ ես ։ Դժոխք պիտի չի դադարին զիս փորձելէն . արդէն կը պատրաստուին հազար կերպով վրաս վազել , որ նորանց զիս գերի ընեն ։ Հապա փրկիչ իմ Յիսուս , զիս երեսէ մի ձգեր , իմ փափաքս այս է որ այսօրուընէ գերի ըլլամ քու սիրոյդ ։ Դու ես միայն իմ տէրս , դու զիս ստեղծեցիր , դու զիս գնեցիր ու փրկեցիր . դու ես որ ամենէն աւելի զիս սիրեցիր , դու միայն արժանի ես սիրուելու , ես ալ կուզեմ միայն զքեզ սիրել ։

1 Բժշկեա զանձն իմ , եւ մեղայ քեզ ։ Սաղմ . Խ . 4 ։

2 Անօրէնն եթէ դարձցի յամենայն անօրէնութեանց իւրոց զոր արար . . . ամենայն անիրաւութիւնք նորա զոր արարեալ իցէ , մի յիշեսցին ։ Եզեկ . ԺԸ . 21 . 22 ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Սպանիոյ Թագաւորը Փիլիպպոս երկրորդ, մեռնելու ատեն կանչեց իր տղան, ու մէկդի ընելով վրայէ արքունական ծածկոցը կուրծքը ցըցուց, զորն որ որդերը կերած էին, ու ըսաւ. Նայէ, իմ արքայորդիս, թէ ինչպէս կըլլայ մեռնիլը. և ինչպէս կը վերջանան աշխարքիս ամէն մեծութիւնները։ Աղէկ կըսէ Թէոդորետոս թէ մահը ոչ հարստութենէ կը վախնայ, ոչ Թիկնապահ ծառաներէն, և ոչ Թագաւորական Թագէն ու ծիրանիէն. ուստի թէ ծառայից և թէ իշխանաց ետևէն փտութիւնը կերթայ ու Թարախը կը վազէ։ Ուստի ամէն մեռնող, Թագաւորն ալ, բնաւ բան մը հետերնին գերեզման չեն տանիր. բոլոր փառքը անկողինին մէջ կը մնայ, ուր որ հոգին կուտայ. վասն զի ոչ մեռնելու ատեն հետը ամէն բան պիտի տանու և ոչ իր տանը փառքը իրեն հետը գերեզման պիտի իջնեն, կըսէ սաղմոսերգուն[1]։

Կը պատմէ սուրբն Անտոնինոս թէ երբոր մեծն Աղեքսանդր մեռաւ, փիլիսոփային մէկը բարձր ձայնով ըսաւ. Սըւոր նայեցէք, որ երէկ հողուն վրայ կը կոխէր, հիմա հողուն տակը ճզմուեր է. երէկ բոլոր երկիրս իրեն չէր բաւեր, հիմա օխտը Թիզ տեղ կը բաւէ. երէկ զօրաց բանակներ կը քալեցընէր երկրիս վրայ, հիմա քանի մը բեռնակրով հողուն տակը տարուեցաւ։ Ուրեմն աղէկ հասկընանք Աստուծոյ ըսածը թէ ինչ կը հպարտանաս հող և մոխիր[2]։ Ով մարդ, չես տեսներ որ հող ու մոխիր ես, և ինչ բանիդ կը հպարտանաս. ինչ բանի կը ծախես խելքդ, միտքդ, տարիներդ. ինչու աշխարքիս մէջ մեծնալ կուզես. կու գայ կու գայ մահդ, այն ատեն կը վերջանան քու ամէն մեծութիւնքդ, քու ամէն խորհուրդներդ։ Եւ նոյն օրը անոնց ամէն խորհուրդները պիտի կորսուին[3]։

1 Զի ոչ թէ 'ի մեռանել իւրում առցէ ընդ իւր զամենայն, և ոչ թէ իջցեն փառք տան նորա ընդ նմա։ Սաղմ. ԽԸ. 17։

2 Զի՞ հպարտանաս հող և մոխիր։ Սիր. Ժ. 9։

3 Եւ յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք նոցա։ Սաղմ. ՃԽԵ. 3։

Ով թէ որչափ երջանիկ եղաւ սրբոյն Պօղոսի անապատականին մահը, որ վաթսուն տարի քարայրի մը մէջ փակուած կեցաւ, քան թէ Ներոնին մահը, որ Հռովմայ կայսր եղաւ։ Ո՛րչափ բարեբախտ եղաւ սրբոյն Փելիքսի քափուչին աշխատաւոր եղբօր մահը, քան թէ Հենրիկոս ութերորդին մահը որ թագաւորական մեծութեանց մէջ ապրեցաւ, բայց Աստուծոյ թշնամի մեռաւ։ Աս ալ հասկընալու է որ սուրբերը այսպիսի երջանիկ մահ ունենալու համար ամէն բան մէկդի թողուցին, հայրենիք, փափկութիւն, աշխըրքիս խոստմանց յոյսը, ու գիրենք տուին խեղճ և անարգ կենաց։ Կենդանի կենդանի թաղուեցան այս երկրիս վրայ, որպէս զի մեռնելու ատեն դժոխքը չթաղուին։ Բայց աշխարհասէրք մեղաց մէջ, երկրաւոր հաճոյից մէջ, ու այնչափ վտանգաւոր առիթներու մէջ ապրելով ինչպէս երջանիկ մահուան յոյս կրնան ունենալ։ Աստուած կըսպառնայ մեղաւորաց թէ մահուան ատեն[illegible]ս պիտի փնտռէք ու պիտի չի գտնաք[1]։ Այն ա[illegible], կըսէ, ողորմութեան ժամանակ չէ, հապա վրէժխնդրութեան. վասն զի ժամանակին պիտի հատուցանեմ[2]։ Խելքն ալ աս կը սորվեցընէ. վասն զի աշխարհասէր մարդը մահուան ատեն միտքով տկար կըլլայ, մութը պատած, սիրտը քարացած իր ունակացեալ չարիքներով։ փորձութիւնները աւելի կը զօրանան. և ով որ սորվեր է միշտ անոնց տեղիք տալ ու յաղթուիլ, ինչպէս պիտի կարենայ դէմ կենալ անոնց մահուան ժամանակ։ Աստուածային զօրաւոր շնորհք մը պէտք է նոյն ատեն որ անոր սիրտը փոխէ. բայց պարտակա՞ն է արդեօք Աստուած այդ շնորհքը տալու. ինչ, միթէ արժանի՞ է այդ շնորհքին անարգ կեանք անցընելուն համար։ Եւ սակայն բանը կամ յաւիտեան երջանիկ ըլլալու վրայ է, և կամ յաւիտեան կորսուելու։ Այս բանս որ մէկը մտածէ և կը հաւատայ հաւատոյ ճշմարտութեանցը, ինչպէս կարելի է որ ամէն բան չթողու ու բոլորովին զինքը Աստուծոյ չի տայ, որ ըստ մեր գործոցը զմեզ պիտի դատէ։

1 Խնդրէք զիս և ոչ գտանիցէք։ Երեմ. 13։
2 Հատուցից 'ի ժամանակի։ Բ. Օրէն. ԼԲ. 15։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՜հ տէր, քանի՜ քանի գիշեր ես թշուառականս քուն եղեր եմ քու շնորհքէդ դուրս ինկած։ Ո՜հ, ինչ թշուառ վիճակի մէջ էր այն ատեն իմ հոգիս։ Ատելի էր քու աչքիդ, և իրեն փոյթը չէր քու ատելութիւնդ․ արդէն պատրաստուած էր դժոխք երթալու, միայն քու վճռոյդ կատարումը կը մնար։ Այլ դու Աստուած իմ, զանց չըրիր ինծի այցելութեան գալու, և յորդորելու որ թողութիւն խնդրեմ։ Բայց ո՞վ զիս կապահովցընէ թէ դարձեալ թողութիւն տուեր ես ինծի։ Եւ միթէ, ով փրկիչ իմ Յիսուս, այս վախիս մէջ պիտի մնամ ինչուան որ զիս դատես։ Բայց այն ցաւն որ կիմանամ զքեզ վշտացընելուս համար, և փափաքն որ ունիմ զքեզ սիրելու, մանաւանդ քու չարչարանքներդ, սիրելիդ իմ փրկիչ, յոյս կու տան ինծի ՚ի շնորհս քո մնալու։ Կը ցաւիմ, կը զղջամ զքեզ դառնացընելուս վրայ, ով ծայրագոյն բարիդ․ կը սիրեմ զքեզ ամէն բանէ վեր։ Կառաջադրեմ ամէն բան կորսնցընել, քան թէ քու շնորհքդ ու քու սէրդ։ Կուզես որ ուրախ ըլլայ անոնց սիրտը որոնք զքեզ կը փնտռեն[1]։ Ա՜խ, տէր, կը ցաւիմ ամէն անօրէնութեանցս վրայ որ քեզի դէմ ըրեր եմ․ սիրտ տուր ինծի և քաջալերութիւն, ա՛լ երբեք մի՛ զարներ իմ ապերախտութիւնս, ես կը ճանչնամ ու կը զարշիմ անոնցմէ։ Դու ըսիր թէ չեմ ուզեր մեղաւորին մահը, այլ անոր դառնալն ու ապրիլը[2]։ Այո այո, Աստուած իմ, ամէն բան մէկդի կը ձգեմ, և դէպ ՚ի քեզի կը դառնամ, զքեզ կը խնդրեմ, զքեզ կուզեմ, զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր։ Տուր ինծի քու սէրդ, ա՛լ աւելի բան չեմ ուզեր։ Ով մայր ողորմութեան, դու ես յոյս և ապաւէն իմ, խնդրէ ու առ ինծի համար յարատեւութեան սուրբ շնորհքը։

1 Ուրախ լիցի սիրտ որ խնդրէ զհաճոյս նորա (տեառն)։ Ա․ Մնաց․ ԺԶ․ 10։

2 Ոչ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալ նորա և զկեալ։ Եզեկ․ Գ․ 11։

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Այս կենացս երջանկութիւնը Դաւիթ մարգարէն իբրև երազք զարթուցելոց[1] կը կոչէ, որ մեկնիչ մը կըսէ թէ վասն զի երազը թմրած զգայութեանց մեծ բան մը կերևնայ, բայց չէ, և շուտով կը թռչի կերթայ: Աշխարքիս բարիքն ալ մեծ մեծ բաներ կերևնան, բայց բան մը չեն, և քիչ ալ կը դիմանան, ինչպէս երազն ալ կարճ կը տևէ ու ետքը բոլորովին կը ցրուի կերթայ: Այս մտածութիւնս՝ թէ մահուամբ ամէն բան կը վերջանայ, սրբոյն Ֆրանչիսկոսի Պորճեան մասնաւոր շնորհք մը տուաւ որ ինքը զինքը բոլորովին Աստուծոյ տայ: Իր սրտին շատ դպաւ Իզապէլլա կայսրուհւոյն մեռելին հետ Կռանադա երթալը: Երբոր անոր սնտուկը բացուեցաւ՝ վախերնէն, զարշահոտութենէն ամէնքը փախան. իսկ սուրբն Ֆրանչիսկոս աստուածային լուսով շարժեալ կեցաւ ու ան մեռած դիակին վրայ աշխարքիս ունայնութիւնը սկսաւ մտածել, և անոր վրայ նայելով ըսաւ. Ուրեմն դուն իմ կայսրուհիս ես. դու այն ես որուն առջև այնչափ մեծամեծներ յարգութեան համար ծունր կը դնէին. ով Իզապէլլա թագուհի, ո՞ւր է քու այնչափ փառաւորութիւնդ, ո՞ւր է քու գեղեցկութիւնդ: Ետքը ինքն իրեն գալով սկսաւ ըսել. Ուրեմն այսպէս կը վերջանան եղեր աշխարքիս մեծութիւնները, թագն ու պսակը: Ուստի այս օրէս ետև կուզեմ այնպիսի տիրոջ մը ծառայել որ չկարենայ բնաւ մեռնիլ: Եւ այսպէս ան ատենէն տուաւ ինքը զինքը բոլորովին 'ի սէր խաչելեալ փրկչին, և ուխտ ըրաւ որ կրօնաւոր ըլլայ թէ որ կինը մեռնի նէ. ինչպէս ետքէն կատարեց Յիսուսեանց կարգը մտնելով:

Շատ աղէկ գրեց խելք առած մարդուն մէկը մեռելի մը գանկին վրայ այս խօսքս՝ թէ մտմտացողին ամէն բան փուճ և չնչին կերևնայ: Որ է ըսել՝ թէ մահը մտածողը չի կրնար զաշխարհ սիրել: Հապա ինչու այսչափ մարդիկ աշխարհասէր են. վասն զի մահերնին չեն մտածեր: Որդիք մարդկան, մինչև ե՞րբ խստա-

1 Որպէս երազք զարթուցելոց: Սաղմ. ՀԲ. 16:

սիրտ էք, ինչո՞ւ նանրութիւն կը սիրէք և ստութիւն կը փնտըռէք[1]: Ողորմելի որդիք Ադամայ, կըսէ մեզի հոգին սուրբ, ինչո՞ւ սրտերնէդ աշխարքի սէրը չէք վռընտեր, որ ձեզի ընդունայնութիւն ու ստութիւն սիրել կու տայ. Այն բանն որ ձեր պապերուն գլխէն անցաւ, ձեր գլխէն ալ պիտի անցնի: Անոնք ալ այս ձեր նստած տունը նստան, անոնք այլ այդ անկողինը պառկեցան, իսկ հիմա ո՞ւր են. նոյն բանը ձեզի ալ պիտի ըլլայ:

Ուրեմն, սիրելի եղբայր, շուտով գքեզ Աստուծոյ տուր՝ մահդ գալէն առաջ, ինչ որ ձեռքէդ կու գայ, որչափ որ կրնաս գործել՝ գործէ[2]. ինչ որ այսօր կըրնաս ընել, վաղուան մի ձգեր. վասն զի այս օր կանցնի մէյմըն ալ չի դառնար. մահն ալ վաղը կրնայ գալ, որ ալ թող չի տար .քեզի բան մը ընել: Շուտով հեռացուր զքեզ այն ամէն բանէն որ Աստուծմէ կօտարացընեն, կամ օտարացընել կրնան: Շուտով մէկդի ձգենք մեր սրտէն այս աշխարքիս բարիքը, ք[illegible] որ մահը չէ եկեր ու բռնութեամբ մեզմէ չէ հաներ [illegible]րանի այն մեռելոց որ առ Աստուած ննջեցին[3]: Երնեկ անոնց որ մեռնելու ատեն արդէն մեռած կը գտնուին այս աշխարքիս յօժարութիւններէն: Այսպիսիներուն՝ մահը վախնալու բան չէ, հապա փափաքելով և ուրախութեամբ կողջագուրեն զանիկա, վասն զի մահը փոխանակ բաժնելու զիրենք սիրած բաներնէն կը միացընէ զիրենք իրենց բարւոյն հետ, զոր միայն՝ կը սիրէին, և որ յաւիտեան զիրենք երջանիկ պիտի ընէ:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Սիրելիդ իմ փրկիչ, գոհանամ զքէն, որ ինծի համբերեցիր. ինչ պիտի ըլլայի թէ որ քեզմէ հեռու եղած ատենս մահս եռեէս հասցընէիր: Օրհնեալ ըլլայ յաւիտեան քու ողորմութիւնդ և համբերութիւնդ, որ այսքան տարի վրաս ցըցուցիր: Շնորհակալ կըլլամ քեզի

1 Որդիք մարդկան մինչև յե՞րբ էք խստասիրտք, ընդէ՞ր սիրէք զնանրութիւն և խնդրէք զստութիւն: Սաղմ. Դ. 2:
2 Զամենայն ինչ որ ինչ գտցէ ձեռն քո գործել, որչափ 'ի կարի քում իցէ՝ գործեսջիր: Ժող. Թ. 10:
3 Երանի մեռելոցն որք 'ի տէր ննջեսցին: Յայտ. ԺԴ. 13:

այն լուսոյն և շնորհացը համար՝ որով հիմա ինծի կօգնես ձեռքէս բռնածի պէս ։ Առենով ես զքեզ չէի սիրեր և փոյթս ալ չէր քու զիս չի սիրելդ . հիմա բոլոր սրտանց կը սիրեմ զքեզ, և մեծապէս կը ցաւիմ որ այսպէս նեղացուցեր եմ զամենաբարի Աստուածդ իմ ։ Տանջանք է ինծի այս ցաւը, բայց քաղցր տանջանք . վասն զի այս ցաւը յոյս կու տայ ինծի թէ արդէն ներած պիտի ըլլաս իմ յանցանքներուս ։ Ո՛հ, քաղցր փրկիչ իմ, երանի թէ հազար անգամ մեռած ըլլայի, ու զքեզ բնաւ զառնացուցած չըլլայի ։ Դող կելլէ սիրտս որ չըլլայ թէ ասկէց ետև նորէն զքեզ վշտացընեմ ։ Կաղաչեմ, մեռցուր զիս ինչ և իցէ զառն մահուամբ, քանի որ նորէն քու շնորհքդ չեմ կորսընցուցած ։ Ատեն մը դժոխքին գերին եղայ, բայց հիմա քու ծառադ եմ, ով Աստուած սրտի իմոյ ։ Դու ըսիր թէ ես զիս սիրողները կը սիրեմ . արդ ես զքեզ կը սիրեմ . ուրեմն ես քուկդ եմ, դու ալ իմս ես ։ Բայց ասկից ետև ալ կրնամ զքեզ կորսընցընել, ուստի այս շնորհքիս ալ քեզմէ կը խնդրեմ որ ինծի աւելի մահ տաս քան թէ ես զքեզ նորէն կորսընցընեմ ։ Դու ինծի այնչափ շնորհքներ ըրած ես որ ես չէի խնդրած . ուստի անտարակոյս եմ որ կուզես այս խնդրած շընորհքիս աղաչանքը լսել ։ Մի՛ թողուր որ մէյմըն ալ զքեզ կորսընցընեմ . քու սէրդ տուր ինծի, ալ ուրիշ բան չեմ ուզեր ։ Մարիամ կոյս, յոյս իմ և ապաւէն, բարեխօս եղիր ինծի համար ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Գ·

## ԿԱՐՃՈՒԹԻՒՆ ԿԵՆԱՑ

*Ի՞նչ բան է ձեր կեանքը : Մրրկի պէս էք որ քիչ մը ատեն կերեւնայ և ետքէն կապականի[1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ի՞նչ է մեր կեանքը. մրրիկ մը ու գոլորշիք մը կը նմանի որ քիչ մը քամիով աներեւոյթ կըլլայ կերթայ: Ամէնքը գիտեն որ պիտի մեռնին, բայց շատը այնպէս խաբուած են որ կարծեն թէ մահը իրենցմէ հեռու է. իբրև թէ բնաւ մեռնելիք չունին: Բայց չէ, Յոբ կըսէ մեզի թէ մարդուս կեանքը կարճ է. կանա[illegible]ածին մարդը սակաւակեաց է, որ ծաղկի պէս ծաղկած թօթափեցաւ[2]: Այս բանս Աստուած Եսայեայ մարգարէին ալ հրամայեց քարոզելու. գոչէ, կըսէ, ամենայն մարմին խոտ է, և մարդուս ամենայն փառքը խոտոյ ծաղկի պէս է: Իրաւցընէ խոտ է ժողովուրդս այս. խոտը ցամաքեցաւ, և ծաղիկը թօթափեցաւ[3]: Մարդուս կեանքը խոտի մը կենաց պէս է. մահը կու գայ, այդ խոտը կը չորնայ. կեանքը կը հատնի, աշխարհիս ամէն մեծութեանց և ամէն բարութեանց ծաղիկը կիյնայ:

Իմ կեանքս սուրհանդակէն ալ աւելի թեթեւագոյն է կըսէ Յոբ[4]: Մահը մեզի ընդ առաջ կու գայ սուրհանդակէն ալ աւելի շուտ վազելով, մենք ս[illegible]ե-

1 Որպիսի՞ ինչ են կեանք ձեր. զի իբրեւ շմրրիկ էք որ առ սակաւ մի երեւեալ, և ապա ապականեալ: Յակ. Դ. 16:

2 Այր կանանցածին սակաւակեաց է . . . որ իբրեւ զծաղիկ ծաղկեալ թօթափեցաւ: Յոբ. ԺԴ. 1:

3 Գոչեա, ամենայն փառք մարդոյ իբրեւ զծաղիկ խոտոյ . . . արդարեւ խոտ է ժողովուրդս այս. ցամաքեցաւ խոտն, և թօթափեցաւ ծաղիկն: Ես. Խ. 7. 8:

4 Այլ կեանք իմ թեթեւագոյն են քան զսուրհանդակ: Յոբ. Թ. 25:

նէ վայրկեան դէպ 'ի մահ կը դիմենք․ ամէն ոտք առնելնուս և ամէն շունչ առնելնուս դէպ 'ի մահ կը մօտենանք։ Սուրբն Հերոնիմոս կըսէ թէ այս գրած ատենս ալ կեանքէս մաս մը կը վերնայ, հիմա որ կը խօսիմ դէպ 'ի մահ կը վազեմ։ Ամէնքս ալ պիտի մեռնինք, և թափուած ջրի պէս ա՛լ մէյմըն ալ պիտի չամփոփուինք[1]։ Նայէ սա գետակն ինչպէս ծով կը վազէ․ և այն ջրերն ա՛լ ետ դառնալիք չունին։ Այսպէս ալ, ով սիրելի եղբայր, քու օրերդ կանցնին ու կերթան, և օրէ օր դէպ 'ի մահ կը մօտենաս․ հաճոյք են նէ կանցնին, զբօսանք են նէ կերթան, փառք, պատիւ, զովեստ են նէ կանցնին․ և ի՞նչ կը մնայ։ Յովբայ ըսածին պէս միայն գերեզման կը մնայ ինծի[2]։ Փոսի մը մէջ պիտի թխեն զմեզ, և հոն ամէն բանէ մերկացած պիտի մնանք ու փտտինք․ մահուան ատեննիս մեր կենացը մէջ սիրած ու վայելած բաներնուս յիշատակը, այն ամէն փառքն ու պատիւն որ ունեցեր ենք, ուրիշ բանի պիտի չի գան, բայց եթէ մեր սրտին ցաւը աւելցընե[illegible], ու յաւիտենական փրկութեան հասնելու վըստահութիւննիս պակսեցընելու։ Այն ատեն ողորմելի աշխարհասէրը պիտի ըսէ, ուրեմն քիչ մը ատենէն պիտի թողո՞ւմ երթամ սա տունս, պարտէզս, տանս զարդարանքները, այն քաշուածները, այն հագուստները, և միայն գերեզմանը պիտի մնայ ինծի։

Ա՜հ ա՜հ․ այն ատեն մարդուս աչքին աշխըրքիս և ոչ մէկ բարիքն ալ բան կերևնայ, այլ միայն զանոնք սիրելուն ու անոնց սիրտը կապելուն համար կը տանջուի․ և այս տանջանքս ուրիշ բանի չի գար, բայց եթէ իրեն հոգւոյն փրկութիւնը աւելի վտանգի մէջ ձգելու․ փորձով ալ տեսնուած է որ այսպիսի աշխարհասէր մարդիկ մեռնելու ատեն չեն ուզեր ուրիշ բանի վրայ խօսք լսել, բայց միայն իրենց հիւանդութեան վրայ, բժիշկ կանչելու, օգտակար դեղ մը ընելու․ հապա թէ հոգւոյն համար խօսք մը ըլլայ նէ, իսկոյն կը ձանձրանան կը նեղանան, թողուցէք գիս կըսեն որ քիչ մը հանգչիմ, գլուխս կը ցաւի, խօսելու ձայն լսել չեմ կրնար․ և թէ որ երբեմն պատասխան ալ տան նէ՝ կը

1 Իբրև զՋուր հեղեալ յերկիր որ ոչ ամփոփիցի։ Բ. Թագ. ԺԴ. 14։
2 Կարօտիմ գերեզմանի։ Յոբ. ԺԷ. 1։

չփոթին, չեն գիտեր ինչ ընելնին։ Շատ անգամ խոստովանահայրք որ այսպիսեաց արձակումն կուտան նէ, չէ թէ զանոնք յօժար կը տեսնեն արձակումն առնելու, հապա թէ սպասելու ատեն չի կայ։ Այսպէս կը մեռնին անոնք որ մեռնիլը շատ չեն մտածեր։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով տէր իմ և Աստուած մեծվայելչութեան իմոյ, կամըչնամ դիմացդ երևնալու։ Քանի՜ քանի անգամ ես զքեզ անարգեր եմ, քու շնորհքդ ոտքի տակ առեր եմ զարշելի հաճոյից համար, բարկութեան համար, հողի մը կտորի համար, պզտի շահու մը համար, ընդունայնութեան համար։ Ով փրկիչ իմ, կը յարգեմ ու կը համբուրեմ քու սուրբ վէրքերդ. ես ալ քեզի ուրիշ վէրքեր տուեր եմ իմ մեղքերովս. բայց յոյս ունիմ որ նոյն վիրօքդ թողութիւն և փրկութիւն գտնեմ։ Ով Յիսուս փրկիչ, ճանչցուր ինծի այն ծանր անարգանքներն որ քեզի ըրած եմ՝ երբոր թողուցի զքեզ, աղբիւրդ ամենայն բարեաց, ու գնացի հոտած [illegible]թունաւոր ջրեր խմելու։ Ի՞նչ բան կը գտնեմ վրաս քեզի դէմ ըրած այդչափ անկարգութեանցս մէջ, բայց եթէ սրտի անհանգստութիւն, խղճմտանքի խայթոց, և դըժոխքի արժանաւորութիւն։ Հայր, ալ արժանի չեմ քու որդիդ կոչուելու[1]. ալ արժանի չեմ քու որդիդ ըլլալու շնորհքին։ Բայց դուն ինծի թողութիւն տալու համար մեռար. դու ըսիր ինծի թէ դարձիր, ես ալ քեզի կը դառնամ[2]։ Ասկից ետև մէկդի կը թողում իմ ամէն հաճոյքս, կը հրաժարիմ աշխարքիս ամէն ախորժելի բաներէն, և առ քեզ կը դառնամ։ Թողութիւն շնորհէ իմ պատճառաւս թափած արեանդ համար. կը ցաւիմ 'ի բոլոր սրտէ քեզի դէմ ըրածներուս, կը զղջամ և կը սիրեմ զքեզ ամէն բանէ վեր։ Արժանի չեմ ես զքեզ սիրելու, բայց դու արժանի ես սիրուելու. ընդունէ զիս զքեզ սիրելու և մի՛ մերժեր այն սիրտը որ այնչափ ատեն զքեզ անարգեր է։ Դու չթողուցիր զիս որ մեղաց մէջ մեռնիմ, որպէս զի ըզքեզ սիրեմ. այո կուզեմ՝ սիրել զքեզ մնացած կենացս

1 Հայր, ոչ ևս եմ արժանի կոչել որդի քո։ Ղուկ. ԺԵ. 21.
2 Դարձարուք առ իս, և ես դարձայց առ ձեզ։ Զաք. Ա. 3։

մէջ, և ուրիշ բան չեմ ուզեր սիրել բաց 'ի քէն: Օգնէ ինծի, յարատևութիւն տուր, և քու սուրբ սիրոյդ մէջ պահէ: Մարիամ կոյս, կոյս իմ և ապաւէն, յանձնէ զիս Յիսուս փրկչիս:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Եզեկիա Թագաւորը մեռնելու ատեն լալով այսպէս կըսէր. կեանքս ոստայն բանողներուն թելին պէս կտրուելու մօտեցաւ[1]: Քանի՜ քանիներ կան որ ոստայն բանողներու պէս կը հիւսեն, այսինքն կը չափեն կը չափչփեն և կարգի կը դնեն ու գործել կըսկսին իրենց աշխարհային խորհուրդները. մէյմըն ալ ինչ կը նայիս մահը կու գայ ամէն բան կը կտրէ: Պլպլացող ճրագին վերջի լուսոյն հետ աշխրքիս ամէն բանն ալ կը լմըննայ, ուրախութիւն է եղեր, գովեստ է եղեր, փառք և մեծութիւն է եղեր: Այս ինչ մեծ գաղտնիք է մահը. ինքը պիտի ցուցընէ մեզի ինչ որ աշխարհասէր մարդիկ չեն տեսներ: Նախանձելի հարստութիւնները, իշխանութեան բարձր աստիճանները, մեծամեծ յաղթութիւնները, երբոր մահուան անկողնոյն մէջ մարդուս միտքը կկյնին՝ իրենց ամէն չէնքն ու շնորհքը կը կորսընցընեն: Այն սուտ ու մուտ բարիքներն ու երջանկութիւնները, որ երևակայեր էինք, այն ատեն այնպէս կը փոխուին որ բարկութիւննիս կը շարժի մեր խենթութեանը վրայ: Մահուան սև ու սգալի ստուերը ամենայն մեծութեանց վրայ, նաև Թագաւորաց, կը տարածուի ու կը մթնցընէ զանոնք:

Կիրքերն, ախտերը, աշխրքիս բարիքները ինչ որ չեն նէ այն կերևցընեն. մահը վարագուրը կը բանայ և կը ցուցընէ թէ ճշմարտապէս ծուխ, տիղմ, ունայնութիւն և թշուառութիւն են ամէնքն ալ: Ո՜հ տէր, ինչ բանի կու գան մահուան ատեն հարստութիւնները, կալուածները, Թագաւորութիւնները, երբոր ուրիշ բան պիտի չի մնայ, բայց եթէ մէկ փայտէ սընտուկ մը, մարմինը պատելու մէկ հին լաթ մը: Ի՞նչ բանի կու գան փառքն ու պատիւը, երբոր ուրիշ բան

1 Եղև հոգի իմ առ յինէն իբրև ոստայն ոստարայ մերձ 'ի հատանել: Ես. ԼԸ. 12:

պիտի չի մնայ՝ բայց եթէ հանդիսով թաղում մը, փառաւոր պաշտօն մը, որ թէ որ հոգին կորսուած ըլլայ օգուտ մըն ալ չունին։ Ի՞նչ բանի կու գայ մարմնոյն գեղեցկութիւնը երբոր ուրիշ բան պիտի չի մնայ՝ բայց եթէ որդ, գարշահոտութիւն, և սարսափ մեռնելէն ալ առաջ, վերջն ալ բուռ մը հոտած հող ու փոշի։

Ուրիշներուն բամբասելու նիւթ տուիր զիս, անոնց ծաղր եղայ[1]։ Մեռաւ այն հարուստ մարդը, այն պաշտօնեայն, այն զօրավարը, այն ատեն ամէն տեղ կըակըսին վրան խօսիլ․ թէ որ գէշ կեանք ունեցեր է, ամէնքը վար կը զարնեն զինքը, բամբասանաց նիւթ կըլլայ ամենուն, և նաև օրինակ Աստուծոյ արդարութեանը 'ի խրատ ուրիշներուն։ Իսկ գերեզմանին մէջ ինքն ալ կերթայ ուրիշ աղքատաց ոսկրներուն հետ կը խառնուի։ Պզտիկն ալ ու մեծն ալ հոն են, Յովբայ ըսածին պէս[2]։ Ի՞նչ շահ եղաւ իրեն մարմնոյն գեղեցիկ տեսքը, երբոր հիմա ուրիշ բան չէ՝ բայց եթէ որդերու բոյն մը։ Ի՞նչ բանի եկաւ իր իշխանութիւնը, հեղինակութիւնը, երբոր հիմա իր մարմինը փոսի մը մէջ ձգեր են որ փտտի, հոգին ալ դժոխք է իջեր որ յաւիտեան այրի։ Ա՜խ, այս ի՜նչ խենթութիւն է․ ուրիշներուն վրայ նայելով այս բաներս կը մտածենք, ու մեզի ամենևին օգուտ մը չենք հաներ։ Խոթենք ուրեմն խելուընիս որ խղճմտանաց աւերութիւնը շինելու համար բուն ժամանակը մահուանն ատենը չէ, հապա կենդանութեան ատենն է։

Ջանանք, արտորանք հիմակուընէ ընել ինչ որ այն ատեն չենք կրնար ընել․ ժամանակնիս կարճ է, ամէն բան շուտով կանցնի ու կը լմըննայ․ ուստի նայինք որ բոլոր ատեննիս բանեցընենք յաւիտենական կեանքը վաստըկելու համար։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած հոգւոյ իմոյ, ո՛ անբաւ բարութիւն, գթա ողորմէ ողորմելւոյս որ այնչափ զքեզ վշտացուցեր եմ։ Արդէն գիտէի ես թէ մեղանչելովս քու շնորհքդ կը

1 Եղեր զիս 'ի բամբասանս ազգաց, եղէ նոցա ծաղր։ Յովբ. ԺԷ. 6։

2 Փոքր և մեծ անդ են։ Նոյնն. Գ. 19։

կորսընցընեմ, և ուզեցի կորսընցընել ։ Ցոյց տուր ինծի ի՞նչ պիտի ընեմ որ նորէն շնորհք ձեռք բերեմ ։ Թէ որ կուզես որ մեղքերուս վրայ զղջամ, ահա կը զղջամ բոլոր սրտանց, և ցաւէս՝ աւելի կուզեմ մեռնիլ ։ Թէ որ կուզես որ յոյս ունենամ քեզմէ թողութիւն գըտնելու, ահա կը յուսամ քու սուրբ արեանդ արդեանցն համար ։ Թէ որ կուզես որ զքեզ ամէն բանէ վեր սիրեմ, ահա ես ամէն բան մէկդի կը թողում. աշխըրքիս ամէն հաճոյքէն ամէն բարիքէն կը հրաժարիմ, և ամէն բարութենէ վեր զքեզ կը սիրեմ, ով սիրելիդ իմ Յիսուս ։ Թէ որ կուզես որ քեզմէ շնորհք խնդրեմ, աս երկու շնորհքը կը խնդրեմ, մէյմը՝ չթողուս զիս որ ասկէ ետև զքեզ վշտացընեմ, մէյմըն ալ շնորհք տուր որ զքեզ սիրեմ. անկէ ետև ի՞նչպէս որ կուզես այնպէս վարուէ իմ հետս ։ Մարիամ, յոյս իմ և ապաւէն, առ ինծի համար այս երկու շնորհքներս, քեզմէ կը յուսամ զանոնք ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Ուրեմն ի՞նչ խենթութիւն է համառօտ կենացս մէջ թշուառ ու կարճ հաճոյից համար չարաչար մահուան վտանգի գնել զմեզ, և անով թշուառ յաւիտենականութիւն մը սկսիլ ։ Ո՜հ, քանի ծանրակշիռ է այն վերջի վայրկեանը, այն վերջի բերան բանալն ու եաքի շունչը, աշխըրքիս տեսարանին վարագուրին այն վերջի գոցուիլը. կամ յաւիտենական երանութեանց և կամ յաւիտենական թշուառութեանց յաւիտենականութիւն մը կը կշռէ, կամ յաւիտեան երջանիկ և կամ յաւիտեան թըշուառ կեանք մը կը կշռէ ։ Մտածենք թէ Քրիստոսէն մեր որպէս զի մեզի աղէկ մահ տայ՝ յանձն առաւ դառն ու անարգական մահուամբ մեռնիլ ։ Այս վախճանաւ այնչափ ազդարարութիւն կընէ մեզի, այնչափ լոյս մեզի կը պարգևէ, այնչափ սպառնալիքներով զմեզ կարթընցընէ, որպէս զի ջանանք այն վերջի վայրկեաններս 'ի շնորհս Աստուծոյ լմընցընելու ։

Անտարբերութենէս հեթանոս փիլիսոփայքն ալ հարցուցին թէ աշխըրքիս վրայ ո՞րն է աւելի մեծ բարեբաղդութիւն. ան ալ ըսաւ, աղէկ մահը ։ Հապա ի՞նչ պիտի ըսէ մէկ քրիստոնեայ մը, որ 'ի հաւատոց գիտէ թէ

այն վայրկեններէն յաւիտենականութիւնը կըսկսի. այնպէս որ այն վայրկենին երկու անիւներուն մէկուն կը փաթթուի, որ կամ յաւիտենական ուրախութիւն կը տանի զինքը և կամ 'ի յաւիտենական տանջանս։ Թէ որ քսակի մը մէջ երկու տոմսակ ըլլայ մէկուն վրայ դժոխք գրած մէկալին վրայ արքայութիւն, ու անոնցմէ մէկը ձեռքդ դուրս հանելու ըլլայիր, ինչ հոգ չէիր ընէր որ գուշակես ու այն թուղթը առնես որուն վրայ արքայութիւն գրած է։ Այն խեղճերը որ դատապարտուած են իրենց կեանքը քուէի պէս խաղալու, ինչ սրտադող կը քաշեն երբոր ձեռքերնին կերկընցընեն որ քուէն ձգեն, ուսկից կախուած է իրենց կեանքը կամ մահը։ Ի՞նչ ահուդողի մէջ պիտի ըլլաս, երբոր այն վայրկենին մօտենաս որ պիտի ըսես՝ այս կէտէս, որուն մօտեցեր եմ, կը կախուի իմ յաւիտենական կեանքս կամ իմ յաւիտենական մահս։ Արդեօք յաւիտեան երանելի՞ պիտի ըլլամ, թէ յաւիտեան թշուառ։ Սուրբն Բեռնարդոս սենացին կը պատմէ թէ իշխաններին մէկը մեռնելու ատեն սարսափած կըսէր. Ես որ այսչափ երկրի տէր եմ, աշխարքիս վրայ այսչափ պալատներ ունիմ, չեմ գիտեր՝ թէ որ այս գիշեր մեռնելու ըլլամ ինչ սենեակ ինծի պիտի իյնայ։

Ով սիրելի եղբայր, թէ որ կը հաւատաս թէ մեռնիլ կայ ու ետեւէն յաւիտենականութիւն կու գայ, և թէ մէկ անգամ մը կը մեռնի մարդ, այնպէս որ եթէ այս բանիս մէջ սխալիս՝ յաւիտեան բանդ գէշ է և յոյս չկայ ճար մը ընելու, հապա ինչպէս այս վայրկենէս՝ որ այս բանս կը լսես՝ չես սկսիր որչափ որ կարելի է բանդ ապահովցընել բարի մահ ունենալու։ Կը դողար սուրբն Անդրէաս Աւելլինեան, ըսելով թէ ով գիտէ՝ անդին ինչ պիտոր ըլլայ իմ վիճակս, արդեօք պիտի փրկուիմ, թէ պիտի դատապարտուիմ։ Այնպէս կը սարսափէր սուրբն Լուիճի Պէրդրանտոյ որ գիշերը քունը չէր տանիր այս մտմտուքէս՝ թէ ով գիտէ թէ ես պիտի չդատապարտուիմ։ Իսկ դու որ այնչափ մեղաց տէր ես, չե՞ս դողար, չե՞ս սարսափիր։ Շուտով ճարդ տես քանի որ ատեն ունիս. հաստատապէս առաջարկէ զքեզ Աստուծոյ տալու, և ասկէ ետև գոնէ այնպիսի կեանք մը սկսէ որ մահուանդ ատեն զքեզ չի տանջէ, այլ մխիթարէ։ Աղօթքի հետ եղիր, սաէպ

ստէպ սուրբ խորհուրդներուն մօտեցիր, փառանգաւոր առիթներէն փախիր, և Թէ որ հարկ ըլլայ՝ աշխարհքս ալ Թող, ու քու յաւիտենական փրկութիւնդ ապահովցուր. և աղէկ հասկըցիր որ յաւիտենական փրկութիւնը ապահովցընելու համար. այսչափ կամ այնչափ ապահովութիւնը բաւական չէ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով սիրելիդ իմ Յիսուս, ո՛րչափ պարտական եմ քեզի. Ինչպէս արժանի սեպեցիր ինծի պէս ապերախտի մը, մատնչի մը այնչափ շնորհքներ ընել։ Դուն ստեղծեցիր զիս, և ստեղծելու ատենդ կը տեսնէիր քեզի դէմ ընելիք անիրաւութիւններս։ Զիս փրկեցիր ինծի համար մեռնելով. և այն ատենէն կը տեսնէիր իմ քեզի դէմ ընելիք ապերախտութիւններս։ Քանի որ զիս աշխարհք գրեր ես, քեզմէ երես դարձուցեր եմ, որով մեռած էի հոգւով. հոտած շուն մըն էի, և դու քու շնորհքովդ ինծի կեանք պարգևեցիր։ Ես կուրցեր էի, դու զիս լուսաւորեցիր. ես զքեզ կորսնցուցեր էի, դու զքեզ ինծի գտնել տուիր. քեզի Թշնամի էի, դուն զիս Նորէն բարեկամ ըրիր։ Ով Աստուած ողորմութեանց, դու ճանչցուր ինծի իմ պարտքերս, և Ջուր տուր աչացս ողբալ իմ ըրած չարեացս վրայ։ Ո՛հ տէր իմ, վրէժխնդիր եղիր սաստիկ ցաւ տալով ինծի իմ մեղքերուս վրայ. բայց մի պատուհասեր քու շնորհքէդ զիս զրկելով և 'ի քոյ սիրոյդ։ Ով հայր երկնաւոր, կը զարշիմ կը զզուիմ այն ամենայն չարիքներէն ու անարգանքներէն որ քեզի տուեր եմ. գթա և ողորմէ ինծի քու միածնիդ Յիսուսի սիրոյն համար. նայէ որդւոյդ որ խաչին վրայ մեռած է. արիւնը իմ վրաս ըլլայ։ Այդ աստուածային արիւնը վրաս իջնայ ու հոգիս լուայ։ Ով իմ հոգւոյս Թագաւորը, եկեսցէ արքայութիւն քո։ Առաջադրեցի որ մեկզի ձգեմ ամենայն ուրախութիւն որ քեզի համար չէ. ամէն բանէ վեր կը սիրեմ զքեզ, եկ դու միայն Թագաւորէ իմ հոգւոյս վրայ. տուր շնորհք որ զքեզ սիրեմ, և քեզմէ զատ ուրիշ բան չի սիրեմ։ Կը փափաքիմ որ որչափ կրնամ քու կամքդ ընեմ և բոլոր միացած կենացս մէջ քու ուզածդ կատարեմ։ Դու օրհնէ, հայր իմ, աս իմ փափաքս, և շնորհք տուր որ միշտ քեզի հետ միացած

ըլլամ։ Բոլոր իմ բաղձանքներս քեզի կը նուիրեմ, և այս օրէս սկսեալ՝ չեմ ուզեր զիս ուրիշի տալ բայց միայն քեզի. ով զանձ իմ, խաղաղութիւն իմ, յոյս իմ, սէր իմ, և ամենայն ինչ. և ամէն բան քեզմէ կը յուսամ քու միածին որդւոյդ արդեամքը։ Ով ամենասրբուհի կոյս Թագուհի և մայր, ինծի օգնական եղիր քու բարեխօսութեամբդ և աղաչէ ինծի համար, ով աստուածամայր։

---

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Դ.

## ՄԱՀՈՒԱՆ ՍՏՈՒԳՈՒԹԻՒՆԸ

*Մարդուս մէկ անգամ կայ մեռնիլ [1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ամէն մարդու համար ալ մահուան դատակնիք տըրուած է. մարդ ես, ուրեմն պիտի մեռնիս։ Սուրբն Օգոստինոս կըսէր թէ մեր ամէն բարիքն ու չարիքը անստոյգ են, միայն մահը ստոյգ է։ Անստոյգ է թէ այն տղան որ ծնաւ՝ աղքատ պիտի ըլլայ թէ մեծատուն, առողջ պիտի ըլլայ թէ անառողջ, երիտասարդ պիտի մեռնի թէ ծեր, այս ամէնն ալ անստոյգ են. միայն ստոյգն այս է որ պիտի մեռնի։ Ամէն ազնուական, ամէն թագաւոր մահուան մանգաղովը պիտի հնձուին. և երբոր մահը վրայ հասնի՝ ույժ մը չկայ որ կարենայ իրեն դէմ կենալ։ Կրակին դէմ, ջրին դէմ, սրոյն դէմ կենալ կարելի է. թագաւորաց ալ իշխանութեանը դէմ կրնայ դրուիլ. բայց մահուան դէմ կենալ անհնար է։ Ինչպէս սուրբն Օգոստինոս ալ կըսէ թէ հնար է հրոյ, ալեաց, և սրոյ դէմ կենալ, թագաւորաց ալ հակառակ կալ. մահը հասաւ և ով կրնայ անոր հակառակ կալ։ Բելլուակենցին կը պատմէ թէ Գաղ-

1 Կայ մնայ մարդկան մի՛ անգամ մեռանիլ։ Եբր. Թ. 27։

գիտյ Թագաւորներէն մէկը կենաց ծայրն հասնելով ըսեր է, իմ ամէն իշխանութեամբս չեմ կրնար հրամայել որ մահը ժամ մըն ալ սպասէ ինծի։ Երբոր քու կենացդ վախճանն հասեր է, և ոչ մէկ վայրկեան մըն ալ կըսպասէ ; ժամանակ է դրեր և չանցնիր[1]։

Գնենք թէ, սիրելի ընթերցող, շատ տարի պիտի ապրիս, ինչպէս որ կը յուսաս, բայց օր մը պիտի գայ, և այն աւուր մէջ ժամ մը պիտի գայ որ քու վերջին ժամդ ըլլայ։ Ինծի համար ալ որ հիմա կը գրեմ, քեզի համար ալ որ այս գրածս կը կարդաս օր մը սահմանած է, վայրկեան մը որոշած է որ ոչ ես պիտի կրնամ գրել, և ոչ ալ դուն պիտի կարենաս կարդալ։ Ո՞վ է մարդ՝ որ կապրի ու մահ պիտի չի տեսնէ[2]։ Մահուան վճիռը տրուած է. այնպիսի խենթ մարդ մը չէ եղած որ միտքը դնէ թէ ինքը պիտի չի մեռնի։ Ինչ որ քու պապերուդ եղաւ, քեզի ալ պիտի ըլլայ։ Քանի՜ քանի մարդիկ անցեալ դարուն սկիզբը կենդանի էին, հիմա անոնցմէ և ոչ մէկը կայ։ Իշխաններ, Թագաւորներ ալ իրենց աշխարհքը փոխեցին, և իրենցմէ հոս ուրիշ բան չմնաց՝ բայց եթէ մարմարիոնէ դամբան մը գեղեցիկ վերտառութեամբ, որ մեզի ալ կը սորվեցընէ թէ աշխրքիս մեծերէն ուրիշ բան չի մնար՝ բայց եթէ բուռ մը փոշի քարերու տակ ծածկուած։ Սուրբն Բենարդոս կը հարցընէ թէ՝ ըսէ ինծի ուր են աշխարհքը սիրողները. և ինքը պատասխան կու տայ թէ անոնցմէ բան մը չմնաց, բայց թէ մոխիր և որդ։

Ուրեմն պէտք է որ ջանանք չէ թէ վաղանցուկ բաղդ ձեռք բերելու, այլ զայն որ յաւիտեան մնայուն է, վասն զի մեր հոգին ալ յաւիտենական է։ Ի՞նչ բանի կու գայ երջանիկ ըլլալ, թէ որ առանց Աստուծոյ երջանկութիւն կարելի է, որ ետքը յաւիտեան թշուառ պիտի ըլլաս։ Ամէն ուզածիդ պէս այդ տունը շինել տուիր, բայց գիտցիր որ քիչ ատենէն պիտի հարկադրիս թողլու զայն, և պիտի երթաս փոսի մը մէջ փտտելու ու հոտելու։ Պատիւ մը, բարձ մը ալ ձգեցիր և ամենէն վեր եղար. բայց մահը կու գայ ու կը հաւասարցընէ զքեզ յետին գեղացիին, աշխրքիս ամենէն խեղճին։

1 Ժամանակ եդեր և ոչ անցցէ։ Յոբ. ԺԴ. Ե։
2 Ո՞վ է մարդ՝ որ կեցցէ և ոչ տեսցէ զմահ։ Սաղմ. ՁԸ. 41։

## ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՜վ տառապելոյս անձամբ, որ այսքան տարի ուրիշ բան չըրի բայց եթէ զքեզ դառնացընել, ով Աստուած հոգւոյ իմոյ։ Հիմա տարիներն անցան, զուցէ մահս մօտեցեր է, և ի՞նչ մնաց ձեռքս, եթէ ոչ դառնութիւն և խայթ խղճմտանաց։ Երանի թէ միշտ քեզի ծառայած ըլլայի, ով տէր իմ։ Այս ի՞նչ խենթ գըտնուեր եմ ես որ այսքան տարի երկրիս վրայ ապրեցայ, և փոխանակ անդիի կենաց համար վարձք շահելու՝ զիս պարտքերով ծանրաբեռնեցի Աստուծոյ դատաստանին առջև։ Ով սիրելի փրկիչ իմ, տուր ինծի լոյս և կարողութիւն որ հիմակուընէ կարգի դնեմ տալու համարս, զուցէ մահը շատ հեռու չըլլայ ինծմէ։ Կուզեմ պատրաստ գտնուիլ այն ահաւոր կէտին որ պիտի որոշէ իմ յաւիտենական երջանիկ կամ թշուառ վիճակս։ Շնորհակալ եմ, որ ինչուան հիմա սպասեցիր ինծի. և որովհետև ատեն կու տաս որ իմ չարեացս ճարը տեսնեմ, ահա պատրաստ կեցեր եմ, Աստուած իմ. ըսէ ինծի, քեզի համար ի՞նչ պէտք է ընեմ։ Կուզե՞ս որ ցաւիմ քեզի դէմ ըրած անզգամութեանցս վըրայ. կը ցաւիմ կը ցաւիմ, կը զղջամ բոլոր սրտանց։ Կուզե՞ս որ մնացած տարիներն ու օրերը զքեզ սիրելով անցընեմ. այո այո, ես ալ այդ կուզեմ ընել։ Ով Աստուած իմ, առաջ ալ շատ անգամ այսպիսի առաջադրութիւններ ըրեր եմ, բայց խոստմունքս կատարելու տեղ նոր նոր մեղքեր գործեր եմ։ Չէ չէ, ով Յիսուս փրկիչ իմ, չեմ ուզեր ասկէց ետև նորէն ապերախտ գտնուիլ քու ինծի ըրած այնչափ շնորհքներուդ։ Թէ որ հիմակուընէ վարքս չսկսիմ փոխել, մահուանս ատեն ինչպէս պիտի կարենամ յոյս ունենալ թողութեան և արքայութեան։ Ուստի հիմակուընէ հաստատուն սրտով կառաջադրեմ որ սկսիմ ճշմարտապէս։ Բայց ոյժ տուր ինծի, և երեսէդ մի ձգեր զիս։ Եւ որովհետև մեղքի մէջ եղած ատենս ալ զիս ձեռքէ չթողուցիր, ուստի աւելի մեծ յոյս ունիմ քու օգնութեանդ հիմա որ քու կամքդ կատարելու համար ամէն բան մէկդի դնելու կառաջադրեմ։ Ուրեմն ընդունէ զիս ըզքեզ սիրելու, ով Աստուած իմ, որ արժանի ես անհուն սիրոյ. ընդունէ զիս մատնիչս որ զղջմամբ ոտքդ

կինամ, դքեզ կը սիրեմ և քեզմէ ողորմութիւն կը խնդրեմ։ Այս այս կը սիրեմ դքեզ, ով Յիսուս փրկիչ իմ, կը սիրեմ դքեզ 'ի բոլոր սրտէ 'ի վեր քան զիմ անձս. ես քուկդ եմ, կարգադրէ զիս ալ ամէն բանս ալ՝ ինչպէս որ կուզես. տուր ինծի յարատեւութիւն քեզի հնազանդելու, տուր ինծի քու սէրդ, ետքը ինչ որ կուզես զիս ըրէ։ Մարիամ մայր ողորմութեան, յոյս իմ և ապաւէն, քեզի կը յանձնեմ զիս, քու ձեռքդ կաւանդեմ իմ հոգիս, աղաչէ զՅիսուս ինծի համար։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Կայ մեռայ մարդուս մէկ անգամ մեռնիլ. ստոյգ է ուրեմն որ ամէնքս ալ մահուան դատապարտուած ենք։ Ամէնքս ալ որ երբոր կը ծնանինք, կըսէ սուրբն Կիպրիանոս, ճիտերնիս չուան անցուցած է, և քանի ատք որ կառնենք՝ այնչափ դէպ 'ի մահ կը մօտենանք։ Ով եղբայր սիրելի, ինչպէս որ օր մը մկրտութեան ցանկին մէջ գրուեցար, այսպէս ալ օր մը մեռելոց ցանկին մէջ պիտի գրուիս։ Ինչպէս որ դուն հիմա քեզմէ առաջիններուն անունը տալու ատենդ ողորմած հոգի հայրս կըսես, ողորմած հոգի հօրեղբայրս, ողորմած հոգի եղբայրս, այսպէս ալ քեզի համար պիտի ըսեն քեզմէ ետև եկողները։ Ինչպէս որ դուն շատ անգամ ուրիշներուն մահուան զանգակը լսեր ես, այսպէս ալ ուրիշները քու մահուանդ զանգակը պիտի լսեն։

Ի՞նչ կըսէիր, եթէ տեսնէիր մահապարտ մը որ կախաղան կերթայ կատակներ ընելով, ծիծաղելով, աչուըները աստին անդին դարձընելով, խաղերու զբօսանքի խելքը տալով։ Դուն ալ հիմա դէպ 'ի մահ չե՞ս մի քալեր, և ինչ կը մտածես. Նայէ սա փոսին մէջ այն քու բարեկամներդ ու ազգականներդ, որոնց դատաստանը արդէն կտրուած է։ Այն ինչպէս կը սարսափին մահապարտները երբոր իրենց ընկերները կախաղանին վրայ կախուած ու մեռած կը տեսնեն։ Նայէ դուն ալ սա դիակներուն վրայ, որ ամէն մէկը քեզի կըսեն, երէկ ինծի՝ այսօր քեզի է սա վճիռը։ Նոյն բանը կըսեն քեզի նաև քու ծնողացդ, ազգականացդ պատկերները, գրերը, յիշատակարանները, տները, անկողինները, հագուստները, որ թողեր գնացեր են։

Ուրեմն այս ինչ մեծ խենթութիւն է գիտնալ թէ պիտի մեռնինք և մեռնելէն ետև ալ յաւիտենականութիւն մը պիտի գայ կամ ուրախութեան և կամ պատժոյ, մտածել թէ այն կէտէն կախուած է կամ յաւիտեան երջանիկ ըլլալ և կամ յաւիտեան թշուառ ըլլալ, ու ետքը փոյթ չընել տալու համարը չակնելու չտկտելու, և ջանք չընել բարի մահ ունենալու։ Կը ցաւինք կու լանք անոնց վրայ որ յանկարծակի կը մեռնին՝ մահուան առանց պատրաստութիւն առնելու. հապա մենք ինչու հոգ չենք տանիր պատրաստ ըլլալու՝ գիտնալով որ մեզի ալ նոյն դիպուածը կրնայ պատահիլ։ Եւ սակայն կանուխ է եղեր, ուշ է եղեր, առաջուցմէ իմանալով է եղեր, յանկարծ է եղեր, կռահենք չի կռահենք պիտի մեռնինք, ամէն վայրկեան մեր կախաղանին կը մօտենանք, որ է մեր ետքի հիւանդութիւնը որ զմեզ աշխրքէս վռնտէ պիտի։

Ամէն մէկ տները, հրապարակները, քաղաքները, նոր նոր մարդիկներով կը լեցուին, և իրենցմէ առջինները կը տանին գերեզմաններու մէջ կը փակեն։ Եւ ինչպէս անոնց կենաց օրերը լմնցեր են, այսպէս ալ ատեն պիտի գայ որ ոչ ես, ոչ դուն և ոչ անոնք որ հիմա կապրինք՝ կենդանի պիտի մնանք այս աշխըրքիս վրայ։ Այն ատեն ամէնքս ալ կանցնինք դէպ 'ի յաւիտենականութիւն, որ մեզի կամ երջանկութեան մշտնջենաւոր օր մը պիտի ըլլայ, և կամ յաւիտենական տանջանաց գիշեր մը։ Ուրիշ միջին ճամբայ չի կայ, ստոյգ է և 'ի հաւատոց, որ կամ այս և կամ այն վիճակը պիտի ունենանք։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Սիրելի փրկիչ, չէի համարձակեր քու առջևդ երևնալու թէ որ ինծի համար խաչին վրայ կախուած, վիրաւորուած, նախատուած և մեռած չի տեսնէի զքեզ։ Իրաւ որ մեծ է իմ ապերախտութիւնս, բայց աւելի մեծ է քու ողորմութիւնդ. մեծ են իմ մեղքերս, բայց աւելի մեծ են քու արդիւնքդ. վէրքերդ, արիւնդ, մահդ իմ մէկ հատիկ յոյսս են։ Առաջին գործած մեղացս վայրկեանէն ես դժոխքի արժանի էի, և վերջէն ալ շատ անգամ նորէն զքեզ վշտացուցի. իսկ դու չէ թէ միայն զիս 'ի կեանս պահեցիր, այլ նաև վրաս այնչափ գութ,

այնչափ սէր ցուցիր որ դառնամ Թողութիւն խընդրեմ ու հետդ հաշտուիմ։ Հիմա ի՞նչպէս կրնամ վախնալ թէ դու զիս երեսէ կը ձգես, երբոր զքեզ կը սիրեմ, և ուրիշ բանի չեմ փափաքիր՝ բայց եթէ քու շընորհացդ։ Այս տէր իմ, սէր անուն Յիսուս, կը սիրեմ զքեզ բոլոր սրտանց, և զքեզ սիրելէն 'ի զատ ուրիշ բան չեմ ուզեր. կը սիրեմ զքեզ, և կը ցաւիմ որ զքեզ վշտացուցի. ոչ այնչափ դժոխքէն վախնալով որուն արժանի էի, որչափ մտածելով թէ դառնացուցեր եմ զքեզ Աստուածդ իմ, որ այնչափ զիս սիրեցիր։ Հապա, փրկիչ իմ Յիսուս, բաց ինծի քու բարութեանդ ծոցը և տուր ողորմութիւն ողորմութեանս վրայ։ Շնորհք տուր ինծի որ մէյմըն ալ քեզի ապերախտ չըլլամ, և փոխէ բոլորովին իմ սիրտս։ Տուր տէր որ այս իմ սիրտս՝ որն որ ատեն մը բանի տեղ չի սեպեց քու սէրդ ու փոխանակեց զայն երկրիս սնոտի հաճոյիցը հետ, հիմա բոլորովին քուկդ ըլլայ և քու սիրովդ բորբոքի անդադար։ Կը յուսամ որ արքայութիւն գամ յաւիտեան զքեզ սիրելու. անմեղաց մէջ ինծի հոն տեղ չի կայ, բայց ապաշխարողաց կարգն ինծի ալ տեղ կայ. ատոնց մէջ ալ անմեղներէն աւելի կուզեմ սիրել զքեզ։ Քու ողորմութեանդ փառացն համար թող տեսնէ արքայութիւնը որ ինծի պէս մեղաւոր մը, որ այնչափ զքեզ վշտացուցեր է, քու սիրովդ կը վառի կը բորբոքի։ Այս օրէս կառաջադրեմ որ բոլորովին քուկդ ըլլամ, և քեզմէ 'ի զատ ուրիշ սիրելու բան չի մտածեմ։ Օգնէ ինծի քու լուսովդ և շնորհօքդ, և կարողութիւն տուր ինծի 'ի գործ դնելու այս փափաքս, զորն որ դուն ինծի կու տաս քու բարերարութեամբդ։ Մարիամ կոյս, յարատեւութեան շընորհք առ ինծի համար որ հաւատարիմ մնամ այս խոստմանս վրայ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Մահն ստոյգ է։ Հապա ի՞նչպէս կըլլայ, տէր Աստուած, որ ամէն քրիստոնեայք այս բանս գիտեն, կը հաւատան, աչքով ալ կը տեսնեն, և ետքը շատերն այնպէս կապրին իբր թէ մահ չկայ, որպէս թէ բնաւ մեռնելիք չունին։ Թէ որ այս կեանքէս ետև ոչ դժոխք

ըլլար, ոչ արքայութիւն, արդեօք ասկէ աւելի անհոգ կրնային ըլլալ։ Եւ անոր համար է որ այսպէս վատթար կեանք կանցընեն։ Ով եղբայր, եթէ կուզես աղէկ կեանք վարել, ջանա որ ասկէ ետև մահուան վրայ նայելով ապրիս։ Ով մահ, ինչպէս գեղեցիկ է քու դատաստանդ, կըսէ Սիրաք [1]։ Այն ինչպէս աղէկ դատաստան կընէ ամէն բանի վրայ, և կարգի կը դնէ իր բաները, ով որ մահուան վրայ նայելով կը դատէ զանոնք և կարգի կը դնէ։ Մահուան յիշատակը աշխարքիս ամէն բանին սէրը մոռցընել կու տայ. սուրբն Լաւրենտիոս Յուստինեան կըսէ որ, եթէ կենաց վերջը մտածուի, աշխարքիս վրայ սիրելու բան մը չի մնար [2]։ Յովհաննէս աւետարանչին ըսածին պէս, ինչ որ աշխարքիս վրայ կայ, ամէնքն ալ մարմնոյ ցանկութիւն է, աչաց ցանկութիւն է, և աստի կենաց ամբարտաւանութիւն է [3]։ Այս աշխարքիս ամենայն բարութիւնը ահաւասիկ զգայարանաց հաճոյք են, մարմնոյ զարդարանք և փառք պատիւ գտնել. բայց ով որ կը մտածէ թէ քիչ ատենէն մոխիր պիտի դառնայ և հողուն տակ որդերուն կերակուր պիտի ըլլայ, ալ այս աշխարքիս բարեացը վրայ աչք չունենար ու կարհամարհէ զանոնք։

Եւ իրօք սուրբերը մահուան վրայ նայելով ոտքի տակ առին աշխարքիս ամէն բարիքը։ Այս բանիս համար սուրբն Կարոլոս Բորրոմէոս իր գրասեղանին վրայ մեռելի գանկ մը դրած էր, որպէս զի միշտ աչքը անոր վրայ ըլլայ։ Բարոնիոս կարդինալը իր մատանիին վրայ փորել տուեր էր՝ մահդ յիշէ։ Հայրն Յովնաս Անչինա, Սալուցցոյի եպիսկոպոսը, մեռելի մը գանկին վրայ գրել տուեր էր, ինչ որ դուն ես՝ ես ալ էի, ինչ որ ես եմ՝ դուն ալ պիտի ըլլաս։ Ուրիշ սուրբ ճգնաւորի մըն ալ մեռնելու ատենը հարցուցին թէ ինչո՞ւ այդչափ ուրախ ես. պատասխան տուաւ թէ մահը միշտ աչքիս առջևն էր, ուստի հիմայ որ եկեր է՝ ինծի համար նոր բան մը չէ։

1 Ո մահ, զի՜ գեղեցիկ են դատաստանք քո։ Սիրաք. ԽԱ. 3։
2 Յղ. փայտին կենաց։ Գլ. Ե։
3 Ամենայն որ ինչ յաշխարհի է՝ ցանկութիւն է մարմնոյ, և ցանկութիւն է աչաց, և ամբարտաւանութիւն աստի կենաց։ Ա. Յովհ. Բ. 16։

Այն ինչ խենթ պիտի ըլլայ ան ճանապարհորդն որ ուր տեղէն որ կանցնի՝ հոն մեծ ըլլալ մտածէ, և փոյթ չընէ թէ հոն ուր կենօք չափ պիտի կենայ՝ թշուառութեամբ պիտի ապրի։ Եւ ինչ, միթէ խենթ չէ՞ այն մարդը որ կը մտածէ երջանիկ ըլլալ այս աշխարքիս վրայ՝ ուր քանի մը օր պիտի կենայ, և ինքը զինքը վտանգի մէջ կը դնէ թշուառ ըլլալու անդին՝ ուր յաւիտեան պիտի կենայ։ Ով որ ուրիշէն բան մը փոխ առեր է՝ տէրը անոր շատ չի կապեր, գիտնալով որ քիչ ատենէն ետ պիտի դարձընէ։ Այս աշխարքիս բարիքները բոլոր մեզի փոխ տրուած են. ուստի խենթութիւն է անոնց վրայ սրտերնիս կապել, գիտնալով որ քիչ ատենէն պիտի թողունք երթանք։ Մահը գքեզ ամէն բանէ պիտի մերկացընէ. աշխարքիս ամէն փառատակն ու բաղդը յետին շունչ մը տալով, թաղումով մը, փոսի մը մէջ իջնալով պիտի վերջանան։ Այդ շինած տունդ քիչ ատենէն ուրիշներուն պիտի թողուս, գերեզմանը պիտի ըլլայ քու բնակարանդ ինչուան վերջին դատաստան, և անկէց կամ արքայութիւն և կամ դժոխք պիտի անցնի մարմինդ ալ ուր որ արդէն հոգիդ գնացեր է։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ուրեմն մահուան ատեն ինծի համար ամէն բան պիտի վերջանայ՞. այն ատեն ուրիշ բան մը պիտի չի գտնեմ, ով Աստուած իմ, բայց եթէ այն քիչ բանը զորն որ քու սիրոյդ համար ըրած եմ։ Հապա ինչ բանի կըսպասեմ. կըսպասեմ որ մահը գայ և ինչպէս որ հիմա եմ՝ զիս այնպէս թշուառ ու մեղօք աղտեղեալ գտնէ։ Թէ որ հիմա մեռնելու ըլլայի, շատ անհանգիստ և անցուցած կեանքիս վրայ շատ տժգոհ կը մեռնէի։ Ոչ, տէր իմ Յիսուս, չէ՝ այսպիսի տժգոհ չեմ ուզեր մեռնիլ։ Շնորհակալ կըլլամ քեզի որ ինծի ատեն կու տաս մեղքերս լալու, և գքեզ սիրելու. այս վայրկենէս կուզեմ այդ բանիդ ձեռք զարնել։ Կը ցաւիմ, կը զղջամ ամէն չարեացս վրայ որով գքեզ վշտացուցի, ով ծայրագոյն բարիդ, և կը սիրեմ գքեզ ամէն բանէ վեր, իմ կեանքէս էւել։ Բոլոր զիս քեզի կու տամ, ով Յիսուս իմ, այս վայրկենէս սկսեալ ոտքդ կը պլլուիմ, քեզի կապուինիմ բոլոր սրտովս և քեզի կը յանձնեմ բո-

վանդակ կեանքս ու հոգիս։ Չեմ ուզեր սպասել այն առենին երբոր ինծի առիպեն թէ ելիր գնա այս աշխարհքէն։ Չեմ՝ ուզեր սպասել այն առենն աղաչելու քեզի որ զիս փրկես։ Ով փրկիչ իմ, հիմակուընէ փրկէ զիս մեղացս թողութիւն շնորհելով, և քու սուրբ սիրոյդ շնորհքն ինծի պարգևելով։ Ո՛վ գիտէ, գուցէ այս մտածականս որ այսօր կը կարդամ, ետքի կոչդ ըլլայ որ ինծի կընես, և ետքի ողորմութիւնդ ըլլայ որ վրաս կը բանեցընես։ Ձեռքդ երկնցուր, ով սէր իմ Յիսուս, և դուրս քաշէ զիս իմ գաղջութեանցս տըղմէն, բորբոքէ սիրտս, շնորհք տուր ինծի, որ ամենայն սիրով հնազանդիմ քեզի այն ամէն բանին մէջ զոր ինծմէ կը պահանջես։ Հայր երկնաւոր, Յիսուսի սիրոյն համար տուր ինծի յարատևութիւն, և շնորհք զքեզ սիրելու, և շատ սիրելու մնացած կենացս մէջ։ Մարիամ, մայր ողորմութեան, վասն սիրոյդ զոր ունիս քու Յիսուսիդ, այս երկու շնորհքը խնդրէ և առ ինծի համար՝ յարատևութիւն և սէր։

---

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Ե.

### ՄԱՀՈՒԱՆ ԺԱՄՈՒՆ ԱՆՍՏՈՒԳՈՒԹԻՒՆԸ

*Պատրաստ եղիք, վասն զի որ ժամուն որ չէք կարծեր՝ որդին մարդոյ կու գայ* [1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ստոյգ է թէ ամէնքս ալ պիտի մեռնինք, բայց անստոյգ է թէ երբ պիտի մեռնինք։ Իտիոտայի ըսածին պէս՝ մահուան պէս ստոյգ բան չի կայ, բայց մահուան ժամուն պէս ալ անստոյգ բան չի կայ։ Գիտցիր, ով եղբայր, որ արդէն սահմանած որոշած է այն տարին,

1 Եղերուք պատրաստք. զի յորում ժամու ոչ կարծիցէք՝ գայ որդի մարդոյ։ Ղկ. ԺԲ. 40։

այն ամիսը, այն օրը, այն ժամը, և այն վայրկեանը որ ես ալ, դուն ալ պիտի թողունք այս աշխարհքս և յաւիտենականութիւն պիտի մտնենք. բայց այս ժամանակը մեզի անծանօթ է։ Քրիստոս տէրն մեր որպէս զի միշտ պատրաստ ըլլանք՝ երբեմն կըսէ թէ մահը գողի պէս գիշերանց գաղտուկ կու գայ. երբեմն կըսէ թէ այն ատենն որ չէք կարծեր՝ որդին մարդոյ կու գայ։ Աղէկ կըսէ սուրբն Գրիգոր թէ Աստուած մեր բարւոյն համար մեզմէ կը ծածկէ մահուան ժամանակը, որպէս զի միշտ մեռնելու պատրաստ գտնուինք. անոր համար, կըսէ, մահուան ատենին վրայ անստոյգ ենք, որպէս զի միշտ պատրաստ ըլլանք առ 'ի մահ։ Արդ որովհետև մահը ամէն ատեն և ամէն տեղ կրնայ մեր կեանքը կտրել, ուրեմն թէ որ կուզենք աղէկ մեռնիլ, կըսէ սուրբ Բեռնարդոս, պէտք է որ ամէն ատեն և ամէն տեղ իրեն սպասենք. մահը, կըսէ, ամէն տեղ քեզի կըսպասէ, նայէ որ դուն ալ անոր սպասես միշտ։

Ամէն մարդ գիտէ որ պիտի մեռնի, բայց այն է գէշը որ շատերը մահը իրենցմէ այնպէս հեռու կը տեսնեն ինչուան կը մոռնան։ Նոյն իսկ ցնդած ծերերը, ծանր հիւանդները կը յուսան որ քանի մը տարի ալ կրնան ապրիլ։ Բայց ընդ հակառակն քանիները գիտենք, մեր օրերն ալ, որ յանկարծական մահուամբ, նստած տեղերնին, քալած ատեննին, անկողնի մէջ քուն եղած ատեննին մեռեր են։ Ասոնցմէ և ոչ մէկուն ալ միտքէն անցեր էր որ յանկարծ պիտի մեռնի, և այն օրը պիտի մեռնի։ Ասանկ ալ քանի՜ քանի անձինք այս տարի աշխրքէս ելան անդին գնացին անկողնի մէջ մեռնելով, որոնցմէ և ոչ մէկն ալ կերևակայէր թէ այս տարի կրնայ մեռնիլ, կեանքը լմընցընել։ Քիչ մահ կըլլայ որ յանկարծական չըլլայ։

Ուրեմն, ով սիրելի քրիստոնեայ, երբոր սատանան քեզ կը փորձէ որ մեղանչես, ըսելով թէ բան մը չէ, վաղը կը խոստովանիս, ըսէ անոր թէ ես ինչ գիտնամ, գուցէ այս օրս իմ կենացս վերջինն ըլլայ։ Թէ որ այս ժամս, այս վայրկեանս, որ Աստուծմէ երես դարձընեմ, կենացս ետքինն ըլլայ, այնպէս որ ատեն չունենամ զիս շտկելու, յաւիտեան գլխուս ինչ ձիւն պիտի գայ։ Քանի՜ քանի թշուառական մեղաւորներ եղեր են որ չարութեան որոգայթին մէջ բռնուած

ատեննին մահը վրայ հասեր է, և զիրենք շիտակ դըժոխք տարեր է։ Ինչպէս ձկները, կըսէ Ժողովող, ցանցի մէջ կը բռնուին, . . . և որոգայթի մէջ կիյնան, նոյնպէս ալ մարդիկ չար ժամանակի ատեն որոգայթ կիյնան[1]։ Բուն չար ժամանակն այն է երբոր մեղաւորը իրօք կը թողու զԱստուած։ Սատանան կըսէ թէ այդ գժբախտութիւնը քեզի չի հանդիպիր. բայց դու պիտի ըսես թէ, հապա թէ որ հանդիպելու ըլլայ նէ՝ յաւիտեան իմ վիճակս ի՞նչ կըլլայ։

## ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Տէր, իմ տեղս այս պիտի չըլլար ուր որ եմ հիմա, հապա դժոխքը ուր երթալու արժանի եղայ շատ անգամ իմ մեղքերովս։ Բայց սուրբն Պետրոս ինծի կըսէ թէ Աստուած երկայնամիտ կըլլայ ձեզի, վասն զի չուզեր որ մէկ հոգի մըն ալ կորսուի, այլ կուզէ որ ամէնքն ալ ապաշխարութեան հասնին[2]։ Ուրեմն դուն ինծի այսչափ երկայնամիտ եղար, սպասեցիր ինծի, վասն զի չես ուզեր կորսուիլս, հապա կուզես որ դառնամ ապաշխարեմ։ Ահա, Տէր Աստուած իմ, քեզի կը դառնամ, ոտքդ կիյնամ, և ողորմութիւնդ կը խընդրեմ։ Ողորմէ ինծի Աստուած իմ ըստ մեծի ողորմութեան քում։ Տէր, ինծի թողութիւն տալու համար մեծ և արտաքոյ կարգի ողորմութիւնդ պէտք է. վասն զի քեզմէ այսչափ լոյս առնելէս ետև դարձեալ զքեզ վըշտացուցի։ Ուրիշ մեղաւորներ ալ զքեզ բարկացուցեր են, բայց այնչափ լոյս չեն ունեցեր որչափ որ ինծի տուած ես։ Այսու ամենայնիւ կուզես կը հրամայես որ զղջամ մեղքերուս վրայ, և յոյս ունենամ քու ներողամտութեանդ։ Այո, փրկիչ իմ, ես ալ կը զղջամ 'ի բոլոր սրտէ զքեզ բարկացընելուս համար, և յոյս ունիմ թողութիւն գտնելու քու չարչարանացդ արդեամբքը։ Դու Տէր իմ Յիսուս, բոլորովին անմեղ ըլլալով

1 Որպէս ձկունք որսացեալք ցանցիւք չարեաց, և որպէս թռչունք որսացեալք 'ի ծուղակս, նոյնպէս անկանին յորոգայթս որդիք մարդկան 'ի ժամանակի չարի։ Ժող. Թ. 12։

2 Երկայնամիտ լինի (Տէր) առ ձեզ, քանզի ոչ կամի՝ եթէ ոք կորիցէ, այլ ամենեցուն հասանել յապաշխարութիւն։ Բ. Պետր. Գ. 9։

ուզեցիր մեղաւորաց մը պէս խաչափայտին վրայ մեռնիլ ու բոլոր արիւնդ թափել իմ մեղքերս լուալու համար: Ո՛ անպարտ արիւն, լուա ապաշխարողիս մեղքերը: Ով Հայր երկնաւոր, թող ինծի քու միածին որդւոյդ Յիսուսի սիրոյն համար. լսէ անոր աղաչանացը որ կաղաչէ քեզի ինծի համար իբրև իմ բարեխօս: Բայց թողութիւնը հերիք չէ, Աստուած իմ, որ արժանի ես անբաւ սիրոյ, կուզեմ որ ինծի շնորհք ալ տաս զքեզ սիրելու: Կը սիրեմ զքեզ, ծայրագոյն բարի, և ասկէ ետև կը նուիրեմ քեզի մարմինս, հոգիս, կամքս և ազատութիւնս: Կուզեմ այսօրուընէ ետև փախչիլ ամէն բանէ որ քեզի անհաճոյ է, թէ մեծ և թէ փոքր: Կուզեմ հեռանալ ամենայն չար առիթներէ, մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն: Յիսուսի սիրոյն համար փրկէ զիս այն առիթներէն որով կրնամ զքեզ վշտացընել. այլ փրկեա զմեզ 'ի չարէ: Մեղքէ խալըսէ զիս, ու ետքը պատժէ ինչպէս որ կուզես: Սիրով յանձն կառնում ամենայն հիւանդութիւն, ցաւ, կորուստ, որ ուզենաս վրաս ղրկել, բաւական է որ քու շնորհքդ և քու սէրդ չի կորսընցընեմ: Խնդրեցէք և առնուցուք, այս ինծի ըրած խոստումդ է. ես ալ քեզմէ աս երկու շնորհքս կը խնդրեմ, սուրբ յարատևութիւն և շնորհք զքեզ սիրելու: Մայր ողորմութեան, բարեխօս եղիր ինծի համար, քեզի եմ ապաւինած:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Աստուած չուզեր որ կորսուինք. անոր համար անդադար մեզի ազդարարութիւն կընէ որ իր պատժոյն սպառնալիքէն վախնալով վարքերնիս փոխենք. իսկ թէ որ իրեն չենք դառնար, սուրը սրած է[1]: Ուրիշ տեղ ալ կըսէ թէ նայեցէք քանիները և ոչ կերեւակայէին ու հանգիստ կապրէին, մեղքերնին դնելով թէ շատ տարիներ դեռ ալ պիտի ապրին, յանկարծ մահը վրանին հասեր է: Երբոր կըսեն թէ խաղաղութիւն և շինութիւն է, ան ատեն յանկարծակի սատակումը վրա-

1 Ապա թէ ոչ դառնայք առ նա, զսուր իւր սրեալ է: Սաղմ. Է. 13:

նին պիտի հասնի[1]։ Եւ դարձեալ թէ որ չէք ապաշխարեր՝ ամէնքնիդ ալ նոյնպէս կորսուիք պիտի։ Ինչու համար այսպիսի պատիժներ կըսպառնայ խրկելէն առաջ։ Յայտնի է թէ կուզէ որ մենք զմեզ շտկենք, որպէս զի գէշ մահ չունենանք։ Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս, թէ ով որ քեզի կըսէ նայէ զգոյշ կեցիր, չուզեր զքեզ սպաննել։

Ուրեմն պէտք է որ տալու համարնիս պատրաստենք քանի որ օրը չէ հասած։ Ով քրիստոնեայ, թէ որ իրիկուան չի հասած այս ցորեկ մեռնելու ըլլաս, և յաւիտենական վիճակդ որոշուելու ըլլայ՝ ի՞նչ կընէիր. համարդ պատրաստած կըլլայի՞ր. կամ թէ Աստուծոյ ի՞նչ չէիր խոստանար որ քեզի տարի մըն ալ ժամանակ տայ, գոնէ ամիս մը, գոնէ օր մը ատեն տայ։ Իսկ հիմա որ քեզի ատեն տուեր է Աստուած, ինչու խղճմտանքդ չես մաքրեր։ Ի՞նչ, չի՞ կրնար ըլլալ որ այս օրս վերջինդ ըլլայ. տես ի՞նչ կըսէ սուրբ գիրքը, մի՛ ուշանար մեղքերէդ առ Աստուած դառնալու, որպէս զի չըլլայ թէ մեղացդ մէջ մեռնիս[2]։ Ով եղբայր, փրկուելու համար պէտք է որ մեղքը մէկդի թողուս. թէ որ անկէ ետ պիտի կենաս՝ ինչու հիմա չես կենար։ Օգոստինոսի ըսածին պէս, թէ որ ատենով կըսես նէ՝ ինչու հիմա չըսես։ Գուցէ կըսպասես որ մահը վրադ հասնի. չե՛ս գիտեր որ խստասիրտ մեղացողներուն մահուան ատենը թողութեան ժամանակ չէ, այլ վրէժխնդրութեան։ Թէ որ մէկը քեզի մեծ գումար մը դրամ պարտք ունենայ՝ ետեւէ կըլլաս որ շուտով քեզի պարտաւորութեան գիր տայ, ըսելով թէ ո՛վ գիտէ ի՞նչ դիպուած կրնայ պատահիլ։ Ինչու նոյն զգուշութիւնը հոգւոյդ համար ալ չես ըներ, որ այն գումարէն շատ վեր է. ինչու նոյնպէս չես ըսեր թէ ո՛վ գիտէ ի՞նչ բան կրնայ հանդիպիլ։ Թէ որ այդ առնելիքդ կորսընցընես՝ ամէն բանդ կորսընցուցած չես ըլլար. և թէպէտ բոլոր ունեցածդ կորսընցընես ալ նէ, գոնէ յոյս ունիս որ նորէն վաստըկիս։ Բայց

1 Յորժամ ասիցեն թէ խաղաղութիւն և շինութիւն է, յայնժամ յանկարծակի հասցէ նոցա սատակումն։ Ա. Թես. Ե. 3։

2 Մի՛ յապաղիցես դառնալ առ տէր 'ի մեղաց, զի մի՛ առ մեղս քո մեռանիցիս։ Սիր. Ե. 8։

թէ որ մահուամբ հոգիդ կորսընցընես, անատեն անտարակոյս եղիր որ ամէն բանդ ալ կորուսիր, և ալ յոյս չի մնար մէյմըն ալ զայն ձեռք բերելու։ Դուն այնչափ փոյթ կը տանիս որ ունեցածդ չունեցածդ նշանես, վախնալով որ դիպուածով յանկարծ մեռնելու ըլլաս նէ՝ բան մը չի կորսուի. հապա թէ որ այն յանկարծական մահը քեզի հանդիպելու ըլլայ և դուն Աստուծոյ առջև սևերես գտնուիս, ի՞նչ ձիւն պիտի գայ գլխուդ յաւիտեան։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով փրկիչ իմ, իմ հոգիս փրկելու համար բոլոր արիւնդ թափեցիր, կեանքդ ալ տուիր. իսկ ես շատ անգամ զայն կորսընցուցի քու ողորմութեանդ յուսալով, և շատ անգամ ես քու գթութիւնդ բանեցուցի զքեզ աւելի դառնացընելու համար, որով արժանի էի որ հոգիս առնես ու դժոխք ղրկես։ Իբր թէ քեզի հետ դաշն բռնած ըլլայի, որ դուն ինծի գութ ցուցընես ու ես ըզքեզ վշտացընեմ, դուն ինծի մօտենաս ու ես քեզմէ փախչիմ, դուն ինծի ժամանակ տաս իմ չարեացս ճար ընելու և ես զայն չարիք չարեաց վրայ աւելցընելու բանեցընեմ։ Ճանչցուր ինծի, տէր իմ, իմ մեծ անօրէնութիւնս որ քեզի դէմ ըրեր եմ, և ինչ է իմ պարտքս զքեզ սիրելու։ Ո՜հ Յիսուս փրկիչ իմ, որչափ կը սիրես եղեր զիս, որ երբոր ես քեզմէ կը փախչէի՝ դուն ետևէս եկար. այն որչափ շնորհքներ տուիր ինծի, ուր ես քեզի վիշտ կը հասցընէի։ Ասոնցմով կիմանամ որ որչափ չես ուզեր եղեր իմ կորուստս։ Ուստի կը ցաւիմ կը զղջամ բոլոր սրտանց որ զքեզ վշտացուցեր եմ, որ իմ անսահման բարիս ես։ Ուրեմն ընդունէ սիրով այս ապերախտ ոչխարակը որ զղջմամբ ոտքդ կը դառնայ. ընդունէ, ուսիդ վրայ առ որ մէյմըն ալ քեզմէ չի բաժնուի։ Քաւ լիցի, ալ չեմ ուզեր բաժնուիլ քեզմէ, կուզեմ սիրել զքեզ, կուզեմ զիս քեզի տալ և պատրաստ եմ ամէն բան քաշել, միայն թէ քուկդ ըլլամ։ Եւ ինչ մեծ ցաւ կրնայ ըլլալ բաց՚ի առանց քու շնորհացդ ապրելէն, քեզմէ բաժնուելէն, որ իմ Աստուածս ես, որ զիս ստեղծեցիր և ինծի համար մեռար։ Ով անիծած մեղք, այս ինչ ըրիր ինծի, որ զիս իմ փրկչիս աչքէն ձգեցիր որ այնչափ զիս սիրեր է։

Ո՜հ Յիսուս, ինչպէս որ դուն ինծի համար մեռար, ես ալ պէտք է որ քեզի համար մեռնիմ, դու 'ի սիրոյ՝ ես զքեզ վշտացընելուս ցաւէն։ Սիրով կընդունիմ մահս, երբ և ինչպէս որ քեզի հաճոյ է. բայց ես զքեզ ինչուան հիմա չի սիրեցի, կամ խիստ քիչ սիրեցի. չեմ ուզեր մեռնիլ այսպէս, կաղաչեմ, քիչ մըն ալ ժամանակ տուր ինծի որ մեռնելէս առաջ սիրեմ զքեզ. ուստի փոխէ սիրտս, խոցէ, բորբոքէ քու սուրբ սիրովդ. լսէ աղաչանացս այն սիրոյդ համար որ քեզի ինծի համար մեռնիլ տուաւ։ Ես կը սիրեմ զքեզ բոլոր հոգւովս. քու սիրովդ վառուած է հոգիս. մի թողուր որ մէյմըն ալ զքեզ կորսընցընեմ։ Սուրբ յարատեւութիւն տուր ինծի, քու սէրդ տուր ինծի։ Սրբուհիդ Մարիամ, ապաւէն իմ և մայր, բարեխօս եղիր ինծի համար։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Պատրաստ եղիք։ Չըսեր տէրն մեր թէ երբոր մահերնիդ կու գայ՝ այն ատեն պատրաստուեցէք, այլ թէ պատրաստ գտնուեցէք։ Երբոր մահը կու գայ՝ այն մրրկին ու պղտորութեանը ժամանակ գրեթէ անկարելի է տակնուվրայ եղած խղճմտանք մը շտկել. խելքը այսպէս կը սորվեցընէ. Աստուած ալ կըսպառնայ այսպէս ըսելով թէ այն ատեն ինքը թողութիւն տալու չի գար, այլ վրէժ խնդրելու իրեն շնորհաց դէմ եղած նախատինքներուն։ Վրէժխնդրութիւնն իմս է, և ես պիտի հատուցանեմ[1]։ Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս թէ արժանաւոր պատիժ է այնպիսւոյն ուզած ատենը չի կարենալ փրկուիլ՝ երբոր կրնար և չուզեց ինքը զինքը ուղղել։ Կրնայ մէկն ըսել թէ ով գիտէ, կարելի է թէ նոյն ատենը դառնամ ու փրկուիմ։ Բայց կրնա՞ս ինքը զինքդ հորը նետել ըսելով թէ ով գիտէ կարելի է թէ մէջն իյնալով ողջ մնամ ու չի մեռնիմ։ Ով տէր Աստուած, այս ինչ բան է. մեղքն այս ինչպէս զմարդ կը կուրցընէ և խելքն ալ կորսընցընել կու տայ։ Մարդիկ մարմնաւոր բաներու վրայ խօսք ըլլայ նէ՝ խելացի խելացի կը խօսին, երբոր հոգւոյ ըլլայ՝ խենթի պէս կը խօսին։

1 Իմ է վրէժխնդրութիւն, և ես հատուցից։ Հռովմ. ժբ. 19։

Ո՛վ սիրելի եղբայր, ո՛վ գիտէ թէ աս բանս որ կը կարդաս նէ՝ քեզի Աստուծոյ վերջի ազդարարութիւնն ըլլայ։ Զի դանդաղինք մահուան պատրաստուելու, որ չըլլայ թէ յանկարծակի գայ պաշարէ զմեզ։ Սուրբն Օգոստինոս կըսէ թէ Աստուած ասոր օրերնիս մեզմէ կը ծածկէ, որպէս զի ամէն օր մեռնելու արթուն և պատրաստ ըլլանք։ Սուրբն Պօղոս կըզգուշացընէ զմեզ ըսելով թէ ահուդողով իւրաքանչիւր ձեր փրկութեան ետևէն եղիք[1]։ Կը պատմէ սուրբն Անտոնինոս թէ Սիկիլիոյ թագաւորներէն մէկը ուզելով հասկըցընել մէկու մը թէ ինքը ինչ վախով կեցած էր թագաւորական աթոռը՝ սեղան նստեցուց զանիկայ, գլխուն վրայ բարակ թելէ թուր մը կախած՝ անանկ որ մարդը վախէն հազիւ մէկ քանի պատառ կրցաւ ուտել։ Մենք ամէնքս ալ այս վտանգին մէջն ենք, որովհետև ամէն վայրկեան ալ կրնայ մեր գլխուն վրայ ինկնալ մահուան սուրը՝ ուսկից կախուած է մեր յաւիտենական փրըկութիւնը։

Բանը յաւիտենականութեան վրայ է։ Թէ որ փայտը, կըսէ Ժողովող, դէպ 'ի հարաւ կամ դէպ 'ի հիւսիս ինկնայ, ուր որ ինկնայ հոն կը մնայ[2]։ Եթէ մահը հասնի և զմեզ Աստուծոյ շնորհացը մէջ գտնէ, այն ինչ ուրախութիւն է մեր հոգւոյն. վասն զի ան ատեն կրնայ ըսել թէ ամէն բան ապահովցուցի, ալ զԱստուած չեմ կորսընցըներ, յաւիտեան երջանիկ պիտի ըլլամ. բայց թէ որ մահը զհոգին մեղքի մէջ գտնէ, այն ինչ յուսահատութիւն է, ուրեմն մոլորեցայ և յաւիտեան այս մոլորութեանս դեղ պիտի չըլլայ։ Այս վախս էր որ սպանիացւոց առաքելոյն, պատուական հօրն Աւիլայ ըսել տուաւ, որ երբոր իրեն ըսին թէ մահը հասաւ, երանի թէ, ըսաւ, քիչ մը ժամանակ ալ ունենայի որպէս զի մեռնելու պատրաստուէի։ Այս վախն էր որ հօրն Ագաթոնի այնչափ տարի ապաշխարութենէն ետև մահուան ատենը ըսել տուաւ թէ արդեօք ինչ պիտի ըլլամ, ո՞վ գիտէ Աստուծոյ դա-

1 Ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործեցէք։ Փիլ. Բ. 12։

2 Եթէ անկցի փայտն 'ի հարաւ կամ 'ի կողմն հիւսիսոյ, ուր անկցի փայտն անդ կացցէ։ Ժող. ԺԱ. 3։

տաստանը։ Սուրբ հայրն Արսէն ալ մահուան առենը կը դողար. աշակերտները հարցուցին, թէ ինչու այդչափ կը վախնաս. ըսաւ, որդեակք այս վախը ինծի նոր բան չէ, բոլոր կենացս մէջ ունէի։ Թողունք զուրիշները, երանելին Յոբ ալ կը դողար ըսելով. զի՞նչ գործեցից, ի՞նչ պիտի ընեմ, երբոր Աստուած զիս դատելու գայ և երբոր հարցընէ ի՞նչ պատասխան պիտի տամ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՜հ Աստուած իմ, ո՞վ է որ զիս քեզմէ աւելի սիրեր է, և ես զո՞վ քեզմէ աւելի անարգեր ու վշտացուցեր եմ։ Ով սուրբ արիւն և սուրբ վէրք Յիսուսի, դուք էք միայն իմ յոյսս։ Հայր երկնաւոր, իմ մեղքերուս մի նայիր, այլ նայէ փրկչիս վէրքերուն. դարձուր աչուըներդ քու սիրելի միածնիդ վրայ որ ինծի համար կը մեռնի ցաւագին, և կը խնդրէ քեզմէ որ ինծի թողութիւն տաս։ Կը ցաւիմ ու կը զղջամ, ով իմ ստեղծողս, զքեզ անարգելուս համար. և չի կայ բան մը որ այսպէս սրտիս ցաւ ըլլայ։ Դուն զիս ստեղծեցիր որ զքեզ սիրեմ, իսկ ես այնպէս ապրեցայ որպէս թէ ըզքեզ վշտացընելու համար ստեղծած ըլլայիր զիս։ Վասն սիրոյ միածնիդ Յիսուսի Քրիստոսի թող ինծի իմ մեղքերս և շնորհք տուր զքեզ սիրելու։ Ինչուան հիմա կամացդ դէմ կեցայ, ասկից ետև մէյմըն ալ չեմ ուզեր քեզի դէմ կենալ, և կը փափաքիմ ինչ որ ինծի կը հրամես սիրով կատարել։ Արդ դու կուզես որ զզուիմ զանիմ քեզի դէմ ըրած մեղքերէս, ես ալ կը զարշիմ 'ի բոլոր սրտէ. կուզես որ առաջադրեմ մէյմըն ալ ըզքեզ չվշտացընելու, ահա ես ալ կառաջադրեմ հազար անգամ կեանքս կորսընցընել քան թէ քու շնորհքէդ ելլել։ Կը հրամայես որ զքեզ ամենայն սրտէ սիրեմ, այո այո ես ալ 'ի բոլոր սրտէ կը սիրեմ զքեզ, և բաց 'ի քեզմէ ուրիշ բան սիրել չեմ ուզեր. ասկէ ետև դու միայն ես իմ մէկ հատիկ սիրելիս, իմ մի միայն սէրս։ Քեզմէ սուրբ յարատեւութիւն կը խնդրեմ և կը յուսամ։ Յիսուսի միածնիդ սիրոյն համար շնորհէ ինծի որ քեզի հաւատարիմ ըլլամ, ու ես ալ ըսեմ սրբոյն Բոնավենդուրայի հետ թէ մի է իմ սիրելիս, մէկ հատիկ է իմ սէրս։ Չէ, չեմ ուզեր որ մնացած կեանքս զքեզ վշտացընելու գործածեմ, այլ կուզեմ որ միայն

մեղքերս լալու և զքեզ սիրելու գործածեմ: Մարիամ մայր իմ, դու որ բարեխօսութիւն կընես անոնց համար որոնք զիրենք քեզի կը յանձնեն, ինծի համար ալ բարեխօս եղիր առ Յիսուս:

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Զ.

### ՄԵՂԱՒՈՐԻՆ ՄԱՀԸ

*Խաղաղութիւն պիտի փնտռէ ու պիտի չի գտնայ: Վայ վայի վրայ պիտի գայ և գոյժ գուժի վրայ* [1].

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Մեղաւորները հիմակուհիմայ կը հեռացընեն իրենցմէ մահուան յիշատակն ու մտածութիւնը, և այսպէս խաղաղութիւն գտնել կուզեն, թէպէտ և բնաւ չեն գտնար մեղաց մէջ ապրելովնին: Բայց երբոր մահուան նեղ ժամանակը վրայ կը հասնի որ յաւիտենականութիւն պիտի մտնեն, խաղաղութիւն պիտի փընտռեն և պիտի չգտնեն. չեն կրնար այն ատենը իրենց չար խղճմտանքին տանջանքէն փախուստ տալ: Խաղաղութիւն պիտի փնտռեն. բայց ի՞նչ խաղաղութիւն կրնայ գտնալ այն հոգին, որ մեղքերով ծանրացած է, որոնք մէյմէկ իժի պէս զինքը կը խածատեն: Ի՞նչ խաղաղութիւն պիտի գտնայ, երբոր գիտէ թէ մէկ քանի րոպէէն Քրիստոսի դատաւորին առեանը պիտի երևնայ, որուն ինչուան այն ատենը օրէնքը և բարեկամութիւնն արհամարհեր էր: Ուստի վայ վայի վրայ պիտի գայ, գոյժ գուժի վրայ: Մահուանն առած լուրը, բոլոր աշխարքիս բաներէն թողունելու մտմըտուքը, խղճմտանքին խայթերը, կորսընցուցած ժամանակը, ատեն չունալը, Աստուծոյ անաչառ դատաս-

1 Խնդրեսցէ զխաղաղութիւն և ոչ գտանիցէ: Վայ 'ի վայի վերայ եկեսցէ և գոյժ 'ի գուժի: Եզեկ. Է. 25. 26:

տանը, յաւիտենական թշուառութիւնը որ մեղաւորներուն կըսպասէ, այս ամէնը սոսկալի ալէկոծութիւն մը կը յարուցանեն որ խելքը միտքը կը շփոթէ, յուսահատութիւն կը բերէ, և այնպէս տակնուվրայ եղած և անյոյս՝ հոգեվարութենէն կանցնի անդիի աշխարհքը։

Արդարն ալ մեծ վարձքով մարդկային յուսոյն հակառակ յԱստուած յուսացաւ, Աստուծոյ խոստմունքին հաւատալով, որ անյոյս բանին յուսով հաւատաց[1]։ Իսկ մեղաւորք իրենց չարաչար վարքովը և ստութեամբ 'ի կործանումն իւրեանց կը յուսան. չէ թէ միայն ընդդէմ յուսոյ, այլ նաև ընդդէմ հաւատոյ՝ Աստուծոյ խըստասիրտ եղողներուն դէմ ըրած սպառնալիքներն արհամարհելով։ Իրենք ալ չար մահուանէ կը վախնան, այլ չեն վախնար չարաչար վարք ունենալէն. բայց ո՞վ կապահովցընէ զիրենք թէ յանկարծակի մէկ կայծակով մը, մէկ պուտ մը բանով, մէկ արեան զեղմամբ մը պիտի չի մեռնին։ Մահուան ժամանակ՝ ատեն ալ ունենան դարձի գալու; ո՞վ խօսք կու տայ իրենց թէ իրաւցընէ կրնան դառնալ։ Սուրբն Օգոստինոս տասնուերկու տարի պատերազմելով իր անձին հետ կարող եղաւ իր վատթար սովորութեանցն յաղթել. իսկ մէկ հոգեվարք մը որ միշտ խառնակ խղճմտանքով ապրեր է՝ ցաւերու մէջ, գլուխը տակնուվրայ եղած, մահուան շփոթութեան ատենը ինչպէս կրնայ դիւրաւ ճշմարիտ դարձ ունենալ։ Ճշմարիտ դարձ կըսեմ, վասն զի այն ատեն հերիք չէ ըսելն ու խոստանալը, հապա պէտք է սրտանց ըսել ու խօսք տալ։ Ո՜հ տէր, ինչ վախի ու ահուդողի մէջ ընկած կըլլայ այն ողորմելի հիւանդը՝ որ անհոգ խղճմտանքով ապրեր է, երբոր կը տեսնայ զինքը մեղքերով ու դատապարտանքին վախովն ընկճած, դժոխքի և յաւիտենականութեան սարսափով պատած։ Այս մտմտուքները ինչ շփոթութեանց մէջ չեն ձգեր զինքը երբոր կը տեսնէ թէ գլուխն իրենը չէ, միտքը մթընցած, և մերձակայ մահուան ցաւերը վրան տիրած։ Կը խոստովանի, կը խոստանայ, կու լայ, Աստուծոյ մարդասիրութիւնը կը խնդրէ, բայց ըրածն առանց գիտնալու. և այնպիսի ալէկոծութեան

1 Որ յանյոյսն յուսով հաւատաց։ Հռովմ. Դ. 18։

մէջ, խղճմտանքի տանջանքով, ախուվախով կանցնի անցիլի աշխարհքը : Այնէկ կըսէ մատենագրին մէկը թէ հոգեվարք մեղաւորին աղօթքը, լացը, խոստմունքը, ապաշխարութիւնը կը նմանին անոր լացին ու խոստմունքին որ թշնամւոյն ձեռքն է ինկեր, ու թուրը վզին դրած կեանքը պիտի վերցընէ : Վայ անոր որ անկողին է ընկեր Աստուծոյ աչքէն ելած, և անկից կանցնի 'ի խորս յաւիտենականութեան :

### ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՑԱՆՔ

Ով վէրք Յիսուսի, իմ մէկ հատիկ յոյսս դուք էք : Ես կը յուսահատէի մեղացս թողութիւն գտնելու և յաւիտենական փրկութեան հասնելու թէ որ ձեր վրայ չի նայէի, որ գթութեան և շնորհաց աղբիւր էք, ուսկից Աստուած մը իր բոլոր արիւնը թափեց իմ հոգիս ամէն մեղքերէն լուալու համար : Ուստի կը համբուրեմ զձեզ երկրպագութեամբ, ով սուրբ վէրք Յիսուսի, և ձեզի կապաւինիմ. կը զգուիմ հազար անգամ և կը նզովեմ այն անարժան հեշտութիւնները և հաճոյքը, որոնցմով իմ փրկիչս վշտացուցի, և թշուառաբար իր բարեկամութիւնը կորսնցուցի : Ձեր վրայ նայելով յոյսս կը նորոգեմ, և դէպ 'ի ձեզի կը դարձնեմ իմ ամէն իղձերս և յօժարութիւններս : Ով սիրելիդ իմ Յիսուս, դու արժանի ես որ ամէնքը սիրեն զքեզ, և բոլոր սրտանց սիրեն զքեզ. բայց ես զքեզ չափէն էւել զառնացուցի, քու սէրդ անարգեցի, և այսու ամենայնիւ դուն ինծի համբերեցիր, և այնչափ մարդասիրութեամբ զիս թողութիւն առնելու կանչեցիր : Ահ Յիսուս փրկիչ իմ, թող մի տար ինծի որ ալ ասկէ ետև զքեզ վշտացընեմ, ու ինքզինքս դատապարտեմ : Ով սէր, դժոխքին մէջ այն ինչ ցաւն պատիժ պիտի ըլլայ ինծի, տեսնել քու արիւնդ, և այնչափ ողորմութիւններդ՝ որ իմ վրաս թափեցուցիր : Արդ կը սիրեմ զքեզ և կուզեմ սիրել միշտ, տուր յարատեւութիւն ինծի : Հեռացուր սրտէս այն ամէն սէրը որ քեզի համար չէ . և տնկէ սրտիս մէջ ճշմարիտ փափաք և առաջադրութիւն ասկից ետև զքեզ միայն սիրելու, ով իմ ծայրագոյն բարիս :

Մարիամ, մայր ողորմութեան, առ Աստուած ձգէ զիս, և իրեն տուր բոլորովին քանի որ չեմ մեռած :

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Տառապեալ մեղաւոր հոգեվարքին վայն ու տագնապը չէ թէ մէկ, այլ շատ և խիստ կըլլան։ Մէկ կողմանէ սատանաները զինքը կը շարչըրկեն, վասն զի այս սոսկալի թշնամիները մահուան ատեն բոլոր ուժերնին կը թափեն, որպէս զի այն հոգին որ աշխարքէս ելլալու վրայ է՝ կարող ըլլան կորսընցընել։ Գիտեն որ քիչ ատեն կը մնայ իրենց զանիկայ վաստըկելու, և թէ որ մէյմը այն ատեն զինքը ձեռքերնէն հանեն յաւիտեան կորսընցուցած կըլլան։ Ջեր քով եկաւ, կըսէ սուրբ գիրքը, սատանան բարկութեամբ լցուած, վասն զի գիտէ որ քիչ ժամանակ ունի [1]։ Եւ մէկ հատ մըն ալ չըլլար նոյն ժամանակը փորձիչ սատանան՝ այլ անհամար, որ հոգեվարին գլուխը թափած զինքը կորսընցընելու կը նային։ Մէկը կըսէ թէ մի վախնար կառողջանաս. մէկալը թէ՝ դուն որ այնչափ ատեն Աստուծոյ ձայնին ականջ չի կախեցիր ինչ կարծես հիմա ողորմի՞ պիտի քեզի. ուրիշ մը թէ՝ ի՞նչ գեղ պիտի կարենաս ընել հիմա այնչափ չարեացդ, այնչափ ուրիշներուն անունը կոտրելուդ. ուրիշ մըն ալ թէ՝ չե՞ս գիտեր որ քու խոստովանանքներդ առանց ճշմարիտ ցաւոց և առաջադրութեան բոլոր փուճը ելան, հիմա ինչպէս անոնց ճար պիտի կրնաս ընել։

Մէկալ կողմանէ կը տեսնէ հոգեվարը որ իր մեղքերը չորս դին առեր են։ Մեղաւոր մարդուն չարիքները, կըսէ սաղմոսը, զինքը կորսուելու կորսան [2]։ Այս ամէն մեղքերը մէյմէկ գահճի պէս պիտի կապեն զինքը, կըսէ սուրբն Բեռնարդոս, ու պիտի ըսեն՝ մենք քու գործքերդ ենք, քեզմէ չենք բաժնուիր, մէկտեղ կու գանք անդին քեզի հետ և յաւիտենից դատաւորին առջևը կելլենք։ Այն ատեն հոգեվարը կուզէ անոնց ձեռքէն խալըսիլ, բայց անոնցմէ խալըսելու համար պէտք էր որ զանոնք ատեր ու սրտանց առ Աստուած

1 Անկաւ բանսարկուն առ ձեզ, որ ունի զցասումն բազում, և կայցէ առ սակաւ մի ժամանակս։ Յայտն. ԺԲ. 12։

2 Զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն 'ի կործանում։ Սաղմ. ՃԼԹ. 12։

դառնար. և սակայն միտքը մթընցած, սիրտը խստացած կըլլայ: Խիստ սիրտը, կըսէ Սիրաք, իրեն չարեաց ցաւերովը կը ծանրանայ վերջի վայրկեանին. և ով որ տագնապ կը սիրէ, անոր մէջ կը կորսուի[1]: Սուրբն Բեռնարդոս կըսէ թէ այն սիրտն որ բոլոր կեանքը մէջ չարեօք խստացեր է, կուզէ դատապարտութեան վիճակէն ելլալ, բայց չի կրնար անկէ խալըսիլ. և իր չարեաց ձեռքը կաշկանդած, նոյն վիճակին մէջ աշխըրքէն կելլէ: Ինչուան այն ատեն մեղքը սիրել ուզելուն, յաւիտենից դատապարտութեան վտանգն ալ սիրեր է, ուստի արդարապէս թող կու տայ Աստուած որ այն ատենն ալ նոյն վտանգին մէջ կորսուի որուն մէջ մինչև 'ի մահ ապրիլ ուզեր էր: Սուրբն Օգոստինոս կըսէ թէ այն՝ որ ինքը զմեղքը չէ թողուցեր, այլ մեղքը զինքն է թողեր՝ մահուան ատեն շատ դժուարաւ կը դառնի անկից ինչպէս որ պէտք է, վասն զի այն ատեն ինչ որ կընէ նէ բռնի կընէ:

Ուրեմն բանը գէշ է խստասիրտ մեղաւորին որ Աստուծոյ ազդարարութեանցը դէմ կը կենայ: Անոր սիրտը քարի պէս սալանայ պիտի և դարբնաց սալին պէս անշարժ հաստատուն պիտի կենայ[2]: Այն ապերախտը փոխանակ կակըղնալու և Աստուծոյ ձայնին անգիք տալու աւելի խստացեր է, ինչպէս սալը ուռամբ զարնելով կը պնդանայ: Իր պատիժը այն է որ մահուան ատենն ալ այնպէս պիտի գտնուի, թէպէտ և յաւիտենականութեան անցնելու վրայ ըլլայ: Մեղաւորները, կըսէ Աստուած, արարածոց սիրոյն համար իրենց կռնակն ինծի դարձուցին և ոչ երեսնին, իրենց նեղութեան ատեն պիտի ըսեն՝ արի և զմեզ փրկէ: Բայց ու՞ր են քու աստուածներդ որ քեզի համար կանգնեցիր. թող գան ու նեղութեանդ ատեն թող փրկեն զքեզ[3]: Ողորմելիները մահուան ատեն առ Աստուած

1 Սիրտ խիստ ծանրասցի ցաւօք. և որ սիրէ զվտանգ, 'ի նմին կորիցէ: Սիր. Գ. 29:

2 Սիրտ նորա սառուցեալ է իբրև զվէմ, և հաստատեալ կայ իբրև զսալ դարբնաց: Յոբ. ԽԱ. 15:

3 Դարձուցին յիս զթիկունս և ոչ զերեսս իւրեանց, և 'ի ժամանակի չարեաց իւրեանց ասասցեն՝ արի և փրկեա զմեզ: Եւ ու՞ր են աստուածքն քո զոր արարեր քեզ. յարիցեն և փրկեսցեն զքեզ 'ի ժամանակի չարեաց քոց: Երեմ. Բ. 27:

սիրտի զինեն. բայց Աստուած սիրտի ըսէ խրենց, Հի-մա ինծի՞ կու գաք, սպասաւորները ձեզի կանչեցէք որ գան ու օգնեն ձեզի, վասն զի անոնք էին ձեր աս-տուածները։ Այսպէս սիրտի ըսէ Աստուած, վասն զի Թէպէտեւ ալ Աստուած կը դիմեն, բայց առանց ճշմա-րիտ զղջման միայն օգնութեան։ Սուրբն Հերոնիմոս կըսէ Թէ սովոր գիտեմ, փորձով ալ տեսեր եմ որ բարի վախճան չունենար՝ ով որ բոլոր կեանքը 'ի չարիս մա-շեր է։

## ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Սիրելի փրկիչ իմ, օգնէ ինծի, զիս երեսէ մի ձգեր. կը տեսնեմ որ հոգիս բոլոր վիրաւորուած է մեղօք, կիրքերս վրաս յաղթեցեր են, վատթար սովորութիւնք զիս կը նեղեն, ոտքդ կինկնամ, ողորմէ ինծի և խա-լըսէ զիս այնչափ չարեաց ձեռքէն. 'ի քեզ տէր յու-սացայ մի ամաչեցից յաւիտեան։ Մի թողուր որ քեզի ապաւինած հոգիս կորսուի. մի մատներ գազանաց այն անձը որ խոստովանող կըլլայ քեզի։ Ցաւ կը ցա-ւիմ որ զքեզ վշտացուցեր եմ, անհուն բարիդ. գէշ ըրեր եմ, չեմ ուրանար. ուստի ամենայն կերպով զիս շտկել կուզեմ. բայց թէ որ դուն ինծի չօգնես քու շնոր-հօքդ, կորսուեր գացեր եմ։ Ընդունէ, ով Յիսուս, այս անօրէն ապստամբը, որ զքեզ այնչափ անարգեր է, յիշէ տէր զի քու արեանդ և կենացդ գինն եմ. սա-տի քու չարչարանացդ և մահուանդ արդեանցը ա-զիս քու թելդ տուր, և տուր ինծի սուրբ յարատեւու-թիւն։ Ես արդէն կորսուած էի, դուն զիս կանչեցիր. ալ չեմ ուզեր դէմ կենալ, զիս քեզի կը նուիրեմ, քու սիրոյդ զիս կապէ և մի թող տար որ մէյմըն ալ ես զիս կորսնցընեմ նորէն քու շնորհքդ կորսնցընելով։ Կաղաչեմ, Յիսուս իմ, թող մի տար։ Թագուհի մայր իմ տիրամայր Մարիամ, դուն ալ մի թողուր զիս, խնդրէ ինծի համար աւելի մահ և հազար մահ, քան թէ մէյմըն ալ նորէն կորսնցընեմ քու միածնիդ շը-նորհքը։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Այս ինչ սոսկալի բան է. Աստուած անդադար մե-ղաւորաց չարաչար մահ կըսպառնայ, քանզի թէ՝ ըս-լայ պիտի որ պիտի պաղատիք ինծի և ես պիտի չլսեմ ձեզի[1]: Ամբարշտին յոյսն ինչ է որ հաստատուն կեցեր է. ինչ վստահացեր է առ Աստուած թէ կրնայ աղօթել, կամ խնդրուածոցը կը լսէ Աստուած... կամ թէ երբոր առ Աստուած աղաղակէ, Աստուած ալ իրեն պիտի լսէ[2]: Անկէ ետև ձեր կորստեանը վրայ պիտի ծիծաղիմ[3]: Աստուծոյ ծիծաղիլը, կըսէ սուրբն Գրիգոր, ողորմիլ չուզելն է: Վրէժխնդրութեան օրը պիտի հատուցա-նեմ, կըսէ Աստուած, այն ժամանակը երբոր անոնց ոտքը սխալի[4]: Եւ այսպէս ուրիշ շատ տեղեր ալ նոյն սպառնալիքը կընէ Աստուած: Բայց մեղաւորները ան ինչպէս ապահով և հանգիստ կեցեր են, իբր թէ Աս-տուած իրենց հաւաստեաւ խոստացած ըլլայ որ մա-հուան ատենին թողութիւն և արքայութիւն պիտի տայ: Ճշմարիտ է թէ երբ ալ մեղաւորները դառնան՝ Աստուած խոստացեր է իրենց թողութիւն տալ. բայց չըսաւ ալ թէ մեղաւորները իրենց մահուան ատենը պիտի դառնան. Հապա ընդ հակառակն շատ ան-գամ ըսեր է թէ ով որ մեղքի մէջ կապրի, մեղքի մէջ պիտի մեռնի: Ձեր մեղքին մէջ պիտի մեռ-նիք[5]: Եւ կըսէ դարձեալ՝ թէ մեռնելու օրերնիդ պի-տի փնտռէք զիս ու պիտի չի գտնէք[6]: Ուրեմն պէտք է որ զԱստուած փնտռենք երբոր կրնայ գտնուիլ.

1 Իցէ զի կարդայցէք առ իս, և ես ոչ լուիցեմ ձեզ: Առակ. Ա. 19:

2 Եւ զինչ է յոյս ամբարշտի զի յեցեալ կայցէ վստահա-ցեալ 'ի տէր թէ աղօթիցէ, կամ թէ խնդրուածոց նորա լուիցէ տէր... կամ 'ի կարդալ նորա առ նա լուիցէ նմա: Յոբ. ԻԷ. 8. 9. 10:

3 Այսուհետև ես ծիծաղեցայց զկորստեամբ ձերով: Առակ. Ա. 26:

4 Յաւուր վրէժխնդրութեան հատուցից, 'ի ժամանակի յո-րում սխալեսցի ոտն նոցա: Բ. Օրէն. ԼԲ. 35:

5 Ի մեղս ձեր մեռանիցիք... մեռանիցիք 'ի մեղս ձեր: Յովհ. Ը. 21. 24:

6 Յաւուր մահու խնդրիցէք զիս և ոչ գտանիցէք: Յովհ. Է. 24:

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՛հ Աստուած իմ, ո՞վ կրնար այնչափ համբերել որչափ որ դուն երկայնամիտ եղար ինծի։ Թէ որ անիրաւ չըլլար քու բարութիւնդ, ես Թողութենէ յոյս կը կտրէի. բայց իմ բանս այն Աստուծոյն հետ է որ ինծի Թողութիւն տալու և զիս փրկելու համար մեռաւ։ Դուն ինծի կը հրամայես որ յոյս ունենամ, ես ալ յուսալ կուզեմ։ Թէ որ իմ մեղքերս զիս կը վախցընեն ու կը դատապարտեն, քու արդիւնքդ և քու խոստմունքդ զիս կը քաջալերեն։ Դու կեանք շնորհաց խոստացար առ քեզ դարձողներուն ըսելով Թէ դարձիք՝ և կեցցէք[1]։ Ողջագուրել խոստացար առ քեզ դարձողը. դու ըսիր՝ ինծի դարձիք և ես ալ ձեզի կը դառնամ[2]։ Ըսիր Թէ ով որ կը խոնարհի ու կը զղջայ, չեմ արհամարհեր զինքը[3]։ Արդ ահա ինքս, ես առ քեզ կը դառնամ, առ քեզ կը դիմեմ, զիս բիւր գթութեան արժանի կը սեպեմ և կը ցաւիմ կը զղջամ զքեզ վշտացընելուս, և հաստատուն խօսք կու տամ, որ չեմ ուզեր մէկ մ'ալ զքեզ դառնացընել, և կուզեմ յաւիտեան զքեզ սիրել։ Հապա մի՛ Թողուր որ ես ապերախտաբար ապրիմ քու այնչափ բարերարութեանդ առջեւ։ Հայր երկնաւոր, Յիսուսի հնազանդութեան արդեանցը համար, որ քեզի հնազանդելու համար մեռաւ, շնորհէ որ ես ալ հնազանդիմ քու կամացդ մինչեւ 'ի մահ։ Կը սիրեմ զքեզ, ով ծայրագոյն բարութիւն, և քեզի ունեցած սիրոյս համար կուզեմ յամենայնի հնազանդիլ քեզի. տուր ինծի սուրբ յարատեւութիւն, տուր ինծի քու սէրդ, ա՛լ ուրիշ բան չեմ ուզեր։ Մարիամ, մայր իմ տիրամայր, ինծի համար միջնորդ եղիր։

1 Դարձարուք և կեցջիք։ Եզեկ. ԺԸ. 32։

2 Դարձարուք առ իս, և ես դառնամ առ ձեզ։ Զաք. Ա. 3։

3 Զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ։ Սաղմ. Ծ. 18։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Է·

## ԱՆՀՈԳ ՀՈԳԵՎԱՐՔԻ ՄԸ ԶԳԱԾՄՈՒՆՔԸ ՈՐ ՔԻՉ Է ՄՏԱԾԵՐ ԻՐ ՄԱՀԸ

*Կարգի դիր տունդ, վասն զի պիտի մեռնիս և պիտի չապրիս [1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

*Երեւակայէ մտքովդ թէ հիւանդի մը քովէն կերթաս որ մէկ երկու ժամէն կեանքը պիտի լմընցընէ։ Խեղճ հիւանդը նայէ ինչպէս ցաւերով պաշարուած է. կը մարմրի, կուրծքը կը նեղուի, շնչառութիւնը կը պակսի, քրտինքը պաղ, գլուխն իրենը չէ, շարժիլ չի կրնար, բան չի հասկընար, և քիչ կը խօսի։ Ամենէն ողորմելի բանն ան է որ արդէն մահը մօտեցեր է, հոգին մտմտալու տեղ ու յաւիտենականութեան տալու հաշիւը պատրաստելու՝ ուրիշ բան չի մտածեր՝ բայց միայն բժիշկ դեղ կը փնտռէ մահաբեր հիւանդութենէն ու ցաւերէն խալըսելու համար։ Սուրբն Լաւրենտիոս Ցուստինեան կըսէ թէ այսպիսի հոգեվարքները ուրիշ բան մտածելու բաւական չեն՝ բայց եթէ իրենք զիրենք։ Գոնէ ազգականներն ու բարեկամները հասկըցընէին իրեն թէ վտանգաւոր վիճակի մէջ է. չէ, անոնք ալ չեն համարձակիր մահուան լուրը տալ անոր, և յորդորել որ սուրբ խորհուրդներն առնու. ամէնքն ալ կը քաշուին այս բանս ըսելու՝ որպէս զի սիրտը չի կոտրեն։ Ով Աստուած իմ, հիմակուընէ շնորհակալ կըլլամ քեզի, որ մահուանս ատենն իմ կարգիս սիրելի եղբայրները քովս պիտի ժողվես, որոնք այն ատեն ուրիշ շահ չեն սպասեր ինծմէ, բայց եթէ իմ յաւիտենական փրկութիւնս, և ամէնքն ալ ինծի պիտի օգնեն աղէկ մեռնելու։*

1 Հրաման տուր վասն տան քո, զի մեռանիս և ոչ կեաս։ Ես. ԼԸ. 1։

Բայց թէ և այն հիւանդին չյիշեցընեն քովինները իրեն մօտալուտ մահը, սակայն ինքը տեսնելով որ տնեցիք տակնուվրայ եղեր են, բժիշկներ ետնէ ետև կու գան, դեղ չի մնար որ իրարու վրայ չի տան մէկ-մէկէ սաստիկ, խեղճ հիւանդը կը շուարի կը շփոթի, մէկալ դիէն վախն ու խղճմտանքին խայթը և յուսահատութիւնը կը կոխեն, կըսկսի ինքն իրեն ըսել. ա՜հ, ով գիտէ, վախեմ որ օրերս լմընցեր է, բանս բուսեր է, վախճանս հասեր է։ Իսկ երբոր մեռնելու լուրն ալ առնէ նէ՝ ա՜լ սիրտն ի՞նչ կըլլայ, ի՞նչ կըլլայ երբոր իրեն ըսեն թէ ով պարոն, քու հիւանդութիւնդ մահաբեր է, պէտք է որ վերջին խորհուրդներն առնես, դքեզ Աստուծոյ հետ միացընես, և ելլաս երթաս մնաս բարով ըսելով աշխարհիս։ Ի՞նչ, աշխարհիս մնաս բարով ըսեմ. ի՞նչ, ամէն բանս պիտի թողնեմ, տունս տեղս, ազգականներս, բարեկամներս, անոնց կենակցութիւնը, խաղերս, զբօսանքներս պիտի ձգեմ ու երթամ։ — Հրամեր ես, ամէն բան պիտի թողնես. արդէն նօտարը եկեր է կը գրէ քու բերնէդ — այս կը թողում, այն կը թողում։ Իսկ հետս ի՞նչ պիտի տանիմ։ — Ուրիշ բան չէ, բայց միայն քուրջի մը կտոր, որ վրադ պիտի ձգեն, և գերեզման անով պիտի իջնաս և քեզի հետ պիտի փտտի։

Այն ի՞նչ մաղձոտութիւն, այն ի՞նչ պղտորութիւն կը տիրէ այն ատեն հոգեվարքին վրայ, երբոր ալ կը տեսնէ ընտանեաց լացը, բարեկամաց լռութիւնը, որ քովը կեցեր են, և սիրտ չունին բան մը խօսելու։ Բայց իրեն աւելի նեղութիւն տուողները իրեն խղճմըտանաց խայթերը կըլլան, որ այն ալէկոծութեան ատեն աւելի սաստիկ կը զարնեն, ինչուան այն ատեն անկարգ կեանք անցընելուն համար, այնչափ Աստուծոյ ազդարարութիւններն ու առած լոյսերը, հոգևոր հարց խրատներն ու իրեն գրած առաջադրութիւնները կամ բնաւ 'ի գործ չի դնելուն, և կամ շուտով անփոյթ ըլլալուն համար։ Այն ատեն պիտի ըսէ. վա՜յ գլխուս, Աստուծմէ այնչափ լոյս ընդունեցայ և այնչափ ժամանակ ունեցայ խղճմտանքս շտկելու, ու բան մը չըրի. և ահա հիմա մահուան դուռն եմ հասեր։ Ի՞նչ դժուարութիւն ունէի այս այն առիթներէն փախչելու, այսպիսի այնպիսի բարեկամութիւններէն հեռանալու,

ստէպ ստէպ խոստովանելու։ Թէպէտև դժուարութիւն ալ ըլլար, պէտք էր որ հոգիս փրկելու համար ամէն բան ընէի, վասն զի անկէց մեծ բան չի կար։ Ո՛հ Թէ 'ի գործ դրած ըլլայի այն բարի առաջադրութիւնն որ ըրի, ու շարունակէի ինչպէս որ այն ատենը սկսայ, հիմա որչափ մխիթարեալ կըլլայի։ Բայց չըրի և հիմա ալ ընելու ժամանակ չի կայ։ Այսպիսի հոգեվարաց այս խորհուրդները, որ կեանքերնուն մէջ բոլոր անհոգ եղեր են խղճմտանքնին մաքուր պահելու, նմանն են դատապարտելոց խորհրդոցը որ դժոխքին մէջ կը ցաւին իրենց մեղացը վրայ, որ պատճառ եղան իրենց տանջանացը. բայց օգուտ չի կայ, ճար չի կայ։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Տէր, Թէ որ այս վայրկենիս ինծի ըսէին Թէ մահդ եկեր հասեր է, ահա ասոնք պիտի ըլլային իմ ցաւագին խորհուրդներս։ Շնորհակալ եմ որ ինծի այս լոյսը տուիր, և ժամանակ ալ կու տաս խելքս գլուխս ժողվելու։ Աստուած իմ, չէ՞ չեմ ուզեր ասկից ետև քեզմէ փախչելու։ Հիմա արժանապէս պէտք է որ վախնամ. վասն զի Թէ որ հիմա ալ զիս քեզի չի տամ ու դէմ կենամ, իրաւունք ունիս զիս երեսէ ձգելու։ Դուն ինծի սիրտ տուիր զքեզ սիրելու, ես զայն այսպէս չարաչար բանեցուցի։ Արարածները սիրեցի, և զքեզ չի սիրեցի, որ իմ արարիչս ես և փրկիչս, և ինծի համար կեանքդ տուիր։ Զքեզ փոխանակ սիրելու, քանի՛ քանի անգամ զքեզ վշտացուցեր եմ, անարգեր եմ, և քեզի կռնակ դարձուցեր եմ։ Ես ալ գիտէի՝ որ այն մեղքերով քու կամքիդ դէմ կը գործեմ, և սակայն գործեցի։ Յիսուս Աստուած իմ, կը զղջամ կը ցաւիմ այն ըրածներուս վրայ 'ի բոլոր սրտէ, և կուզեմ վարքս փոխել։ Աշխարքիս ամէն վայելքին մնաք բարով կըսեմ, որպէս զի զքեզ սիրեմ և քու հաճոյքդ ընեմ, Աստուած հոգւոյ իմոյ։ Դուն ինծի քու սիրոյդ մեծամեծ նշանները ցցուցիր, կը փափաքիմ որ ես ալ մեռնելէս առաջ իմ սիրոյս պզտի նշանները ցցընեմ։ Այս վայրկենէս սկսեալ սիրով յանձն կառնում ամէն հիւանդութիւն, խաչ, անարգանք, վիշտ, որ մարդիկ կրնան ինծի տալ, զօրացուր զիս որպէս զի կարող ըլլամ զանոնք սիրով քաշելու, և ամէնն ալ քու սիրոյդ համար կրելու։ Կը

տիրեմ զքեզ, անհուն բարիք, ամէն բանէ վեր, տուր ինծի աւելի սէր և յարատեւութիւն։ Մարիամ կոյս, յոյս իմ և ապաւէն, աղաչէ զՔրիստոս ինծի համար։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Ո՜վ թէ մահուան վայրկենին հաւատոյ ճշմարտութիւնները որչափ պայծառ կը ճանչցուին. բայց աւելի այն հոգեվարքները տանջելու համար՝ որ վատթար կեանք անցուցեր են, մանաւանդ թէ որ Աստուծոյ նուիրուած անձն ըլլայ, որ Աստուծոյ ծառայելու աւելի դիւրութիւն ունեցեր է, աւելի ժամանակ, աւելի օրինակ, և ներքին ազդարարութիւն։ Ո՜վ թէ այն ինչ նեղութիւն պիտի ըլլայ երբոր մտածէ թէ ես որ ուրիշներուն այնչափ խրատ կու տայի, անոնցմէ աւելի գէշ վարք ունեցայ. աշխարհքը թողուցի, բայց սիրտս աշխարհքիս փափկիցը, ունայնութեանը և սիրոյն կապած ապրեցայ։ Ի՛նչպէս խղճմտանքը պիտի զարնէ՝ երբոր մտածէ թէ այն լոյսն որ ինքն Աստուծմէ ունեցեր է, մէկ հեթանոս մըն ալ սուրբ կրնար ընել։ Ո՛րչափ պիտի տանջուի երբոր մտածէ թէ ուրիշներուն բարի գործերը վար կը զարնէր իբր թէ հոգւոյ տկարութիւններ ըլլան։ Աշխարհքիս քանի մը սկզբունքները կը գովէր, ինքնահաւանութեամբ կամ անձնասիրութեամբ ուրիշէն վար չէր մնար, նեղութիւն չէր ուզեր քաշել, և ամէն զբօսանաց ինքը զինքը կու տար։

Մեղաւորաց սրտին ուզածը, կըսէ սաղմոս, պիտի կորսուի[1]. մահուան ատեն մարդիկ որչափ պիտի փնտռեն այն ժամանակը որ հիմա կը կորսընցընեն։ Սուրբն Գրիգոր իրեն տրամախօսութեանց մէջ կը պատմէ թէ Քրիսանդիոս անունով հարուստ մարդ մը կար՝ բայց վարքը գէշ, ասիկայ մեռնելու ատեն տեսնելով որ սատանաները եկեր են զինքը տանելու՝ կաղաղակէր անոնց դէմ ըսելով. ատեն տուէք ինծի, ատեն տուէք ինչուան վաղը։ Անոնք ալ ըսին. ով խենթ, հիմա ատեն կը փնտռես որ այնչափ ժամանակ ունեցար ու կորսընցուցիր, և մեղք գործելու անցուցիր. ալ հիմա ատեն չի կայ։ Խեղճ ողորմելին ան-

1 Ցանկութիւն մեղաւորաց կորիցէ։ Սաղ. ՃԺԱ. 10։

խաչը կը պաղատէր օգնութիւն կուզէր։ Ներկայ էր հոն իր մէկ որդին ալ կրօնաւոր, Մաքսիմոս անունով, որուն կըսէր հոգեվարքը. որդեակ իմ, օգնէ ինծի, Մաքսիմոս որդեակ իմ, օգնէ ինծի։ Աչուըներն ալ կրակ բարձած կատաղութենէն անկողնին մէջ աստին անդին կը տապլտըկէր, և այսպէս յուսահատ կերպով հոգին փչեց թշուառաբար։

Վաս մեզի, այսպիսի խենթեր իրենց կենացը մէջ խենթութիւններն կընեն, բայց եաքը մեռնելու ատենն աչուըններին կը բացուի և կը խոստովանին թէ խենթ էին եղեր։ Բայց այն ատենն այդ խոստովանութիւնն օգուտ բանի չի գար, եթէ ոչ աւելի յուսահատութեան մէջ կը ձգէ, և ճար չեն կրնար ընել իրենց չարեացը, և այնպէս մեռնելով իրենց փրկութեանը վրայ շատ տարակոյս կը թողուն։ Ով եղբայր, հիմա որ այս բանս կը կարդաս, յուսամ որ դուն ալ այդ այդպէս է կըսես։ Ուրեմն թէ որ այսպէս է, շատ աւելի մեծ կըլլայ քու խենթութիւնդ ու թշուառութիւնդ երբ ողջութեանդ ատենն այս ճշմարտութիւններս գիտնալով ժամանակին ճար չընես։ Նոյն իսկ այս կարդացածդ ալ մահուանդ ատենն սրտիդ սուր մը կըլլայ ցաւոց։

Ուրեմն խելքդ գլուխդ ժողվէ, քանի որ ատենն ունիս այդպիսի սարսափելի մահուընէ փախչելու շուտով ճար ըրէ, մի սպասեր այն ատենին որ ալ յարմար չէ ճար ընելու։ Մի ըսեր գալ ամիս, գալ շաբաթ։ Ո՛վ գիտէ, թէ այս լոյսն որ Աստուած հիմա քեզի կուտայ իր ողորմութեանը, գուցէ վերջի լոյսն և վերջի կոչումն ըլլայ։ Շատ անխելքութիւն է չուզել մտածել մահը, որ անտարակուսելի է, և անկից կախուած է յաւիտենականութիւնը։ Բայց աւելի մեծ անմտութիւն է մահը մտածել, և մահուան չի պատրաստուիլ։ Հիմակուընէ ըրէ այն խորհրդածութիւնները, և այն առաջադրութիւնները որ այն ատենն պիտի ընես. հիմա ըրած նէ շահ ունիս, այն ատենն շահ մը չունիս. հիմա ընես նէ յոյս կայ փրկութեան, այն ատենը յուսահատած կըլլաս փրկութենէդ։ Հինգերորդ Կարոլոս կայսեր աւագանիներուն մէջէն մէկը հրաժարեցաւ՝ որ երթայ գինքը Աստուծոյ ծառայութեանը միայն տայ։ Հարցուց կայսրը իրեն թէ ինչո՞ւ կերթաս արքունեաց պատիւը թողլով. ան ալ պատասխան տուաւ թէ փըր-

ալ կըսէ թէ կանանցածին մարդը սակաւակեաց է և լի թշուառութեամբ։ Ահաւասիկ կը տեսնենք ինչ է մեր կեանքը. կարճ և բոլոր թշուառութիւններով, հիւանդութեամբք, ահուդողով և կռիւք լեցուն է։ Աշխարհասէրք՝ որ երկան կեանք կուզեն, կըսէ Սենեկա, ուրիշ ինչ բանի կը փափաքին՝ եթէ ոչ աւելի երկան վշտաց և նեղութեանց։ Սուրբն Օգոստինոս ալ կըսէ թէ ինչ է երկար ապրիլը, եթէ ոչ երկար տանջուիլ. վասն զի սրբոյն Ամբրոսիոսի ըսածին պէս, այս կեանքս մարդուս տրուեցաւ չէ թէ հանգչելու, հապա աշխատելու համար։ Ուստի աղէկ կըսէ Տերտուղիանոս թէ Աստուած երբոր մէկուն կարճ կեանք կու տայ՝ անոր տառապանքը կը կարճեցընէ։ Անոր համար թէպէտ մահը մարդուս 'ի պատիժ մեղաց տրուեցաւ, բայց աշխարհիս թշուառութիւններն այնչափ են, որ մահը, ինչպէս կըսէ սուրբն Ամբրոսիոս, աւելի դեղ է քան թէ պատիժ։ Աստուած ալ երջանիկ կը սեպէ զանոնք որ իրեն շնորհացը մէջ կը մեռնին, վասն զի նեղութենէ կազատին ու կերթան կը հանգչին[1]։

Այն նեղութիւններն որ մեղաւորները մեռնելու ատեն կը քաշեն՝ արդարները ամեններին չեն իմանար։ Արդարոց հոգիքը Աստուծոյ ձեռքն է. մահը անոնց չի կրնար մօտենալ[2]։ Այն վերջին կռիւը սուրբերն ամեններին չի խռովեր, ուր աշխարհասէրները կը սարսափին։ Սուրբերը չեն վշտանար այս երկրաւոր բարիքները թողնելու, վասն զի արդէն սրտերնին անոնց չէին կապած, և անդադար կը հառաչէին. Աստուած սրտի իմոյ, ու բաժին իմ Աստուած յաւիտեան։ Երանի կու տայ Պօղոս առաքեալ իրեն աշակերտելոցը՝ որ Քրիստոսի սիրոյն համար իրենց բարիքներէն մերկացեր էին, և կըսէ թէ ձեր ընչից յափշտակութիւնը սիրով ընդունեցաք, վասն զի գիտէք թէ երկինքը ձեզի համար աւելի լաւ ստացուածք ունիք[3]։ Ամեններն չեն

1 Երանի մեռելոց որք 'ի տէր ննջեցին.. քանզի հանգչեան յաշխատութենէ իւրեանց։ Յայտ. ԺԴ. 13։

2 Ոգիք արդարոց 'ի ձեռին Աստուծոյ են, և ոչ մերձեսցի 'ի նոսա մահ։ Իմաստ. Գ. 1։

3 Զյափշտակութիւն ընչից ձերոց խնդութեամբ ընկալարուք. քանզի գիտէք թէ լաւագոյն ևս ստացուածս ունիք անձանց յերկինս։ Եբր. Ժ. 34։

տրտմիր աշխարհիս փառքը պատիւը Թողնելու, վասն զի արդէն առաջուցմէ ձանձրացեր էին անոնցմէ, և ունայնութիւն ու ծուխ կը սեպէին. միայն իրենց փառք կը սեպէին զԱստուած սիրել ու Աստուծոյ սիրելի ըլլալ։ Չեն վշտանար ազգականներնին Թողնելու. վասն զի զանոնք միայն Աստուծոյ համար կը սիրէին. մեռնելու ատենը զանոնք այն երկնաւոր Հօրը կը յանձնեն, որ իրենցմէ աւելի կը սիրէ զանոնք. և անոնց փրկութիւնը մտածելով՝ արքայութեան մէջ աւելի օգնութիւն կրնան ընել անոնց քան թէ այս աշխարհիս վրայ. և անոնք որ բոլոր իրենց կենացը մէջ միշտ կըսէին թէ Աստուած իմ և ամենայն ինչ, եւ առաւել մահուան ատեն աւելի եռանդով և աւելի մխիթարութեամբ պիտի ըսեն նոյն բանը։

Ուստի ով՝որ զԱստուած սիրելով կը մեռնի, մահուան ցաւերը զինքն ամենևին չեն նեղեր. մանաւանդ թէ կը փափաքի անոնց՝ մտածելով որ քիչ ատենէն իր կեանքը լմննալու վրայ է, և շատ ժամանակ չի մնար Աստուծոյ համար կրելու, և ուրիշ առիթ չունի առ Աստուած իրեն սիրոյ նշանները ցցընելու. անոր համար յօժարութեամբ և անդորր սրտիւ կը մատուցանէ Աստուծոյ իրեն կենաց վերջին մնացորդներն ալ, և կը մխիթարուի որ իր մահուան զոհը կը միանայ Քրիստոսի պատարագին հետ որ իրեն համար մատոյց խաչին վրայէն իր երկնաւոր Հօրը։ Ու այսպէս ուրախութեամբ կը մեռնի ըսելով, խաղաղութեամբ յայսմ և ՚ի սոյն ննջեցից և հանգեայց։ Ո՛հ, ան ինչ հանգիստ մահ է Քրիստոսի գիրկը մեռնիլ որ մահուամբ չափ սիրեց զմեզ, և ինքը անարգ մահ յանձն առաւ, որպէս զի մեզի քաղցր ու երջանիկ մահ մը տայ։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով սիրելի Յիսուս իմ, որ ինծի քաղցր մահ մը տալու համար հաճեցար դառնակսկիծ մահ կրել Գողգոթայի վրայ, երբ պիտի ըլլայ որ զքեզ տեսնեմ։ Առաջին անգամն որ զքեզ պիտի տեսնեմ, իբր իմ դատաւորս պիտի տեսնեմ զքեզ նոյն տեղն ուր որ հոգիս աւանդեցի։ Ինչ պիտի ըսեմ քեզի ես այն ատեն. դուն ինչ պիտի ըսես ինծի։ Չեմ ուզեր սպասել՝ որ այն ատենը այդ բանը մտմտամ, հիմակուընէ կուզեմ այս

բանիս վրայ մտածել, ու ըսել. Ով սիրելի փրկիչ իմ, ուրեմն դու ես որ ինծի համար մեռար։ Ես զքեզ ատեն մը վշտացուցի, քեզի ապերախտ եղայ, և թողութեան արժանի չէի. բայց ետքը օգնականութեամբ քու շնորհացդ խելաբերեցայ, և անցած կեանքիս մէջ լացի ողբացի իմ մեղքերս և դուն ալ ինծի ներեցիր։ Ներէ ինծի նորէն հիմա ալ, որ ոտքդ եկեր եմ, և տուր ինծի ընդհանրական արձակումն ամենայն մեղացս։ Ես արժանի չէի նորէն զքեզ սիրելու, որովհետև քու սէրդ անարգեցի. բայց դուն քու ողորմութեամբդ չարժեցիր իմ սիրտս, որ եթէ զքեզ ըստ քու արդեանցդ չսիրեցի, գոնէ ամէն բանէ վեր սիրեցի, ամէն բան մէկդի թողլով՝ որպէս զի զքեզ հաճեցընեմ։ Արդ հիմայ ի՞նչ կըսես. կը տեսնեմ որ երկինքն ու քու արքայութիւնդ ժառանգելը՝ ինծի համար շատ մեծ բարիք մըն է, բայց չեմ վստահիր քեզմէ հեռու ապրելու, մանաւանդ հիմա որ ցցուցիր ինծի քու սիրելի և գեղեցիկ դէմքդ։ Ուստի արքայութիւնդ կը խնդրեմ քեզմէ ոչ այնչափ վայելելու համար որչափ որ զքեզ աղէկ սիրելու։ Քաւարան զիս դրկէ, որչափ ատեն որ կուզես. ես ալ չեմ ուզեր այն մաքրութեան հայրենիքը գալ և այն մաքուր հոգիներուն մէջ նստիլ այսպէս աղտոտ ու կեղտոտ՝ ինչպէս որ հիմա եմ։ Ղրկէ զիս որ երթամ մաքրուիմ, միայն թէ մի՛ ձգեր զիս երեսէդ յաւիտեան. հերիք է որ մէկ օր մը, երբոր կը հաճիս, զիս արքայութիւնդ կանչես, որ յաւիտեան երգեմ քու ողորմութիւններդ։ Հապա կաղաչեմ, ո՛վ դատաւորդ իմ սիրելի, հիմակուհիմա ձեռքդ վերցուր ու օրհնէ զիս. և ըսէ ինծի թէ ես քուկդ եմ, ու դուն ալ իմս պիտի ըլլաս միշտ։ Ահա հիմա կը բաժնուիմ քեզմէ, կրակը կերթամ, բայց գոհ սրտով կերթամ. վասն զի կերթամ որ զքեզ սիրեմ, փրկիչ իմ, Աստուած իմ, և ամենայն ինչ։ Այո, գոհ կերթամ. բայց գիտնաս որ որչափ ատեն քեզմէ հեռու մնամ՝ այնչափ ինծի ամէն պատիժը վեր է։ Կերթամ, տէր, կոչմանդ րոպէները համրելով։ Ողորմէ այս հոգիիս որ զքեզ կը սիրէ ՚ի բոլոր սրտէ, և կը փափաքի զքեզ տեսնել աւելի աղէկ սիրելու համար։

Այսպէս կը յուսամ, Յիսուս իմ, քեզի ըսել այն ատենը։ Ուստի հիմա կաղաչեմ, շնորհէ առուր ինծի,

այնպիսի կեանքը ունենալու, որ կարենամ ես ըստ ամենայն առանձին ալ ըսել։ Սուրբ յարատեւութիւն տուր ինծի, քու սէրդ տուր ինծի։ Օգնէ ինծի, Մարիամ տիրամայր, և աղաչէ զՅիսուս ինծի համար։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Պիտի ջնջէ Աստուած արցունքն անոնց աչքէն, և այլ մահ պիտի չըլլայ [1]։ Ուրեմն մանաւանդ ատեն Աստուած իրեն ծառայից արտասուքը պիտի ջնջէ, որ այս կենացս մէջ թափեցին, և կեանքերնին վշտօք, ահուդողով, դժոխքի դէմ վտանգօք կռուելով անցուցին։ Միայն ասով պիտի մխիթարուի մէկ աստուածասէր հոգի մը երբոր մահը լսէ՝ մտածելով որ շուտով պիտի ազատի այս աշխարհիս վտանգներէն՝ որոնցմով կըրնար զԱստուած վշտացընել, խղճմտանաց նեղութիւններէն և սատանային բազմապատիկ փորձութիւններէն։ Այս կեանքս անդադար կռիւ մըն է դըժոխքի հետ, ուստի միշտ վտանգի մէջ ենք հոգինիս և զԱստուած կորսնցընելու։ Սուրբն Ամբրոսիոս կըսէ թէ աշխարհիս վրայ որոգայթներու մէջ կը քալենք, զորն որ թշնամիք կը լարեն մեր հոգւոր կենացը դէմ։ Այս վտանգիս համար էր որ սուրբն Պետրոս Ալկանդարացին մեռնելու ատեն կըսէր քովինին որ կօգնէր իրեն դպչելով. եղբայր, հեռու կայնէ, վասն զի դեռ կենդանի եմ, ու դատապարտելու վտանգի մէջ եմ։ Այս վտանգս էր որ ամէն անգամ որ ժամացոյցը կը զարնէր՝ սրբուհին Թերեզա կը մխիթարէր, որ ուրախանալով կըսէր թէ կռուոյն մէկ ժամն ալ անցուցի. վասն զի կենացս ամէն վայրկեններն մէջ ալ կրնամ մեղանչել ու զԱստուած կորսընցընել։ Ասոր համար սուրբերը երբոր մեռնելու լուրը կառնէին՝ ամէնքն ալ կը մխիթարուէին, վասն զի անով իրենց կռիւներն ու վտանգները կը դադրին և այլ վախ չեն ունենար զԱստուած կորսընցընելու։

Հարանց վարուց մէջ կը պատմուի թէ երբոր սկիտացի ծերոց մէկը կը մեռնէր՝ ուրիշները կու լային,

1 Ջնջեսցէ Տէր զամենայն արտասուս յաչաց նոցա, և մահ ոչ ևս գոյ։ Յայտն. ԻԱ. 4։

ինքը կը ծիծաղէր․ Հարցուցին իրեն թէ ինչու կը խընտաս․ ինքն ալ պատասխանեց թէ հապա դուք ինչպէս կու լաք, տեսնելով որ ես աշխատանքէս 'ի հանգիստ կերթամ։ Նմանապէս սրբուհին Կատարինէ սիենացին մեռնելու ատեն ըսաւ թէ ուրախակից եղէք ինծի, վասն զի այս թշուառութեան աշխարհը կը թողում ու խաղաղութեան հայրենիքը կերթամ։ Սուրբն Կիպրիանոս կըսէ թէ մէկն որ պատերը փլփլած տուն մը բնակած ըլլար որուն յատակն ու ձեղունը կը դողդըղան, այնպէս որ կործանելու վրայ ըլլայ, այն ինչպէս կը փութայ որ այն տնէն փախչի։ Այս կեանքիս մէջ ալ ամէն բան հոգւոյ կործանումն կըսպառնան․ աշխարհք, դժոխք, կիրք, ապստամբ զգայութիւնք, ամէնքն ալ զմեզ դէպ 'ի մեղք ու դէպ 'ի յաւիտենական մահ կը քաշեն։ Առաքեալն ալ կը կանչէր թէ ով պիտի ազատցընէ զիս այս մարմնոյս մահուանէն[1]։ Ո՜հ թէ այն ինչ ուրախութիւն կըլլայ հոգւոյն՝ երբոր լսէ թէ կըսեն իրեն՝ եկուր հարսնուկ, ելիր լալեաց տեղէն, առիւծներու բունէն, որ զքեզ կուլ տալ կուզեն ու կը ջանան Աստուծոյ շնորհքէն հեռացընել[2]։ Ուստի սուրբն Պօղոս մահուան փափաքելով կըսէր թէ իմ մէկ հատիկ կեանքս Քրիստոս է, և մեռնելը քան զամենայն շահ վեր կը դնէր, վասն զի անով անվախճան կեանք ձեռք կը ձգէր[3]։

Աստուծոյ մեծ ողորմութիւնն է որ մէկը իր շնորհացը մէջ վախճանի և աշխարհքէս ելլայ․ ուր կրնար փոխուիլ և Աստուծոյ շնորհքը կորսընցընել։ Յափշտակուեցաւ, կըսէ իմաստունը, որպէս զի չըլլայ թէ չարութիւն մը իրեն իմաստութիւնը փոխէ[4]։ Երանի անոր որ Աստուծոյ հետ միացեալ կապրի․ բայց ինչպէս որ նաւով ճամբայ ընողը ապահով չըսուիր ինչուան որ նաւահանգիստ չի հասնի ու ալէկոծութենէ չի խալըսի, ասոր նման ալ երջանիկ չի կրնար ըսուիլ այն հո-

1 Ո՞վ ապրեցուսցէ զիս 'ի մարմնոյ աստի մահու։ Հռովմ. Է. 24։
2 Եկ 'ի Լիբանանէ հարսն իմ 'ի մայրեաց առիւծուց։ Երգ. Դ. 8։
3 Ինձ կեանք Քրիստոս է, և մեռանիլ շահ։ Փիլիպ. Ա. 21։
4 Յափշտակեցաւ, զի մի չարութիւն ինչ փոխեսցէ զիմաստութիւն նորա։ Իմաստ. Դ. 11։

զին ինչուան որ 'ի շնորհս Աստուծոյ չելլէ 'ի կենաց ։ Սուրբ Ամբրոսիոսին ըսածին պէս թէ նաւորդին երջանկութիւնը գովէ , բայց երբոր նաւահանգիստ հասնի ։ Արդ եթէ ծովով ճամբայ ընողը որ շատ նեղութիւններ քաշելէն ետև երբոր նաւահանգիստ մտնալու վրայ է սաստիկ կուրախանայ, հապա որչափ աւելի ուրախ կըլլայ այն մարդը որ մօտ է ապահովցընելու իր յաւիտենական փրկութիւնը ։

Աս ալ կայ որ այս կենացս մէջ ապրիլ չըլլար գոնէ առանց թեթև մեղաց . եօթն անգամ կիյնայ արդարը[1], կըսէ Առակագիրը ։ Ով որ աշխարքէս կելլէ , ալ չի կըրնար զԱստուած վշտացընել ։ Կըսէ սուրբն Ամբրոսիոս թէ մահն ինչ է , եթէ ոչ գերեզման ախտից ։ Ասոր համար է որ աստուածասէրք կը փափաքին մահուան ։ Ասով միայն կը մխիթարուէր յարգելի հայրն Վ. ինչենցիոս Գարաֆֆա , որ մեռնելու ատեն կըսէր թէ կենացս վերջ տալով վերջ կու տամ զԱստուած վշտացընելէն . Նոյնպէս սուրբն Ամբրոսիոս ալ կըսէր թէ ինչ կը բաղձանք աս կեանքիս, որ որչափ երկայն ապրի մէկը՝ այնչափ մեղօք կը ծանրաբեռնի ։ Ի շնորհս Աստուծոյ մեռնողը այնպիսի վիճակ մը կը մտնէ որ չի կրնար մէյմըն ալ զԱստուած վշտացընել ։ Այս է նոյն սրբոյն ըսածը թէ մեռեալը մեղանչել չի գիտեր ։ Անոր համար Աստուած աւելի զմեռեալները կը գովէ քան թէ կենդանիները , թէպէտև սուրբ ալ ըլլան[2] ։ Բարի մարդուն մէկը ապսպրեց թէ մեռնելու ատենս ինծի աւետիս տուէք ըսելով թէ մխիթարուէ , մահդ հասած է , վասն զի ատենը եկեր է որ մէյմըն ալ զԱստուած վշտացընելիք չունիս ։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ձեռքդ կը յանձնեմ իմ հոգիս, որ դուն փրկեցիր զիս, տէր իմ և Աստուած ճշմարտութեան ։ Ո՛հ քաղցր փըրկիչ իմ, ինչ ձիւն պիտի գար գլխուս եթէ զիս թողնէիր որ քեզմէ հեռացած մեռնէի ։ Հիմա դժոխքը պիտի ըլլայի , ուր պիտի չի կրնայի մէյմըն ալ զքեզ սիրել ։

1 Եօթն անգամ անկցի արդարն ։ Առակ . ԻԴ . 16 ։

2 Գովեցի ես զամենայն մեռեալսն որ յառաջագոյն մեռան , քան զկենդանիսն որ ցայժմ կենդանի իցեն ։ Ժողով . Դ . 2 ։

Շնորհակալ եմ որ զիս երբեք չի ձգեցիր, և այնչափ շնորհք ալ տուիր՝ որ իմ սիրտս շահիս։ Կը ցաւիմ, կը զղջամ որ զքեզ վշտացուցի. կը սիրեմ զքեզ ամէն բանէ վեր։ Ա՛հ, կաղաչեմ ճանչցուր ինծի աղէկ մը իմ չարութիւնս որով զքեզ վշտացուցի, և այն սէրը որուն արժանի է քու անբաւ բարութիւնդ։ Կը սիրեմ զքեզ, և շուտով կը բաղձամ մեռնիլ թէ որ քու կամքդ է, որպէս զի խալըսիմ նորէն քու սուրբ շնորհքդ կորսընցընելու վտանգէն, և ապահով ըլլամ յաւիտեան զքեզ սիրելու։ Հա՛պա, սիրելիդ իմ Յիսուս, ոյժ տուր ինծի որ միացած կեանքիս մէջ, մահս գալէն առաջ քանի մը բան ընեմ քեզի համար։ Զօրութիւն տուր ինծի փորձութեանցս և կրիցս, մանաւանդ այն կրիցս դէմ որ ինչուան հիմա զիս զերեց, և քեզմէ հեռացուց։ Համբերութիւն տուր հիւանդութեան ատեն և մարդկանցմէ նախատուելու ժամանակ. իսկ ես հիմակուընէ քու սիրոյդ համար կը ներեմ ինծի դէմ ամէն անիրաւողներուն մէկիկ մէկիկ, և կը խնդրեմ որ ուզած շնորհքնին պարգևես իրենց։ Սիրտ տուր ինծի աւելի փոյթ տանիլ նաև ներելի մեղքերէն ալ հեռանալու, որոնցմէ չեմ զգուշացեր։ Փրկիչ իմ օգնէ ինծի, քու արդիւնքովդ ամէն բանի կը յուսամ. և քու բարեխօսութեամբդ, տիրամայր, յոյս և ապաւէն իմ, ամէն բանի վստահութիւն ունիմ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Մահը չէ թէ միայն ամենայն տառապանաց վախճան է, այլ նաև դուռն է կենաց. սրբոյն Բեռնարդոսի ըսածին պէս մահը լրումն վաստակոց է և կենաց դուռն։ Հարկ է որ այս դռնէն անցնի, ով որ կուզէ ներս մըտնել ու զԱստուած տեսնել։ Այս Աստուծոյ դուռն է և արդարները անկէ կը մտնան[1]։ Սուրբն Հերոնիմոս կաղաչէր մահուան ու կըսէր թէ բաց ինծի քոյր իմ, ով մահ, թէ որ դուն այս դուռս ինծի չի բանաս, չեմ կրնար երթալ զԱստուած վայելել։ Սուրբն Կարոլոս Բորոմէոս իր տանը մէջ պատկեր մը տեսնելով որ մե-

1 Այս դուռն տեառն է, և արդարք մտանեն ընդ սա։ Սաղմ. ՃԺԷ. 19։

ռելի կմախք ձեռքը մանգաղ կը ներկայացընէր, պատ-կերահանը կանչեց ու հրամմեց որ մանգաղը վերցընէ ու անոր տեղը ոսկի բանալի մը քաշէ․ որով կուզէր աւելի վառուիլ 'ի սէր մահուան, վասն զի մահն է որ կրնայ բանալ մեզի արքայութեան դուռը զԱստուած տեսնելու ։

Սուրբն Յովհան ոսկեբերան կըսէ թէ եթէ թագաւորը իր պալատին մէջ մէկին բնակարան մը պատրաստէր, բայց ըսէր թէ հիմակուհիմա խրճիթի մը մէջ նստէ, որչափ կը փափաքէր այն մարդը որ օր մը առաջ խրճիթէն ելլէ ու արքունիքն երթայ բնակի ։ Մեր հոգին ալ այս աշխարհիս վրայ մարմնոյ մէջ բնակելով իբրև թէ բանտի մէջ կեցած է, ուսկից պիտի ելլէ երկնից արքայութիւնը պիտի երթայ ։ Անոր համար կաղաչէր Դաւիթ մարգարէն թէ տէր հանէ զիս բանտէն[1]․ և ծերունին Սիմէոն ալ Յիսուս մանուկը գիրկն առնելով՝ անկէ ուրիշ շնորհք չի խնդրեց բայց եթէ մահ, որպէս զի ազատի այս աշխարհիս բանտէն՝ արդ արձակեա զծառայ քո տէր աղաչելով․ ուր սուրբն Ամբրոսիոս կըսէ, որպէս թէ առ հարկի բռնուած ըլլար՝ արձակուիլ կուզէ․ Նոյն շնորհքը կը խնդրէր առաքեալն ալ ու կըսէր, կը ցանկամ մարմնէս ելլել, և Քրիստոսի հետ ըլլալ[2] ։

Ի՛նչ ուրախութիւն եղաւ Փարաւոնի տակառապետին երբոր Յովսէփէն լսեց թէ քիչ ատենէն բանտէն պիտի ելլէ ու իր պաշտօնին պիտի դառնայ ։ Իսկ աստուածասէր հոգի մը պիտի չուրախանա՞յ երբոր լսէ թէ քիչ ատենէն արձըկուի պիտի այս աշխարհիս բանտէն, ու պիտի երթայ զԱստուած վայելելու ։ Որչափ որ այս մարմնոյս մէջ կուշանանք, Աստուծմէ կօտարանանք[3]։ Քանի որ երկրիս վրայ ենք՝ մեր հայրենիքէն դուրս ենք․ անոր համար կըսէ սուրբն Բեռնարդոս թէ մեր մահը մահ ըսելու չէ, հապա սկիզբն կենաց ։ Ուստի սրբոց մահը իրենց համար ծննդոց օր է, վասն զի մեռ-

1 Տէր հան 'ի բանտէ զանձն իմ ։ Սաղմ․ ՃԽԱ․ 8 ։

2 Ցանկամ ելանել 'ի մարմնոյ աստի և լինել ընդ Քրիստոսի ։ Փիլիպ․ Ա․ 23 ։

3 Ցորչափ յամեմք 'ի մարմնի աստ, օտարանամք 'ի Տեառնէ ։ Բ․ Կոր․ Ե․ 6 ։

նելով կը ծնանին յերանելի կեանս, որ վախճան չունի։ Սուրբն Աթանաս ալ կըսէ թէ արդարոցը մահ չէ, հապա փոխադրութիւն յաւիտենական կենաց։ Նաև սուրբն Օգոստինոս՝ ով փափաքելի մահ, կըսէր, տառապանաց վերջ, աշխատանաց վախճան, հանգստեան սկիզբն, ո՞վ է որ զքեզ չուզեր. ուստի փափաքանօք կաղաչէր թէ ուրեմն թող մեռնիմ, տէր, որպէս զի զքեզ տեսնեմ։

Սուրբն Կիպրիանոս կըսէ թէ թող անիկա վախնայ մեռնելէն, որ այս մահուանէս երկրորդ մահուան պիտի անցնի. թող վախնայ մեղաւորը, որ ժամանակաւոր մահուանէ յաւիտենական մահուան պիտի փոխուի, չէ թէ ան որ 'ի շնորհս Աստուծոյ կենալով՝ մահուամբ կը յուսայ 'ի կեանս անցնիլ։ Սրբոյն Յովհաննու ողորմածին վարուցը մէջ գրած է թէ հարուստ մարդ մը եկաւ իրեն շատ մը ողորմութիւն տուաւ աղաչելով՝ որ Աստուծոյ աղօթք ընէ իր միկհատիկ որդւոյն երկար կենացը համար. բայց քիչ ատենէն այն որդին մեռաւ։ Երբոր հայրը կը գանգատէր զաւակին մահուանը համար, Աստուծմէ հրեշտակ մը եկաւ և ըսաւ իրեն թէ դուն տղուդ երկան կեանք ուզեցիր, գիտցիր որ անիկայ յաւիտեան կը վայելէ երկինքը։ Աս այն շնորհքն է՝ որ Քրիստոս մեզի համար առաւ, ինչպէս գրած է Ովսիայ մարգարէութեանը մէջ թէ ո՞ւր է քու յաղթութիւնդ մահ[1], կամ ըստ վուլկադային ես եմ քու մահդ ով մահ. վասն զի Քրիստոս մեզի համար մեռնելով մեր մահը կեանք փոխեց։ Պիոնիոն նահատակը երբոր ուրախութեամբ մեռնելու կերթար, հարցուցին քովինները ինչու՞ ուրախ կերթաս 'ի մահ. պատասխան տուաւ սուրբը թէ կը սխալիք դուք, ես ոչ 'ի մահ, այլ 'ի կեանս դիմեալ կերթամ. Նոյնպէս սուրբն Սիմփորիանոս պատանւոյն ալ նահատակութեան ատենը սիրտ կու տար մայրն ու կըսէր, ուրախ կեցիր որդեակ իմ, կեանքդ ձեռքէդ չէ թէ կելլէ, հապա 'ի լաւագոյն կեանս կը փոխուի։

1 Ո՞ւր է յաղթութիւն քո մահ: Ովսէ. ԺԳ. 14:

## ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Աստուած հոգւոյ իմոյ, հայր երկնաւոր, ես ըզքեզ անարգեցի՝ կենացս մէջ քեզմէ երես դարձընելով. բայց փառաւորեց զքեզ քու միածինդ խաչին վըրայ պատարագելով իր կեանքը. ուստի այն պատուոյն համար որ տուաւ քեզի սիրելի որդիդ, ներէ իմ տուած անպատուութեանցս։ Կը ցաւիմ, կը զղջամ, ով ծայրագոյն բարիդ, զքեզ վշտացընելուս համար, և խօսք կուտամ որ այս օրէս ետև քեզմէ զատ ուրիշ բան չի սիրեմ։ Իմ փրկութիւնս քեզմէ կը յուսամ։ Հիմա ինչ աղէկ բան ունիմ նէ քու շնորհքդ է բոլոր, քեզմէ են ամէնքն ալ. շնորհօք Աստուծոյ եմ զինչ և իցեմ։ Եթէ անցեալ կենացս մէջ զքեզ անարգեցի նէ, յուսամ փառաւորել զքեզ յաւիտեան օրհնելով քու ողորմութիւնդ։ Մեծ փափաք ունիմ սրտիս մէջ զքեզ սիրելու. ան ալ դուն ես տուեր։ Շնորհակալ՚եմ քեզմէ, ով տէր իմ, առաջ տար, առաջ տար կաղաչեմ, քու օգնականութեամբդ, ինչպէս որ սկսար. յուսամ որ ասկից ետև բոլորովին քուկդ ըլլամ և մէկդի ձգեմ աշխրքիս ամէն վայելքը, ինչ աւելի հաճոյական բան կրնայ ըլլալ ինծի բաց՚ի քու կամքդ կատարելէն։ Տէր իմ ամենասիրելի, որ այսչափ սիրեցիր զիս, քու սէրդ միայն կուզեմ, Աստուած իմ. սէր, սէր. և կը յուսամ որ միշտ քու սէրդ խնդրեմ. մինչև որ քու սիրոյդ մէջ մեռնելով հասնիմ սիրոյ արքայութիւնը, ուր առանց խնդրելու լի պիտի ըլլամ քու սիրովդ, անդադար սիրելով զքեզ հոն յաւիտեան իմ ամէն զօրութեամբս։ Տիրամայր իմ, Մարիամ, դուն որ այնչափ կը սիրես զԱստուած, և այնչափ կը փափաքիս որ ամէքն ալ սիրեն զինքը, տուր որ ես ալ սիրեմ զինքը այս կենացս մէջ, որպէս զի անդին ալ յաւիտեան սիրեմ։

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Թ.

### ԱՐԴԱՐ ՀՈԳԵՎԱՐՔԻՆ ՄՐՑԻՆ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆԸ

*Արդարոց հոգիքը Աստուծոյ ձեռքն է, անոնց մահ չի կրնար մօտենալ: Անզգամները կարծեցին թէ անոնք մեռան, բայց անոնք խաղաղութեան մէջ են[1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ.

Արդարներուն հոգին Աստուծոյ ձեռքն է: Եթէ Աստուած իր ձեռացը մէջ պինդ պահեր է արդարներուն հոգիքը, ո՞վ կրնայ զանոնք իրեն ձեռքէն խլել: Իրաւ է որ դժոխքը չի դադրիր փորձելէն և չարչարելէն ըզսուրբերն ալ իրենց մահուան ատենը, բայց Աստուած ալ չի հեռանար անոնց քովէն, և չի դադրիր իր հաւատարիմ ծառայից օգնելէն աւելի վտանգ եղած ատենը: Սուրբն Ամբրոսիոս կըսէ թէ հոն աւելի օգնականութեան կը հասնի, ուր որ վտանգը շատ է. վասն զի Աստուած օգնական է ուր որ ժամանակն յարմար է: Երբոր Եղիսէին աշակերտը տեսաւ որ քաղաքը պաշարուած է թշնամիներէն, ահուդողի մէջ ընկաւ. բայց մարգարէն քաջալերեց զինքը ըսելով՝ մի՛ վախնար, վասն զի մեր կողմը շատ են քան անոնց կողմը[2]: Եւ ցցուց անոր հրեշտակաց բանակը որ զիրենք պաշտպանելու ղրկեր էր Աստուած: Ուստի թէպէտև սատանան կու գայ փորձելու, բայց պահապան հրեշտակն ալ կու գայ քաջալերելու զհոգեվարքը. բարեխօս սուրբերն ալ կու գան, սուրբ Միքայէլ հրեշտակապետը կու գայ, զոր ղրկեր է Աստուած պաշտպանելու իր հաւատարիմ ծառայքը դժոխոց վերջի յարձակմանը դէմ.

1 Ոգիք արդարոց 'ի ձեռին Աստուծոյ են, և ոչ մերձեսցի 'ի նոսա մահ : Թուեցան յաչս անզգամաց թէ մեռան . . . բայց նոքա են 'ի խաղաղութեան : Իմաստ. Գ. 1. 2. 3:

2 Մի՛ երկնչիր, զի ընդ մեզ բազում են քան ընդ նոսա : Դ. Թագ. Զ. 16:

կու գայ սուրբ Աստուածամայրն ալ Թշնամիքը ցիրուցան ընելու և իրեն Ջերմեռանդները իւր հովանեաց տակն առնելու. 'ի վեր քան զամենայն ինքն Քրիստոս կու գայ փորձութիւններէն պահելու այն անմեղ ոչխարակը կամ ապաշխարողը, որուն փրկութեանը համար իր կեանքը դրեր է. ինքը այնպիսի ծանր կռուոյ ատեն պէտք եղած վստահութիւնը և ուժը կու տայ, ուստի հոգին ալ քաջալերեալ ամէն կերպով՝ կըսէ Տէր եղև ինձ օգնական: Տէր լոյս իմ և կեանք իմ, ես յումմէ երկեայց [1]: ինչպէս Որոգինէս կըսէ թէ աւելի մեծ է մեր վրայ Աստուծոյ հոգը և խնամքը, որպէս զի զմեզ փրկէ, քան թէ սատանային փոյթը զմեզ դատապարտութիւն մատնելու: Վասն զի Աստուած ալ աւելի կը սիրէ զմեզ քան թէ սատանան կատէ զմեզ:

Պօղոս առաքեալ կըսէ թէ հաւատարիմ է Աստուած որ ձեր ուժէն վեր զձեզ փորձութեան մէջ չի ձգեր [2]: Բայց պիտի ըսես թէ սուրբերուն շատը իրենց փրկութեան վրայ վախնալով մեռան: Պատասխան կու տամ թէ գիտցիր որ աղէկ վարք ունեցողներուն մէջը քիչ կան որ անոնց համար գրուած ըլլայ թէ շատ վախով մեռան: Բելլուակենցին կըսէ թէ Աստուած ոմանց այդ բանը թող կու տայ, որպէս զի մաքրէ զիրենք մահուան ատենը իրենց քանի մը պակասութիւններէն: Ո՛ւր թողունք որ գրեթէ Աստուծոյ ամէն ծառաները, ինչպէս որ գրած է, ուրախութեամբ հոգինին աւանդեր են: Աստուծոյ դատաստանը մահուան ատենը ամենուն վախ կը բերէ, բայց մեղաւորները այս վախէն յուսահատութեան մէջ կիյնան, իսկ սուրբերը այս վախէն վստահութիւն կառնեն: Սուրբն Անտոնինոս կը պատմէ թէ սուրբն Բեռնարդոս հիւանդութեան ատեն կը վախնար և վրան անյուսութեան փորձութիւն կու գար. բայց երբոր Քրիստոսի արդիւնքը միտքը բերաւ, բոլոր վախը մէկդի ձգեց ըսելով, քու վէրքերդ իմ արդիւնքս են: Սուրբն Հիլարիոն ալ կը վախնար, բայց ետքէն ուրախութեամբ ըսաւ. ել հոգի, ինչու կը վախես ու կը դողաս, եօթանասուն տարի Աստուծոյ

1 Սաղմ. ԻԹ. 11: ԻԸ. 1. 14:

2 Հաւատարիմ է Աստուած որ ոչ արկցէ զձեզ 'ի փորձութիւն առաւել քան զկար ձեր: Ա. Կոր. Ժ. 13:

ծառայեցիր, և մահուանէ՞ կը վախնաս: Յիսուսեան հայր Յովսէփ Աքամաքայի հարցուցին թէ ինչպէս ես, ուրախ ես մեռնելու. ան ալ ըսաւ. հապա ինչ, միթէ սատանայի՞ն ծառայեցի որ հիմա կարենամ տարակուսիլ թէ արդեօք Աստուած զիս փրկել կուզէ՞ թէ չէ:

Եթէ մահուան ատեն տանջուինք մտածելով թէ զԱստուած վշտացուցեր եմ, ան ալ գիտենք՝ որ Աստուած ըսեր է, թէ որ անօրէնը դառնայ իր անօրէնութենէն՝ անոր անօրէնութիւնը ալ պիտի չի յիշեմ: Բայց պիտի ըսես թէ ինչպէս կրնանք ապահով ըլլալ թէ Աստուած մեզի ներեր է. այդ հարցմունքը նաև սուրբն Բարսեղ ալ կընէ, ու այսպէս պատասխան կու տայ թէ դուն ալ ըսէ մարգարէին հետ թէ զմեղս ատեցի և անարգեցի, զանօրէնութիւնս ատեցի և զզուեցայ: Ով որ զմեղքը կատէ, կրնայ ապահով ըլլալ թէ Աստուած ալ իրեն թողութիւն տուեր է: Մարդուս սիրտը չի կրնար առանց սիրելու կենալ, կամ ստեղծուածքը կը սիրէ և կամ զԱստուած. թէ որ ստեղծուածքը չի սիրեր, ուրեմն զԱստուած կը սիրէ. արդ ո՞վ է աստուածասէր եթէ ոչ պատուիրանապահը: Ով որ իմ պատուիրանքներս կը բռնէ ու կը պահէ զանոնք, նա է որ զիս կը սիրէ[1]: Ուրեմն ով որ պատուիրանքը պահած կը մեռնի նէ, 'ի սէր Աստուծոյ կը մեռնի. ուստի ով որ զԱստուած կը սիրէ՝ վախ չունի, վասն զի սէրն մերժէ զերկիւղ[2]:

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜հ Յիսուս փրկիչ իմ, երբ պիտի ըլլայ այն օրը որ պիտի կարենամ ըսելու փառք քեզ Աստուած իմ, մէյմըն ալ զքեզ չեմ կրնար կորսընցընել: Ե՞րբ պիտի ըլլայ որ զքեզ դէմ առ դէմ տեսնամ, և ապահով ըլլամ զքեզ սիրելու իմ ամէն զօրութեամբս յաւիտեան: Ա՜հ իմ ծայրագոյն բարիս, մէկ հատիկ սէրս, քանի որ կենդանի եմ միշտ վտանգի մէջ եմ զքեզ վշտացընելու, և քու գեղեցիկ շնորհքդ կորսընցընելու: Ան ինչ թշուառ ատեն էր որ զքեզ չէի սիրեր, կանարգէի քու սէրդ. հիմայ կը զղջամ 'ի բոլոր սրտէ, կը ցանկամ

1 Որ ունի զպատուիրանս իմ և պահէ զնոսա, նա է որ սիրէ զիս: Յովհ. ԺԴ. 21:

2 Ա. Յովհ. Դ. 18:

սիրել որչափ կրնամ և զքեզ հաճեցընել, բայց դեռ վտանգի մէջ եմ քու սէրդ Թողնելու և քեզի կռնակ դարձընելու։ Ով փրկիչ իմ, կեանք իմ, գանձ իմ, Թող մի տար ինծի. ապա Թէ ոչ կաղաչեմ հիմակուընէ հոգիս առ ոտքիդ և իջէ զառն մահուամբ, զոհ եմ մեռնելու։ Հայր երկնաւոր, Յիսուսի սիրոյն համար մի Թողուր զիս այս կործանմանս մէջ ինկնալու. պատժէ զիս ինչպէս որ կուզես, սիրով յանձն կառնեմ, միայն խալըսէ զիս՝ քու շնորհքէդ և 'ի քո սիրոյդ զրկուելու պատժէն։ Յիսուս իմ, յանձնէ զիս քու հօրդ։ Մարիամ մայր իմ, յանձնէ զիս քու որդւոյդ, առ ինծի համար յարատևուԹիւն իրեն բարեկամուԹեանը մէջ մնալու և շնորհք զինքը սիրելու. անկից ետև ինչ որ կուզէ Թող ընէ ինծի։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Արդարոց հոգին Աստուծոյ ձեռքն է, և անոնց մահ չի կրնար մօտենալ. անզգամներուն այնպէս կերևնայ Թէ անոնք մեռան, բայց անոնք խաղաղուԹեան մէջ են։ Խենթերուն աչքին կերևնայ Թէ Աստուծոյ ծառաները ցաւելով և ակամայ կը մեռնին, ինչպէս աշխարհասէրք կը մեռնին. բայց սուտ է, Աստուած աղէկ գիտէ իր որդիքը մխիԹարել մահուան ատեն. և մահուան ցաւերուն մէջ ալ այնպիսի քաղցրուԹիւն մը կըզգան որ արքայուԹեան համը այս աշխարքէս կըսկըսին առնել՝ զորն որ քիչ մը ատենէն պիտի ժառանգեն։ Ինչպէս մեղաւորներն ալ մահուան անկողնոյն մէջէն կըսկսին դժոխքին համն առնել խղճմտանաց խայԹերով, վախերով, յուսահատ սրտով. ընդ հակառակն սուրբերը անդադար առ Աստուած սիրոյ ներգործուԹիւններ ընելով, և շուտով զինքը վայելելու փափաքովը և յուսովը կըսկսին մեռնելէն առաջ զգալ այն խաղաղուԹիւնը որ ետքը լիովին պիտի վայելեն երկինքը։ Սուրբերուն մահը պատիժ չէ, հապա վարձք և պսակ է, և անոնց վախճանը՝ մահ չըսուիր, հապա անուշ քուն մը[1]. ուստի պիտի կարենայ ըսել՝ խաղաղուԹեամբ յայսմ և 'ի սոյն ննջեցից և հանգեայց։

1 Ի ժամանակի որպէս տացէ քուն սիրելեաց իւրոց։ Սաղ. ՃԻԶ. 4։

հութիւնն զգենու[1] ։ Ով որ զԱստուած կը սիրէ, և կը ցանկայ զինքը տեսնալ, այս կեանքս իրեն պատիժ կը սեպէ, և մահը ուրախութիւն․ ուստի կըսէ սուրբն Օգոստինոս թէ համբերութեամբ կապրի, զուարճանալով կը մեռնի․ և սուրբն Թովմաս Վիլլանովացին կըսէ թէ մահը թէ որ զմարդ քուն եղած գտնայ, գողի պէս կու գայ, կը բռնէ կը սպաննէ ու դժոխքին գուբը կը ձգէ․ բայց թէ որ արթուն գտնայ, դեսպանի մը պէս կու գայ, կը բռնէ, և կըսէ թէ Աստուած զքեզ հարսնիք կը կանչէ, եկուր զքեզ տանիմ քու ուզած տեղդ ։

Ինչպէս ուրախ սրտով իր մահուանը կըսպասէ ով որ 'ի շնորհս Աստուծոյ կը գտնուի, յուսալով որ զՅիսուս իւր փրկիչը պիտի տեսնայ ու պիտի լսէ անկէ․ Ազնիւ, ծառայ բարի և հաւատարիմ, որովհետև քիչին մէջ հաւատարիմ եղար, շատի վրայ պիտի դնեմ ըզքեզ[2] ։ Ո՛վ թէ ան ատեն ո՜րչափ մխիթարանք են քաշած ապաշխարանքը, ըրած աղօթքները, երկրաւոր բարիքներէն սիրտը բաժնելը, և այն ամէն բանը ինչ որ Աստուծոյ համար մէկն ըրեր է ։ Այն ատեն՝ ով որ զԱստուած սիրեր է, իւր ամէն սուրբ գործոց պտուղը պիտի վայելէ ։ Ուստի յիսուսեան հայրն Հիպպողիտոս երբոր կը տեսնէր որ իր բարեկամ կրօնաւորներէն մէկը փրկութեան նշաններով կը մեռնէր՝ ամենևին չէր լար, այլ կուրախանար ։ Ոսկեբերան ալ կըսէ թէ ո՜րչափ անտեղի բան է երկնից արքայութեան հաւատալ ու ետքը սուգ մտնալ հոն գնացողաց վրայ ։ Ո՜րչափ մեծ մխիթարանք է ան ատեն մասնաւորապէս անոր որ սուրբ աստուածածնայ Ջերմեռանդ պաշտօն կը մատուցանէր, վարդարաններ կը դարձընէր, այցելութիւններ կընէր, 'ի պատիւ անոր պաք կը պահէր․ եթէ տիրամայրը կոյս հաւատարիմ կըսուի նէ, ո՜րչափ հաւատարիմ կըլլայ իր Ջերմեռանդները մխիթարելու իրենց մահուանն ատեն ։ Սուրբ կուսին Ջերմեռանդ մարդ մը մեռնելու ատեն ըսաւ հօրն Պինէդգիի թէ

1 Պարտ է մահկանացուիս զգենուլ զանմահութիւն ։ Ա. Կորն. ԺԵ. 53 ։

2 Ազնիւ, ծառայ բարի և հաւատարիմ. որովհետև 'ի սակաւուդ հաւատարիմ եղեր, 'ի վերայ բազմաց կացուցից զքեզ ։ Մատ. ԻԵ. 21 ։

հայր սուրբ չես կրնար հաւատալ թէ ինչ մխիթարութիւն կըզգամ հիմա սուրբ աստուածածնայ ծառայելուս համար . ո՜հ թէ գիտնայիր , որչափ գոհ եմ հիմա տիրամօրս ծառայելուս համար , որ չեմ կրնար բացատրել ։ Հապա ինչ ուրախութիւն կունենայ ան որ զՅիսուս սիրեր է , տէպ տէպ այցելութեան ելեր է զինքը սրբութեան խորանին առջևը յարգելու , և անպակաս հաղորդուեր է սուրբ խորհրդոյն , երբոր կը տեսնէ թէ իրեն սուրբ թոշակ կը բերեն , որ հանդերձեալ կենաց իրեն առաջնորդ պիտի ըլլայ ։ Երնէկ անոր որ պիտի կարենայ ան ատենը սուրբ Փիլիպպոս Ներիին հետ ըսել . Ահա իմ սիրականս , ահաւասիկ իմ սէրս , տուէք ինծի իմ սէրս ։

Գուցէ մէկը ըսէ . բայց ես ինչ գիտնամ թէ իմ գլըխէս ինչ պիտի անցնի . ո՞վ գիտէ թէ ես գէշ մահ պիտի ունենամ ։ Բայց այդպիսւոյն ես ալ կըսեմ . ինչո՞վ գէշ կըլլայ մահը . մեղքով միայն չէ՞ մի . ուրեմն մեղքէ միայն պիտոր վախնանք , չէ թէ մահուանէ ։ Սրբոյն Ամբրոսիոսի ըսածին պէս թէ յայտնի է որ դառնութիւնը մահուանէ չէ , հապա մեղքէն է . ուստի վախը մահուան տալու չէ , այլ կենաց և վարուց ։ Ուրեմն երբոր չես ուզեր մահուանէ վախնալ , աղէկ ապրէ . ով որ Աստուծմէ կը վախնայ , անոր վախճանը բարի է ։

Հայրն Գոլոմպիերէ կըսէր թէ անկարելի է բարոյապէս որ կենացը մէջ Աստուծոյ հաւատարիմ եղողը չար մահ ունենայ ։ Աս բանը առաջուց սուրբն Օգոստինոս ալ ըսեր էր թէ չի կրնար գէշ մեռնիլ ով որ բարի կեանք ունեցեր է ։ Ով որ մեռնելու պատրաստուելով կապրի՝ բնաւ մահէ մը չի վախնար , թէ և յանկարծական ըլլայ ։ Արդարը , կըսէ Սողոմոն , ինչ և իցէ մահուամբ ալ մեռնելու ըլլայ , միշտ հանգիստ կըլլայ [1] ։ Արդ որովհետև չենք կրնար ուրիշ կերպով երթալ զԱստուած վայելել՝ բայց եթէ մեռնելով , ուստի այսպէս խրատ կու տայ ոսկեբերան թէ ընծայենք Աստուծոյ այն բանը որ պարտական ենք տալու ։ Աս ալ գիտենք թէ ով որ իր մահը Աստուծոյ կը նուիրէ , գերազանց սիրոյ ներգործութիւն կընէ , վասն զի սի-

1 Արդարն եթէ հասցէ 'ի վախճանել, 'ի հանգստեան եղիցի ։ Իմաստ . Դ . 7 ։

րով ողջագուրելով զայն մահը՝ որ Աստուծոյ հաճոյ է, և այն ատենը և այն կերպով՝ որ Աստուծոյ կամքն է, մարտիրոսներուն կարգը կանցնի։

Աստուած սիրողը պէտք է որ միշտ փափաքի և հառաչէ մահուան. վասն զի մահը զմեզ ստուգապէս Աստուծոյ հետ կը միացընէ, և կը խալըսէ զմեզ զԱստուած կորսընցընելու վտանգէն։ Պակաս սիրոյ նշան է փափաք չունենալ շուտով երթալու զԱստուած տեսնելու և նորէն զինքը չի կորսընցընելու ապահով ըլլալ։ Մենք այս կենացս մէջ պէտք է ջանանք զԱստուած սիրել որչափ որ կրնանք. այս բանիս միայն պիտի ծառայէ մեր կեանքը՝ Աստուծոյ սէրն աճեցընելու. մեր սիրոյն չափը, որուն մէջ պիտի գտնէ ըզմեզ մահը, պիտի ըլլայ անդիի աշխարհքը զԱստուած սիրելնուս չափը։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Փրկիչ իմ Յիսուս, զիս քեզի հետ կապէ, այնպէս որ չի կարենամ քեզմէ բաժնուիլ։ Զիս քեզի առ բոլորովին մեռնելէս առաջ, որպէս զի զքեզ ինծի հետ հաշտուած տեսնեմ առաջին տեսնելուս ատենը։ Դու տէր, զիս փնտըռեցիր, երբոր ես քեզմէ կը փախչէի. հիմա մի՛ վռնտեր զիս երբոր ես զքեզ կը փնտըռեմ։ Թող ինծի որչափ որ քու կամքիդ դէմ ըրեր եմ. այս օրէս ետև ուրիշ բան չեմ ուզեր մտածել, բայց միայն քեզի ծառայել և զքեզ սիրել։ Ամէն կերպով զիս քեզի պարտական ըրիր, ինչուան արիւնդ ալ տալով իմ սիրոյս համար։ Կուզէի որ ես ալ զիս ամենայն կերպով քեզի տայի, ով Յիսուս իմ, որչափ դուն զքեզ բովանդակ ինծի տուիր։ Ով Աստուած հոգւոյ իմոյ, կուզեմ զքեզ շատ սիրել այս կենացս մէջ, որպէս զի կարենամ անդին ալ շատ սիրել։ Հայր երկնաւոր, դուն իմ սիրտս բոլոր քեզի քաշէ, բաժնելով ամենայն երկրաւոր բաղձանքներէն, և բոլորովին բորբոքէ քու սուրբ սիրովդ. լսէ աղաչանացս, արդեամբք Յիսուսի Քրիստոսի օծելոյ քոյ։ Տուր ինծի սուրբ յարատևութիւն, տուր ինծի շնորհք՝ որ միշտ զայն խնդրեմ քեզմէ։ Մարիամ, մայր իմ, օգնական եղիր ինծի, և այս շնորհքս առ ինծի համար՝ որ միշտ քու միածնէդ սուրբ յարատևութիւն խնդրեմ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Ժ·

## ԱՌ Ի ՄԱՀ ՊԱՏՐԱՍՏՈՒԵԼՈՒ ՄԻՋՈՑՆԵՐԸ

*Յիշէ քու վախճանդ, և յաւիտեան չես մեղանչեր*[1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ամենքն ալ կընդունին թէ պիտի մեռնին. և մեռնիլն ալ մէկ անգամ է, և ասկէ մեծ հետեւանք ունեցող բան չիկայ, վասն զի մահուան կէտէն կը կախուի կամ երանելի և կամ թշուառ ըլլալ յաւիտեան: Աս ալ գիտեն ամէնքը թէ բարի կամ չար կեանքէն կախուած է բարի կամ չար մահ ունենալը: Հապա ինչպէս կըլլայ որ քրիստոնէից ալ մեծ մասը այնպէս կապրին, որպէս թէ իրենք մեռնելիք չունին, կամ թէ շատ մեծ բան մը չէ աղէկ կամ գէշ մահ ունենալը: Այս չարաչար ապրիլը անկէց է՝ որ մահը չեն մտածեր, ուրեմն յիշէ քու վախճանդ՝ անկէց ետքը յաւիտեան չես մեղք գործեր: Պէտք է խելուընիս խօթենք թէ մահուան ատենը յարմար ժամանակ չէ մեր տալու համարը շտկելու, և մեր յաւիտենից փրկութեան մեծ տուրևառը ապահովցընելու: Աշխարհքիս խելացիները երկրաւոր բաներու մէջ յարմար ատեն կը նային վաստակ մը ընելու, պատուի մը հասնելու, հարսնիք ընելու. և մարմնոյ առողջութեան համար չեն փախցըներ ատենքին հարկաւոր դեղն ընելու: Ի՞նչ կըսէիր այն մարդուն, որ մենամարտութիւն մը ընելու, կամ պատիւ մը ձեռք ձգելու երթալու վրայ ըլլայ, և նոյն միջոցին ուզենայ այդ բանին խելքը տալ՝ երբոր բուն ատենն հասեր է: Խենթ չէ՞ մի այն զօրապետը, որ քաղաքին պաշարուած ատենը ապրուստի ու զէնք գըտնելու ելլէ: Խենթ չէ՞ մի այն նաւապետը, որ անհոգ

1. Յիշեա զվախճան քո, և յաւիտեան ոչ մեղիցես: Սիրաք. Է. 40:

կը կենայ առաջուց խարիսխներն առասանները պատրաստելու ինչուան բուն ալէկոծութիւնն սկսի։ Ամենևին ատոնց նման է այն քրիստոնեայն որ իր խղճմըտանքին շտկելը կը ձգէ այն օրուան, որ մահը եկեր հասեր է։ Երբոր յանկարծակի վրանիդ խռովութիւն հասնի, կըսէ Աստուած, և կործանումն մրրկի նման գալու ըլլայ, ըլլայ պիտի որ զիս պիտի կանչէք, ես ալ պիտի չի լսեմ ձեզի ըսելով ասկէ ետև իրենց ճանապարհաց պտուղը թող ուտեն[1]։ Մահուան օրը մրրկի ու ալէկոծութեան օր է. այն ատեն մեղաւորք զԱստուած օգնութիւն կը կանչեն, բայց միայն դժոխքի վախուն համար, որ իրենց մօտ կը տեսնան առանց ճշմարիտ դարձի. ուստի Աստուած ալ իրենց չի լսեր, և իրաւամբք այն ատեն սոսկ իրենց չար վարքին պըտուղը համտես կընեն։ Վասն զի ինչ որ կը սերմանէ մարդ, զնոյնը կը հնձէ։ Հերիք չէ այն ատեն սոսկ վերջի խորհուրդները առնել, հապա պէտք է մեռնիլ մեղքը ատելով, և զԱստուած սիրելով ամէն բանէ վեր։ Բայց ինչպէս պիտի ատէ այն անարժան հեշտութիւնները՝ ով որ ինչուան այն ատեն սիրեր է զանոնք. ինչպէս պիտի սիրէ այն ատեն զԱստուած 'ի վեր քան զամենայն, ով որ ինչուան այն ատեն զաշխարհք աւելի սիրեր է քան զԱստուած։

Տէրն մեր իրաւամբք յիմար կոչեց այն կուսանքներն որ լապտեր պատրաստել կուզէին երբոր փեսան կու գար նէ։ Ամէն մարդ կը վախնայ յանկարծական մահէն, վասն զի ատեն չի մնար տալու համարը շտկելու. ամէնքը կը խոստովանին թէ ճշմարիտ իմաստուն եղեր են սուրբերը. վասն զի իրենք զիրենք մահուան պատրաստեր էին անոր գալէն առաջ։ Հապա մենք ինչ կընենք։ Ի՞նչ, կուզենք մենք զմեզ վտանգի մէջ դնել սպասելով մեռնելու վայրկենին որ աղէկ պատրաստութիւն տեսնենք։ Ուրեմն պէտք է որ հիմակուընէ ընենք այն բանը որ մահուան ատեն կուզենք որ ըրած ըլլայինք։ Ո՛հ, այն ինչ ցաւ կը բերէ այն ատեն

1 Ցորժամ հասանիցէ ձեզ յանկարծակի խռովութիւն, և կործանումն 'ի նմանութիւն մրրկի գայցէ ... լիցի զի կարդայցէք առ իս՝ և ես ոչ լուիցեմ ձեզ ... այսուհետև կերիցեն զպըտուղս ճանապարհաց իւրեանց։ Առակ. Ա. 27. 28. 31։

յիշել կորսուած ժամանակը, մանաւանդ գէշ անցուցած ժամանակը։ Աստուած ատեն տուեր էր վաստակ ընելու, բայց այն ատենը անցաւ գնաց, մէյմըն ալ չի դառնար։ Ի՞նչ տագնապ պիտի բերէ այն ատեն խելը թէ ա՛լ չես կրնար տնտես ըլլալ։ Ալ քեզի ատեն չի կայ ապաշխարելու, ժամերը երթալու, Յիսուսի այցելութիւն ընելու, աղօթք ընելու, քարոզ լսելու. ինչ որ եղաւ նէ եղաւ։ Ան ատեն առողջ միտք, հանդարտ ժամանակ պէտք է աղէկ խոստովանանք ըլլալու և ծանր խղճմտանքները մէկիկ մէկիկ քննելու, որպէս զի սիրտը հանգչի. բայց ա՛լ ժամանակ չի կայ։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՛հ Աստուած իմ, թէ որ ես մեղացս մէջ մեռած ըլլայի, հիմա ո՞ւր կըլլայի։ Շնորհակալ եմ որ խնայեցիր ինծի, շնորհակալ եմ այն ամենայն վայրկեաններուն համար՝ որ դժոխքը կրնայի ըլլալ սկսեալ այն վայրկենէն որ զքեզ վշտացուցի։ Կաղաչեմ լոյս տուր ինծի, տուր ճանչնալ այն ծանր անարգանքը՝ որ քեզի ըրի կամաւ կորսընցընելով քու շնորհքդ զորն որ ինծի համար շահեցար խաչափայտին վրայ իմ սիրտս համար մեռնելով։ Ո՛հ Յիսուս փրկիչ իմ, թողութիւն շնորհէ ինծի. ես ալ բոլոր սրտանց կը զղջամ իմ ամէն չարեացս վրայ որով անարգեր եմ զքեզ, ով անբաւ բարութիւն. ես յոյս ունիմ որ արդէն թողութիւն տուեր ես իմ չարեացս։ Հապա օգնէ ինծի, փրկիչ իմ, որ մէյմըն ալ զքեզ չի կորսընցընեմ։ Ո՛հ տէր, եթէ ես նորէն դառնալու ըլլամ զքեզ վշտացընելու այսչափ լոյս ընդունելէս ետև, և այսչափ շնորհք որ քեզմէ առեր եմ, արժանի չէ՞ի ըլլար նոր դժոխքի մը։ Ա՛խ, կաղաչեմ մի՛ թողուր զիս քու արեանդ արդեանցն համար որ թափեցիր իմ սիրոյս։ Տուր ինծի սուրբ յարատևութիւն. տուր ինծի քու սուրբ շնորհքդ։ Կը սիրեմ զքեզ, ով ծայրագոյն բարի. և չեմ ուզեր մէյմըն ալ ետ կենալ զքեզ սիրելէն ինչուան 'ի մահ։ Աստուած իմ, հայր երկնաւոր, գթա և ողորմէ ինծի վասն սիրոյ միածնի քո Յիսուսի Քրիստոսի։ Գթա ինծի և դու յոյս և ապաւէն իմ, Մարիամ, և յանձնէ զիս Աստուծոյ. քու աղաչանքդ ետ չեն մնար առաջի տեառն որ զքեզ այնչափ կը սիրէ։

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Հապա սիրելի եղբայր, երբոր գիտես թէ պիտի մեռնիս, շուտով հիմակուընէ խաչելութեան ոտքը ընկիր, շնորհակալ եղիր իրեն այս ատենիս համար որ քեզի կու տայ իր ողորմութեամբը, որպէս զի կարենաս խղճմտանքդ շտկել. ետքը մէյմը աչքէ անցուր բոլոր անցած կենացդ պակասութիւնները, մանաւանդ երիտասարդութեանդ ատենը: Աչքէ անցուր Աստուծոյ պատուիրանները, քննէ ինչ բաներու կամ պաշտօններու մէջ մտեր ես, և կենցաղավարութիւններդ՝ որ շատ անգամ ըրեր ես, և գրի վրայ առ անկարգութիւններդ. և ընդհանրական խոստովանանք եղիր բոլոր կենացդ, թէ որ ինչուան հիմա չես եղած նէ: Գիտեմ որչափ կօգնէ ընդհանրական խոստովանութիւնը ճամբայ բերելու քրիստոնէին վարքը. մտածէ թէ հաշիւ մընէ վասն յաւիտենականութեան. և անանկ ըրէ, որպէս թէ հասած ըլլայիր այն կէտը որ համար պիտի տաս Քրիստոսի քու դատաւորիդ: Հեռացուր սրտէդ ամենայն չար յօժարութիւնները, ամենայն ոխակալութիւն. մաքրէ խիղճդ ուրիշի ստացուածքին աչք տնկելէն, ուրիշի անուանակոտրութեան պատճառ ըլլալէդ, տուած գայթակղութիւններէդ. և առաջադրէ փախչիլ այն առիթներէն, որով կրնաս զԱստուած կորսընցընել: Գիտցիր որ այն բանն որ հիմա քեզի դժուար կերևնայ, մահուանդ ատեն անկարելի պիտի երևնայ:

Ա՛լ աւելի հարկաւոր է որ առաջադրես 'ի գործ դնել այն միջոցները որով կարենաս պահել զքեզ 'ի շնորհս Աստուծոյ. ինչպէս են՝ ամէն օր պատարագ տեսնելը, յաւիտենական ճշմարտութիւնները մտածել, ստէպ ստէպ խոստովանանք ըլլալ և հաղորդուիլ՝ գոնէ ութ օրը անգամ մը, այցելութիւն ըլլալ ամէն օր սրբութեան և աստուածածնայ, կրթութիւն մտնել, հոգևոր գիրք կարդալ, ամէն իրիկուն քննութիւն խղճմտանաց ընել, և մասնաւոր ջերմեռանդութիւն ընել առ ամենասուրբ կոյսն՝ ծոմ կենալով շաբաթ օրերը, և ամէն բանէ վեր յաճախ ինքզինքդ Աստուծոյ յանձնել կ սուրբ աստուածածնայ, անդադար կարդալով, մանաւանդ փորձութեան ատենը, զամենասուրբ անունն Յի-

սուսի և Մարիամու։ Ասոնք են այն միջոցները, որ կրնան քեզի բարի մահ տալ և յաւիտենից փրկութիւնը։

Այս բաները ընելը քեզի նշան մը կըլլայ թէ փրկութեան պիտի հասնիս. իսկ անցած գացած ատենիդ համար ապաւինէ յարիւն փրկչիդ, որ հիմա քեզի այս լոյսերը կու տայ, վասն զի կուզէ որ փրկուիս. ապաւինէ սուրբ աստուածածնայ բարեխօսութեանը որ քեզի համար այս լոյսերը կը խնդրէ և կառնէ։ Ըսած վարուց կարգաւորութեամբս, և ապաւինութեամբ առ Յիսուս և Մարիամ, գիտես թէ որչափ կօգնէ քեզի Աստուած, և ինչ ուժ կառնէ հոգիդ։ Ուրեմն, սիրելի ընթերցող, շուտով տուր զքեզ Աստուծոյ որ կը կանչէ զքեզ, և սկսէ վայելել այն խաղաղութիւնը ուսկից մինչև հիմա զուրկ էիր քու յանցանքներովդ։ Եւ ինչ մեծ խաղաղութիւն կրնայ զգալ հոգի մը, ինչպէս կարենալ ըսելը իրիկուան անկողին մտնելու ատեն՝ թէ որ այս գիշեր մահս գայ նէ, կը յուսամ որ 'ի շնորհս Աստուծոյ կը մեռնիմ։ Ան ինչ մխիթարութիւն է որոտումունք լսել, տեսնալ որ երկիրս կերերայ, և համակերպութեամբ մահուան սպասել թէ որ Աստուած այնպէս կարգաւորեր է նէ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՜հ տէր, որչափ շնորհակալ եմ որ այսպիսի լոյս կու տաս ինծի։ Ես այնչափ անգամ զքեզ թողուցի', քեզի կռնակ դարձուցի, բայց դուն զիս երբեք չի ձգեցիր. թէ որ զիս երբեք ձգէիր, ես կոյր մնացած կըլլայի, ինչպէս որ ասկէ առաջ ուզեցի կենալ. խստասիրտ կը մնայի մեղացս մէջ, և կամք չէի ունենար ոչ զանոնք թողնելու, և ոչ զքեզ սիրելու։ Իսկ հիմա մեծ ցաւ կիմանամ զքեզ վշտացընելուս համար, և մեծ փափաք մը քու շնորհքիդ մէջ մնալու. այն անիծեալ հաճոյքներէն զզուիլ ու զարշիլ կիմանամ, որոնք ինծի կորսընցընել տուին զքու բարեկամութիւնդ։ Ասոնք ամէնը շնորհք են որ քեզմէ ինծի կու գան, և յուսալ կու տան որ ինծի ներել կուզես, և զիս փրկել։ Արդ որովհետև յետ իմ այնչափ մեղացս դարձեալ զիս երբեք չի ձգեցիր և կուզես զիս փրկել, ահա, տէր իմ, ես ալ զիս բոլոր քեզի կը նուիրեմ։ Կը ցաւիմ զքեզ

վշտացընելուս վրայ. և կառաջադրեմ հազար անգամ կեանքս կորսընցընել՝ քան թէ քու շնորհքդ : Կը սիրեմ զքեզ, ծայրագոյն բարի, կը սիրեմ զքեզ, Յիսուս փրկիչ իմ, որ ինծի համար մեռար, և քու սուրբ արեանդ կը յուսամ որ զիս չես թողուր մէյմըն ալ քեզմէ բաժնուելու : Ոչ, չեմ ուզեր, Յիսուս իմ, ալ զքեզ կորսընցընել. կուզեմ սիրել զքեզ միշտ 'ի կեանս և 'ի մահու, և ընդ ամենայն յաւիտեանս : Հապա, պահէ զիս հանապազ, ու աւելցուր իմ սէրս առ քեզ, և զայս միայն կը խնդրեմ քու արդեանցդ համար : Մարիամ, յոյս իմ և ապաւէն, բարեխօսէ առ Յիսուս ինծի համար :

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Աս ալ պէտք է հոգալ ու ջանալ որ ամէն ժամ զմեզ այնպէս գտնենք ինչպէս կը փափաքինք գտնուիլ 'ի ժամու մահուան : Երանի մեռելոց որք 'ի տէր ննջեցին : Սուրբն Ամբրոսիոս կըսէ թէ անոնք բարի մահուամբ կը մեռնին, որոնք որ մահուան ատեն արդէն աշխրքիս համար մեռած կը գտնուին. այսինքն սրտերնին բաժնուած է այն երկրաւոր բարիքներէն, որոնցմէ մահուամբ առ հարկի պիտի զատուին : Ուստի պէտք է որ հիմակուընէ սիրով յանձն առնենք մերկանալ ամէն բանէ, բաժնուիլ ազգականներէ և ամէն երկրաւոր բարիքներէ : Թէ որ այս բանս կամաւ չընենք մեր կենացը մէջ, հարկաւ պիտի ընենք մահուան ժամանակ. միայն թէ այն ատեն ծայրագոյն ցաւով և յաւիտենական փրկութեան վտանգովը : Ասոր համար խրատ կու տայ սուրբն Օգոստինոս թէ շատ կօգնէ հանգիստ մեռնելու՝ 'ի կեանս կարգաւորել ժամանակաւոր բաները, հիմակուընէ տեղաւորելով հոս թողնելիքը, որպէս զի մահուան ատեն մարդուս բոլոր հոգը Աստուծոյ հետ սիրով կապուիլն ըլլայ : Այն ատեն աղէկ է՝ Աստուծոյ վրայ և արքայութեան վրայ խօսիլ : Շատ անգին են այն ետքի վայրկեանները, ուստի պէտքը չէ զանոնք երկրաւոր մտմտուքներու ծախել : Մանաւանդ սրբոց պսակը կատարեալ կըլլայ. վասն զի այն ատենը աղէկ աղէկ արդիւնք կը դիզեն՝ սիրով և համակերպութեամբ Աստուծոյ կամացը քաշելով այն ցաւերը և գրկելով իրենց մահը :

Բայց չի կրնար մէկը այսպիսի բարի բարի խորհուրդներ ունենալ մահուան ատեն թէ որ կենդանութեան ատենը ատոնք չէ բանեցուցեր։ Ուստի շատ օգտակար բան է քանի մը Ջերմեռանդներուն ըրածը, որ ամէն ամիս մասնաւոր պատրաստութիւն կը տեսնեն մահուան՝ քրիստոնէավայել ներգործութիւններով, և այն դիտաւորութեամբ խոստովանանք կըլլան ու կը հաղորդուին իբր թէ մեռնելու վրայ են և քիչ ատենէն այս աշխարքէս պիտի ելլեն։ Մարդ կենդանութեան ատենը չըրած բանը շատ դժուար է որ մահուան ատենն ընէ։ Սրբակրօն կոյսն Կատարինէ սուրբ Ալպերդեան Թերեզեանց, մեռնելու ատեն հառաչելով կըսէր ընկերներուն՝ թէ գիտցէք, քրուըտիքս, որ ես մեռնելուս համար չեմ հառաչեր որուն քսանըհինգ տարիէն 'ի վեր է որ կըսպասէի, հապա այնչափ մոլորեալ մարդկանց համար կը հառաչեմ, որ կեանքերնին մեղքով կանցընեն, ու կըսպասեն որ մահուան ատեն Աստուծոյ հետ հաշտուին, որ ատեն որ ես հազիւ թէ Յիսուսի անունը կրնամ կանչել։

Հապա, սիրելի եղբայր, քննէ գէթ և տես թէ արդեօք սիրտդ երկրաւոր բանի մը, մէկու մը, պատուոյ մը, տան, ստըկի, կենցաղավարութեան, զբօսանքի կապած ես. և մտածէ թէ հոս յաւիտեան պիտի չի կենաս։ Այն ամէնն ալ մէկ օր մը հոս պիտի թողնես, և զուցէ շուտով. ուրեմն ինչու այդպիսի կապեր ունենաս, ու գէթ անհանգիստ մեռնելու վտանգի մէջ դնես։ Հիմակուընէ ամէն բան Աստուծոյ նուիրէ՝ պատրաստ ըլլալով բոլորն ալ թողնել երբոր ինքն ուզէ։ Թէ որ կուզես համակերպութեամբ Աստուծոյ կամացը մեռնիլ, պէտք է որ հիմակուընէ գէթ համակերպես ամէն տեսակ ներհակ դիպուածոց մէջ որ կրնան քեզի պատահիլ, և մերկացընես գէթ երկրաւոր բաներուն ամենայն յօժարութիւններէն։ Դիր թէ մահուան կէտը հասեր ես, այն ատեն ամէն բան կարհամարհես։ Սրբոյն Հերոնիմոսի ըսածին պէս թէ դիւրաւ ամէն բան կարհամարհէ մարդ որ միշտ կը մտածէ թէ պիտի մեռնի։

Թէ որ դեռ չես որոշած քու կենացդ վիճակը, նայէ այն վիճակը ընտրես որ մահուանդ ատեն կուզէիր որ ընտրած ըլլաս, որպէս զի կարենաս գոհ սրտով մեռ-

նիլ ։ Իսկ թէ որ արդէն ընտրեր ես, այն բանն ըրէ ինչ որ այն ատենը կուզես որ ըրած ըլլայիր քու վիճակիդ մէջ ։ Այնպէս եղիր որպէս թէ ամէն օր քու կենացդ ետքինն ըլլար. և ամէն գործքդ վերջինի պէս ըրէ, վերջի աղօթքի պէս, վերջի խոստովանանքի պէս, վերջի հաղորդութեան պէս ։ Այնպէս միտքդ դիր իբր թէ ամէն ժամ հոգեվարք ես, անկողին ինկած ես ու քեզի կըսեն թէ ելիր գնա աշխարքէս ։ Գիտես, որչափ կօգտէ քեզի այդ մտածութիւնը աղէկ կեանք վարելու, և աշխարքէս զքեզ բաժնելու ։ Երանի ծառային այնմիկ, զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս ։ Ով որ ամէն ժամ մահուան կըսպասէ, թէ և յանկարծակի մեռնի, միշտ աղէկ կը մեռնի ։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ամէն քրիստոնեայ պէտք է միշտ պատրաստ ըլլայ, որ երբոր իր մահը կիմացընեն իրեն՝ ըսէ. Ով Աստուած իմ, ուրեմն քիչ ատեն ինծի մնացեր է, բայց ես այս միջոցիս մէջ ալ կուզեմ զքեզ աւելի սիրել, որպէս զի անդին ալ զքեզ էւելօք սիրեմ ։ Բան մը չունիմ որ քեզի նուիրեմ. այս ցաւերս ու կենացս զոհը կը նուիրեմ, և կը խնդրեմ որ միանայ այն զոհին հետ որ ինծի համար պատարագեց փրկիչն իմ խաչին վրայ ։ Իմ քաշածս քիչ բան է և թեթև անոր քով որուն որ արժանի էի. ինչ որ է նէ՝ ես սիրով կընդունիմ 'ի նըշան իմ սիրոյս որ առ քեզ ։ Ձիս կը համակերպեմ այն ամէն վշտաց որ ինծի կուզես տալ աստին ալ անդին ալ, միայն թէ զքեզ յաւիտեան կարենամ սիրել. տանջէ զիս որչափ որ կը հաճիս, միայն թէ 'ի քու սիրոյդ չի զրկուիմ ։ Գիտեմ որ ես արժանի չէի զքեզ ալ սիրելու, որովհետև շատ անգամ քու սէրդ անարգեցի, բայց դուն զղջացեալ սիրտ մը չես մերժեր ։ Կը ցաւիմ կը զղջամ 'ի բոլոր սրտէ, ով ծայրագոյն բարի, զքեզ վշտացընելուս համար. կը սիրեմ զքեզ յամենայն սըրտէ, և բոլորովին քեզի կապաւինիմ ։ Քու մահդ, ով փրկիչ, իմ յոյսս է. քու ձեռքդ կը յանձնեմ իմ հոգիս. փրկեցիր զիս, տէր Աստուած ճշմարտութեան ։ Ով Յիսուս իմ, դու քու արիւնդ տուիր զիս փրկելու համար, մի թողուր որ քեզմէ բաժնուիմ ։ Կը սիրեմ

զքեզ Աստուածդ յաւիտենից, և կը յուսամ սիրել յաւիտեան : Մարիամ, մայր իմ, օգնէ ինծի այս հարկաւորութեանս ատեն : Քեզի կը յանձնեմ իմ հոգիս, աղաչէ քու միածին որդիդ որ գթայ իմ վրաս. քեզի կապաւինիմ ազատէ զիս դժոխքին ձեռքէն :

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԱ.

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ՑԱՐԳԸ

*Որդեակ, պահէ ժամանակդ* [1].

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Նայէ, կըսէ սուրբ գիրքը, որ աղէկ պահես քու ժամանակդ, վասն զի անգին է. Աստուծոյ մեծ պարգև է որ կենդանի եղող մարդու մը կրնայ տալ : Հեթանոսք ալ կը ճանչնային ժամանակին յարգը. և Սենեկա կըսէր թէ ժամանակը բնաւ գին չունի : Բայց աւելի կերպով սուրբերը գիտցան ժամանակին յարգը : Սուրբն Բեռնարդինոս սենացին կըսէ թէ ժամանակի վայրկեան մը այնչափ կարժէ, որչափ Աստուած կարժէ, վասն զի աղէկ անցած ժամանակով Աստուած կը գնուի. վասն զի ամէն վայրկեան մարդ կրնայ զղջման կամ սիրոյ ներգործութիւն մը ընելով Աստուծոյ շնորհքը և յաւիտենական փառքը շահիլ :

Ժամանակը գանձ մըն է որ այս կեանքիս մէջ միայն կը գտնուի, անդին չիկայ, ոչ դժոխքի մէջ և ոչ երկինքը : Դժոխքին մէջ ասիկայ է դատապարտելոց վայնասունը, ո՜հ թէ ժամ մը ունենայինք : Ամէն բան կու տային ժամանակին մէկ ժամը գնելու համար, որպէս զի կարող ըլլան իրենց նեղութեանց ճար մը ընել. բայց այդ ժամը գտնալիք չունին բնաւ : Երկինքը իրաւ լաց չի կայ, բայց թէ որ երանեալք կարենային

1 Պահեա զժամանակին իրս : Սիր. Դ. 23 :

լալ, այս բանս միայն կու լային, թէ իրենց կեանքերն մէջ ատեն կորուսեր են, որով աւելի փառք վաստըկիլ կրնային, և թէ այդ ժամանակը մէյմըն ալ պիտի չունենան։ Բենեդիկտեան կոյս մը մեռնելէն ետև երեցաւ փառօք մէկի մը ու ըսաց՝ թէ ամէն կերպով ուրախ և գոհ եմ, բայց թէ որ կարենայի բանի մը բաղձալ նէ, այս միայն կուզէի որ նորէն աշխարհք դառնայի ու նեղութիւն քաշէի՝ որպէս զի աւելի փառք վաստըկէի. և սիրով յանձն կառնուի այն ցաւալի հիւանդութիւնը որ մահուանս ատենը քաշեցի, ինչուան դատաստանին օրը քաշել, որպէս զի այնչափ փառք ալ վաստըկէի, որչափ կրնայ վաստըկուիլ՝ մէկ ողջոյն մը ըսելով։

Հապա դու, ով եղբայր, ի՞նչ բանի կը ծախես քու ժամանակդ։ Ինչո՞ւ այն բանն որ այսօր կրնաս ընել վաղուան միշտ կը ձգես։ Մտածէ որ անցուցած ատենդ մէյմըն ալ քուկդ չէ, գալիքն ալ քու ձեռքդ չէ. ներկայ ժամանակը միայն ունիս բարի գործք ընելու։ Ուստի, կըսէ սուրբն Բեռնարդոս, թէ ով ողորմելի ի՞նչ կը վստահիս ապագային, որպէս թէ Աստուած ժամանակը քու ձեռքդ տուած ըլլայ։ Ի՞նչպէս կրնաս վաղուան օրը դուն քեզի խոստանալ, երբոր գիտես թէ և ոչ մէկ ժամ մըն ալ կեանքդ ձեռքդ չէ։ Ուստի վըճռաբար կըսէ սրբուհին Թերեզա, թէ որ այսօր մեռնելու պատրաստ չես, վախցիր որ չարաչար պիտի մեռնիս։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած իմ, գոհանամ զքէն, որ ինծի ատեն տուիր իմ անցուցած կեանքիս անկարգութեանը ճար մը ընելու։ Թէ որ այս վայրկենիս մեռնելու ըլլայի, իմ մեծ ցաւերուս մէկն ալ այս կըլլար թէ ժամանակս կորուսեր եմ։ Ո՜հ տէր, դուն ինծի ժամանակ տուիր զքեզ սիրելու համար, իսկ ես զայն զքեզ վշտացընելու ծախեցի։ Ես արժանի էի որ դժոխք ղրկէիր զիս այն առաջին վայրկենէն որ քեզի երես դարձուցի. այլ դուն զիս յապաշխարութիւն կոչեցիր և ներեցիր ինծի։ Ես խոստացայ որ ա՛լ զքեզ չի վշտացընեմ. բայց քանի՜ քանի անգամ ետ կեցայ խոստմունքէս, անիրաւեցայ քեզի դէմ. սակայն դուն նորէն թողութիւն տուիր

ինծի ։ Օրհնեալ ըլլայ յաւիտեան քու ողորմութիւնդ․ և թէ որ անբաւ չըլլար նէ՝ ի՞նչպէս կրնայիր ինծի համբերել ։ Ո՞վ կրնար այնչափ երկայնամիտ ըլլալ ինծի, ինչպէս որ դուն եղար․ ով թէ որչափ կը ցաւիմ որ այսպիսի բարի և բարերար Աստուածս վշտացուցի ։ Սիրելիդ իմ փրկիչ, սոսկ քու երկայնմտութիւնդ՝ որով ինծի համբերեցիր, բաւական էր զիս վառել բոլորովին ՚ի սէր քո ։ Ուստի կաղաչեմ, մի՛ թողուր որ ես նորէն ապերախտ ըլլամ քու սիրոյդ․ բաժնէ զիս ամէն բանէ, և ձգէ բոլորովին ՚ի սէր քո ։ Զեմ ուզեր, Աստուած իմ, քաւ լիցի, ասկից ետև ժամանակս վատնել, որ իմ ըրած չարեացս ճար ընելու համար կու տաս ինծի ։ Տուր ինծի սուրբ յարատեւութիւն ։ Կը սիրեմ զքեզ անբաւ բարութիւն, և կը յուսամ սիրել յաւիտեան ։ Շնորհակալ եմ քեզմէ, տիրամայր Մարիամ, դու բարեխօս եղար ինծի համար այսչափ ժամանակ ունենալու․ հիմա ալ օգնէ ինծի, և տուր որ բովանդակ այս ժամանակս ծախեմ ՚ի սիրել զքո միածինդ իմ փրկիչս, և զքեզ, ով թագուհի և մայր իմ ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Ժամանակին պէս անգին բան չիկայ, բայց անոր պէս ալ աշխրքիս մարդկանց առջև յարգ չունեցող և անարգ սեպուած բան չիկայ ։ Ինչպէս կըսէ սուրբն Բեռնարդոս ալ թէ ժամանակին պէս մեծագին բան չիկայ, բայց անոր պէս ալ խոտան սեպուած բան չիկայ ։ Դարձեալ կըսէ թէ փրկութեան օրերը կանցնին, և ոչ ոք կը մտածէ թէ իր օրերը կերթան կը կորսուին ու մէյմըն ալ դառնալիք չունին ։ Տես սա խաղցող մարդը, որ գիշեր ցորեկ խաղալով ատեն կը կորսընցընէ, հարցուր իրեն թէ ի՞նչ է ըրածդ ։ Պատասխան կու տայ քեզի թէ ատեն կանցընենք ։ Տես սա մէկալն ալ որ բարբարական ասդին անդին կը պտըտի, փողոցներուն մէջ կը կայնի անցուոր դարձուորը տեսնելու, ափեղցըփեղ կամ անշահ բաներ կը խօսի․ հարցուր իրեն թէ ի՞նչ կընես, կըսէ թէ ատեն կանցընեմ ։ Ով խեղճ ողորմելի կուրեր, որ այդչափ օրեր կը կորսընցընէք, բայց այնպիսի օրեր որ մէյմըն ալ չեն դառնար ։

Ով երեսէ ձգուած ժամանակ, դուն պիտի ըլլաս աշխարհաւէր մարդկանց ամենէն աւելի ցանկալի բանը մահուան ժամանակ։ Ան ատեն պիտի ցանկան, պիտի խնդրեն մէկ տարի մըն ալ, մէկ օր մըն ալ, բայց պիտի չի գտնեն, և պիտի ըսեն այն ատեն թէ ալ ժամանակ չի կայ։ Այն ատեն անոնք ինչ չեն տար որպէս զի գէթ ժամանակէն շաբաթ մըն ալ ձեռք ձգեն, օր մըն ալ գտնեն որ կարող ըլլան խղճմտանաց համարը շտկել։ Սուրբ Լաւրենտիոս Ցուստինեանին ըսածին պէս թէ մէկ ժամու համար հարստութիւններն ալ, փառք պատիւներն ալ, փափկութիւններն ալ կու տային։ Բայց առ ժամը իրենց պիտի չի տրուի. քովի քահանան իրեն պիտի ըսէ՝ շուտ ըրէ, շուտ ըրէ, ելիր ելիր աշխարհէս, ա՛լ ատեն չի կայ։

Անոր համար սուրբ գիրքը մեզի այս խրատը կու տայ թէ յիշէ քու արարիչդ քանի որ արեգակն ու լուսինը չեն խաւարեր[1]։ Ի՛նչ նեղութիւն է մէկ ճամբորդի մը՝ թէ որ ճամբայէն մոլորած զինքը տեսնէ, գիշերն ալ վրայ հասնի, որ ատեն չի կայ ճար ընելու։ Անոր պէս նեղութիւն և ցաւ կըլլայ մահուան ատեն անոր որ շատ տարի աշխրքիս վրայ կեցեր է, բայց ժամանակը Աստուծոյ համար չէ ծախեր, վասն զի գիշերը կը կոխէ՝ որ ատեն մարդ չի կրնար գործել[2]։ Ան ատեն մահը իրեն համար գիշեր կըլլայ, բան մը չի կրնար ընել։ Ան ատեն խղճմտանքը իրեն կը յիշեցընէ թէ որչափ ատեն ունեցաւ, և զայն 'ի վնաս հոգւոյն ծախեց. որչափ ներքին ազդարարութիւններ, որչափ շնորհքներ ընդուներ է յԱստուծոյ սուրբ ըլլալու, և չէ ուզեր շահեցընել զանոնք. մէյմըն ալ ինչ կը տեսնէ, բարի գործք ընելու ճամբան ա՛լ գոցուած է։ Ուստի լալով պիտի ըսէ. ա՜հ ինչպէս խենթ եմ եղեր, ա՜հ մեղք կորսընցուցած ատենիս, ափսո՜ս կեանքիս որ կորուսի, վա՜խ կորսուած տարիներուս՝ որ սուրբ կրնայի ըլլալ ու չեղայ, հիմա ա՛լ ըլլալու ատեն չի կայ։ Բայց ինչ բանի կու գայ այդ գանգատները, այդ ախուվախը այն վայրկենին որ կենաց տեսարանին վա-

1 Յիշեա զարարիչն քո մինչ չև խաւարեալ իցէ արեգակն և լուսին։ Ժող. ԺԲ. 1, 2։

2 Գայ գիշեր՝ յորում ոչ ոք կարէ գործել։ Յովհ. Թ. 4։

բազոյրը գոցուելու վրայ է, լապտերը մարելու մօտ է, հոգեվարքն ալ մօտիկ է այն ահաւոր վայրկենին, ուսկից կախուած է յաւիտենականութիւնը:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով փրկիչ իմ Յիսուս, դուն բոլոր կեանքդ տուիր զիս փրկելու համար. չեղաւ վայրկեան մը կեանքիդ մէջ զոր չնուիրես երկնաւոր Հօրդ ինձի համար, որպէս զի թողութիւն առնում, և յաւիտենից կեանքը ժառանգեմ. իսկ ես որ այսչափ տարի աշխարքիս մէջն եմ, ինչ ըրեր եմ քեզի համար: Ա՜հ, ինչ որ ալ ըրած եմ, բոլորն ալ իմ խղճմտանքիս բեռն են. չարը միշտ շատ է, բարին խիստ քիչ, ան ալ լի անկատարութեամբ, զաղջութեամբ, անձնասիրութեամբ և ցնդմունքներով: Ա՜հ փրկիչ իմ, բոլորն ալ այդպէս է, վասն զի չէի յիշեր թէ դուն որչափ բան ըրեր ես ինձի համար: Ես զքեզ մոռցայ, դուն զիս չի մոռցար. դուն շատ անգամ իմ ետևէս եկար երբոր ես քեզմէ կը փախչէի, և շատ անգամ զիս կանչեցիր առ քու սէրդ: Ահա, փրկիչ իմ, ես պատրաստ եմ, մէյմըն ալ չեմ ուզեր քեզի դէմ կենալ, չեմ ուզեր սպասել որ երեսէ ձգես զիս: Պատրաստ եմ, ով ծայրագոյն բարի, հեռու կենալ ամէն մեղքէ: Կը սիրեմ զքեզ, անբաւ բարիդ, որ արժանի ես անհուն սիրոյ: Ո՜հ, մի թողուր որ ես զքեզ մէյմըն ալ քու ողորմութեամբդ ինձի տուած ժամանակդ կորսընցընեմ: Կաղաչեմ զիս միշտ յիշէ, սիրելի փրկիչ իմ, և ինձի յիշեցուր քու սէրդ՝ զոր ինձի ցուցիր, չարչարանքդ՝ զոր ինձի համար քաշեցիր: Մոռցընել տուր ինձի ամէն բան, որպէս զի ուրիշ բան չի մտածեմ մնացած կենացս մէջ, բայց միայն զքեզ սիրել և կամքդ կատարել: Կը սիրեմ զքեզ, սէր իմ Յիսուս, և ամենայն բարիդ իմ. խօսք կու տամ որչափ որ խելքս վրաս ըլլայ՝ սիրոյ ներգործութիւններ ընեմ քեզի: Տուր ինձի սուրբ յարատեւութիւն: Բոլորովին ապաւինած եմ յարդիւնս տեառնդ իմոյ և 'ի սուրբ արեանդ: Վստահ եմ քու բարեխօսութեանդ ալ, ով սիրական մայր իմ Մարիամ:

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Գնացէք քանի որ լոյսը ձեզի հետ ունիք[1]։ Պէտք է որ Աստուծոյ ճամբուն մէջ քալենք, քանի որ կենդանի ենք և լոյս ունինք, զորն որ մահուան ատեն կը կորսընցընենք, վասն զի այն ժամանակը պատրաստուելու ատեն չէ, հապա պատրաստ գտնուելու ատեն է։ Մահուան ատեն կարելի չէ բան ընել, եղածը եղած է։ Թէ որ մէկուն լուր գայ թէ քիչ ատենէն դատաստան կայ իր կենացը վրայ, կամ բոլոր ունեցածին վրայ, ինչպէս կարտորար մէկ աղէկ փաստաբան մը գտնելու որ դատաւորներուն հասկըցընէ իր պատճառները, և իր կողմը բռնէ։ Հապա մենք ինչ կընենք, որ ստոյգ գիտենք թէ քիչ ատենէն, կրնայ, ալ ըլլայ՝ ամէն ժամ մեր վրայ դատաստան պիտի ըլլայ ամենէն մեծ բանի համար, որ է յաւիտենից փրկութիւնը, և ժամանակ կը կորսընցընենք։

Կրնայ մէկը ըսել թէ ես դեռ երիտասարդ եմ, կամաց կամաց գիս Աստուծոյ կու տամ։ Անոր ըսելու է թէ տէրն մեր անիծեց անպտուղ թզենին, որ դեռ ատենն ալ չէր պտուղ տալու. վասն զի թզոյ ժամանակն ալ չէր կըսէ աւետարանը, որով ուզեց փրկիչն մեր հասկըցընել մեզի թէ մարդս ամէն ատեն, նաև երիտասարդութեան ատենն ալ բարեգործութեան պըտուղ պիտի ունենայ, չէ նէ անէծքի տակ կիյնայ, ու չի կրնար ետքն ալ պտուղ տալ։ Ասկէ ետքը մարդ քեզմէ պտուղ չուտէ յաւիտեան, ըսաւ տէրն մեր անծառին. նմանապէս կանիծանէ զայն մարդը զոր կոչեր է և ան դէմ կը կենայ։ Սոսկալի բան. սատանան քիչ ժամանակ կը սեպէ բոլոր մեր կենաց ատենը, ուստի վայրկեան մըն ալ չի կորսընցըներ զմեզ փորձելէն։ Ուստի թշնամին որ ատենը չի կորսընցըներ զմեզ կորսընցընելու համար, հապա մենք կորսընցընե՞նք մեր ժամանակը զմեզ փրկելու համար։

Մէկն ալ կրնայ ըսել թէ ես ինչ գէշ բան կընեմ. վա՜յ քեզի, գէշ բան չէ՞ ատեն կորսընցընել խաղերով, անշահ խօսակցութեամբք որ շահ մը չեն ըներ

[1] Գնացէք մինչդեռ զլոյսն ընդ ձեզ ունիք։ Յովհ. ԺԲ. 35։

հոգւոյդ։ Աստուած անո՛ր համար ատեն տուեր է քեզի, որպէս զի կորսընցընես․ չէ, վասն զի քեզի տըուած ամէն վայրկեաններուն համար ալ պատասխան պիտի ուզէ։ Ան մշակները, որ կը յիշէ սուրբն Մատթէոս, չարիք մը չէին ըներ, միայն դատարկ կենալով ատեն կը կորսընցընէին․ ուստի այգւոյ տէրը զիրենք յանդիմանեց ըսելով թէ ինչո՞ւ ցորեկն 'ի բուն դատարկ կեցեր էք[1]։ Դատաստանին օրը Քրիստոս տէրն մեր մեզմէ համար պիտի պահանջէ ամէն դատարկ խօսքի համար։ Ան ժամանակն որ Աստուծոյ համար ծախուած չէ՝ կորսուած ժամանակ է։ Սուրբն Բեռնարդոսի ըսածին պէս՝ ան ամէն ժամանակն որ Աստուծոյ վրայ չի մտածեցիր, գիտցիր որ քեզի համար կորսուած է։ Ուստի այսպէս կը խրատէ զմեզ սուրբ գիրքը թէ ինչ որ կրնաս ընել նէ՝ ըստ կարի ըրէ, վասն զի գերեզմանն որ պիտի երթաս՝ ոչ խորհուրդ կայ, ոչ գիտութիւն և ոչ իմաստութիւն[2]։ Սըրբակրօն կոյս մը կըսէր թէ սուրբերուն կենացը մէջ վաղուան օր չի կայ, վաղը մեղաւորներուն կենացը մէջն է, որ միշտ կըսեն՝ քիչ մը ետքը, քանի մը օրէն, և այսպէս մահը վրայ կը հասնի։ Ահաւասիկ հիմա է ժամանակ ընդունելի[3]։ Այսօր թէ որ իրեն ձայնը լսէք, մի խստացուցանէք ձեր սիրտը[4]։ Աստուած զքեզ կը կանչէ այսօր աս բարի գործքը ընելու՝ մէկէն այսօր ըրէ, վասն զի վաղը կրնայ ըլլալ որ ժամանակ ըլլայ կամ չըլլայ, կամ թէ Աստուած զքեզ ալ չի կանչէ։

Եւ թէ որ առաջ քու դժբախտութեամբդ ատենդ կորուսեր ես զԱստուած վշտացընելով, նայէ որ լաս ատոր վրայ մնացած կենացդ մէջ, ինչպէս առաջադրեց Եզեկիա թագաւորն ալ, թէ բոլոր տարիներս 'ի դառնութիւն անձին իմոյ կարգեց[5]։ Աստուած քեզի

1 Ընդէ՞ր կայք աստ զօրս ցերեկ դատարկք։ Մատթ. Ի. 6։

2 Որ ինչ գտցէ ձեռն քո գործել, որչափ 'ի կարի քում իցէ գործեա՛ջիր. զի ոչ է խորհուրդ և գիտութիւն և իմաստութիւն 'ի դժոխս յոր դու երթալոցն ես։ Ժող. Թ. 10։

3 Ահաւասիկ ժամանակ ընդունելի։ Բ. Կորն. Զ. 2։

4 Այսօր եթէ ձայնի Նորա լսիցէք, մի խստացուցանէք ըզսիրտս ձեր։ Սաղմ. ՂԴ. 8։

5 Կարգեաց զամենայն ամս իմ 'ի դառնութիւն անձին իմոյ։ Եսայ. ԼԸ. 15։

Հիմա կեանք կու տայ որ կորսուած ժամանակիդ ճարը տեսնես . գնեցէք ժամանակը ըսելով , վասն զի չարութեան օրեր են[1] . ուր կըսէ սուրբն Անսելմոս թէ ժամանակը կը գնես թէ որ ընես ան բանն որ զանց ըրիր ընելու ։ Սուրբն Հերոնիմոս սրբոյն Պօղոսի համար կըսէ թէ թէպէտ և առաքելոյ խօսքերը եղաւ , բայց արդեամբք առաջինն եղաւ ան բաներովը որ դարձէն ետև ըրաւ ։ Ուրիշ բան ալ չըլլայ , մտածենք թէ ամէն վայրկեան կրնանք մեծ մեծ վաստակ ընել յաւիտենական բարեաց ։ Թէ որ ըսէի քեզի թէ այնչափ գետնի տէր կըլլաս՝ որչափ որ կրնաս մէկ օր մը քալել , կամ այնչափ ստակ կը վաստըկիս՝ որչափ որ կրնաս համրել մէկ օրուան մէջ , ինչ կըսես , ինչ ջանք չէիր ըներ ։ Արդ կրնաս գուն ամէն վայրկենի մէջ յաւիտենական գանձ վաստըկիլ , հապա ինչո՞ւ ժամանակդ կը կորսընցընես ։ Որ բանն որ այսօր կրնաս ընել , մի ըսեր թէ վաղը կրնամ ընել զան բանը . վասն զի այսօր որ կորուսիր , ա՛լ չի դառնար ։ Սուրբն Ֆրանչիսկոս Պորճեան երբոր ուրիշները աշխարհի վրայ կը խօսէին՝ ինքը առ Աստուած կը դառնար սուրբ իղձերով , անանկ որ երբոր խօսք իրեն ալ կը հարցընէին իր կարծիքը նէ , չէր գիտեր թէ ինչ ըսէ ։ Անոր համար զինքը մեղադրեցին նէ՝ ըսաւ , թէ աւելի կընտրեմ տխմար երենալ՝ քան թէ ատենս փուճ անցընել ։

### ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Զէ , Աստուած իմ , չեմ ուզեր ասկից ետև ատենս կորսընցընել , զոր ինծի կու տաս քու ողորմութեամբդ ։ Ես հիմա դժոխքը պիտի ըլլայի , ու անօգուտ տեղը արցունք պիտի թափէի . շնորհակալ եմ որ կեանքս երկընցուցիր . ուստի կուզեմ մնացած օրերս քեզի համար միայն ապրիլ ։ Թէ որ հիմա դժոխքն ըլլայի , յուսահատ և անվախճան պիտի լայի . արդ կուզեմ հիմա լալ զքեզ վշտացընելուս վրայ . և գիտեմ որ , այս լալուս համար թողութիւն կու տաս ինծի , որովհետև մարգարէն ալ այսպէս կապահովցընէ թէ լալով լացաւ , եթէ ինծի ողորմեցաւ , քեզի ալ կողորմի[2] ։ Թէ

1 Գնեցէք զժամանակս, զի աւուրքս չարութեան են ։ Եփես . Ե . 16 ։
2 Լալով ելաց , եթէ ողորմեցաւ ինձ , և ողորմեսցի քեզ ։ Ես . Լ . 19 ։

որ դժոխքն ըլլայի ալ զքեզ պիտի չկրնայի սիրել, ուստի հիմա կը սիրեմ զքեզ և կը յուսամ յաւիտեան սիրել: Թէ որ դժոխքը ըլլայի ալ չէի կրնար քու շնորհքդ խնդրել, բայց հիմա կը լսեմ որ կըսես ինծի թէ՝ խընդրեցէք և առնուցուք: Ուրեմն քանի որ շնորհք կրնամ խնդրել, այս երկու շնորհքը կուզեմ քեզմէ, Աստուած հոգւոյ իմոյ, տուր ինծի յարատեւութիւն 'ի շնորհս քո, և քու սէրդ տուր ինծի, անկէ ետև ինչ որ կուզես զիս ըրէ: Տուր որ բոլոր մնացած կենացս մէջ միշտ զիս քեզի յանձնեմ, Յիսուս իմ, ըսելով՝ տէր օգնէ ինծի, տէր գթա և ողորմէ ինծի. տուր որ մէյմըն ալ զքեզ չի սրդողցընեմ. տուր որ զքեզ սիրեմ: Ամենասրբուհիդ Մարիամ, մայր իմ, շնորհք առ ինծի համար միշտ զիս Աստուծոյ յանձնելու, յարատեւութիւն և իր սուրբ սէրը խնդրելու:

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԲ.

### ՓՐԿՈՒԹԻՒՆԸ ՈՐՉԱՓ ՄԵԾ ԲԱՆ Է

*Կաղաչենք ձեզ, եղբարք, որ ամէն մարդ իր բանը հոգայ*[1].

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Աստուածապէս մեծ բան է յաւիտենական փրկութիւնը, և մեզի ուրիշ ամէն բանէն աւելի հարկաւոր է. և սակայն ամէն բանէն աւելի ասոր անհոգ են քրիստոնեայք: Ամէն փոյթ կընեն, ատեն ալ չեն կորսընցըներ որ շահաւոր աստիճան մը ելլեն, դատաստանի մէջ յաղթեն, հարսնիք ընեն. և որչափ կը մտմտան, որչափ ջանք կընեն աս բաներուս: Ոչ կերակուրնին կերակուր է, ոչ քուներնին քուն է, աչքերնուն բան մը չերևնար: Իսկ յաւիտենից փրկութիւնը ապահովցը-

1 Աղաչեմք զձեզ, եղբարք. . . գործել զիւրաքանչիւր զիւր գործ: Ա. Թեսաղ. Դ. 10. 11:

նելու համար ինչ կընեն․ ինչ կեանք կը վարեն ։ Բան մըն ալ չեն ըներ․ մանաւանդ ամէն բան կընեն, որպէս զի զանիկայ կորսընցընեն․ և քրիստոնէից մեծ մասը այնպէս կապրի որպէս թէ մահը, դատաստանը, դըժոխքը, արքայութիւնը և յաւիտենականութիւնը՝ հաւատոյ ճշմարտութիւնք չըլլային, այլ բանաստեղծից առասպելք ։ Թէ որ դատաստան մը, երկրի մը բերքը, եկամուտ մը կորսընցընեն, այն ինչպէս տակնուվըրայ կըլլան, ինչ ջանք չեն ըներ՝ որ եղած վնասը կարկըտեն ։ Թէ որ ձի մը կամ՝ շուն մը կորսընցընեն, ինչ փոյթ չեն ըներ որ գտնեն ։ Իսկ շնորհքը կը կորսուի եղեր՝ քուն կըլլան, կատակ կընեն, կը ծիծաղին ։ Աս ինչ մեծ բան է․ ամէն մարդ կը խայնի անհոգ ըսուելու աշխրքի բաներու մէջ․ անդին շատերը ամենեին չեն ամըչնար յաւիտենականութիւնը ապահովցընելու անհոգ ըլլալնուն որ ամէն բանէ վեր է ։ Իրենք ալ խելացի կը կոչեն զսուրբերը, վասն զի բոլոր խելքերնին բանեցուցեր են փրկուելու համար միայն, այսու ամենայնիւ իրենք ամէն խելքերնին կու տան աշխրքիս ուրիշ բաներուն, բաց 'ի հոգւորէն ։ Նայէ ինչ կըսէ սուրբն Պօղոս․ կաղաչենք զձեզ եղբարք, կըսէ, որ ամէն մարդ իր բանը հոգայ, այսինքն իր հոգւոյն յաւիտենական փրկութիւնը՝ որ ամէն բանէ վեր է ։ Ուրեմն մտուընիս դնենք թէ մեր ամենէն հարկաւոր և շահաւոր բանը մեր փրկութիւնն է ։ Այս է մեր բուն և մէկ հատիկ գործքերնիս, որուն ճար ճարակ չըլլար թէ որ սխալինք նէ ։

Ամէն բանէ վեր է ըսինք․ վասն զի հետեւանքը շատ մեծ է, վասն զի բանը հոգւոյ վրայ է, որ եթէ կորսուի՝ ամէն բան կորսուած է ։ Պէտք է որ մեր հոգին անգին սեպենք և մեծագին քան զամէն աշխրքիս բարիքը․ աւած է սրբոյն Ոսկեբերանի թէ հոգին աւելի կարժէ քան զամէն աշխրքիս բարիքը ։ Աս աղէկ հասկընալու համար հերիք է որ գիտնանք թէ Աստուած իր միածին որդին մատնեց 'ի մահ, որ մեր հոգին փրկէ, ինչպէս կըսէ աւետարանը՝ այնպէս սիրեց Աստուած զաշխարհ մինչև իւր միածին որդին տուաւ[1] ։ Իսկ առաքեալը կը-

1 Այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ մինչև զորդին իւր միածին ետ ։ Յ-հն․ Գ ։ 16 ։

սէ թէ դուք ձեր տէրը չէք, վասն զի գնով գնուեցաք[1]: Ուստի սրբոց հարց մէկը կըսէ թէ այնչափ ծանրագին եղաւ մարդուս գինը, որ կարծես թէ մարդս Աստուծոյ չափ կարժէ եղեր: Ասոր համար տէրն մեր ալ ըսաւ թէ ի՞նչ կրնայ տալ մարդ փոխանակ անձին իւրոյ[2]: Արդ եթէ այսչափ կարժէ մարդուս հոգին, աշխըրքիս ո՞ր բարիքին հետ կրնայ փոխել զայն կորսընցընելով:

Իրաւունք ունի եղեր սուրբն Փիլիպպոս Ներեան խենթ կոչել զայն մարդը՝ որ չի ջանար հոգին փրկել: Թէ որ աշխըրքիս վրայ ոմանք մահկանացու ըլլային, ոմանք անմահ, ու մահկանացուները տեսնէին որ անմահները բոլորովին աշխըրքիս բաներուն կըզբաղին՝ որ փառք պատիւ շահին, զբօսանքներ ձեռք ձգեն, անտարակոյս կըսէին, ալ խենթեր, դուք որ կրնաք յաւիտենական բարիք շահիլ, ի՞նչ ետնէ ընկեր էք անցաւոր և չնչին բաներու, որով դուք զձեզ կը դատապարտէք անդին՝ի յաւիտենական տանջանս. Թող տուէք որ մենք խեղճերս մտմտանք երկրաւոր բարիքը, որ մահուան ատեն մեզի համար ամէն բան կը վերջանայ: Բայց մենք ամէնքս անմահ ենք. հապա ի՞նչպէս կըլլայ որ շատերը այս աշխըրքիս փուճումուճ հաճոյից համար հոգինին կը կորսընցընեն: Ատ ի՞նչպէս կըլլայ, կըսէ Սալվիանոս, որ քրիստոնեայք կը հաւատան թէ դատաստան կայ, դժոխք կայ, յաւիտենականութիւն կայ, ու ետքը անոնցմէ անվախ կապրին:

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՜հ Աստուած իմ, ի՞նչ բանի ծախեցի ան տարիներն որ ինծի տուիր յաւիտենական փրկութիւնս հոգալու համար: Դուն, փրկիչ իմ, գնեցիր իմ հոգիս քու արիւնովդ, և ետքը ինծի յանձնեցիր որ հոգ տանիմ զայն փրկելու. իսկ ես ուրիշ հոգ չըրի, բայց եթէ զայն կորսընցընելու զքեզ վշտացընելով՝ որ զիս այնչափ սիրեցիր: Շնորհակալ եմ, որ դեռ ատեն կու տաս

1 Չէք անձանց տէր, քանզի գնոց գնեցայք: Ա. Կորն. Զ. 19. 20:

2 Զի՞նչ տայցէ մարդ փոխանակ անձին իւրոյ: Մատ. ԺԶ. 26:

ինծի, որպէս զի կարենամ ճար ընել այսպիսի մեծ վատթարութեանս, որով հոգիս ալ կորուսի, քու գեղեցիկ շնորհքդ ալ։ Արդ մեծապէս կը ցաւիմ և կը զղջամ բոլորով սրտիւ։ Կաղաչեմ, Թող ինծի, ես ալ կու ուխտադրեմ աս օրէս ետև ամէն բան կորսընցընել, կեանքս ալ՝ քան թէ քու բարեկամութիւնդ։ Կը սիրեմ զքեզ ամէն բարութենէ վեր, և կուզեմ միշտ սիրել, ով ծայրագոյն բարի, որ արժանի ես անհուն սիրոյ։ Օգնէ ինծի, փրկիչ իմ Յիսուս, որպէս զի այս իմ առաջադրութիւնս ուրիշ դիտաւորութեանցս նման չըլլայ, որոնք բոլոր իմ կողմանէս մէյմէկ մատնութիւն էին։ Տուր ինծի մեռնիլ քան թէ նորէն դառնալ զքեզ վշտացընել, և քու սէրդ թողնել։ Ով Մարիամ, յոյս իմ և ապաւէն, դուն զիս պահէ և յարատևութեան շնորհքը առ ինծի համար։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Յաւիտենական փրկութիւնը չէ թէ միայն մեծ բան է, հապա նաև մէկ հատիկ գործքն որ ունինք աս կեանքիս մէջ, աս է միայն։ Սուրբն Բեռնարդոս քրիստոնէից անխելքութեանը վրայ կու լայ որ տղոց ըրածը տխմարութիւն խենթութիւն կը կոչեն, և իրենց երկրաւոր բաները մեծ գործքի տեղ կը դնեն։ Տղոցը խաղալիք՝ կը կոչեն, մեծերունը՝ մեծ բանի տեղ կը սեպեն. մեծերուն աս խենթութիւնը աւելի մեծ մեծ խենթութիւն է։ Ի՞նչ ըսաւ տէրն մեր, թէ ինչ օգուտ է մարդուս բոլոր աշխարհքս շահիլ ու ինքզինքը կորսընցընել[1]։ Թէ որ փրկուիս, ով եղբայր, հոգ չէ թէ այս երկրիս վրայ աղքատ ես եղեր, նեղութիւն և անարգանք քաշեր ես եղեր. զքեզ որ փրկես նէ, ալ վախ չի կայ, երջանիկ կըլլաս յաւիտեան։ Հապա թէ որ [illegible] ու դատապարտուիս նէ, ինչ շահ կընեն քեզի դժոխքին մէջ քու աշխարհքիս վրայ ունեցած զբօսանքներդ, հարուստ ու փառաւոր ըլլալդ։ Հոգիդ կորսուածին պէս՝ կորսուած են քու ամէն զբօսանքներդ, փառքդ, պատիւդ ու փարթամութիւնդ և ամէն բան։

1 Զինչ օգուտ է մարդոյ եթէ զաշխարհ ամենայն շահեսցի և զանձն իւր տուժեսցէ։ Մատ. ԺԶ. 26։

ի՞նչ պատասխան պիտի տաս Քրիստոսի համար տալու օրդ։ Թէ որ Թագաւոր մը պատուէր տայ իր դեսպանին որ երթայ երևելի բան մը հոգայ քաղքի մը մէջ, իսկ անիկայ իրեն յանձնուած բանին խելքը տալու տեղ՝ ուտելու, խմելու, խաղերու, պարերու միայն նայի, և այնպէս որ բանը գէշ երթայ նէ ի՞նչ պատասխան պիտի տայ Թագաւորին ետ դարձած ատենը։ Հապա ի՞նչ մեծ համար ունի տալու երկնաւոր Թագաւորին դատաստանին օրը ան մարդը՝ որ երկրիս վրայ ղրկուած է չէ թէ հարստանալու, և փառք պատիւ ստանալու, հապա իր հոգին փրկելու. իսկ ինքը ամէն բանի հոգ ունեցեր է բայց 'ի հոգւոյն։ Աշխարհասէրք ներկան կը մտածեն միայն, ապագային չեն նայիր։ Սուրբ Փիլիպպոս Ներեան մէկ օր մը Հռոմ մէկ տաղանդաւոր երիտասարդի մը հետ խօսելով որ բոլորովին ինքը զինքը աշխարքի տուած էր, ըսաւ անոր. դընենք թէ, տղաս, դուն մեծ բաղդ և հարստութիւն պիտի ունենաս, աղէկ փաստաբան պիտի ըլլաս, քահանայ պիտի ըլլաս, կարդինալ ալ պիտի ըլլաս, գուցէ պապ ալ ըլլաս, աղէկ՝ բայց ետքը ետքը։ Վերջէն ըսաւ անոր. գնա մտմտա աս ետքի երկու բառիս վրայ։ Երիտասարդը տուն դարձաւ, ու աս խօսքերուն վրայ կը մտածէր՝ ետքը ետքը։ Ասով թողուց իր աշխարհային զբաղմունքն ու աշխարհքս ալ բոլոր, և գնաց նոյն սուրբ Փիլիպպոսին կրօնքը մտաւ, ու սկսաւ Աստուծոյ ճամբուն միայն խելքը տալ։

Մէկ հատիկ ընելու գործքերնիս է հոգինիս հոգալ, վասն զի մէկ հոգի մը ունինք։ Թագաւորին մէկը բան մը խնդրեց Բենեդիկտոս երկոտասաներորդ պապէն, որ չէր կրնար առանց մեղաց շնորհել, ուստի աս պատասխանը տուաւ դեսպանին. ըսէ Թագաւորիդ, որ եթէ երկու հոգի ունենայի, կրնայի մէկը կորսնցընել իրեն սիրոյն համար, և մէկալը պահել ինծի համար. բայց որովհետև մէկ հատիկ հոգի մը ունիմ, չեմ կրնար և չեմ ուզեր զայն կորսնցընել։ Սուրբն Ֆրանչիսկոս Քսաւերեան կըսէր թէ մէկ բարիք մը միայն կայ աշխրքիս վրայ, և մէկ չարիք մը միայն, մէկ հատիկ բարիքն է փրկուիլ, և մէկ հատիկ չարն է դատապարտութիւնը։ Շատ անգամ կըսէր սրբուհին Թերեզա իր կուսանքներուն, թէ ով քրուըմիք, մէկ հոգի

մը կայ, և մէկ յաւիտենականութիւն մը: Կուզէր ըսել թէ մէկ հոգի մը ունինք, թէ որ ան ալ կորսուի նէ, ամէն բան կորսուած է: Ուստի Դաւիթ ալ իր աղօթքին մէջ կըսէ թէ մէկ բան մը խնդրեցի Աստուծմէ և նոյնը կաղաչեմ, Աստուծոյ տանը մէջ բնակիլ[1]: Իսկ առաքեալը կըսէ թէ ահով ու դողով իւրաքանչիւր ձեր փրկութիւնը գործեցէք[2]: Ով որ չի վախնար չի դողար՝ չի փրկուիր, ուստի փրկուելու համար պէտք է աշխատիլ, ու ինքը զինքը բռնադատել. երկնից արքայութիւնը կըբռնաբարի և բռունք կը յափշտակեն զայն, կըսէ Տէրն մեր: Փրկութիւննիս կուզենք նէ պէտք է որ մահուան ատեն մեր կեանքը Քրիստոսի փրկչին մերոյ կենացը նման գտնուի: Յառաջագոյն սահմանեց կերպարանակից ըլլալ իւր որդւոյն պատկերին[3]: Ուստի պարտական ենք մէկ կողմանէ մեղաց առիթներէն փախչել, մէկալ կողմանէ ալ փրկութեան հասնելու հարկաւոր միջոցները բանեցընել: Սուրբն Բեռնարդոս կըսէ թէ արքայութիւնը գատարկապորտներուն չի տրուիր, հապա Աստուծոյ ծառայութեան մէջ արժանապէս աշխատողներուն: Ամէնքը փրկուիլ կուզեն առանց նեղութիւն մը քաշելու: Շատ մեծ բան, կըսէ սուրբ Օգոստինոս, այնչափ կաշխատի սատանան և քուն չըլլար զմեզ կորսընցընելու. իսկ դուն քու յաւիտենական շահուդ կամ վնասուդ համար այդպէս անհոգ կեցեր ես: Թշնամիք կը տքնին և դու կը քնանաս:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած իմ գոհանամ զքէն, որ ինչուան աս ժամս կը թողնես զիս որ կենամ քու ոտքիդ առջևը, և ոչ 'ի դժոխս՝ որուն շատ անգամ արժանի եղեր եմ: Բայց ինչ շահ ինծի քու պարգևած կեանքէդ, թէ որ ես առանց քու շնորհացդ ապրիլս շարունակեմ նէ: Ա՜հ, Աստուած չընէ: Ես քեզի երես դարձուցի, զքեզ կո-

1 Զմի խնդրեցի 'ի Տեառնէ և զնոյն աղաչեմ, բնակել ինձ 'ի տան Տեառն: Սաղմ. ԻԶ. 4:

2 Ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործեցէք: Փիլ. Բ. 12:

3 Յառաջագոյն սահմանեաց կերպարանակից լինել պատկերի որդւոյն իւրոյ: Հռովմ. Ը. 29:

բուռի, ով իմ ծայրագոյն բարիս. կը ցուփիմ բոլոր սրտանց աս ըրածներուս վրայ, երանի թէ հազար անգամ մեռած ըլլայի քան թէ քեզի դէմ երես դարձնէի։ Ես զքեզ կորուսի, բայց մարգարէդ կը ծանուցանէ ինծի թէ բարերար է Աստուած համբերողներուն վրայ, և ով որ զինքը կը փնտռէ նէ՝ կը գտնէ։ Եթէ առաջ ես քեզմէ կը փախչէի, ով իշխան և թագաւոր սրտի իմոյ, հիմա զքեզ կուզեմ, և քեզմէ 'ի զատ ուրիշ բան չեմ փնտռեր։ Կը սիրեմ զքեզ բոլոր սրտով, ընդունէ զիս և մի անարժան համարիր սիրելի ըլլալու ան սրտին որ ատեն մը զքեզ անարգեց։ Ուսո ինծի առնել զկամս քո, ուսո ինծի քու հաճոյքդ կատարել, զոր ամէն կերպով կուզեմ ընել։ Ով փրկիչ իմ Յիսուս, փրկէ աս հոգիս՝ որուն համար արիւնդ թափեցիր և կեանքդ տուիր. և զիս փրկելդ ըլլայ ինծի շնորհք տալդ որ միշտ զքեզ սիրեմ հոս ալ անդին ալ։ Այսպէս կը յուսամ քու արդիւնքներովդ. և այսպէս կը յուսամ քու բարեխօսութեամբդ, տիրամայր կոյս։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Հարկաւոր բան, մէկ հատիկ բան, այնպիսի բան՝ որուն նորէն ճար չի կրնար ըլլալ։ Սրբոյն Եւքերիոսի ըսածին պէս՝ ամէն սխալանքէն վեր է յաւիտենից փրկութեան բանը չհոգալը։ Ուրիշ ամէն սխալանաց ճար մը կրնայ ըլլալ. թէ որ մէկը իր հագուստը կորսնցընէ, ուրիշ ճամբով մը կրնայ ձեռք բերել. թէ որ մէկը իր աստիճանը կորսընցընէ, ճար կըլլայ նորէն ձեռք բերելու. նոյն իսկ թէ որ մէկը կեանքը կորսընցընէ՝ բայց փրկուելու ըլլայ, ամէն բան տեղը կերթայ։ Բայց մէկն որ դատապարտուի նէ, ալ ճար ճարակ չի կայ, մէկ անգամ կըլլայ մեռնիլ. հոգին մէյմը կորսուի նէ, յաւիտեան կորսուած է. մէկ անգամ կորսուիլը՝ յաւիտեան կորսուիլ է։ Ուրիշ բան չի մընար, բայց եթէ յաւիտեան լալ ողբալ խենթերու հետ 'ի դժոխս, ուր է ամենէն մեծ հոգետանջ պատիժը՝ գիտնալ թէ իրենց համար լմնցած է իրենց թշուառութեանցը դեղ մը ընելու ատենը։ Մարգարէին ըսածին պէս՝ հունձքերն անցան, ամառն անցաւ, և մենք

մը կայ, և մէկ յաւիտենականութիւն մը: Կուզէր ըսել թէ մէկ հոգի մը ունինք, թէ որ ան ալ կորսուի նէ, ամէն բան կորսուած է: Ուստի Դաւիթ ալ իր աղօթքին մէջ կըսէ թէ մէկ բան մը խնդրեցի Աստուծմէ և նոյնը կաղաչեմ. Աստուծոյ տանը մէջ բնակիլ[1]: Իսկ առաքեալը կըսէ թէ ահով ու դողով իւրաքանչիւր ձեր փրկութիւնը գործեցէք[2]: Ով որ չի վախնար չի դողար՝ չի փրկուիր, ուստի փրկուելու համար պէտք է աշխատիլ, ու ինքը զինքը բռնադատել. երկնից արքայութիւնը կը բռնաբարի և բռունք կը յափշտակեն զայն, կըսէ տէրն մեր: Փրկութիւննիս կուզենք նէ պէտք է որ մահուան ատեն մեր կեանքը Քրիստոսի փրկչին մերոյ կենացը նման գտնուի: Յառաջագոյն սահմանեց կերպարանակից ըլլալ իւր որդւոյն պատկերին[3]: Ուստի պարտական ենք մէկ կողմանէ մեղաց առիթներէն փախչել, մէկալ կողմանէ ալ փրկութեան հասնելու հարկաւոր միջոցները բանեցընել: Սուրբն Բեռնարդոս կըսէ թէ արքայութիւնը պատարկապորտներուն չի տրուիր, հապա Աստուծոյ ծառայութեան մէջ արժանապէս աշխատողներուն: Ամէնքը փրկուիլ կուզեն առանց նեղութիւն մը քաշելու: Շատ մեծ բան, կըսէ սուրբ Օգոստինոս, այնչափ կաշխատի սատանան և քուն չըլլար զմեզ կորսընցընելու. իսկ դուն քու յաւիտենական շահուդ կամ վնասուդ համար այդպէս անհոգ կեցեր ես: Թշնամիք կը տքնին և դու կը քնանաս:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած իմ գոհանամ զքէն, որ ինչուան աս ժամս կը թողնես զիս որ կենամ քու ոտքիդ առջևը, և ոչ 'ի դժոխս՝ որուն շատ անգամ արժանի եղեր եմ: Բայց ինչ շահ ինծի քու պարգևած կեանքէդ, թէ որ ես առանց քու շնորհացդ ապրիլս շարունակեմ նէ: Ա՜հ, Աստուած չըլնէ: Ես քեզի երես դարձուցի, զքեզ կո-

1 Զմի խնդրեցի 'ի տեառնէ և զնոյն աղաչեմ, բնակել ինձ 'ի տան տեառն: Սաղմ. ԻԱ. 4:

2 Ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործեցէք: Փիլ. Բ. 12:

3 Յառաջագոյն սահմանեաց կերպարանակից լինել պատկերի որդւոյն իւրոյ: Հռովմ. Ը. 29:

րուսի, ով իմ ծայրագոյն բարիս. կը ցաւիմ բոլոր սրտանց աս ըրածներուս վրայ, երանի թէ հազար անգամ մեռած ըլլայի քան թէ քեզի դէմ երես դարձընէի: Ես զքեզ կորուսի, բայց մարգարէդ կը ծանուցանէ ինծի թէ բարերար է Աստուած համբերողներուն վրայ, և ով որ զինքը կը փնտըռէ նէ՝ կը գտնէ: Եթէ առաջ ես քեզմէ կը փախչէի, ով իշխան և թագաւոր սրտի իմոյ, հիմա զքեզ կուզեմ, և քեզմէ 'ի զատ ուրիշ բան չեմ փնտըռեր: Կը սիրեմ զքեզ բոլոր սրտով, ընդունէ զիս և մի անարժան համարիր սիրելի ըլլալու ան սրտին որ ատեն մը զքեզ անարգեց: Ուսո ինծի առնել զկամս քո, ուսո ինծի քու հաճոյքդ կատարել, զոր ամէն կերպով կուզեմ ընել: Ով փրկիչ իմ Յիսուս, փրկէ աս հոգիս՝ որուն համար արիւնդ թափեցիր և կեանքդ տուիր. և զիս փրկելդ ըլլայ ինծի շնորհք տալդ որ միշտ զքեզ սիրեմ հոս ալ անդին ալ: Այսպէս կը յուսամ քու արդիւնքներովդ. և այսպէս կը յուսամ քու բարեխօսութեամբդ, տիրամայր կոյս:

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Հարկաւոր բան, մէկ հատիկ բան, այնպիսի բան՝ որուն առջէն ճար չի կրնար ըլլալ: Սրբոյն Եւքերիոսի ըսածին պէս՝ ամէն սխալանքէն վեր է յաւիտենից փրկութեան բանը չհոգալը: Ուրիշ ամէն սխալանաց ճար մը կրնայ ըլլալ. թէ որ մէկը իր հագուստը կորսընցընէ, ուրիշ ճամբով մը կրնայ ձեռք բերել. թէ որ մէկը իր աստիճանը կորսընցընէ, ճար կըլլայ նորէն ձեռք բերելու. նոյն իսկ թէ որ մէկը կեանքը կորսընցընէ՝ բայց փրկուելու ըլլայ, ամէն բան տեղը կերթայ: Բայց մէկն որ դատապարտուի նէ, ալ ճար ճարակ չի կայ, մէկ անգամ կըլլայ մեռնիլ. հոգին մէյմը կորսուի նէ, յաւիտեան կորսուած է. մէկ անգամ կորսուիլը՝ յաւիտեան կորսուիլ է: Ուրիշ բան չի մընար, բայց եթէ յաւիտեան լալ ողբալ խենթերու հետ 'ի դժոխս, ուր է ամենէն մեծ հոգետանջ պատիժը՝ գիտնալ թէ իրենց համար լմընցած է իրենց թշուառութեանցը դեղ մը ընելու ատենը: Մարգարէին ըսածին պէս՝ հունձքերն անցան, ամառն անցաւ, և մենք

չի փրկուեցանք[1] ։ Հարցուր աշխարհքիս այն իմաստնոց որ հիմա այն կրակի փոսին մէջն են, հարցուր թէ հիմա ի՞նչ խելքի վրայ են, գո՞հ են որ երկրիս վրայ բազմըներ են, սուտ ունեցեր են, երբոր հիմա յաւիտենից բանտը կապուած են ։ Անկած դիր, ինչպէս կու լան ու կըսեն, ուրեմն մոլորեցանք ։ Բայց ի՞նչ բանի կու գայ հիմա իրենց ըրած խենթութիւնն ու մոլորութիւնը ճանչնալնին՝ երբոր ալ ճար չի կայ յաւիտեան դատապարտութենէ խալըսում գտնելու ։ Ի՞նչ ցաւ կըլլայ երկրիս վրայ ան մարդուն, որ երբոր քիչ ծախքով կրնար ճար մը ընել, որ իր պալատը չի կործանի, ետքը մէկ օր մը տեսնայ որ փլեր ընկեր է, ու իր անհոգութեանը վրայ ան ատենն անդրադառնայ որ ալ ճար ընել չըլլար ։

Այս է դատապարտելոց աւելի մեծ ցաւը՝ մտածել թէ հոգիներին կորուստն, և իրենց յանցանացը համար դատապարտեցան ։ Ապականութեանց ատեն, ով Իսրայէլ, կըսէ Աստուած, ո՞վ է որ օգնէ պիտի քեզի[2] ։ Սրբուհին Թերեզա կըսէր թէ երբոր մէկը իր անհոգութեամբը լաթ մը, մատնի մը, կամ չնչին բան մը կորսընցընէ նէ՝ հանգիստ չըլլար, քունը չի քնանար. հապա ի՞նչ սոսկալի ցաւ կըլլայ դատապարտեալ անձի մը՝ գիտնալը ինչած վայրկեանը, երբոր տեսնէ զինքը այն տանջանաց բանտին մէջ գոցուած, և քանի որ կը մտածէ թէ յաւիտեան ճար ճարակ չիկայ ազատելու ։ Ան ատեն պիտի ըսէ, վայ գլխուս որ ես ինքիրմէս հոգիս կորուսի, արքայութիւնն ալ զԱստուած ալ կորուսի յաւիտեան ։

Մէկը թէ որ ըսէ թէ ես աս մեղքս ընելով՝ ինչու պիտի դատապարտուիմ, կրնայ ըլլալ որ այնպէս ալ փրկուիմ, անանկին ըսելու է թէ կրնայ ալ ըլլալ որ դատապարտուիս, և մանաւանդ դիւրաւ դատապարտուիս, վասն զի ասոր գիրքը դատապարտութիւն կըսպառնայ մատնիչներուն, խստասիրտ եղողներուն, ինչպէս որ դուն ալ աս բանիս մէջ այնպէս ես. վայ

1 Անցին հունձք, անց ամառն, և մեք ոչ փրկեցաք ։ Երեմ. Ը. 20 ։

2 Ապականութեան քում, Իսրայէլ, ո՞վ իցէ որ օգնիցէ քեզ ։ Ովսէ. ԺԳ. 8 ։

ձեզի, ապստամբ որդիք, կըսէ Աստուած[1]: Նոյն խօսք այդ մեղքովդ որ կը գործես՝ մեծ վտանգի ու տարակուսի մէջ չես դներ քու յաւիտենական փրկութիւնդ, և խե՞լք է արդեօք զքեզ այսպիսի վտանգի մէջ ձգելդ: Ոսկեբերանին ըսածին պէս՝ բանը մէկ տուն մը, այգիի մը, կամ աստիճանի մը համար չէ, հապա 'ի յաւիտենական տանջանս իյնալու վրայ է, յաւիտենից արքայութիւնը կորսընցընելու վրայ է. և այսպիսի մեծ բանի մը համար ի՞նչպէս կրնաս ըսել թէ գուցէ կրնայ ըլլալ որ փրկուիմ:

Կըսես թէ ով գիտէ, գուցէ չեմ դատապարտուիր, յուսամ որ ետքը Աստուած ինծի կը ներէ, բայց ե՞րբ. երբոր արդէն դուն զքեզ դժոխք դատապարտած ըլլաս նէ: Ով խելացի, դուն զքեզ խորունկ հորի մը մէջ կը ձգէի՞ր, ըսելով թէ գուցէ չեմ մեռնիր. չէ կըսես, չէի ձգեր: Հապա ի՞նչպէս կրնաս քու յաւիտենական փրկութիւնդ կախընցընել այսպիսի խախուտ յուսոյ մը վրայ, ըսելով գուցէ, ով գիտէ: Ա՜հ, որչափ մարդիկ ատ անիծած յուսով դատապարտուած են: Չես գիտեր որ խըստասիրտ եղող մեղաւորաց յոյսը յոյս չէ, հապա խաբէութիւն և յանդգնութիւն է, որ զԱստուած ոչ եթէ 'ի գութ կը շարժէ, այլ 'ի մեծագոյն բարկութիւն: Թէ որ հիմա կըսես վստահութիւն չունիմ դէմ կենալու փորձութեանց և կրից՝ որ վրադ տիրեր են, ի՞նչպէս ետքը դէմ պիտի դնես, երբոր ուժդ երթալով կը նուազի մեղաց սովորութեամբդ: Վասն զի ան ատեն մէկ կողմանէ հոգիդ աւելի կը կուրանայ ու կը խստանայ չարութեամբ, և մէկալ կողմանէ Աստուծոյ օգնականութիւնը կը պակսի: Ի՞նչ կը կարծես, յոյս ունիս որ Աստուած քեզի լոյս և շնորհք աւելցընէ, երբոր դուն մեղքերդ այնչափ շատցուցեր ես:

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով փրկիչ իմ Յիսուս, յիշեցուր ինծի միշտ մահդ որ ինծի համար յանձն առիր, և անով սիրտ և ապաւինութիւն տուր ինծի: Կը վախնամ որ չըլլայ թէ մահուանս ատեն սատանան ջանայ զիս յուսահատութեան մէջ ձգել այնչափ գործած մեղքերուս համար.

1 Վայ ձեզ, որդիք ապստամբք: Ես. Լ: 1:

տօսի համար գնել տուաւ։ Այս խօսքովս սուրբն Իգնատիոս Լոյոլեան շատ հոգիներ առ Աստուած որսաց, մանաւանդ ան գեղեցիկ հոգին սրբոյն Ֆրանչիսկոսի Քսաւերեան, որ Փարիզ աշխարհքի մտածութեանց մէջ գրաւեր էր։ Օր մը սուրբն Իգնատիոս ըսաւ ասոր. Ֆրանչիսկոս, մէյմը մտմտա որ աշխարհքս մատնիչ մըն է, կը խոստանայ ու չի կատարեր. բայց թէ և խոստացածը կատարելու ալ ըլլայ, դարձեալ չի կրնար քու սիրտդ գոհ ընել։ Դնենք թէ գոհ կընէ, բայց ո՞րչափ պիտի դիմանայ աս երջանկութիւնդ, քու կեանքէդ էւել կրնա՞յ դիմանալ. հապա մեռնելու ատենդ ի՞նչ պիտի տանիս հետդ 'ի յաւիտենականութիւն. արդեօք հարուստ մարդ մը եղե՞ր է որ իր հետը անգին ստակ կամ ծառայ տանի. թագաւոր մը եղե՞ր է որ հետը ծիրանիէն մէկ թել մըն ալ տանի իր պատիւը ցցընելու համար։ Աս խօսքերով թողուց աշխարհքս սուրբն Ֆրանչիսկոս, սրբոյն Իգնատիոսի ետևէն գնաց ու սուրբ եղաւ։ Սողոմոն կաղաղակէ աս աշխարհքիս ամէն բարեացը համար. Ունայնութիւն ունայնութեանց. ան ալ ամէն բան փորձելէն ետև, ինչպէս որ ինքը կը վկայէ։ Մարգարիտա կարմեղական կոյսը, որ Հռոտուլփոս երկրորդ կայսեր աղջիկն էր, կըսէր թէ ի՞նչ բանի կու գան թագաւորութիւնք մահուան ժամուն։ Աս ի՞նչ մեծ բան է. սուրբերը կը դողան երբոր իրենց յաւիտենից փրկութեան բանն որ կը մտածեն։ Կը սարսափէր հայրն Պօղոս Սենիերի, ու մեծ վախով կը հարցընէր իր խոստովանահօրը թէ ի՞նչ կըսես, հայր պատուական, արդեօք ես կը փըրկուի՞մ։ Կը դողար սուրբն Անդրէաս Աւելլինեան, ու յորդ արցունք կը թափէր ըսելով արդեօք կը փրկուի՞մ։ Աս մտմտուքով անանկ կը տանջուէր սուրբն Լուիճի Պէրտրանտոյ, որ գիշերները վախով մահիճէն վեր կը ցատկէր ըսելով, հապա թէ դատապարտուիմ նէ։ Ուրեմն մեղաւորներն որ դատապարտութեան որդիք են, ինչպէս քուն կըլլան, կուրախանան ու կը ծիծաղին։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Գոհանամ զքէն, Յիսուս փրկիչ իմ, որ ինծի ճանչնալ կու տաս իմ խենթութիւնս և իմ չարիքս, որ քեզի դէմ երես դարձուցեր եմ, որ ինծի համար արիւն

ես թափեր, կեանքդ տուեր ես։ Այսպէս կը վայելէր ինծի որ քեզի հետ վարուէի, քաւ լիցի. հապա թէ մահը հիմա վրայ հասնեեր նէ, ինչ կը գտնէի քովս՝ եթէ ոչ մեղք, խղճմտանքի խայթ, որ շատ անհանգիստ մեռնել կու տային ինծի։ Ով փրկիչ իմ, կը խոստովանիմ որ գէշ ըրի, չարաչար ախալեցայ զքեզ թողնելով, ով ծայրագոյն բարիդ, աշխրքի փուճ զբօսանքի համար. մեղայ, կը զղջամ բոլոր սրտանց։ Եւ կը խնդրեմ՝ այն ցաւերուն համար որով խաչին վրայ մեռար, տուր ինծի իմ մեղքերուս վրայ սաստիկ ցաւ մը, որ լալ ու ողբալ տայ ինծի մնացած կեանքիս մէջ այն անօրէնութեանցս վրայ որ քեզի դէմ ըրեր եմ։ Ո՜հ Յիսուս փրկիչ իմ, ներէ ինծի, թող ինծի, և ես ալ կը խոստանամ մէյմըն ալ զքեզ չի վշտացընել, հապա միշտ զքեզ սիրել։ Իրաւ որ ես արժանի չեմ մէյմըն ալ քու սիրոյդ, բայց դու ըսիր թէ ով որ զիս սիրէ ես ալ զինքը կը սիրեմ[1]։ Արդ ես կը սիրեմ զքեզ, դուն ալ զիս սիրէ կաղաչեմ. չեմ ուզեր զիս մէյմըն ալ քեզի հետ աւրուած տեսնել. ես կը հրաժարիմ յամենայն մեծութեանց, աշխարքիս հաճոյքներէն, միայն թէ դուն զիս սիրես։ Հայր երկնաւոր Աստուած իմ, լսէ ինծի վասն սիրելույդ Յիսուսի Քրիստոսի օծելոյ քոյ, որ և բարեխօս իսկ է ինծի համար, որ զիս քու սրտէդ չի վռընտես։ Բոլորովին զիս քեզի կը նուիրեմ, քեզի կը յանձնեմ՝ հոգիս ալ, մարմինս ալ, կամքս ալ, ազատութիւնս ալ. ընկալ զիս և մի մերժեր, ինչպէս որ արժանի եմ, որովհետև այսչափ անգամ՝ ես մերժեր եմ քու բարեկամութիւնդ։ Մի ընկենուր զիս տէր յերեսաց քոց։ Սուրբ կոյս մայր իմ Մարիամ, աղաչէ զՅիսուս ինծի համար. քու բարեխօսութեանդ բոլորովին ապաւինած եմ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Կշիռք անիրաւութեան 'ի ձեռս Քանանու[2]. բարիքը պէտք է Աստուծոյ կշիռքովը կշռել, չէ թէ աշխարքիս կշիռքով որ խաբեբայ է։ Աշխարքիս բարիքը շատ խեղճ

1 Ես որ զիսն սիրեն՝ սիրեմ։ Առակ. Ը. 17։
2 Ովս. ԺԲ. 7։

բաներ են, որ զմարդ չեն կշտացըներ, ու շուտով կանցնին կերթան։ Ցորայ ըսածին պէս թէ իմ կեանքս թեթեւագոյն է քան զսուրհանդակ, փախաւ ու չերեւցաւ[1]։ Անանկ կը վազէ կերթայ կեանքերնիս ալ, բոլոր աշխրքիս հաճոյքն ալ որ եաքը բան մը չի մնար, ինչպէս որ նաւը անցնելէն ետեւ հետքն ալ չի թողուր[2]։ Հարցընենք ան հարուստներուն, գրագէտներուն, իշխանաց, թագաւորաց, կայսերաց, որ հիմա յաւիտենականութեան մէջն են, իրենց փառքէն, փափկութենէն, մեծութենէն որ երկրիս վրայ վայելեցին՝ քովերնին ինչ կայ։ Ամէնքը մէկ բերան կըսեն՝ ոչինչ, ոչինչ։ Ով մարդ, կըսէ սուրբն Օգոստինոս, հոս ունեցածիդ կը նայիս, ինչ պիտի տանիս հետդ՝ ան նայէ։ Դուն կը նայիս միայն թէ ինչ ունի ան հարուստ մարդը, մէյմըն ալ նայէ թէ ինչ կը տանի հետը, մեռածին պէս ինչ կը մնայ, բայց եթէ հոտած դիակ մը, հետն ալ անպիտան քուրջ մը որ մէկտեղ փտտի։ Աշխըրքիս մեծամեծներն որ կը մեռնին՝ հազիւ մէկ քանի օր կը յիշուին, քիչ մը ատենէն վրանին խօսող ալ չի մնար, եւ այնպէս յիշատակնին կը կորսուի։ Հապա թէ որ ան ողորմելիները դժոխք երթան, հոն ինչ կընեն, ինչ կըսեն. ինչ պիտի ընեն, կու լան կողբան՝ ըսելով թէ ինչ շահ եղաւ հպարտութենէն, եւ ինչ օգուտ ըրաւ մեզի ամբարտաւանութեան մեծութիւնը[3]. անցան ան ամէնը իբրեւ ստուեր. ուրիշ ինչ բան մնաց, եթէ ոչ լաց, ողբ, պատիժ, եւ յուսահատութիւն յաւիտենական։

Որդիք աշխրքիս այսօրիկ իմաստնագոյն են քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց եւ իրենց երկրաւոր բաներուն մէջ։ Ու յիրաւի, ինչ աշխատանք չեն ըներ որ ան աստիճանին հասնին, որ սա կամ նա բանը ձեռք ձգեն. ինչ հոգ չեն տանիր մարմնոյ առողջութիւննին պահելու համար, ամենէն ապահով միջոցները կընտրեն, վարպետ բժիշկ, աղէկ դեղեր, աղէկ օդ։ Իսկ

1 Իմ կեանք թեթեւագոյն են քան զսուրհանդակ, փախեան եւ ոչ երեւեցան։ Յոբ. Թ. 25։

2 Իբրեւ զնաւ սահեալ՚ի ջուրց կուտակելոց, զորոյ իբրեւ անցանիցէ՝ ոչ գոյ զհետսն գտանել։ Իմաստ. Ե. 10։

3 Զի՞նչ շահ եղեւ մեզ հպարտութիւնն, եւ զի՞նչ մեծութիւն ամբարտաւանութեանն եցէ մեզ նպաստաւոր։ Իմաստ. Ե. 8։

հոգւոյ համար այսպէս անհոգ են ։ Տարակոյս չի կայ որ առողջութիւն ըսածդ ալ , աստիճան ըսածդ ալ , ստակն ալ , հագուստն ալ և ամէն փառքն ու պատիւ օր մը պիտի վերջանան . իսկ հոգին և յաւիտենականութիւնը անվերջ անվախճան են ։ Սուրբն Օգոստինոս կըսէ թէ նայէ ո՛րչափ բան կը քաշեն մարդիկ իրենց սիրած ախտաւոր բաներուն համար ։ Քինախնդիրը , գող աւազակը , մարմնապաշտը , իրենց չար դիտաւորութեանցը հասնելու համար ի՞նչ չեն քաշեր . իսկ հոգւոյն համար մէկ բան մըն ալ քաշել չեն ուզեր ։ Ա՛հ տէր , այն ճրագն որ մահուան ատենը կը վառեն , ան ժամանակը կըսեմ ճշմարտութիւնը կը ճանչցուի , ու ան ժամուն աշխարհասէրք կը խոստովանին իրենց խելագարութիւնը ։ Ան ատեն ամէն մարդ կըսէ . ա՜խ թէ ամէն բանէն ետ կեցած ըլլայի , ու սուրբ եղած ըլլայի ։ Լեոն ԺԱ քահանայապետը մեռնելու ատեն կըսէր թէ ա՜լ աւելի լաւ էր իմ վանքիս դռնապանն ըլլայի , քան թէ պապ ։ Նոյնպէս Ոնորիոս Գ մեռնելու ատեն կըսէր թէ ա՜լ լաւագոյն էր որ վանքիս խոհանոցը կենայի ու ամանները լուայի ։ Փիլիպպոս Բ Սպանիոյ թագաւորը մեռնելու մօտ կանչեց իր որդին ու մէկդի ձգելով թագաւորական հագուստը բացաւ ցցուց իր կուրծքը որ որդերը կրծեր էին և ըսաւ տղուն . Թագաւորացու իշխան , զաւակս , նայէ ինչպէս կըլլայ մեռնիլը , և ինչպէս կը վերջանան աշխըրքիս մեծութիւնները ։ Եւ սկսաւ հառաչելով ըսել . ա՜խ թէ մէկ աշխատաւոր եղբայր մը ըլլայի կրօնի մը մէջ , քան թէ միահեծան թագաւոր ։ Եւ վզէն չուանով փայտէ խաչ մը կախել տուաւ ու իր մահուան բաները կարգաւորեց և դարձաւ տղուն ըսաւ թէ ուզեցի , որդեակ , որ դուն ալ աս բաներուս ներկայ ըլլաս , որպէս զի տեսնես թէ աշխարհքս մահուան ատեն ինչպէս կը վարուի թագաւորաց հետն ալ . այնպէս որ անոնց մահն ալ հաւասար է յետին աղքատի մը մահուանը ։ Վերջապէս՝ ով որ աղէկ կապրի , աղէկ տեղ ունի Աստուծոյ քովն ալ ։ Սոյն այս որդին ալ , որ Փիլիպպոս Գ ըսուեցաւ , իր մեռնելու ատեն , որ 43 տարուան էր , ըսաւ իր հպատակներուն՝ թէ իմ թաղմանս վրայ դամբանական խօսելու ատեն ուրիշ նիւթ մի՛ առնէք , բայց միայն աս տեսարանս որ կը տեսնէք . ը-

սէք թէ Թագաւոր ըլլալը մահուան ատեն ուրիշ բանի չի գար, բայց եթէ աւելի տագնապ բերելու ։ Ու հառաչելով մը ըսաւ . Երանի թէ Թագաւոր եղած չըլլայի, հապա մէկ անապատի մը մէջ Աստուծոյ ծառայելով ապրած ըլլայի . վասն զի հիմա մեծ յուսով կերթայի Քրիստոսի առեւանը յանդիման ըլլալու, և դատապարտութենէ այսչափ չէի վախնար ։ Բայց ատ փափաքները մահուան ատենը ինչ օգուտ ունին, եթէ ոչ աւելի տագնապ և յուսահատութիւն բերելու անոր վրայ որ իր կեանքին մէջ զԱստուած չէ սիրեր ։ Անոր համար սրբուհին Թերեզա կըսէր թէ բանի տեղ պէտք չէ սեպել որ բանն որ մարդու կեանքին հետ կանցնի . լաւագոյն կեանքն է այնպէս ապրիլ՝ որ ետքէն մահուանէ վախ չունենալ ։ Ուստի թէ որ կուզենք տեսնել թէ ինչ են երկրաւոր բարութիւնները՝ մէյմը նայինք մահուան մահճին մէջ եղողին, ու ետքը ըսենք թէ պատիւն ալ, զբօսանքն ալ, հարստութիւնն ալ մէկ օր մը կը վերջանան . ուրեմն պէտք է նայիլ որ սուրբ ըլլանք, և ան բարիքներով միայն հարստանանք որ հետերնիս պիտի տանինք, և անոնցմով գոհ պիտի ըլլանք յաւիտեան ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜հ փրկիչ իմ, դուն այնչափ չարչարանք և անարգանք քաշեցիր իմ սիրոյս համար, իսկ ես այնչափ սիրեցի երկրիս հաճոյքը, ծուխն ու մուխը ու ինչուան այս ունայնութեանցս համար շատ անգամ քու շնորհքդ ոտքի տակ առի ։ Բայց երբոր ես զքեզ կանարգէի, դուն զանց չըրիր քովս մօտենալու ; հիմա ես առաւել չեմ վախնար որ զիս վռնտես, հիմա որ զքեզ կը փնտռեմ և կը սիրեմ բոլորով սրտիւ, և շատ կը ցաւիմ զքեզ դառնացընելուս համար ։ Աստուած սրտի իմոյ, աս օրէս սկսեալ քեզի վիշտ մը տալ ալ չեմ ուզեր, որչափ ալ փոքր ըլլայ . Ճանչցուր ինծի թէ աս բանս թէ ան բանը քեզի անհաճոյ է, ես ալ չեմ ուզեր զայն ընել ։ Գիտցուր ինծի թէ քեզի հաճոյանալու համար ինչ պէտք է ընեմ, ես պատրաստ եմ զայն ընելու ։ Կուզեմ ստուգապէս սիրել զքեզ ։ Սիրով յանձն կառնեմ, տէր, ամենայն ցաւ, ամենայն խաչ, որ քու ձեռքէդ կու գայ . տուր ինծի պէտք ե-

ղած համակերպութիւնը։ Ա՛ստ կիզեա, աստ կտրեա, հոս զիս պատժէ, որպէս զի անդին կարենամ յաւիտեան զքեզ սիրել։ Մարիամ, մայր իմ, զիս քեզի կը յանձնեմ, անդադար բարեխօսէ առ Յիսուս ինծի համար։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Ժամանակը կարճ է, որոնք որ զաշխարհս կը վարեն, որպէս թէ չեն վայելեր, վասն զի աշխարհիս վայելչութիւնն անցնող է[1]։ Ի՞նչ բան է մեր կեանքը աս աշխարհիս վրայ, եթէ ոչ տեսարան մը որ կանցնի ու շուտով կը վերջանայ։ Աստի վայելչութիւն աշխարհի ըսածնիս՝ տեսարան մը, արտարուած մըն է. ինչպէս Կուռնելիոս Ալաբիտէ կըսէ թէ աշխարհքս տեսարանի մը կը նմանի, ազգ երթայ և ազգ գայ։ Ով որ թագաւոր կը ձևանայ, իր ծիրանիին հետը չի տանիր։ Հարցուր դեղի մը կամ տան մը թէ քանի տէր փոխեր է։ Տեսարանը լմնցածին պէս ալ թագաւորը թագաւոր չէ, իշխանն ալ իշխան չէ. հիմա դուն ես տէր ան գեղին կամ պալատին, բայց մահը որ կու գայ՝ ուրիշները տէր կըլլան։

Մէկ ժամու չարիքը ամէն բարեկեցութիւն մոռցընել կու տայ, կըսէ Սիրաք[2]։ Մահուան տխուր ժամը աշխարհիս բոլոր մեծութիւնները, փափկութիւնները, փառքն ու պատիւը մոռցընել կու տայ։ Կազիմիր Լեհաց թագաւորը որ օր մը իր մեծամեծացը հետ սեղան նստեր էր, բերանը խմելու բան մը մօտեցուցած ատեն մեռաւ. այսպէս իրեն համար խաղին տեսարանը վերջացաւ։ Կելսոս կայսրը իր ընտրութեան եօթներորդ օրը սպաննուեցաւ, այսպէս իրեն ալ տեսարանը ասանկ լմնցաւ։ Վլատիսլաւ Պոհեմիոյ թագաւորը՝ տասնը ութը տարուան կտրիճ երբոր ամենայն փառաւորութեամբ կը պատրաստուէր Ֆրանսայու թագաւորին

1 Ժամանակս կարճեալ է ... որ վարիցեն զաշխարհս, որպէս թէ չվայելիցեն. զի անցեալ է վայելչութիւն աշխարհիս այսորիկ։ Ա. Կոր. Է. 29 և 31։

2 Չարիք միոյ ժամու մոռացումն առնէ բարեկեցութեան։ Սիր. ԺԱ. 29։

աղջիկը հարս առնելու՝ յանկարծ առաւօտ մը ցաւէ բռնուեցաւ ու մեռաւ․ ուստի շուտով սուրհանդակները վազեցին իմացուցին եկող հարսին որ ետ դառնայ, վասն զի Վլատիսլաւի վարագոյրն ալ գոցուեցաւ ու տեսարանն ալ լմնցաւ։ Աշխրքիս ունայնութեան աս մտածութիւնը սուրբ ըրաւ զՖրանչիսկոս Պորճեանը․ որ ինչպէս ալ առաջ յիշեցինք, երբոր տեսաւ Իզապէլլա կայսրուհին մեռած այնչափ մեծութեանց մէջ՝ ծաղկեալ հասակով, առաջադրեց զինքը բոլոր Աստուծոյ տալ ըսելով․ ուրեմն այսպէս կը վերջանան եղեր աշխրքիս մեծութիւնները․ ուստի ես աս օրէս ետև կուզեմ այնպիսի տիրոջ մը ծառայել որ չի կարենայ բնաւ մեռնիլ։

Նայինք այնպէս ապրիլ՝ որ մահուան ատեն չի լսենք աւետարանին այն յանդիմանութիւնը՝ թէ անմիտ, թէ որ աս գիշեր հոգիդ քեզմէ առնելու ըլլան նէ, պատրաստածներդ ո՞ւմ պիտի ըլլան[1]։ Ուստի կըսէ սուրբն Ղուկաս թէ նոյնպէս ով որ իրեն անձին համար կը դանձէ՝ Աստուծով չի հարստնար[2]։ Եւ վերջէն ալ կըսէ թէ ջանացէք երկինքը ձեզի գանձ ժողվելու ուր ոչ ցեցը և ոչ ուտիճը կրնան ապականել[3]։ Ջանանք Աստուծոյ սիրոյն մեծ գանձը ձեռք ձգել, չէ նէ սուրբ Օգոստինոսին ըսածին պէս՝ ի՞նչ ունի հարուստ ըսուած մարդը, թէ որ սէր չունի նէ․ ի՞նչ չունի աղքատը, թէ որ սէր ունի նէ։ Մէկն որ ամէն փարթամութիւն ունենայ ու զԱստուած չունենայ, անանկը աշխրքիս ամենէն աղքատն է․ իսկ աղքատը որ զԱստուած ունի՝ ամէն բան ունի։ Եւ ո՞վ է որ զԱստուած ունի բայց եթէ աստուածասէրը․ որ կայ 'ի սէրն՝ բնակեալ է յԱստուած, և Աստուած 'ի նմա բնակէ, կըսէ սիրոյն աշակերտը[4]։

1 Անմիտ յայսմ գիշերի զհոգիդ 'ի քէն 'ի բաց պահանջիցեն, և զոր պատրաստեցերն ո՞ւմ լինիցին։ Ղուկ․ ԺԲ․ 20։

2 Նոյնպէս և որ գանձէ անձին, և ոչ յԱստուած մեծանայցէ։ Անդ։

3 Գանձեցէք ձեզ գանձս յերկինս, ուր ոչ ցեց, և ոչ ուտիճ ապականեն։ Մատթ․ Զ․ 20։

4 Ա․ Յովհ․ Դ․ 16։

### ԻՂՁ ԵՒ ԱՂԱՉԱՆՔ

Ա՜հ Աստուած իմ, չեմ ուզեր որ մէյմըն ալ սատանան իմ հոգւոյս վրայ տէրութիւն ունենայ. կուզեմ որ դուն միայն ըլլաս իմ իշխանս և թագաւորս. ամէն բան կը թողում. քու շնորհքդ վաստըկելու համար. քու շնորհքդ ինծի աւելի մեծ է քան բիւր պսակ և բիւր թագաւորութիւն։ Եւ ո՞վ ունիմ սիրելու՝ եթէ ոչ զքեզ անհուն սիրելիդ, անհուն բարի, գեղեցկութիւն, բարութիւն, սէր անբաւելի։ Ասկէ առաջ ես զքեզ մէկղի թողուցի արարածոց սիրոյն համար. աս բանս՝ է և միշտ պիտի ըլլայ ինծի մեծ ցաւ, որ սիրտս թափանցէ՝ զքեզ վշտացընելուս համար, որ զիս այնչափ սիրեցիր։ Բայց երբոր դուն, Աստուած իմ, կապեցիր զիս այնչափ շնորհքներով, կը յուսամ որ մէյմըն ալ զքեզ սիրելէն զուրկ չեմ մնար։ Այո, կաղաչեմ, ով տէր իմ, իմ բոլոր կամքս և իմ ամէն բանս, և ինչ որ կուզես ըրէ ինծի։ Թէ որ առաջ տակնուվրայ եղայ ինծի դէմ եկած բաներուն համար, ներէ, ասկէց ետև չեմ ուզեր ալ գանգատիլ, տէր իմ, քու կարգաւորութեանցդ դէմ. գիտեմ որ բոլորն ալ սուրբ են և իմ բարւոյս համար են։ Աստուած իմ, ինչ որ քեզի հաճոյ է ըրէ զիս, խօսք կու տամ որ միշտ գոհ կըլլամ, և միշտ շնորհակալ կըլլամ։ Տուր որ զքեզ սիրեմ, ալ ուրիշ բան չեմ ուզեր։ Ի՞նչ են անցաւոր բարիքը, ի՞նչ են փառք պատիւը, ի՞նչ է աշխարհքս. իմ ստեղծողս կուզեմ, զքեզ կուզեմ, Աստուած իմ։ Երանելի ես, ով սուրբ կոյս Մարիամ, որ աշխարքիս վրայ ուրիշ բան չսիրեցիր, բայց՝ի յԱստուծոյ. շնորհք առ ինծի համար՝ որ գոնէ մնացած կեանքիս մէջ քեզի հետևիմ։ Ի քեզ եմ ապաւինեալ, տիրուհի։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԴ.

## ԱՅՍ ԿԵԱՆՔՍ ԴԷՊ Ի ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ ՄԸՆ Է

*Գնաց մարդ իր յաւիտենական տունը* [1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Տեսնելով որ աս երկրիս վրայ այնչափ չար մարդիկ յաջողութեամբ կապրին , և այնչափ արդար մարդիկ ընդ հակառակն նեղութեամբ կապրին , հեթանոսք ալ բնական լուսով հասկըցան աս ճշմարտութիւնս թէ երբոր Աստուած կայ , և Աստուած արդար է , պէտք է որ ուրիշ կեանք մըն ալ ըլլայ , ուր ամբարիշտք պատժուին , և բարիները վարձատրին ։ Արդ ան բանն որ հեթանոսք բնական լուսով միայն ըսին , մեք քրիստոնեայքս հաւատքով կը խոստովանինք՝ թէ ոչ եթէ քաղաք ունինք որ հոս մնայ պիտի , այլ հանդերձեալը կը խնդրենք [2] ։ Աս երկիրս մեր հայրենիքը չէ , հապա անցնելու տեղ մըն է , ուսկից քիչ մը ատենէն պէտք է որ անցնինք մեր յաւիտենական տունը երթանք . գնաց մարդ իր յաւիտենական տունը ։ Անանկ է նէ , ով սիրելի ընթերցող , ան տունն որ հիմա դուն նստեր ես , քու տունդ չէ , հիւրանոց մըն է , ուսկից քիչ ատենէն , և մտքէդ չանցած ժամանակը պէտք է որ ելլես երթաս ։ Գիտցիր որ երբոր մահդ հասնի , քու ամենէն սիրականներդ ալ զքեզ տնէն վռընտել կը նային ։ Ան ատեն ո՞ւր կըլլայ քու ստոյգ տունդ ։ Մարմնոյդ տունը պիտի ըլլայ մէկ փոս մը ինչուան դատաստանին օրը , իսկ հոգիդ պէտք է որ երթայ 'ի տունն յաւիտենից , կամ արքայութիւն և կամ դժոխք ։ Ուստի կըսէ քե-

1 Գնաց մարդ 'ի տուն իւր յաւիտենից ։ Ժողով. ԺԲ. Ե ։

2 Քանզի ոչ եթէ ունիմք քաղաք որ աստէն մնալոց իցէ , այլ զհանդերձելումն խնդրեմք ։ Եբր. ԺԳ. 14 ։

քեզի սուրբն Օգոստինոս թէ հիւր ես, օտարական ես, կանցնիս կերթաս․ խենթ պիտի ըլլար ան պանդուխտ օտարականը որ մէկ երկրէ մը անցնելու ատենը, ուզենար ծախել հոն իր բոլոր ունեցածը չունեցածը որ գեղ մը կամ տուն մը գնէ, զոր քանի մը օրէն ետև պիտի թողնէ երթայ։ Մտածա, կըսէ սուրբ Վարդապետը, որ աս աշխարքիս վրայ կեցած ես ճամբորդի պէս, անցաւորի պէս, մի կապեր սիրտդ բանի մը, տես ու անցիր գնա, ջանա մէկ աղէկ տուն մը գտնել, ուր միշտ պիտի բնակիս։

Թէ որ զքեզ փրկես նէ, երանի քեզի․ ո՜հ ինչ գեղեցիկ տուն է արքայութիւնը․ բոլոր փառաւոր արքունիք թագաւորաց աշխարհի, բոլոր անոնց հարուստ պալատները՝ ախոռ մըն ալ չեն արքայութեան քաղաքին առջևը, որ միայն կրնայ ըսուիլ քաղաք կատարեալ վայելչութեամբ, քաղաք թագաւորին մեծի, քաղաք Աստուծոյ կենդանւոյ։ Հոն կունենաս ամէն բան ուզածէդ աւելի, ընկերութեամբ սրբոց, սուրբ Աստուածածնի և Քրիստոսի Յիսուսի փրկչին բոլորից, առանց մէկ բանէ մը վախնալու․ մէկ խօսքով, կըլլաս բոլոր ուզածներուդ․ովկիանոսի մը մէջ, և այնպիսի ուրախութեան մէջ որ յաւիտեան կը դիմանայ։ Եւ աս ուրախութիւնս անանկ մեծ պիտոր ըլլայ՝ որ բոլոր յաւիտենականութեան մէջ ամէն օր քեզի նոր պիտի երևնայ։ Աստր ներհակ թէ որ դատապարտուիս նէ, վայ խեղճ ողորմելի․ կընկղմիս մէկ կրակի և տանջանաց ծովի մը մէջ, յուսահատ, ամենէն երեսէ ձըգած, և առանց Աստուծոյ։ Ան ալ ո՞րչափ ատեն, հարիւրներ, հազարներ անցնին նէ տարիները՝ կը վերջանա՞ն կարծես քու պատիժդ․ ի՞նչ կըսեմ վերջանալ, հարիւրաւոր միլիոններով տարիները և դարերը կանցնին, քու դժոխքդ դեռ միշտ նորէն կըսկսի։ Ի՞նչ պիտի ըլլայ հազար տարին յաւիտենականութեան առջև, երեկուան օրուան պէս է որ անցաւ[1]։ Հիմա կուզես իմանալ թէ ու՞ր պիտի ըլլայ քու տունդ յաւիտեանս յաւիտենից։ Հոն պիտի ըլլայ՝ ուր որ դուն զքեզ արժանի կընես, և դուն քեզմէ կընտրես քու գործքերովդ։

1 Հազար ամ յաչս տեառն որպէս օր երեկի զի էանց։ Սաղմ․ ՁԹ․ 4։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ուրեմն տէր, ահա իմ վարձքովս արժանի եղած տունս դժոխքն է, վայ ինծի. ուր որ առջի մեղքս ընելէն ետև քու երեսէդ պիտի ինկնայի, առանց յոյս ունենալու մէյմըն ալ զքեզ սիրելու։ Օրհնեալ է յաւիտեան քու ողորմութիւնդ, որով ինծի երկայնամիտ եղար, և ատեն տուիր ճար ընելու իմ չարեացս. օրհնեալ է արիւն փրկչին իմոյ, որ աս ողորմութիւնս ինծի համար ըներ տուաւ։ Ո՛ տէր, քաւ լիցի որ մէյմըն ալ չարաչար գործածեմ քու համբերութիւնդ։ Կը զըղջամ ան չարեացս վրայ որովք զքեզ դառնացուցի, ոչ այնչափ դժոխքի 'արժանի ըլլալուս համար, որչափ քու անբաւ բարութիւնդ ոտքի տակ առնելուս համար։ Քաւ լիցի մէյմըն ալ ատ բանը ընել. աւելի մեռնիլ կուզեմ, քան թէ զքեզ վշտացընել։ Ո՛վ ծայրագոյն բարի, թէ որ հիմա դժոխքը գտնուէի, ոչ ես կրնայի մէյմըն ալ զքեզ սիրել, և ոչ դուն կրնայիր մէյմըն ալ զիս սիրել։ Արդ կը սիրեմ զքեզ և կուզեմ որ քեզի ալ սիրելի ըլլամ։ Իրաւ որ ես արժանի չեմ աս բանիս, բայց արժանի է փրկիչն իմ Յիսուս Քրիստոս, որ զինքը քեզի պատարագեց խաչին վրայ։ Հապա, հայր երկնաւոր, վասն սիրոյ միածնիդ, տուր ինծի շնորհք զքեզ սիրելու միշտ, և քեզի սիրելի ըլլալու։ Կը սիրեմ զքեզ, ով հայր իմ, որ ինծի համար քու որդիդ տուիր։ Կը սիրեմ զքեզ, որդիդ Աստուծոյ, որ ինծի համար մեռար։ Կը սիրեմ զքեզ, մայր Յիսուսի, որ քու բարեխօսութեամբդ առիր ինծի համար ժամանակ ապաշխարութեան. հիմայ ալ, տիրամայր, առ ինծի ցաւ 'ի վերայ մեղացս, սէր առ Աստուած, և սուրբ յարատեւութիւն։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Թէ որ փայտը հարաւ ինկնայ կամ հիւսիսի կողմն ինկնայ, ուր որ ինկնայ հոն կը մնայ[1]։ Քու հոգւոյդ ալ ծառը մահուան օրը ուր որ իյնայ, յաւիտեան 'հոն

1 Եթէ անկցի փայտն 'ի հարաւ և կամ 'ի կողմն հիւսիսոյ, ուր անկցի փայտն անդ կացցէ։ Ժող. ԺԱ. 3։

կը մնայ։ Ուրիշ ճամբայ չունի, կամ յաւիտեան 'ի դըժոխս, կամ միշտ երջանիկ յանսահման ծով փափկութեան, կամ միշտ յուսահատ 'ի խորխորատ տանջանաց։ Ոսկեբերան խորտկաճաշ մեծատան և աղքատ Ղազարոսին վրայ խօսելով կըսէ, ով ապերջանիկ երջանկութիւն, որ զմեծատունը քաշեց տարաւ 'ի յաւիտենական թշուառութիւն. ով երջանիկ ապերջանկութիւն, որ զաղքատն առաւ տարաւ 'ի յաւիտենական երջանկութիւն։

Ի՞նչ բանի կու գան այն սրտնեղուքն ու մտմտուքները, որ ոմանք կընեն ըսելով. ո՞վ գիտէ, արդեօք փրկութեա՞ն որդի եմ թէ կորստեան։ Անանկ մարդուն ըսելու է թէ ծառն որ կը կտրուի նէ ո՞ւր կիյնայ. հոն կիյնայ ուր որ ծռած է։ Դէպ'ի ո՞ր կողմը ծռած ես՝ դուն ալ, եղբայր սիրելի. ի՞նչ կեանք կը վարես. Ջանա միշտ դէպ 'ի հարաւ ծռիլ, զքեզ Աստուծոյ շնորհացը մէջ պահէ, մեղքէ փախիր, աս կերպով կը փրկուիս, և աս կերպով արքայութեան որդի կըլլաս։ Մեղքէ ալ փախչելու համար միշտ աչքիդ առջեն ըլլայ յաւիտենականութեան մտածութիւնը, զորն որ սուրբ Օգոստինոս մեծ խորհրդածութիւն կը կոչէ։ Աս մտածութիւնը որչափ կորիճներ չարժեց որ աշխարհքս թողնեն, ու անապատներուն մէջ ապրին, որպէս զի միայն իրենց հոգին հոգան, և այսպէս ապահովցուցին իրենց հոգին։ Մէյմը որ փրկութեան հասնին՝ յաւիտեանս յաւիտենից զոհ կըլլան։

Ազնուական տիկին մը որ Աստուծմէ հեռու կապրէր՝ դարձի եկաւ հօրն Աւիլայի աս երկու խօսքովը. խաթուն, աս երկու խօսքս միայն մտածէ՝ միշտ և ոչ երբէք։ Հայրն Պօղոս Սէյների օր մը յաւիտենականութեան մտածման այնչափ խորը մտաւ որ շատ գիշեր քունը չէր տանէր, որով անկէց ետև աւելի խստակեաց կեանք մը սկսաւ վարել։ Տրեսելիոս կը պատմէ թէ եպիսկոպոս մը յաւիտենականութեան աս մտածութեամբս սուրբ կեանք կը վարէր, ըսելով միշտ ինքն իրեն թէ ամէն վայրկեան յաւիտենականութեան դրանը քով կեցած եմ։ Կրօնաւորին մէկը փոսի մը մէջ փակուեցաւ և հոն անդադար կը կանչէր, ով յաւիտենականութիւն, ով յաւիտենականութիւն։ Ով որ յաւիտենականութեան կը հաւատայ ու սուրբ

չըլլար, կըսէր դարձեալ Հայրն Անփլա, պէտք է զին-քը խենթանոցը փակել:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜հ, Աստուած իմ, գթա և ողորմէ ինծի, ես արդէն գիտէի որ մեղք գործելով ինք զինքս յաւիտենական տանջանաց կը դատապարտէի, և սա ամէն տանջանք-ներն ալ ճանչնալով դարձեալ քու կամացդ հակառա-կեցայ. և ինչ բանի համար. մէկ չնչին հաճոյք մը կա-տարելու համար: Ով Աստուած իմ, ներէ ինծի, վասն զի կը ցաւիմ կը զղջամ բոլոր սրտանց. ասկէ ետև չեմ ուզեր քու սուրբ կամացդ դէմ բան մըն ալ ընել: Վայ էր գլխուս թէ որ վատթարութեանս առեն մահ ղրկէիր ինծի. հիմա դժոխքին մէջ պիտի ըլլայի յա-ւիտեան հոն կենալու, և քու կամքդ՝ ատելու: Բայց հիմա ես զքեզ կը սիրեմ, և կուզեմ միշտ սիրել: Ուսո ինձ առնել զկամս քո, սորվեցուր ինծի և զօրութիւն տուր որ ասկից ետև քու կամքդ կատարեմ: Չեմ ու-զեր մէյմըն ալ քեզի հակառակ կենալ, ով բարութիւն անսահման. աս շնորհքս քեզմէ միայն կը խնդրեմ, եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի. տուր ին-ծի որ միայն քու կամքդ ընեմ կատարելապէս, ալ ու-րիշ բան չեմ ուզեր: Եւ ինչ է քու ուզածդ, Աստուած իմ, բայց միայն իմ բարիքս, և իմ փրկութիւնս: Ով Հայր երկնաւոր, լսէ ինծի վասն սիրոյ քու միածնիդ Յիսուսի Քրիստոսի, որ ինքը ինծի սորվեցուց այս-պէս աղօթք ընել միշտ, ես ալ իրեն անուամբը կը խնդրեմ որ եղիցին կամք քո, եղիցին կամք քո, եղի-ցին կամք քո: Երանի ինծի թէ որ մնացած կեանքս քու կամքդ կատարելով անցնեմ ու լմնցընեմ: Երանի քեզի, տիրամայր, որ միշտ Աստուծոյ կամքը ըրիր կա-տարելապէս. ինծի համար ալ շնորհք առ. արդիւնքովդ, որ գոնէ մնացած կեանքիս մէջ ես ալ զայն ընեմ:

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Գնաց մարդ իրեն յաւիտենական տունը. ասով կու-զէ ըսել սուրբ գիրքը թէ ամէն մարդ ան տունը կեր-թայ՝ ուր որ երթալ կուզէ. չէ թէ ուրիշներէն հոն կը տարուի, հապա ինքն իր կամքը կերթայ: Գիտենք որ

Աստուած կուզէ որ ամէն մարդ փրկուի, բայց չուզեր զմեզ բռնադատել որ հարկաւ փրկուինք։ Մարդուս առջև դրուած է կեանք և մահ, որուն որ հաճի նէ՝ այնպիսի իրեն տրուի։ Նոյն բանը կըսէ և Երեմիա, թէ Աստուած դիմացնիս երկու ճամբայ դրեր է, մէկը կենաց ու մէկալը մահուան. մէկը արքայութիւն կը տանի մէկալը դժոխք։ Ուստի բանը կը մնայ մեր ընտրելուն վրայ. որ ճամբան կուզենք նէ՝ ան ճամբէն կերթանք։ Բայց թէ որ մէկը դժոխքին ճամբան քալել կուզէ, ինչպէս կրնայ ետքը արքայութիւն հասած ըլլալ։ Աս ինչ խելքէ դուրս բան է. ամէն մեղաւոր փրկուիլ կուզէ, բայց ետքը՝ իրենք զիրենք դժոխք կը դատապարտեն, ըսելով թէ յուսամ որ կը փրկուիմ։ Բայց սուրբ Օգոստինոսին ըսածին պէս՝ ո՞ր խենթը կայ որ թոյն խմէ՝ յուսալով որ կառողջանայ։ Եւ սակայն քանի՜ քանի քրիստոնեայք կան որ ամէնն ալ մէյմէկ խենթ են, մեղքով իրենք զիրենք կը մեռցընեն ըսելով թէ քիչ մը ետքը կը մտմտամ։ Ո՜վ սոսկալի մոլորութեանս, որով անհամար հոգիք դժոխք գնացած են։

Մենք ալ աս խենթերէն չենք, գիտնալով որ յաւիտենականութեան հետ է բանը և անփոյթ կեցեր ենք։ Ո՛րչափ աշխատանք կը քաշեն մարդիկ իրենց դիւրութեանը համար տուն մը գտնելու՝ որ աղէկ օդ և հովահար ըլլայ, մտածելով որ բոլոր կեանքը ատեն հոն պիտի նստի. հապա ետքը ինչպէս ասանկ անհոգ կը շարժին երբոր բանը ան տանը համար է՝ ուր որ յաւիտեան պիտի կենան։ Մեր բանը որուն վրայ կը ճըգնինք, յաւիտենականութիւնն է, կըսէ սուրբն Եւգերիոս։ Բաներնիս այնպիսի տան համար չէ որ քիչ մը աւելի կամ պակաս հանգիստ ըլլայ. հապա այնպիսի տեղ բնակելու համար է որ կամ ամենայն զուարճութեամբ լի է և Աստուծոյ բարեկամօքը, կամ մէկ խորխորատ մըն է տանջանաց և վատանուն խաժամուժներու, անթիւ անզգամաց, հերետիկոսաց ու կռապաշտից, ան ալ անվախճան յաւիտեան։ Հոս է մեծ բանը, սոսկալի բանը. ասիկայ քիչ ատենուան թեթև բան մը չէ, հապա ամէն բանէն վեր է, և մեր ամենայն բարին կամ չարն անկից կախուած է։ Երբոր Հենրիկոս Ը՚ի մահ դատապարտեց զԹովմաս Մորոս, ան ատեն իրեն Լուիզա կնիկը գնաց զինքը համոզե֊

լու որ Հենրիկոսին ուզածն ընէ․ ան ալ ըսաւ․ ով Լուիզա, կը տեսնես որ ես արդէն ծերացեր եմ․ քանի՞ տարի ալ կրնամ ապրիլ։ Կնիկն ըսաւ թէ քանի տարի մըն ալ կրնաս ապրիլ։ — Ան ատեն պատասխանեց Թովմաս․ ով անմիտ վաճառական, կուզես քանի տարուան համար կորսընցընեմ երանելի յաւիտենականութիւնը, ու զիս դատապարտեմ յաւիտենական տանջանաց։

Ով Աստուած, լոյս տուր ինծի․ թէ որ յաւիտենականութիւնը տարակուսական բան մը ըլլար, կամ սոսկ հաւանական կարծիք մը, տակաւին ամենայն հոգւով պիտի ջանայինք աղէկ կեանք ունենալ, որպէս զի չի դնենք զմեզ՝ի վտանգ յաւիտենից թշուառութեան՝ թէ որ յանկարծ ատ կարծիքը ստոյգ ըլլար։ Եւ սակայն աս բանս կարծիքական բան չէ, ստոյգ բան է, և ճշմարտութիւն հաւատոյ․ գնաց մարդ իր յաւիտենական տունը։ Ո՜վ արտասուելի պակասութիւն հաւատոյ․ այս է, կըսէ սրբուհին Թերեզա, պատճառ այնչափ մեղաց, և դատապարտութեան այնչափ քրիստոնէից։ Հա՛պա, միշտ կենդանի հաւատքով ապրինք․ հաւատամք՝ի կեանսն յաւիտենականս․ հաւատքս աս է, որ աս կեանքէս ետև ուրիշ կեանք մը կայ անվախճան, և աս մտածութիւնս միշտ աչքի առջև ունենալով ապահովցընենք մեր յաւիտենական փրկութիւնը հարկաւոր միջոցներով։ Անպակաս մերձենանք սուրբ խորհրդոց, վտանգաւոր առիթներէն փախչինք, ամէն օր մտածենք, և յաւիտենական կեանքը մտքերնէս չի հանենք։ Թէ որ աշխարհքս ալ թողնել պէտք ըլլայ՝ թողնենք, վասն զի չի կայ այնպիսի ապահովութիւն մը որ հերիք ըլլայ ապահովցընելու յաւիտենական փրկութեան աս մեծ բանը։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ասանկ է նէ, Աստուած իմ, ուրիշ միջին ճամբայ մը չի կայ․ կամ միշտ երջանիկ պիտի ըլլամ, կամ միշտ թշուառ․ կամ մէկ երջանկութեան ծովու մը մէջ պիտի ընկղմիմ, և կամ՝ի ծով տանջանաց․ կամ յաւիտեան արքայութեան մէջ պիտի ըլլամ քեզի հետ, կամ յաւիտեան քեզմէ հեռու և բաժնուած՝ի դժոխս։ Եւ ատ դժոխքին գիտեմ որ ես շատ անգամ արժանի

եղայ․ բայց աս ալ ստոյգ գիտեմ որ դուն կը ներես անոր որ կը զղջայ, և կը փրկես դժոխքէն զապաւինեալս 'ի քեզ։ Դու կապահովցընես զիս ըսելով․ կարդասցէ առ իս, և ես լուայց նմա․ փրկեցից զնա, և փառաւոր արարից զնա։ Ուրեմն շուտով, տէր իմ, շուտով ներէ ինծի, և դժոխքէն զիս խալըսէ։ Կը զղջամ, ով ծայրագոյն բարի, ամէն չարեացս վրայ որով զքեզ վշտացուցի։ Շուտով զիս քու շնորհացդ մէջ հաստատէ, սիրտ սուրբ հաստատեա յիս Աստուած։ Թէ որ հիմա դժոխքն ըլլայի, մէյմըն ալ զքեզ չէի կրնար սիրել, այլ յաւիտեան պիտի ատէի․ ա՜հ Աստուած իմ, ի՞նչ չարիք ինծի ըրեր ես, որ ես զքեզ ատէի։ Դուն զիս սիրեցիր մինչև 'ի մահ, դուն արժանի ես անհուն սիրոյ․ մի՛ թողուր, ով տէր, որ ես մէյմըն ալ քեզմէ բաժնուիմ, ես զքեզ կը սիրեմ, և կուզեմ միշտ սիրել․ ո՛վ մեկնեսցէ զիս 'ի սիրոյն Քրիստոսի։ Ա՛խ փրկիչ, միայն մեղքը կրնայ զիս քեզմէ զատել․ ա՛խ մի՛ թողուր զիս սուրբ արեանդ սիրոյն համար զոր ինծի համար թափեցիր․ տուր ինծի մեռնիլ, և մի՛ թող տար քեզմէ զատուելու։ Մայր իմ, երկնից արքայուհի, օժանդակեա ինձ թևօքդ աղօթից․ խնդրէ և առ ինծի համար մահ, և հազար մահ, քան թէ զատուիլ 'ի սիրոյ միածնիդ։

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԵ․

### ՄԱՀՈՒՉԱՓ ՄԵՂԱՑ ՉԱՐՈՒԹԻՒՆԸ

*Որդիք ծնայ և բարձրացուցի, և անոնք զիս անարգեցին*[1].

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ի՞նչ կընէ մէկ մահուչափ մեղք գործող մը։ Զաստուած կանարգէ, կանպատուէ և կը դառնացընէ։

1 Որդիս ծնայ և բարձրացուցի, և նոքա զիս անարգեցին։ Ես․ Ա․ 1։

Նախ և առաջ մահուչափ մեղքը անարգանք մըն է, և անիրաւութիւն մը Աստուծոյ դէմ։ Անարգանաց չարութիւնը, որքոյն Թովմայի ըսածին պէս, անարգուած անձէն և անարգող անձէն կը չափուի։ Գեղացիի մը դէմ անարգանք մը ընել՝ չար բան է, բայց աւելի յանցանք է մէկ ազնուական մը անարգելը, ալ աւելի ծանր է զթագաւորը անարգելը։ Արդ ո՞վ է Աստուած. տէր տերանց և թագաւոր թագաւորաց։ Աստուած է անսահման մեծվայելչութիւն. համեմատութեամբ իրեն ամենայն թագաւորք երկրի և ամենայն սուրբք և հրեշտակք երկնից իր առջևը մէկ աւազի հատ մը չեն. իբրև կաթիլ մի 'ի դուլէ են, Եսայի մարգարէին ըսածին պէս, և իբրև զմէտ մի 'ի կշռոց։ Մանաւանդ թէ Ովսէ մարգարէին ըսածին պէս, ամենայն հեթանոսք ոչինչ են և ոչինչ համարեցան նմա։ Աս է Աստուած. հապա մարդս ի՞նչ է. պարկ որդանց, կերակուր որդանց, որքոյն Բեռնարդոսին ըսածին պէս. սուրբ գիրքն ալ կըսէ թէ դու ես հեղ և աղքատ, հոյր և մերկ։ Եւ ահա այսպիսի ողորմելի մարդ մը, որդ մը, կը յանդգնի զԱստուած անարգել։ Նոյն Բեռնարդոսին ըսածին պէս, զայնպիսի ահաւոր մեծվայելչութիւնը կը համարձակի գրգռել չնչին և պզտիկ հող մը և փոշի մը։ Ուստի սուրբն Թովմաս հրեշտակային վարդապետը իրաւունք ունէր ըսելու թէ մեղքը անհունութիւն մը ունի չարութեան. մանաւանդ թէ սուրբ Օգոստինոս զմեղքը բացարձակապէս կը կոչէ անհուն չար։ Անոր համար թէ որ ամէն մարդիկ և բոլոր հրեշտակք զիրենք զոհէին, նաև ոչնչացընէին, չէին կրնար բաւական փոխարէն մը ընել մէկ մեղքի մը համար։ Աստուած զմահուչափ մեղքը կը պատժէ դժոխոց ոստկալի տանջանքով. բայց որչափ ալ պատժէ նէ, կըսեն միաբան ամէն աստուածաբանք, միշտ արժանի եղածէն պակաս կը պատժէ։

Եւ ո՞ր պատիժ կրնայ հերիք ըլլալ պատժելու մէկ որդ մը արժանապէս, որ իր տիրոջը դէմ ելեր է։ Աստուած ամէն բանին տէրն է, վասն զի ինքն ստեղծեց զամէնքը. քում հրամանիդ սպասէ ամենայն ոք, զի դու տէր արարեր, և դու տիրես 'ի վերայ ամենայնի[1]։

1 Եսթէր. ԺԳ. Թ։

Եւ իրաք ալ ամէն արարածք կը հնազանդին Աստուծոյ, հողմք և ծովք կը հնազանդին իրեն. հուր և կարկուտ, ձիւն և սառն առնեն զբան նորա։ Իսկ մարդս երբոր կը մեղանչէ Աստուծոյ դէմ, ի՞նչ կընէ. Աստուծոյ կըսէ, տէր՝ ես քեզի չեմ ուզեր ծառայել։ Աստուած կըսէ թէ վրէժխնդիր մի ըլլար. մարդս կը պատասխանէ թէ ես կըլլամ. Աստուած կըսէ թէ անկարգ հեշտութենէ հեռու կեցիր. իսկ ես չեմ ուզեր հեռանալ։ Մեղաւորը Փարաւոնի պէս կըսէ թէ ո՞վ է տէր, զի լուայց նմա, զտէր ոչ ճանաչեմ։ Մեղաւորն ալ նոյնպէս կըսէ թէ ես տէր չեմ գիտեր, ուզածս պիտի ընեմ. մէկ խօսքով Աստուծոյ երեսէն չի պատկառիր, կռնակ ալ կը դարձընէ իրեն, որ է բուն մահուչափ մեղքը. կամ ըստ սրբոյն Թովմայի՝ երեսդարձութիւն անփոփոխելւոյն Աստուծոյ։ Անոր համար զանգատ կընէ Աստուած թէ դու դարձար յինէն, և յետս գնացեր։ Աստուած վճիռ դրաւ թէ ինքը զմեղս կատէ, ուստի չի կրնար չատել զմեղաւորն ալ. առ հասարակ ատելի են Աստուծոյ ամբարշտեալն և ամբարշտութիւն իւր. և մարդս երբոր կը մեղանչէ նէ, կը համարձակի զինքը Աստուծոյ թշնամի հրատարակել, և դէմ ընդդէմ Աստուծոյ հետ կը կռուի։ Ի՞նչ կըսէիր թէ որ տեսնէիր որ մրջիւն մը զինուորի մը դէմ կելլէ։ Աստուած է ան ամենակալ տէրը, որ մէկ ակնարկութեամբ մը ստեղծեց զերկինս և զերկիր, և ուզէ նէ՝ մէկ ակնարկութեամբ մըն ալ բոլորը կրնայ փճացընել. իսկ մեղաւորը իր մեղքովը Աստուծոյ դէմ ձեռք կը վերցընէ, ու գլուխը վերցընելով՝ կըսէ ալ, ի՞նչ բան ըրի. ի՞նչ, մեծ չա՞ր մըն է մեղք ընելս. Աստուած ողորմած է, մեղաւորաց կը ներէ։ Կը տեսնես, աս ի՞նչ անզգամութիւն է, ի՞նչ յանդգնութիւն, ի՞նչ կուրութիւն։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ահա, ով Աստուած իմ, ոտքիդ առջեւն է ան ապըստամբը, ան անզգամը, որ համարձակեցաւ քեզի դէմ այնչափ անգամ, զքեզ չի սեպեց ու երես դարձուց քեզի։ Բայց հիմա քու գթութեանդ է ապաւիներ։ Դուն ըսիր, կարգա առ իս և ես լուայց քեզ։ Ինծի համար քիչ է մէկ դժոխքը՝ գիտեմ. բայց գիտցիր որ հիմա ա-

ւելի կը ցաւիմ զքեզ վշտացընելուս համար, ով անհուն բարի, քան թէ կորուսած ըլլայի ամէն բանս ալ՝ կեանքս ալ։ Ա՜խ տէր, թող ինծի և մի թոյլ տար որ մէյմըն ալ զքեզ վշտացընեմ։ Դուն կըսպասես ինծի որ յաւիտեան օրհնեմ քու ողորմութիւնդ, ու զքեզ սիրեմ։ Այո տէր, կօրհնեմ զքեզ, կը սիրեմ զքեզ, յոյս ունիմ յարգիւնս փրկչին իմոյ Յիսուսի Քրիստոսի, որ մէյմըն ալ չբաժնուիմ 'ի քո սիրոյդ։ Քու սէրդ զիս դժոխքէն խալըսեց, նոյն սէրը զիս պիտի խալըսէ ասկէց ետև մեղքէն ալ։

Գոհանամ զքէն տէր, որ աս լոյսն ու բաղձանքը տուիր ինծի զքեզ միշտ սիրելու. դուն եղիր կաղաչեմ բոլոր անձիս, հոգւոյս, մարմնոյս, կարողութեանցս, զգայութեանցս, կամացս և ազատութեանս տէրը. քո եմ ես և կեցո զիս։ Դուն որ իմ մէկ հատիկ բարիս ես, իմ մէկ հատիկ սիրելիս, եղիր նաև իմ մէկ հատիկ սէրս։ Տուր ինծի եռանդն զքեզ սիրելու։ Ես զքեզ շատ վշտացուցի, ուստի հերիք չէ զքեզ սիրել, կուզեմ շատ և շատ սիրել, որ փոխարէն մը ըլլայ այնչափ անարգանացն որ քեզի դէմ ըրեր եմ. քեզմէ աս բանս կը յուսամ, որ ամենակարողդ ես։ Քու բարեխօսութեանդ ալ յոյս ունիմ, տիրամայր Մարիամ, որ ամէն բանի կարող ես Աստուծոյ առջև։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Մեղաւորը չէ թէ միայն կանիրաւի առ Աստուած, հապա նաև կանպատուէ և կանարգէ։ Այո, վասն զի մէկզի կը ձգէ իր շնորհքը, ու չնչին հաճոյից համար ոտքի տակ կառնէ Աստուծոյ բարեկամութիւնը։ Թէ որ մարդս Աստուծոյ բարեկամութիւնը կորսընցընէ՝ թագաւորութիւն մը կամ բոլոր աշխարհքը վաստըկելու համար, տակաւին մեծ չարիք կընէ. վասն զի Աստուծոյ բարեկամութիւնը առաւել քան զաշխարհս և զբիւր տիեզերս կարժէ։ Բայց ինչ բանի համար մէկը կը վշտացընէ զԱստուած. քիչ մը հողի համար, կրից և բարկութեան համար, անասնական հաճոյից համար, քմաց համար։ Երբոր մեղաւորը կը մտմտայ թէ արդեօք աս մեղքին հաւանի թէ չէ, ձեռքը կշիռ մը կառնէ՝ տեսնելու թէ որը աւելի ծանր է, արդեօք Աս-

տուծոյ շնորհքը, թէ իր ուզած բանը. երբոր մեղքին կը հաւանի, յայտնի կընէ իր կողմանէ թէ իրեն ուզածը աւելի կարժէ քան թէ Աստուծոյ բարեկամութիւնը: Տեսա՞ր որ մեղաւորը զԱստուած ամօթ ըրաւ: Դաւիթ մարգարէն Աստուծոյ մեծութիւնը և մեծվայելչութիւնը մտածելով կըսէր. տէր, ո՞ նման քեզ: Ասոր ներհակը՝ Աստուած տեսնելով որ մեղաւորք զինքը իրենց ուզածէն վար կը սեպեն, կըսէ իրենց. ո՞ւմ նմանեցուցէք զիս, և զուգեցայց ասէ սուրբն Իսրայէլի: Ուրեմն կըսէ Աստուած թէ աւելի կարժէ եղեր ձեր չնչին կամքը, քան թէ իմ շնորհքս. անոր համար դարձեալ կըսէ թէ ընկեցեր զիս զկնի մարմնոյ քոյ, զայն մեղքը չէիր ըներ՝ թէ որ մէկ ձեռքդ կորսնցընելու ըլլայիր, կամ մէկ քանի ստըկէ ելլելու ըլլայիր. ուրեմն ես միայն՝ քու ստեղծողդ այնչափ անարգ եմ եղեր քու աչքիդ առջև որ մէկ չնչին կամացդ համար զիս ետ կը ձգես:

Մէյմըն ալ՝ երբոր մեղաւորը իր մէկ հաճոյիցը համար զԱստուած կը վշտացընէ, ան ատեն նոյն հաճոյքը իրեն աստուածը կըլլայ, վասն զի զանիկայ կը սեպէ իր վերջին վախճանը: Սրբոյն Հերոնիմոսի ըսածին պէս՝ թէ ի՛նչ բանի որ մէկը կը ցանկայ, և զայն կը յարգէ, անիկայ իրեն աստուածն է. մոլութիւն մը մարդուս սրտին մէջ կուռք մըն է բագնի վրայ: Ուստի կըսէ սուրբն Թովմաս՝ թէ որ փափկութիւն կը սիրես, փափկութիւնը կըլլայ քու աստուածդ: Եւ սուրբն Կիպրիանոս ալ կըսէ՝ թէ զոր ինչ մարդս նախապատիւ կառնէ քան զԱստուած, զանիկայ իրեն աստուածը կը կացուցանէ: Երբոր Յերոբովամ ապստամբեցաւ Աստուծմէ, ջանաց որ ժողովուրդն ալ իր հետը 'ի կռապաշտութիւն ձգէ, ուստի անոնց առջևը դրաւ իր կուռքերը ըսելով. ասոնք են քու աստուածներդ, Իսրայէլ: Սատանան ալ ասանկ կընէ. մեղաւորին առջևը կը դնէ անոր կամքին ուզածն ու կըսէ. ի՛նչ բան ունիս Աստուծոյ հետ, ահա քու Աստուածդ, քու կամքդ, զաս բռնէ, զԱստուած թող տուր. թէ որ մեղաւորը տեղիք տայ՝ ալ անկէ ետև Աստուծոյ տեղ կը պաշտէ իր կամքը, վասն զի մոլութիւնը մարդուս սրտին մէջ կուռք մըն է բագնի վրայ:

Գէթ մեղաւորն որ անպատիւ կընէ և կանարգէ զԱս-

տուած, գոնէ Աստուծոյ առջևը չընէր․ բայց ինքը զԱստուած Աստուծոյ դիմացը կանարգէ, վասն զի Աստուած ամէն տեղ է․ միթէ զերկինս և զերկիր ես ո՞չ լնում, ասէ Տէր[1]։ Աս բանս արդէն մեղաւորն ալ գիտէ, և սակայն չի վախեր Աստուծոյ դիմացը զԱստուած անարգել։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ուրեմն, Աստուած իմ, դու ես անհուն բարի, և ես շատ անգամ զքեզ փոխեցի մէկ չնչին զբօսանքի մը հետ, որ երևցած չերևցած կը փճանայ կերթայ։ Բայց դուն ինձմէ այսչափ անարգանք ունենալէն ետև՝ դարձեալ ինծի կը ներես՝ թէ որ ես թողութիւն խնդրեմ, և նորէն խօսք կու տաս քու շնորհքդ տալ ինծի՝ թէ որ ես զղջամ քեզի տուած վշտերուս վրայ։ Այո այո, Տէր իմ, կը զղջամ կը ցաւիմ բոլոր սրտանց զքեզ անարգելուս համար, կատեմ զմեղս քան զամենայն չար։ Ահա, ինչպէս կը յուսամ, արդէն դարձեր եմ առ քեզ, և դուն արդէն զիս ընդունելով զաւկի պէս կը գրկես։ Գոհանամ զքէն, անբաւելի բարութիւն․ բայց կաղաչեմ, օգնէ ինծի, և մի՛ թողուր որ մէյմըն ալ քեզմէ երես դարձընեմ․ մի՛ թողուր որ դժոխքը զիս փորձէ, վասն զի դուն աւելի զօրաւոր ես քան զդժոխս։ Գիտեմ որ ա՛լ քեզմէ չեմ բաժնուիր՝ թէ որ միշտ զիս քեզի յանձնեմ նէ․ ուստի աս շնորհքս կը խնդրեմ, որ տաս ինծի միշտ զիս քեզի յանձնել, ինչպէս հիմա կը յանձնեմ ըսելով․ Տէր, օգնէ ինծի, լոյս տուր ինծի, յարատևութիւն տուր ինծի, արքայութիւնդ տուր ինծի․ բայց ՚ի վեր քան զամենայն քու սէրդ տուր ինծի որ է ճշմարիտ արքայութիւն հոգւոց․ կը սիրեմ զքեզ, անհուն բարիդ, և կուզեմ միշտ զքեզ սիրել, լսէ ինծի վասն սիրոյ քոյ միածնիդ Յիսուսի Քրիստոսի։ Մարիամ կոյս, դու ես ապաւէն մեղաւորաց, հասիր յօգնութիւն աս մեղաւորիս, որ կուզէ սիրել զԱստուած քոյ։

1 Երեմ. ԻԳ. 24։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Մեղաւորը կանխաւ առ Աստուած, կանպատուէ և կանարգէ, որով և ծանրագոյնս կը վշտացընէ զնա: Քան զայս մեծ դառնութիւն չի կրնար ըլլալ որ մէկը ապերախտութիւն տեսնէ մէկ անձէ մը զոր սիրեր է և երախտիք ըրեր է անոր: Որո՞ւն հետ կռիւ կելլէ մեղաւորը. կանարգէ զԱստուած որ զինքն ստեղծեր է, և այնքան սիրեր է զինքը, որ իր արիւնն ալ, կեանքն ալ տուեր է իր սիրոյն համար. իսկ ինքը մահուչափ մեղք մը ընելով զանիկայ իր սրտէն կը վռընտէ: Աստուած իր սիրած հոգւոյն մէջ կու գայ բնակելու. եթէ ոք սիրէ զիս, հայրն իմ սիրեսցէ զնա, և առ նա եկեսցուք և օթևանս առ նմա արասցուք՝ կըսէ Քրիստոս տէրն մեր: Հասկըցի՛ր ինչ ըսել է՝ օթևանս առնել. Աստուած կու գայ առ հոգին՝ հոն միշտ մնալու համար. անանկ որ՝ չի թողուր զանիկայ՝ թէ որ հոգին նախ զինքը չթողու. ինչպէս Տրիդենտեան ժողովքն ալ կըսէ, ոչ լքանէ, եթէ ոչ լքցի: Բայց դու տէր, գիտես որ ան ապերախտը քիչ մը ետև զքեզ պիտի վռընտէ, ինչո՞ւ հիմակուընէ չես հեռանար անկէ, միթէ կըսպասես որ ինքն զքեզ վռընտէ, թող տուր զինքը, գնա, քանի որ քեզի անարգանք չէ ըրած: Չէ, կըսէ Աստուած, ես չեմ հեռանար, քանի որ ինքը զիս չէ վըռընտեր:

Ուրեմն երբոր մեղաւորը տեղիք կու տայ մեղքի մը, կուզէ ըսել Աստուծոյ. տէր, ելիր գնա ինծմէ: Ինչպէս Յոբ ալ կը վկայէ. ամբարիշտը կըսէ Աստուծոյ՝ հեռու կեցիր ինծմէ, քու ճանապարհդ ճանչնալ չեմ ուզեր[1]: Ուր կըսէ սուրբն Գրիգոր, թէ խօսքով չըսէ նէ՝ գործքովը և վարքովը կըսէ: Արդէն մեղաւորն ալ գիտէ որ Աստուած մեղքին հետ չի կրնար կենալ, գիտէ որ մեղանչէ նէ՝ Աստուած 'ի հարկէ կելլէ կերթայ, աստի կըսէ Աստուծոյ. որովհետև իմ մեղքիս հետ չես կրնար կենալ, երթաս բարով: Իսկ երբոր զԱստուած իր հոգիէն կը վռընտէ, անանկ կընէ որ անմիջապէս

1 Ի բաց կաց յինէն, զճանապարհս քո ճանաչել ոչ կամիմ: Յոբ. ԻԱ. 14:

սատանան գայ իր սիրտը ժառանգէ. Նոյն գունէն որ Աստուած կելլէ, սատանան ներս կը մտնէ։ Յայնժամ երթայ առնու այլ ևս եօթն այսս՝ չարագոյնս քան զինքն, և մտեալ բնակէ անդ, կըսէ տէրն մեր։ Տղայ մը մկրտուի նէ, քահանան կըսէ դիւին թէ ել 'ի դմանէ այսդ պիղծ, և տուր տեղի հոգւոյն սրբոյ. վասն զի երբոր մէկը Աստուծոյ շնորհքը կառնէ՝ Աստուծոյ տաճար կըլլայ, ո՞չ գիտէք զի տաճար էք Աստուծոյ, կըսէ Պօղոս առաքեալ։ Բայց երբոր մարդս մեղաց կը հետևի, բոլորովին ներհակը կընէ, ըսելով Աստուծոյ որ արդէն իր սրտին մէջը կը բնակէր. ելիր ինծմէ, տէր, և տեղ տուր սատանային։ Ուստի աս բանիս վրայ գանգատեցաւ տէրն մեր սրբուհւոյն Պրիճիտայ, ըսելով թէ վռնտուեցայ թագաւորի մը պէս իմ թագաւորութենէս, և իմ տեղս չար աւազակը ընտրուեցաւ։

Ո՞րչափ դժարդ կու գար թէ որ ծանր անարգանք մը քեզի ըլլար ան մարդէն որ քեզմէ երախտիք է տեսեր։ Եւ ահա այսպէս է. Աստուծոյ դժարը կը բերես դու մեղքովդ, անոր որ իր կեանքն ալ տուեր է քեզի համար՝ միայն թէ զքեզ փրկէ։ Աս է Աստուծոյ ըսածը Եսայի մարգարէին բերնովը թէ լուր երկինք և ունկն դիր երկիր, որդիս ծնայ և բարձրացուցի, և նոքա զիս անարգեցին։ Վերջապէս մեղաւորք իրենց մեղքովը Աստուծոյ սիրտը կը վշտացընեն. բայց նոքա հեստեցին և բարկացուցին զհոգի նորա սուրբ։ Աստուած ընդունակ չէ ցաւոց. բայց կարենար ցաւիլ նէ, մէկ մահուչափ մեղք մը հերիք էր որ ցաւէն մեռնիլ տայ իրեն։ Հօրն Մետինայի ըսածին պէս, ինչպէս սուրբն Բեռնարդոս ալ ըսաւ, թէ մեղքն իր կողմանէ աստուածասպան է։ Ուստի մեղաւորն այնպէս է որպէս թէ Աստուծոյ մահացուցիչ թոյն տուած ըլլայ. և սըրբոյն Պօղոսի ըսածին պէս՝ մեղաւորը զորդին Աստուծոյ առ ոտն եհար բանի տեղ չի սեպելով Քրիստոսի ըրածը և քաշածը՝ աշխարքէս մեղքը վերցընելու համար։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ուրեմն, ով փրկիչ իմ, քանի որ ես կը մեղանչեմ, միշտ զքեզ սրտէս կը վռնտեմ, ու կեանքդ ալ վերցընելու կը նայիմ, թէ որ կարենայիր նորէն մեռնիլ։ Հիմա կիմանամ որ ինծի կըսես մարգարէին բերնով թէ

զի՞ արարի քեզ , կամ ի՞ւ տրտմեցուցի զքեզ , տուր ինձ պատասխանի . ինչ ըսեմ , տէր , դու զոյացուցեր զիս , մեռար ալ ինծի համար , այս է ինծի ըրածդ . ուստի ես անպատասխանի եմ , և հազար դժոխքի արժանի , իրաւունք ունիս զիս հոն խաւրելու ։ Բայց յիշէ կաղաչեմ զայն սէրը , որ զքեզ շարժեց խաչի վրայ մեռնելու ինծի համար , յիշէ քու սուրբ արիւնդ որ իմ սիրոյս համար թափեցիր , և գթա յիս ։ Գիտեմ որ դուն չես ուզեր որ ես յուսահատիմ , հապա մանաւանդ թէ կը հասկըցընես ինծի թէ իմ սրտիս դրանը քով կեցեր ես , ուսկից որ ես զքեզ վռընտեցի . կը չալես քու ազդարարութեամբդ՝ որ քեզի բանամ , կըսես՝ կամ առ դուրս քո և բախեմ , բաց ինձ քոյր իմ հարսն ։ Ուստի փըրկիչ իմ Յիսուս , ասկից ետև ես մեղքը կը վռընտեմ , կը ցաւիմ յամենայն սրտէ ըրածներուս վրայ , և զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր . մտիր , սէր իմ , դուռս բաց է , մտիր և ինծմէ մի՛ բաժնուիր ։ Փրկէ զիս քու սուրբ սիրովդ , և մի՛ թողուր որ մէյմըն ալ քեզմէ զատուիմ ։ Չէ , չէ մէյմըն ալ իրարմէ չի զատուինք , ես սրտանց զքեզ կողջագուրեմ . տուր ինծի սուրբ յարատեւութիւն , մի՛ թողուր զիս մեկնիլ՚ի քէն ։ Տիրամայր , մայր իմ Մարիամ , միշտ օգնէ ինծի , աղաչէ զՅիսուս ինծի համար , շնորհք առ ինծի որ մէյմըն ալ իր շնորհքը չի կորսընցընեմ ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԶ.

## ԱՍՏՈՒԾՈՅ ՈՂՈՐՄՈՒԹԻՒՆԸ

*Բարձրագլուխ կը պարծի ողորմութիւնը դատաստանին առջև [1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Բարին բնութեամբ ինքը զինքը դուրս բաշխող է, այսինքն յօժարեալ է հաղորդել իրեն բարիքն ուրիշներուն ալ։ Արդ Աստուած բնութեամբ է անհուն բարի և բարութիւն, ծայրագոյն փափաք ունի մասնակից ընելու զմեզ իր երջանկութեանը. ուստի իր յօժարութիւնը պատժել չէ, հապա ամենուն ողորմութիւն ընել է, վասն զի պատժելը Աստուծոյ բնութենէն օտար բան մըն է։ Ուստի երբոր Աստուած զմեզ հոս կը պատժէ նէ, անոր համար է որ անդին ողորմի։ Թէ որ կը բարկանայ մեր վրայ, անոր համար է որ մենք զմեզ ուղղենք. և թէ որ մեզի պատուհասներ ալ ղրկէ, անոր համար է որ զմեզ կը սիրէ և կուզէ ազատել զմեզ յաւիտենական պատժէն։ Ո՞վ կրնայ արժանապէս զարմանալ և գովել Աստուծոյ ողորմութիւնը, թէ որչափ երկայնամիտ կըլլայ առ մեղաւորս, ինչպէս կը կոչէ և սիրով կընդունի զանոնք երբոր դառնան, ինչպէս կը համբերէ և կըսպասէ որ ապաշխարեն։ Քեզի կըսեմ, ով եղբայր, երբոր դուն զԱստուած կը վշտացընէիր, ինքը կրնար քեզի մահ տալ. բայց ինքը երկայնմտութիւն կընէր, և պատժելու տեղ քեզի բարիք կընէր, կեանքդ կը պահէր ու կը խնամէր, ըրածդ չտեսնելու կը զարնէր։ Աս ինչ բան է, Աստուած իմ, դուն որ մեղք մըն ալ չես կրնար տեսնել, և այնչափ մեղք կը տեսնես և դարձեալ կը լռես։

1 Բարձրագլուխ պարծի ողորմութիւն առ դատաստանաւ։ Յակ. Բ. 13։

Կը տեսնես ան անպարկեշտը, ան քինախնդիրը, ան հայհոյիչը, որոնք օր աւուր վրայ չարութիւններին քեզի դէմ կը շատցընեն, ինչպէս չես պատժեր և ինչպէս երկայնամիտ կըլլաս: Պատասխան կու տայ Եսայի թէ Աստուած կըսպասէ մեղաւորին, որպէս զի ինքը զինքը շտկէ որ իրեն թողութիւն տայ և ողորմի:

Սուրբն Թովմաս կըսէ. բոլոր արարածք, երկինք, օդը, ջուրը, բնական ազդմամբ մը կը վառուին ամբարշտութեանց դէմ, և կուզեն իրենց արարչին վրէժն առնել. բայց Աստուած ետ կը քաշէ զանոնք իր մարգասիրութեամբը: Այլ դու տէր որ կը համբերես անզգամաց՝ որպէս զի զղջանան, չես տեսներ որ աս ապերախտները քու երկայնամտութիւնդ կը բանեցընեն աւելի զքեզ վշտացընելու, և ինչպէս կը համբերես: Պատասխան կու տայ Աստուած՝ թէ ոչ կամիմ զմահ մեղաւորին, որպէս զդառնալն նորա և զկեալ: Ո՛վ երկայնամտութեանն Աստուծոյ, կը համարձակի ըսել սուրբն Օգոստինոս թէ Աստուած Աստուած իմ, ներէ ինծի. թէ որ Աստուած չըլլայիր, աս կերպով անիրաւ կըլլայիր: Մենք կը մեղանչենք՝ ամենևին փոյթերնիս չէ, ետքը կը պարծինք ալ մեղքերնուս վրայ, և դուն հանդարտ կը կենաս. մենք զքեզ 'ի բարկութիւն կը շարժենք, դուն մեզի ողորմութիւն կընես. կարծես թէ Աստուծոյ հետ ասպարէզ ենք ելեր. մենք կը գըրգռենք զինքը պատժելու զմեզ, ինքը կը յորդորէ՝ որ թողութիւն առնենք:

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ, տէր իմ, գիտեմ որ ինչուան հիմա դժոխքին մէջ ըլլալու արժանի էի. դժոխք են տուն իմ: Բայց քու ողորմութեամբդ դեռ հոն չեմ, հապա հոս քու առջիդ առջևն եմ, և գիտեմ որ դուն ինծի խրատ կու տաս, քու սիրոյ պատուիրանդ պահել. սիրեսցես ըզտէր Աստուած քո, և կըսես թէ ես քեզի կը սիրեմ թէ որ զղջաս մեղացդ վրայ՝ որով զիս անարգեցիր: Այո այո, տէր Աստուած իմ, որովհետև կուզես որ սիրէ զքեզ ինծի պէս անզգամը՝ որ ապստամբ գտուեր եմ քու մեծվայելչութենէդ, ես ալ զքեզ կը սիրեմ յամենայն սրտէ և կը ցաւիմ զքեզ անարգելուս համար: Հիմայ լուսաւորէ զիս, ով անեղ բարիդ, և

տուր ինծի ճանչնալ թէ որչափ մեծ չար էր անարգանքն որ քեզի ըրի։ Քաւ լիցի, ասկից ետև չեմ ուզեր մէյմըն ալ դէմ կենալ քու ազդարարութեանցդ, չեմ ուզեր մէյմըն ալ անշնորհութիւն տալ քեզի, Աստուած իմ, որ այդչափ զիս սիրեցիր, և այնչափ անգամ քու անբաւ սիրովդ ինծի ներեցիր։ Ա՜խ թէ բնաւ զքեզ վշտացուցած չըլլայի, փրկիչ իմ Յիսուս. թողութիւն շնորհէ ինծի, և տուր որ ասկից ետև բան մը չի սիրեմ քեզմէ 'ի զատ. քեզի համար միայն ապրիմ, որ ինծի համար մեռար. քու սիրոյդ համար նեղութիւն քաշեմ, որ այնչափ նեղութիւն քաշեցիր իմ սիրոյս համար։ Դուն զիս 'ի յաւիտենից սիրեցիր, տուր որ ես ալ յաւիտեան քու սիրովդ վառուիմ։ Ով փրկիչ իմ, բոլոր յոյսս քու արդեանցդ վրայ է։ Քեզի ալ կապաւինիմ, տիրամայր Մարիամ, այնպէս որ դուն քու բարեխօսութեամբդ կարող ես զիս փրկութեան հասցընելու։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Աստուծոյ ողորմութիւնը աս կողմանէ ալ հասկըցիր որ ի՛նչպէս յապաշխարութիւն կը կոչէ զմեղաւորը։ Երբոր Ադամ ապստամբեցաւ Աստուծմէ ու ծածկեց երեսը անկէց, նայէ Աստուած ելաւ փնտըռելու զինքը, և կարծես թէ ցաւագին սրտիւ կը կանչէր թէ Ադամ ո՞ւր ես. որ հօրն Պէրէյրոյի ըսածին պէս՝ նման է հօր մը ձայնին, որ իր կորսուած զաւակը կը փնտըռէ։ Գիտցիր, ով եղբայր, թէ նոյն բանը ըրաւ Աստուած քեզի ալ շատ անգամ. դուն փախեր էիր Աստուծմէ, և Աստուած ետևէդ ընկեր էր՝ զքեզ կը կանչէր, երբեմն ազդարարութեամբ, երբեմն խղճմտանքի խայթովը, երբեմն քարոզներով, երբեմն նեղութիւններով, երբեմն բարեկամներուդ մահովը։ Կարծես թէ Քրիստոս քեզի համար կըսէ ան խօսքը՝ թէ վաստակեցի ես աղաղակել, և կերկերեցաւ կոկորդ իմ։ Մտուընիդ դրէք, ով մեղաւորք, կըսէ սրբուհին Թերեզա, թէ աս ան տէրն է զձեզ կանչողը, որ մէկ օր մը զձեզ պիտոր դատէ։

Ով դու քրիստոնեայ, քանի՜ անգամ արդեօք խուլ եղար Աստուծոյ ձայնին, զքեզ կոչողին։ Արժանի էիր

որ մէյմըն ալ զքեզ չի կոչեր, բայց տէրդ չի դադրեցաւ զքեզ կանչելէն, վասն զի կուզէր որ քեզի հետ հաշտ ըլլայ ու զքեզ փրկէ։ Լաւ հասկըցիր, ո՛վ էր ըզքեզ կանչողը. Աստուած անբաւելի մեծվայելչութիւն. և զո՞վ կը կանչէր. մէկ հոտած ողորմելի որդ մը. և ինչո՞ւ կը կանչէր. ուրիշ բանի համար չէ, բայց եթէ քեզի նորանց կեանք շնորհաց տալու, զոր դուն կորուսեր էիր։ Որպէս զի մէկը կարենայ Աստուծոյ շնորհքը ձեռք բերել, մեծ բան չէր թէ որ անապատ մը քաշուէր բոլոր կեանքին մէջ. իսկ Աստուած քու առջեւդ կը գնէր իր շնորհքը մէկ վայրկենի մը մէջ, առնելու՝ թէ որ ուզենայիր մէկ ներգործութիւն մը զղջման ընել. իսկ դուն զայն մերժեցիր. այսու ամենայնիւ Աստուած զքեզ երբեք չի ձգեց, հապա ետեւէդ կը քալէր ցաւագին սրտով ու կըսէր՝ որդեակ, ինչո՞ւ կուզես դատապարտուիլ. և ընդէ՞ր մեռանիցիք, տունդ Իսրայէլի։

Երբոր մարդս մահուչափ մեղք մը կը գործէ, զԱստուած իր սրտէն կը վռընտէ. իսկ Աստուած ի՞նչ կընէ. ան ապերախտ սրտին դրանը քով կը կենայ ու կըսէ, ահաւասիկ կամ ես առ դուրս քո, և բախեմ, և կաղաչէ որ բանայ, ըսելով՝ բաց ինձ քոյր իմ հարսն։ Ինչուան որ աղաչելով կը յոգնի։ Աս է սրբոյն Դիոնեսիոսի արիսպագացւոյն ըսածը թէ Աստուած իրմէ երես դարձընողներուն ալ ետեւէն կը քալէ սիրով, ու կաղաչէ որ չի կորսուին. Նոյն մտքով առաքեալն ալ կը գրէ թէ աղաչեմք վասն Քրիստոսի՝ հաշտեցարուք ընդ Աստուծոյ, այսինքն է՝ կաղաչենք 'ի կողմանէ Քրիստոսի. ուր աղէկ կըսէ սուրբն Հերոնիմոս թէ ինքն Քրիստոս կաղաչէ, և ի՞նչ կաղաչէ. հաշտեցարուք ընդ Աստուծոյ, չէ թէ ինքն է թշնամին, հապա դուք, անանկ որ չէ թէ մեղաւորը զԱստուած կը յորդորէ հաշտուելու, հապա թէ ինքը պիտի ջանայ Աստուծոյ հետ հաշտուիլ։

Աղէկ հասկըցիր որ ինչպէս աս բարի և բարերար տէրը ամէն օր այնչափ մեղաւորներուն ետեւէն կը քալէ ըսելով. ով ապերախտներ, ա՛լ մի՛ փախչիք ինծմէ. հապա ան ըսէք թէ ինչո՞ւ կը փախչիք։ Ես ձեր բարին կուզեմ, և ուրիշ բանի չեմ փափաքիր, բայց միայն զձեզ երջանկացընելու. ուրեմն ինչո՞ւ կուզէք դուք ըզձեզ կորսընցընել։ Բայց, ով տէր, ի՞նչ է աս քու ը-

րանդ. ինչու այդչափ կը համբերես և այդչափ սէր կը ցցընես առ ապերախտներուն, առանցմէ ինչ կը յուսաս. քեզի պատիւ մը չէ այսչափ յարումն երևցընել առ չնչին որդերուն, որ քեզմէ կը փախչին:

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ահա, տէր, առ ոտս քո այն ապերախտը, որ քու գըթութիւնդ կը պաղատի. հայր, թող: Քեզի կը գոչեմ հայր, վասն զի դուն կուզես որ այսպէս կանչեմ հայր իմ, թող ինծի: Ես արժանի չեմ թողութեան, որովհետև որչափ դուն ինծի բարի և բարերար եղար, ես այնչափ քեզի ապերախտ եղայ այն բարութեանդ համար՝ որ քու ձեռքդ բռնեց զիս պատժելու, Աստուած իմ, չթողուց որ զիս երեսէ ձգես երբոր կը փախչէի. նոյն բարութեանդ համար ընդունէ, որ հիմա կը դառնամ առ քեզ: Տուր ինծի, Յիսուս փրկիչ իմ, սաստիկ ցաւ մը քեզի դէմ ըրած մեղքերուս վրայ, և տուր ինծի համբոյր հաշտութեան: Ես կը ցաւիմ աւելի քան զամէն բան այն անարգանաց վրայ որ քեզի ըրի. կը զարշիմ կը զզուիմ անոնցմէ, և այս իմ ցաւս կը միացընեմ քու քաշածիդ հետ, փրկիչ իմ, Գեթսեմանի պարտէզին մէջ: Կաղաչեմ, ներէ ինծի վասն արդեանց արեան որ քրտնեցար նոյն պարտէզը. ես կը խոստանամ և կառաջադրեմ մէյմըն ալ քեզմէ չըբաժնուիլ. դուրս ըրէ իմ սրտէս այն ամենայն յօժարութիւններն որ քեզի համար չեն: Յիսուս իմ, սէր իմ, ես զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր, և կուզեմ միշտ սիրել զքեզ, և միայն զքեզ սիրել: Բայց դուն ինծի զօրութիւն տուր գործքով կատարելու, քեզի առ զիս բոլորովին: Մարիամ կոյս, յոյս իմ և ապաւէն, մայր ողորմութեան, աղաչէ զԱստուած վասն իմ, և գթա յիս:

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Իշխանք և թագաւորք երկրի բարկութեամբ կը վարուին իրենց ապստամբ հպատակաց հետ այն ատենն ալ՝ որ կու գան թողութիւն խնդրելու: Բայց Աստուած սատանկ չի վարուիր մեզի հետ. ինքը կըսէ որ եթէ դարձցին 'ի ճանապարհաց իւրեանց չարաց, քաւիչ եղէց

նոցա։ Աստուած՝ ով որ իրեն կը դիմէ, երբեք չի դարձըներ անկէ. վասն զի ինքն ալ կը կանչէ զանիկայ, և պատրաստ է ընդունելու թէ որ դառնալու ըլլայ։ Վասն զի կըսէ՝ դարձարուք առ իս, և ես դարձայց առ ձեզ, ասէ տէր զօրութեանց. որպիսի՜ սէր և գութ է որ կը ցցընէ Աստուած մեղաւորաց որ իրեն կը դառնան։ Աս ուզեց մեզի հասկըցընել Քրիստոս ոչխարին առակովը, զոր հովիւն որ գտնէ՝ կը դնէ 'ի վերայ ուսոց իւրոց խնդալով, բարեկամներն ալ կանչելով կըսէ՝ ուրախ եղերուք ընդ իս, զի գտի զոչխարն իմ կորուսեալ։ Վրայ կը բերէ տէրն. այնպէս եղիցի ուրախութիւն յերկինս 'ի վերայ միոյ մեղաւորի որ ապաշխարիցէ։ Աւելի յայտնի ըրաւ բանը տէրն անառակ որդւոյն առակով, որուն դառնալը երբոր տեսաւ հայրը, դիմացն ելաւ և անոր խօսելէն առաջ գրկեց համբուրեց։

Մարգարէին բերնով ալ ըսաւ, թէ որ մեղաւորը դառնայ նէ՝ կելով կեցցէ, և զամենայն անօրէնութիւնս նորա ոչ ևս յիշեցից։ Եկայք, կըսէ, եթէ իցեն մեղք ձեր իբրև զձանձախարիթ, իբրև զձիւն սպիտակ արարից. վասն զի Աստուած զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ ոչ արհամարհէ։

Իրեն փառք կը սեպէ Աստուած՝ գթալն ու ներելը մեղաւորաց, վասն զի կըսէ Եսայի, բարձրասցի ողորմել ձեզ։ Բայց երբ կը ներէ Աստուած արդեօք. իսկոյն զղջալուդ պէս։ Աստուած այնպէս չի վարուիր մեզի հետ, ինչպէս որ մենք իրեն հետ կը վարուինք։ Աստուած զմեզ կը կանչէ, և մենք խուլ կըլլանք. իսկ Աստուած մեր ձայնը լսածին պէս՝ մեզի կը լսէ, մեղայ ըսածնուս պէս՝ թողութիւն կու տայ։

### ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ Աստուած իմ, որքա՜ն գէշ եղայ ես. քեզի դէմ, որ այնչափ բարի ես, որ զիս ստեղծեցիր, և ինծի համար մեռար, և ինծի այսչափ համբերեցիր յետ այնչափ անօրէնութեանցս։ Իրաւ որ սոսկ տեսնելով քու այնչափ համբերութիւնդ՝ պէտք էր որ բոլոր կենացս մէջ քու սիրովդ վառուէի։ Ո՞վ կրնար երբէք ինծի համբերել այսչափ չարիք ընելէս ետև, ինչպէս դուն ինծի համբերեցիր։ Վայ ինծի, թէ որ ասկից ետև ալ

դառնամ նորէն զքեզ վշտացընելու և զիս դատապարտելու ։ Ան ատեն աս ողորմութիւններս, որ ինծի ըրիր՝ կըլլան ինծի դժոխքին դժոխքը ։ Զէ չէ, փրկիչ իմ, չըլլայ թէ թող տաս, որ ես մէյմըն ալ քեզի երես դարձընեմ, լաւ է որ մեռնիմ քան զքեզ վշտացընեմ ։ Գիտեմ որ ալ քու ողորմութիւնդ չի կրնար ինծի համբերել ։ Կը ցաւիմ, ով ծայրագոյն բարի, զքեզ վշտացընելուս համար. կը սիրեմ զքեզ 'ի բոլոր սրտէ, և առաջարկեր եմ որ քեզի նուիրեմ բոլոր մնացած կեանքըս ։ Լսէ ինծի, հայր երկնաւոր, վասն արդեանց միածնիդ Յիսուսի Քրիստոսի փրկչին իմոյ ։ Տուր ինծի սուրբ յարատեւութիւն և սուրբ սէրդ. լսէ ինծի, փրկիչ իմ Յիսուս, վասն արեանդ, զոր հեղեր վասն իմ. հաս յօգնութիւն քոյ ծառայից, զորս պատուական արեամբդ գնեցեր ։ Մարիամ, մայր իմ, նայէ մէյմը վըրաս կաղաչեմ, զամենողորմ աչս քո դարձո առ իս, և ձգէ զիս բոլորովին առ Աստուած ։

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԷ·

### ՉԱՐԱՉԱՐ ՎԱՐՈՒՄՆ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲՆ ԱՍՏՈՒԾՈՅ

*Չեն գիտեր որ Աստուծոյ քաղցրութիւնը զքեզ յապաշխարութիւն կը տանի[1].*

### ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ըստ առակին որոմանցն ագարակի՝ երբոր տեսան ծառայք որ ցորենին հետ որոմն ալ բուսեր է, ըսին իրենց տիրոջը թէ կամիս զի երթիցուք քաղեսցուք զայն 'ի բաց. իսկ տէրն ըսաւ թէ չէ, թողէք որ մէկտեղ մեծնան, և 'ի ժամանակի հնձոցն ասացէք ցհըն-

1 Չգիտելցես զի քաղցրութիւնն Աստուծոյ զքեզ յապաշխարութիւն ածէ ։ Հռոմ. Բ. 4 ։

ձօղսն, ժողովեցէք նախ զորոմն, և կապեցէք զայդ 'ի խրձունս առ 'ի այրել: Աս առակէս կիմացուի մէկ կողմանէ Աստուծոյ երկայնմտութիւնը առ մեղաւորս, և մէկալ կողմանէ անաչառ դատաստանն 'ի վերայ խստասրտաց: Աղէկ կըսէ սուրբն Օգոստինոս թէ սատանան երկու կերպով կը խաբէ զմարդիկ, յուսահատութեամբ և յուսով: Մեղքը ընելէն վերջը՝ յուսահատութիւն կը բերէ Աստուծոյ դատաստանին վախովը: Բայց մեղքը ընելէն առաջ սիրտ կու տայ, յոյս կու տայ Աստուծոյ ողորմութեանը վրայ. ուստի նոյն սուրբ վարդապետը այսպէս խրատ կու տայ թէ յետ մեղաց յուսա յողորմութիւն, յառաջ քան զմեղս վախցիր յարդարութենէ: Եւ յիրաւի, վասն զի անարժան է ողորմութեան անիկայ, որ զողորմութիւնն Աստուծոյ կը բանեցընէ զԱստուած վշտացընելու: Ողորմութիւնը կը հասնի աստուածավախերուն, չէ թէ անոնց որ զայն 'ի գործ կածեն չվախնալու Աստուծմէ: Ուստի կըսէ Ապուլեցին թէ արդարութեան դէմ մեղանչողը կրնայ ողորմութեան ապաւինիլ, իսկ ան որ բուն ողորմութեան դէմ կը մեղանչէ՝ ինչ բանի պիտի ապաւինի:

Դժուար կը գտնուի այնպիսի յուսահատ մեղաւոր մը որ ուզենայ դատապարտուիլ. հապա մեղաւորք կուզեն մեղանչել՝ առանց կորսընցընելու փրկութեան յոյսը. մեղքը կընեն և կըսեն թէ Աստուած ողորմած է, հիմա աս մեղքը ընեմ, ետքը կերթամ խոստովանանք կըլլամ: Աս է մեղաւորներուն սովորութիւնը, կըսէ սուրբն Օգոստինոս. բայց ան է ցաւալին՝ որ շատերը այսպէս կըսէին, և հիմա 'ի դժոխս դատապարտուած են:

Սուրբ գրքին ըսածին պէս՝ մի ասեր առաջի Աստուծոյ թէ անգիտութիւն է, զի մի բարկասցի Աստուած 'ի բարբառ քո. կամ մի ասեր թէ ողորմութիւն տեառն մեծ է, բազմութեան մեղաց իմոց ողորմեսցի, վասն զի ողորմութիւն և բարկութիւն 'ի նմանէ փութով հասցեն, և 'ի մեղաւորս ակնարկէ բարկութիւն նորա: Իրաւ որ Աստուծոյ ողորմութիւնը անհատնում է և անհուն. բայց աս ողորմութեան գործքը չափով է, վասն զի Աստուած ինչպէս ողորմած է նէ, նմանապէս արդար ալ է: Ուստի մէկ օր մը տէրն մեր ըսաւ սրբուհւոյն Պրիճիտայի թէ ես թէ արդար եմ և թէ ողոր-

մած, իսկ մեծաւորք զիս սուտ ողորմած կը սեպեն։ Սուրբն Բարսեղ ալ կըսէ թէ բարի է տէր և արդար, կիսամասնեայ չի կարծենք զԱստուած։ Հայր վարժապետն Աւիլա կըսէր, եթէ ողորմութիւնն Աստուծոյ կարծուէր թէ զինքը բարկացընելու ալ կը ծառայէ, չէր ըլլար ողորմութիւն, հապա պակասութիւն արդարութեան։ Աստուած իր ողորմութիւնը կը խոստանայ իրմէ վախցողներուն, չէ թէ չարաչար գործածողներուն։ Ասոր համար սուրբ Աստուածածին մեծացուցէին մէջ կերգէ թէ ողորմութիւն նորա ազգաց յազգս երկիւղածաց իւրոց։ Ըսած է սրբոյն Օգոստինոսի թէ՝ որ ճշմարիտն է 'ի խոստմունս իւր, ճշմարիտ է և 'ի սպառնալիսն։

Զգոյշ կեցիր, կըսէ ոսկեբերան, չըլլայ թէ ան շանը, այսինքն սատանայի, մտիկ ընես, որ քեզի Աստուծոյ ողորմութիւնը կը խոստանայ, որպէս զի մեղանչես։ Եւ սուրբն Օգոստինոս՝ կը յուսայ որպէս զի համարձակ մեղանչէ. վայ աս մոլար յոյսն ունեցողին, և կը յարէ թէ համրանքի չեն գար թէ որչափ մարդիկ խաբեր է աս ընդունայն յուսոյ ստուերը։ Վայ անոր գլխուն, որ Աստուծոյ գթութիւնը գործ կածէ աւելի զինքը բարկացընելու. սուրբ Բեռնարդոսին ըսածին պէս՝ սադայէլը անոր համար իսկոյն պատժուեցաւ Աստուծմէ, վասն զի ապստամբեցաւ՝ յուսալով թէ պատիժ չի գտներ։ Մանասէ թագաւորը մեղանչեց, ու ետքը դարձաւ. և Աստուած ալ իրեն ներեց. անոր տղան Ամոն տեսնելով որ իր հայրը թողութիւն գտաւ՝ զինքը չարութեան տուաւ յուսալով թողութեան, բայց ողորմութեան չհասաւ։ Ուստի ոսկեբերան ալ կըսէ թէ Յուդա կորսուեցաւ, վասն զի վստահացեալ էր 'ի հեզութիւն վարդապետին։ Մէկ խօսքով, Աստուած երկայնամիտ է՝ բայց միշտ չի համբերեր. չէ նէ, ոչ ոք կը դատապարտուէր. և սակայն հասարակ կարծիք է՝ թէ չափահաս քրիստոնէից մէջէն ալ շատը կը դատապարտուի, վասն զի ընդարձակ է դուռն և լայն ճանապարհն որ տանի 'ի կորուստ. և բազումք են որ մտանեն ընդ նա, կըսէ տէրն մեր։

Ով որ թողութեան յուսով կը մեղանչէ՝ խաբեբայ է, չէ թէ ապաշխարող, կըսէ սուրբն Օգոստինոս. և սուրբն Պօղոս ալ կըսէ թէ մի խաբիք՝ Աստուած ոչ

արհամարհէ։ Ծաղր ընել կամ խաբել կըլլար զԱստուած՝ թէ որ մէկը ուզենար միշտ վշտացընել զԱստուած, ու եաքը արքայութիւն ալ երթալ։ Զի զոր ինչ սերմանէ մարդ, զնոյն և հնձեսցէ. մեղք սերմանողն ալ իրաւունք չունի ուրիշ բան յուսալու, բայց պատիժ ու դժոխք։ Սատանան որ ուռկանին մէջ այնչափ քրիստոնեաներ որսացեր է՝ աս խաբէութեամբս է, որ կըսէ իրենց՝ թէ համարձակ մեղք գործեցէք, մի վախնաք, վասն զի ատ բոլոր մեղքերով ալ կը փրկուիք։ Բայց Աստուած կըսէ, անիծեալ է մարդն որ յուսով մեղանչէ։ Մեղաւորին յոյսը մեղանչելէն ետև՝ թէ որ զղջումն ունենայ՝ հաճոյ է Աստուծոյ, բայց խոստովանողներուն յոյսը զզուելի է Աստուծոյ։ Այդպիսի յոյսը զԱստուած կը գրգռէ 'ի պատժել, ինչպէս ծառայ մը գիւր տէրը կը գրգռէ՝ երբոր անոր դէմ բան մը ընէ ըսելով թէ իմ տէրս աղէկ մարդ է։

ՈՒՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ տէր Աստուած իմ, ահա ես ալ այնպիսիներէն մէկն եմ որ զքեզ վշտացուցեր են, վասն զի դուն աղէկ կը վարուէիր։ Ա՜հ տէր, երկայնամիտ եղիր, զիս երեսէ մի ձգեր, ես յոյս ունիմ քու շնորհօքդ՝ որ մէյմըն ալ զքեզ չգրգռեմ զիս երեսէդ ձգելու։ Կը ցաւիմ, ով անբաւ բարիդ, զքեզ վշտացընելուս և չարաչար գործածելուս քու երկայնմտութիւնդ։ Շնորհակալ եմ որ ինչուան հիմա ինծի սպասեցիր, ասկից ետև չեմ ուզեր քեզի մատնիչ ըլլալ, ինչպէս առաջ եղայ։ Դուն այնչափ ինծի համբերեցիր, որպէս զի մէկ օր մը զիս տեսնես զքեզ սիրող. ահա եկեր հասեր է ատ օրը, ինչպէս որ կը յուսամ։ Ես զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր, և մեծ կը սեպեմ քու շնորհքդ՝ քան զամենայն թագաւորութիւնս աշխարհի. պատրաստ եմ հազար անգամ կեանքս կորսընցընել՝ քան թէ քու շնորհքդ։ Հայր երկնաւոր Աստուած իմ, վասն սիրոյ օծելոյ քո Յիսուսի Քրիստոսի, տուր ինծի սուրբ յարատևութիւն 'ի սէր քո մինչև 'ի մահ. մի թողուր որ մէյմըն ալ դառնամ ու քեզի մատնիչ ըլլամ, և թողում քու սէրդ։ Մարիամ, մայր ողորմութեան, դու ես յոյս և ապաւէն իմ, առ ինծի համար աս յարատևութիւնը, ա՛լ ուրիշ բան չեմ ուզեր։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Մէկը կրնայ ըսել թէ Աստուած որ առաջ ինծի այնչափ ողորմութիւն ըրաւ նէ, յուսամ որ ետքն ալ կողորմի: Ատոր ըսելու է՝ որովհետև առաջ այդչափ ողորմութիւն քեզի ըրեր է նէ, անոր համար կուզես նորէն զինքը վշտացընել: Ուրեմն, կըսէ քեզի սուրբն Պօղոս, ատով դուն Աստուծոյ քաղցրութիւնն ու համբերութիւնը կարհամարհես ոտքի տակ կառնես: Չես գիտեր՝ որ Աստուած քեզի ինչուան հիմա համբերեց՝ չէ թէ միշտ շարունակես զինքը վշտացընելու, հապա ըրած չարեացդ վրայ լաս: Երբոր դուն աստուածային ողորմութեանը յուսալով չես ուզեր բանդ լմընցընել Աստուծոյ հետ, ինքը կը լմընցընէ. եթէ ոչ դառնայցէք՝ զաղեղն իւր լարեալ է, կըսէ սաղմոսերգուն. և իմ է վրէժխնդրութիւն և ես հատուցից 'ի ժամանակին, կըսէ Աստուած: Աստուած երկայնամիտ կըլլայ, բայց վրէժխնդրութեան առենը հասնի նէ, ա՛լ չի սպասեր, հապա կը պատժէ:

Աստուած կըսպասէ մեղաւորին որ զգաստանայ, բայց երբ կը տեսնէ որ անիկայ ապաշխարութեան համար տրուած ժամանակը կը բանեցընէ աւելի մեղք դիզելու, ան առենը զինքը դատաստանի կը կանչէ: Սուրբն Գրիգոր կըսէ թէ նոյն իսկ ժամանակը դատաստանի կելլէ. Նոյն ժամանակն որ ապաշխարութեան համար տրուած էր, երբոր 'ի չարն բանեցուցած է նէ, աւելի կը դատապարտէ զինքը. բժշկեցաք զԲաբիլոն, և ոչ բժշկեցաւ, թողցուք զնա: Եւ ինչպէս Աստուած զմէկը երեսէ կը ձգէ. կամ մահ կը խաւրէ անոր վրայ, և կը թողնէ որ 'ի մեղս մեռանի, կամ իր շնորհքէն կը զրկէ, որով մեղաւորն որ կրնար փրկուիլ՝ միտքը կը կուրնայ, սիրտը կը խստանայ, չար սովորութիւնները բարոյապէս անկարելի կընեն իր դարձը, և այնպէս բացարձակապէս ալ չըլլայ նէ, բարոյապէս երեսէ կիյնայ: Քակեցից զցանգ նորա և եղիցի յափշտակութիւն. Ինչ պատիժ կրնայ ըլլալ մեծ քան զայս, որ բաց մնալով այգին՝ ոտքի կոխան ըլլայ մարդկանց և անասնոց, որ ըսել է թէ երեսէ ձգած է: Ասանկ ալ Աստուած զհոգին երեսէ ձգէ նէ, կը վերցը-

նէ երկիւղին ցանկը, խղճմտանքի խայթը, և կը թողնէ մթութեան մէջ. ան ատեն յայն հոգին կը մտնեն ամէն ցուցանք ախտից և մոլութեանց։ Արդ ինչ կընէ մեղաւորը ան մթութեան մէջ. ամէն բան կարհամարհէ՝ Աստուծոյ շնորհքն ալ, արքայութիւնն ալ, ազդարարութիւնն ու բանադրանքը, իր դատապարտութեան վրայ ալ կը ծիծաղի։ Ամպարիշտն հասեալ 'ի խորս չարեաց արհամարհէ։

Աստուած առանց պատժելու կը թողնէ զանիկայ աշխըրքիս վրայ, բայց աս չիպատժելը իրեն աւելի ծանր պատիժ է։ Սոսկալի պատիժ է, երբոր Աստուած ըզմեղաւորը կը թողնէ մեղաց ձեռքը. բարձի զնախանձն իմ 'ի քէն, և հանգեայց, և ոչ ևս հոգացայց. որպէս թէ թող տուած ըլլար որ ինչ որ կուզէ նէ ընէ աշխըրքիս վրայ. բարձի թողի զնոսա երթալ զհետ կամաց սրտից իւրեանց։ Վայ մեղաւորաց գլխուն՝ որոնց բանը յաջող է աս աշխըրքիս վրայ, նշան է թէ զոհ պիտի ըլլան Աստուծոյ բարկութեանը յաւիտեան։ Երեմիաս կը հարցընէ թէ զի՞ է զի ճանապարհք ամբարշտաց յաջողեալ են. ետքը կըսէ թէ ժողովեա զնոսա իբրև զոչխար 'ի սպանումն։ Ասկից մեծ պատիժ չի կրնար ըլլար որ թող տայ Աստուած որ մեղաւորը մեղք մեղքի վրայ դիզէ. Դաւթի ըսածին պէս, դիր զմեղս 'ի վերայ մեղաց . . . Ընջեսցին նոքա 'ի դպրութենէ քումմէ կենաց։ Ուր կըսէ Բելլարմինոս՝ թէ ասկից մեծ պատիժ չըլլար երբոր մեղք մեղաց պատիժ կըլլայ։ Աղէկ էր անանկ թշուառականներուն՝ որ Աստուած իրենց կեանքը վերցընէր առաջին մեղքէն ետև, չէ նէ երբոր մեռնին նէ, այնչափ դժոխք կունենան, որչափ մեղք գործեր են նէ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած իմ, գիտեմ որ ես այդպիսի թշուառ վիճակի մէջ արժանի էի որ մնամ զուրկ 'ի շնորհաց և 'ի լուսոյ. բայց տեսնելով հիմա ան լոյսը՝ որ ինծի կու տաս, և յապաշխարութիւն զիս կը կոչես, նշան է թէ զիս երեսէ չես ձգած տակաւին։ Համպա կաղաչեմ տէր, աւելցուր քու ողորմութիւնդ հոգւոյս վրայ, աւելցուր լոյսդ, աւելցուր փափաքս քեզի ծառայելու և սիրելու զքեզ։ Աստուած ամենակարող, զիս փոխէ իմ ապըս-

տամբ և մատնիչ ըլլալէս, և ըրէ զիս սիրող քու բարութեանդ, որպէս զի գամ մէկ օր մը յերկինս՝ փառաւորել յաւիտեան քու ողորմութիւններդ։ Արդ ինչպէս դուն կուզես ներել ինծի, ես ալ ներումն կուզեմ սրտանց և քու սէրդ. կը զղջամ, ով անհուն բարի, այնչափ քեզի տհաճութիւններ տալուս համար. զքեզ կը սիրեմ, ով ծայրագոյն բարի, վասն զի ասանկ կը հրամմես սիրել զքեզ, վասն զի ամէն կերպով արժանի ես։ Հապա փրկիչ իմ, վասն արդեանց քու արեանդ ըրէ որ զքեզ սիրէ աս մեղաւորս, զոր դուն այնչափ սիրեցիր, ու երկայնամիտ եղար իրեն այնչափ տարի։ Քու գթութենէդ կը յուսամ աս բանս. յոյս ունիմ որ ասկից ետև զքեզ սիրեմ մինչև 'ի մահ և յաւիտեան. զողորմութիւնս քո տէր յաւիտեան օրհնեցից։ Քու գթութիւնդ ալ, տիրամայր Մարիամ, յաւիտեան օրհնեցից, որ այնչափ շնորհքներ առիր ինծի համար, քու բարեխօսութեանդ պտուղը գիտեմ զայն ամենայն. մի՛ դադարիր օգնել ինծի, տիրուհի, և առնել ինծի համար զսուրբ յարատևութիւն։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Գրած է 'ի վարս հօրն Ալոզիոսի Լանուզա թէ Բալերմոյ քաղքին մէջ երկու բարեկամք կային. մէկ օր մը ասոնք միատեղ քալելու ելեր էին. ասոնցմէ մէկը Կեսար անունով, որ կատակերգութեան մէջ խաղցող էր, տեսնելով ընկերը մտմտուքի մէջ ըսաւ անոր. քանի՞ ատեն է որ խոստովանանքի կերթաս, և գուցէ ատոր համար տխուր կերևնաս. գիտցիր որ մէկ օր մը ինծի ըսաւ հայրն Լանուզա թէ Աստուած քեզի տասուերկու տարի կեանք պիտի տայ, ու թէ որ աս միջոցիս մէջ զքեզ չի շտկես նէ, գէշ մահ պիտի ունենաս։ Ես ելայ աշխարհքներ քալեցի, հիւանդութիւններ քաշեցի, մանաւանդ մէկ անգամ մը մեռնելու ալ եղայ, այսու ամենայնիւ աս ամսուս մէջ որ տասուերկու տարին լմննալու վրայ է, զիս աղէկ կըզգամ քան թէ բոլոր կենացս մէջ. ուստի հրամմէ, եկուր շաբաթ օրը լսելու նոր կատակերգութիւնս, որ ես շարադրեր եմ։ Նայէ թէ ինչ հանդիպեցաւ շաբաթ օրը, որ նոյեմբերի 24 էր՝ յամին 1668։ Երբոր

պատրաստուած էր աս մարդս որ խաղալու ելլէ, կա֊թուած մը վրան ինջաւ, ու յանկարծ մեռաւ, հոգին փչելով մէկ կատակերգութիւն խաղցող կնկան մը թեւին վրայ, և աստանկ լմընցաւ կատակերգութիւնը։ Ասկից օրինակ առնենք մենք ալ. քեզի կըսեմ, ով եղբայր, երբոր սատանան զքեզ փորձէ նորէն մեղք գործելու, թէ որ դուն դատապարտուիլ կուզես նէ, նոյն խելքի վրայ կեցիր որ մեղանչես. բայց մի ըսեր ան ատենը թէ փրկուիլ կուզես՝ երբոր կուզես մեղանչել, զքեզ արդէն դատապարտուածի տեղ դիր, ու սեպէ թէ Աս֊տուած նոյն ատեն քու դատապարտութեանդ վճիռը կը գրէ, ու կըսէ քեզի թէ զի՞նչ ինչ առնել էր այդւոյ իմոյ, և ես ոչ արարի նմա. գնա կորիր, ով ապե֊րախտ, դատապարտուիլ կուզէիր, կորսուէ քու յան֊ցանքովդ։

Գուցէ ըսես, հապա ո՞ւր կը մնայ Աստուծոյ ողոր֊մութիւնը։ Պապանձէ, ով թշուառական, Աստուծոյ ո֊ղորմութիւնը չէ՞ր որ այնչափ տարի համբերեց քու այն֊չափ մեղքերուդ. դուն միշտ երեսդ վար առած շնորհա֊կալ պիտոր ըլլայիր ըսելով, ողորմութիւնք տեառն անսպառք էին, որ ես ինչուան հիմա չսպառեցայ, չկորսուեցայ։ Դուն մէկ մահուչափ մեղք մը գործելով աւելի մեծ յանցանք ըրիր, քան թէ ոտքի տակ առ֊նէիր մէկ թագաւոր մը աշխարքիս. դուն այնչափ չարիք ըրիր և անարգանք ընդդէմ Աստուծոյ, թէ որ ատիկայ մէկ մարմնաւոր եղբօրդ դէմ ընէիր նէ, չէր համբե֊րէր քեզի. իսկ Աստուած չէ թէ միայն երկայնամիտ եղաւ քեզի, հապա շատ անգամ ալ կոչեց և հրաւի֊րեց որ դաս թողութիւն առնես. զի՞նչ ինչ առնել էր, և ես ոչ արարի կըսէ։ Թէ որ Աստուած քեզմէ պէտք մը ունենար նէ, կամ դուն իրեն մեծ երախտիք մը ը֊րած ըլլայիր, կրնա՞ր աղեկօք ասկէ աւելի գութ ցցընել քու վրադ։ Աս աստանկ ըլլալով, թէ որ դուն նորէն դառնաս զինքը վշտացընելու նէ, իր բոլոր գթութիւնը և ողորմութիւնը կը դարձընես 'ի բարկութիւն, և 'ի պատժել զքեզ։

Թէ որ ան անպտուղ թզենին տարի մըն ալ հողա֊լու միջոց տալէն ետև՝ պտուղ չի տար տիրոջը նէ, չէ՞ր կտրուէր ըստ արժանւոյն։ Նայէ ինչ կըսէ սուրբն Օ֊գոստինոս. ով ծառ անպտուղ, տարուան մը մնաց տա֊

պարը որ զքեզ չկարէ, անհող մի ըլլար, կը կորուսիս։ Ի՞նչ բանի կըսպասես, ով մեղաւոր, կուզե՞ս որ Աստուած զքեզ դժոխք խաւրէ. բայց խաւրէ նէ, գիտնաս որ ետքը ճար ճարակ չիկայ քեզի։ Աստուած լռեցեր է, բայց միշտ չի լռեր, վրէժխնդրութեան ատենը հասնի նէ, ո՞ւր կը մնայ լռելը։ Զայս ամենայն 'արարեր, և ես լռեցի քեզ, կարծեցե՞ր անօրէնդ 'ի մտի քում' թէ ես քեզ նմանիցեմ, արդ յանդիմանեցից և կացուցից զայս ամենայն առաջի քո. երեսիդ զարնեմ այնչափ ողորմութիւններն որ քեզի ցցուցի, և անոնք զքեզ դատեն ու դատապարտեն։

### ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ Աստուած իմ, վայ գլխուս, թէ որ ասկից ետև քեզի հաւատարիմ չըլլամ նէ, ու դառնամ մատնիչ ըլլալու՝ այսչափ լոյս ինծի տալէդ ետև։ Աս լոյսը նշան է որ կուզես ինծի ներել։ Կը ցաւիմ, ով ծայրագոյն բարի, ամենայն անիրաւութեանցս վրայ՝ որ քեզի դէմ ըրած եմ, և տուած անարգանացս վրայ՝ որովք դառնացուցեր եմ զանհուն բարիդ։ Քու արիւնովդ յոյս ունիմ թողութեան, և ստուգապէս կը յուսամ. բայց թէ որ նորէն քեզի երես դարձընեմ նէ, գիտեմ որ նոր դժոխք մը արժանի կըլլայ ինծի համար։ Աս բանս է որ կը սարսափեցընէ զիս, Աստուած հոգւոյ իմոյ, որ կրնամ դարձեալ քու շնորհքդ կորսնցընել. գիտեմ որ շատ անգամ խօսք տուի քեզի հաւատարիմ ըլլալու, ետքը կրկին ապստամբ եղայ քեզմէ։ Ա՜խ տէր, մի թողուր որ ըլլայ աս բանը. մի ձգեր զիս երեսէ, որ աս թշուառութեանս մէջ իյնամ, և նորանց թշնամի քեզի երևնամ. ամէն պատիժ տուր ինծի՝ աս մի տար, մի թողուր զիս մեկնիլ 'ի քէն։ Թէ որ տեսնես որ նորէն զքեզ պիտոր վշտացընեմ, առաջուց մահ տուր ինծի. ես գոհ եմ։ Ինչ մահ ալ ըլլայ՝ ես գոհ եմ, միայն թէ մէյմըն ալ չի լամ իմ թշուառութիւնս քու շնորհքէդ զրկուելուս համար. մի թողուր զիս մեկնիլ 'ի քէն։ Աս կրկնելով կը կրկնեմ, Աստուած իմ, մի թողուր զիս մեկնիլ 'ի քէն։ Կը սիրեմ զքեզ, սիրելիդ իմ փրկիչ, ես չեմ ուզեր քեզմէ բաժնուիլ. վասն արդեանց սուրբ մահուանդ տուր ինծի սաստիկ սէր մը, որ զիս պինդ կապէ քեզի հետ՝

անանկ որ չի կարենամ մէյմըն ալ քակուիլ: Ով Աստուածամայր Մարիամ, թէ որ ես դառնալու ըլլամ մէյմըն ալ զԱստուած վշտացընելու, վախնամ որ դուն ալ զիս երեսէ կը ձգես: Հապա օգնէ ինծի քու բարեխօսութեամբդ որ ունենամ յարատեւութիւն և սէր առ Յիսուս փրկիչն իմ:

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԸ.

## ՄԵՂԱՑ ԹԻԽԸ

*Որովհետեւ չարերուն վճիռը շուտով չի տրուիր, անոր համար որդիք մարդկան չարութենէ ետ չեն կենար [1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ոմանք որ Աստուած իսկոյն պատժէր մեղապարտները, յայտնի է թէ իրեն դէմ այնչափ անարգանք չէր ըլլար, որչափ որ հիմա կըլլայ. բայց որովհետեւ Աստուած շուտով չի պատժեր, հապա երկայնամիտ կըլլայ, համարձակութիւն կառնեն մեղաւորք աւելի վշտացընել զինքը. սակայն աղէկ նայելու է, որ Աստուած թէպէտ և կը համբերէ, բայց միշտ չի համբերեր: Հասարակ կարծիք է սրբոց հարց, Բարսղի, ռսկեբերանի, Հերոնիմոսի, Ամբրոսիոսի, Օգոստինոսի, Կիւրղի աղեքսանդրացւոյ և ուրիշներուն թէ ինչպէս որոշեր է Աստուած ամէն մէկ մարդու կենաց օրերը, առողջութեան աստիճանը, կամ քանքարը՝ զոր կուզէ անոնց տալ, իմաստնոյն ըսածին պէս, թէ զամենայն ինչ չափով և թուով և կշռով կարգեցեր. Նոյնպէս ամէն մէկին որոշեր է թողութիւն տալ այսչափ յանցանքին, որ երբոր լցուի նէ, ալ չի ներեր: Աս բանս պէտք է մեզի հասկընալ, կըսէ սուրբն Օգոստի-

1 Քանզի ոչ վաղվաղակի վճիռ ելանի ընդդէմ չարաց, վասն այնորիկ որդիք մարդկան յաճախեն 'ի չարիս: Ժող. Ը. 11. Եբ:

նոս, թէ այսչափ անգամ կը համբերէ Աստուած մեզի, ան լմնցածին պէս ալ թողութիւն չըլլար։ Նմանապէս կըսէ Եւսեբիոս կեսարացին թէ Աստուած կըսպասէ մինչև մէկ որոշեալ թիւ մը, անկից ետքը երեսէ կը ձգէ. նոյնպէս կը խօսին և վերոյիշեալ հարք։

Աս բանս վայրապար չեն ըսեր սուրբ հարք, հապա սուրբ գրոց հիման վրայ հաստատելով կըսեն, ուր գըրած է թէ չև ևս լցան անօրէնութիւնք ամովրհացւոց. ուրիշ տեղ՝ թէ ոչ ևս յաւելից ողորմել Իսրայէլի. դարձեալ՝ փորձեցին զիս այս տասն անգամ, և ոչ տեսցեն զերկիրն։ Յոբ ալ կըսէ, թէ կնքեցեր զանօրէնութիւնս իմ 'ի քսակի։ Մեղաւորք չեն համրեր չեն սեպեր իրենց մեղքը. բայց Աստուած աղէկ հաշիւ կը բռնէ, որպէս զի հնձոց ատեն պատիժը տայ, այսինքն երբոր չափը լմննայ նէ. ըսելով թէ արկէք մանգաղ զի հասեալ են կութք։ Դարձեալ կըսէ Աստուած՝ թէ առջևի մեղքէդ անվախ մի ըլլար, և մեղք մեղքի վրայ մի դներ։ Վախցիր, կըսէ մեղաւորին, ան մեղքէն ալ որ քեզի ներեցի, չէ նէ՝ եթէ նորէն աւելցընես, կրնայ ըլլալ որ ատ նոր մեղքդ առաջիններուն հետ՝ չափը համրանքը լեցընէ, ան ատեն թողութեան տեղիք չի մնար քեզի։ Ուրիշ տեղ ալ սուրբ գիրքը աս բանս կիմացընէ թէ օր կու գայ որ մեղացդ չափը լցուած կըլլայ, ետևէն պատիժ կը հասնի։

Աս պատիժի օրինակն ալ շատ տեղ կը տեսնուի. մանաւանդ Սաւուղայ վրայ որ ետքի անգամ անհնազանդ ըլլալով Աստուծոյ երեսէն ինկաւ բոլորովին, ուստի կաղաչէր Սամուէլին՝ որ միջնորդ ըլլայ իրեն համար՝ ըսելով թէ բարձ զմեղս իմ, և դարձիր ընդ իս, և պագից երկիր տեառն Աստուծոյ քում։ Իսկ Սամուէլ պատասխան տուաւ թէ ոչ դարձայց ընդ քեզ զի արհամարհեցեր զբան տեառն, և արհամարհեսցէ զքեզ տէր։ Յայտնի է Բաղտասարայ օրինակն ալ, որ տաճարին սուրբ սպասները պղծելով, ձեռք մը տեսաւ որ պատին վրայ կը գրէր, մանէ, թէկէլ, փարէս, որ կը նշանակէր ինչպէս որ մեկնեց Դանիէլ, կշռեցաւ 'ի կշիռս թագաւորութիւն քո, և գտաւ պակասեալ։ Իրօք ալ նոյն գիշերը սպաննուեցաւ Բաղտասար արքայ քաղդէացւոց։ Ա՛խ թէ որչափ թշուառականներու ասանկ կըլլայ, որ տարիներով մեղաց մէջ կը մնան.

բայց երբոր չափերնին կը լմննայ նէ, գրոց խօսքն ալ կը կատարուի. կատարեցին 'ի բարութեան զկեանս իւրեանց, հանգստեամբ ննջեցին 'ի դժոխս։ Կան որ ետեւէ կ'իյնան քննել աստեղաց համրանքը, հրեշտակաց թիւը, իրենց տարիքներուն թիւը, բայց ո՞վ կայ որ քննէ իր մեղաց համրանքը, որ Աստուած ամէն մէկուն ներել ուզեր է։ Ասոր համար պէտք է դողալ սարսափիլ. ո՛վ գիտէ, եղբայր սիրելի, որ մէյմըն ալ աս անարժան գործքը ընելու ըլլաս նէ, ան չար խորհրդոց տեղիք տաս նէ, աս մեղքն որ ընես նէ, ա՛լ ներումն չիկայ քեզի։

### ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Աստուած իմ, գոհանամ զքէն, արդեօք քանի՛ ինծմէ պակաս մեղք ունեցողներ կան հիմա դժոխքին մէջ, ա՛լ թողութիւն և յոյս չիկայ իրենց. իսկ ես դեռ կենդանի եմ դժոխքէ դուրս, և յոյս ունիմ թողութեան և արքայութեան, թէ որ ուզենամ նէ։ Այո տէր Աստուած իմ, ներումն կը խնդրեմ, կը զղջամ ամէն բանէն աւել զքեզ վշտացընելուս համար, վասն զի վշտացուցի զանհուն բարութիւնդ։ Ով հայր երկնաւոր, նայեաց յերեսս օծելոյ քո, նայէ քու միածնիդ վրայ, որ ինծի համար խաչի վրայ մեռաւ, և անոր արդիւնքով ողորմէ ինծի։ Ես խօսք կու տամ որ առաջ մեռնիլ կուզեմ քան թէ մէյմըն ալ զքեզ վշտացընել. իրաւ որ իրաւունք ունիմ վախնալու իմ ըրած մեղքերուս համար, և քու ըրած շնորհքներուդ համար, որ մէկ մեղք մըն ալ աւելի ունենամ նէ, չափս կը լեցուի ու կը դատապարտուիմ։ Հապա օգնէ ինծի շնորհօք քո, քեզմէ կը յուսամ որ ինծի լոյս և ուժ տաս հաւատարիմ ըլլալու քեզի։ Իսկ եթէ տեսնես որ ես նորէն զքեզ պիտի վշտացընեմ, տուր ինծի ան րոպէին մէջ մեռնիլ, յորում կը յուսամ լինել 'ի շնորհս քո։ Աստուած իմ, ես զքեզ կը սիրեմ ամէն բանէ աւելի, և մեռնելէն նյնչափ չեմ վախնար՝ որչափ քու շնորհքդ կորսընցընելէն, մի՛ թողուր զիս։ Մարիամ, մայր իմ, օգնութիւն հասիր ինծի, և առ ինծի համար սուրբ յարատեւութիւն։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Բայց կըսէ եղեր մեղաւորը թէ Աստուած ողորմած է։ Ես ալ գիտեմ թէ անբաւ է Աստուծոյ ողորմութիւնը, և սակայն աս այսպէս ըսելով ալ որչափ մարդիկ կը դատապարտուին։ Կըսէ տէրն թէ ես եկի բըժշկել զբեկեալս սրտիւք։ Աստուած կը բժշկէ զանոնք որոնք բարի կամք ունին և թողութիւն կու տայ մեղաց, բայց չի կրնար ներել մեղանչելու կամք ունեցողին։ Կըսես թէ ես կտրիճ հասակի մէջ եմ, թող այդպէս ըլլայ. բայց Աստուած տարիքը չի համրեր, հապա մեղքերը, և աս մեղաց չափը ամենուն հաւասար չէ. Աստուած մէկին հարիւր, մէկալին հազար մեղք կը թողնէ. բայց զուրիշն ալ երկրորդ մեղքին ատենը դըժոխք կը խաւրէ. քանիններ ալ եղած են որ առաջին մեղքով դժոխք են գնացեր։ Սուրբն Գրիգոր կը պատմէ հինգ տարեկան տղու մը համար թէ հայհոյութիւն մը ընելով դժոխք գնաց. Սուրբ Աստուածածինը յայտնեց Փիորէնցացի սրբակեաց կուսի մը թէ տասուերկու տարուան աղջիկ մը իր առաջին մեղքով դատապարտուեցաւ։ Ուրիշ տղայ մըն ալ ութը տարեկան՝ առաջին մեղքով մեռաւ, ու կորսուեցաւ։ Սուրբ աւետարանը կը պատմէ, թէ տէրն մեր առաջին անգամն որ անպտուղ գտաւ թզենին նէ՝ մէկէն անիծեց, ըսելով մի այսուհետև 'ի քէն պտուղ եղիցի յաւիտեան, և առժամայն չորացաւ թզենին։ Մարգարէին ձեռքովն ալ ըսեր է թէ 'ի վերայ երից անօրէնութեանցն Դամասկեայ և 'ի վերայ չորիցն ոչ դարձայց 'ի նմանէ։ Գուցէ անզգամին մէկը ուզենայ համար պահանջել Աստուծմէ թէ ինչո՞ւ մէկին իրեք մեղացը կը ներէ, ու չորսին չէ։ Աս բանիս մէջ պէտք է երկրպագանել աստուածային դատաստանաց, և առաքելոյն հետ ըսել ով խորք մեծութեան և իմաստութեան և գիտութեանն Աստուծոյ, որպէս զի առանց քննելոյ են դատաստանք նորա, և առանց զննելոյ են ճանապարհք նորա։ Սուրբն Օգոստինոս ալ կըսէ թէ ինքն գիտէ, ում խնայէ ում չխնայէ. որով ոմանց ողորմութիւնը ձրի կըլլայ, և ոմանց ալ չըլլար նէ՝ յարդարութենէ չըլլար։

Թող ըսէ խստասիրտը թէ ես այնչափ անգամ զԱս-

տուած բարկացուցի, և Աստուած Ներեց ինծի, ուստի կը յուսամ որ աս մեղքիս ալ աչք կը խփէ. ես ալ կըսեմ՝ Աստուած որ ինչուան հիմա զքեզ չպատժեց նէ, միշտ այսպէ՞ս պիտի ըլլայ. չափը լմնցածին պէս պատիժը կը հասնի: Սամփսոնն որ այնչափ խաղաց Դալիլեային հետ նէ, կը յուսար թէ փղշտացւոց ձեռքէն կազատի, ինչպէս առաջ եղաւ. ելիթ և արարից որպէս միշտ, և թօթափեցից կըսէր. բայց վերջի անգամուն բռնուեցաւ, կեանքն ալ կորսընցուց: Մի՛ ըսեր, կը պատուիրէ Աստուած, մի՛ ըսեր թէ այնչափ մեղք գործեցի և Աստուած զիս չի պատժեց, զի տէր երկայնամիտ է վասն դարձի քո և քաւութեան[1]: Տեղը գայ նէ, բոլորը մէկէն կը վճարէ, և որչափ աւելի եղաւ ողորմութիւնը նէ, այնչափ ալ պատիժը ծանր կըլլայ. աղէկ կըսէ ոսկեբերան՝ թէ աւելի վախնալու է երբոր Աստուած կը համբերէ նէ, քան թէ շուտով պատժէ. և մեծն Գրիգոր ալ կըսէ թէ որոնց որ երկար կըսպասէ նէ, աւելի խստութեամբ կը դատապարտէ, ու վերջայ կըբերէ թէ շատ անգամ անոնց որ երկար համբերեր է Աստուած նէ, յանկարծական մահ վրայ կուգայ, անանկ որ մեղայ ըսելն, կամ զղջումն ալ մահէն առաջ չի յաջողիր: Մանաւանդ երբոր շատ լոյս քեզի Աստուած տուեր էր նէ, այնչափ մեծ կըլլայ մոքիդ կուրութիւնը և խստասրտութիւնդ ՚ի մեղս: Ուստի կըսէ սուրբն Պետրոս թէ լաւ էր նոցա եթէ բնաւ իսկ չէր ծանուցեալ զարդարութեանն ճանապարհ, քան թէ ծանեան, և յետս կացին. և սուրբն Պօղոս բարոյապէս խօսելով կըսէ թէ անհնար է միանգամ մկրտելոցն, որ ճաշակեցին յերկնաւոր պարգևաց, ... և կործանեցին՝ միւսանգամ նորոգել յապաշխարութիւն:

Սարսափելի է Աստուծոյ ըսածը իր կոչմանը խուլ ձևացողներուն. քանզի կոչէի և ոչ անսայիք ... այսուհետև ես ծիծաղեցայց կորստեամբ ձերով, որ է ըսել՝ ինչպէս մեղաւորը ծաղր ըրաւ զԱստուած՝ խոստովանանք ըլլալով, խօսք տալով, ու եաքը մատնիչ եղաւ, անանկ ալ Աստուած ծաղր պիտի ընէ զանիկայ մահուան ատենը: Դարձեալ կըսէ իմաստունը՝ որպէս շուն դառնայ ՚ի փսխած իւր և ատելի լինի, նոյն-

1 Միք. Ե. 4—5:

պէս անգգամն չարեաց իւրովք յորժամ դառնայցէ 'ի մեղս իւր ։

ԻՂՁ ՆԻ ՊԱՂԱՑԱՆՔ

Ահա տէր, ես եմ ան գարշելի շունը՝ որ այնչափ անգամ դարձայ ուտել ան արգելեալ պտուղները, որոնցմէ առաջ ետ քաշուեր էի։ Գթութեան արժանի չեմ ես, ով փրկիչ իմ, բայց քու սուրբ արիւնդ թափեցիր ինծի համար, որն որ զիս կը քաջալերէ և կըստիպէ յոյս ունենալ։ Քանի՜ անգամ ես զքեզ վշտացուցի, և դուն թողութիւն տուիր ինծի։ Խոստացայ մէյմըն ալ զքեզ չի վշտացընել, և նորէն 'ի փոխանծս դարձայ, և դուն ալ դարձար ներեցիր ինծի. ալ ի՞նչ բանի կըսպասեմ, թէ ոչ դատապարտութեան 'ի դժոխս, կամ թողնելու զիս 'ի ձեռս մեղաց, որ աւելի մեծ պատիժ.է քան զդժոխս։ Բայց քաւ լիցի, Աստուած իմ, ես զիս կուզեմ շտկել, և քեզի հաւատարիմ ըլլալ. բոլոր յոյսս քու վրադ կը դնեմ, կուզեմ քանի որ փորձուիմ նէ, մէկէն քեզի դիմեմ միշտ։ Առաջ ապաւիներ էի իմ խոստմանցս և առաջադրութեանցս վրայ, և անհոգ էի զիս քեզի յանձնելու փորձութեան ատեն, և աս եղաւ իմ կործանմանս պատճառ։ Չէ չէ, ասկէ ետև դուն պիտոր ըլլաս իմ յոյսս, ապաւէնս, զօրութիւնս, և այսպէս կարող կըլլամ ամէն բանի։ Ուրեմն շնորհք տուր ինծի քու արդեամբքդ, Յիսուս փրկիչ իմ, զիս քեզի միշտ յանձնել, և օգնութիւն խնդրել յամենայն պէտս իմ։. Զքեզ կը սիրեմ ծայրագոյն բարի և 'ի վեր քան զամենայն բարիս սիրելի. և զքեզ միայն կուզեմ սիրել, միայն թէ դուն ինծի օգնէ։ Դուն ալ Մարիամ, մայր իմ, օգնական եղիր ինծի, ընդունէ զիս քու հովանաւորութեանդ տակը, և տուր որ միշտ առ քեզ ապաւինիմ փորձութեան ատենը, քու անունդ ըլլայ իմ պաշտպանութիւնս ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Կըսէ Սիրաք թէ որդեակ մեղար, բայց մի՛ նորէն աւելցներ, հապա առջիններուն թողութիւն խնդրէ ։ Աս է քեզի Աստուծոյ ըրած ազդարարութիւնը, ով քրիստոնեայ, վասն զի քու փրկութիւնդ կուզէ։ Ով

եղբայր, որչափ աւելի սրդողցընես զԱստուած, այնչափ աւելի պիտի դողաս՝ որ մէյմըն ալ չի սրդողցընես, վասն զի նորանոր մեղք գործես նէ, կրնայ ծանրացընել Աստուծոյ արդարութեան կշիռքը. և կը դատապարտուիս: Ես բացարձակապէս չեմ ըսեր թէ մէյմըն ալ մեղանչելէդ ետև թողութիւն չըլլար, վասն զի ատ իմ գիտնալու բանս չէ. հապա կըսեմ թէ այդպէս ալ կրնայ ըլլալ: Ուստի երբոր կը փորձուիս նէ ըսէ. արդեօք Աստուած մէյմըն ալ կըներէ՞. չներէ նէ՝ որդի կորստեան կըլլամ: Քեզի կը հարցընեմ, թէ որ հաւանական ըլլար՝ թէ սա կերակրիս մէջ թոյն կայ, ընաւ կուտէի՞ր. թէ որ հաւանականաբար գիտնայիր որ ճամբու վրայ թշնամիք քեզի կըսպասեն սպաննելու, անկից կանցնէի՞ր երբոր ուրիշ ապահով ճամբայ կայ նէ: Արդ ի՞նչ ապահովութիւն կամ հաւանականութիւն ունիս դուն, թէ երբոր դառնաս մեղանչես նէ, ետքը պիտի ունենաս ճշմարիտ զղջումն, ու պիտի չի դառնաս փախածդ, և թէ 'ի մեղանչելդ Աստուած նոյն ատենը մահ չի բերեր վրադ կամ զքեզ երեսէ չի ձգեր:

Ով մարդ, դուն մէկ տուն մը գնելու ըլլաս նէ, ամէն փոյթ և զգուշութիւն կընես որ ստակդ չկորսընցընես: թէ որ դեղ մը առնելու ըլլաս նէ, ամէն կերպով կը նայիս որ անկից քեզի վնաս մը չըլլայ. գետէ մը անցնիս նէ՝ կը նայիս որ վտանգ մը չըլլայ մէջը ինկնալու: Ետքը մէկ չնչին հաճոյիցդ համար կամ մէկ անասնական յանցանքի համար, կուզես վտանգի մէջ դնել քու յաւիտենական փրկութիւնդ, ըսելով թէ կը յուսամ որ խոստովանանք կըլլամ: Բայց ես քեզի հարցընեմ. ե՞րբ պիտոր խոստովանիս. կիրակի կըսես, և ո՞վ քեզի խօսք կու տայ թէ ողջ պիտի մնաս մինչև 'ի կիրակի. վաղը կըսես, և ո՞վ կը խոստանայ քեզի վաղուան օրը: Աղէկ կըսէ սուրբն Օգոստինոս թէ ժամը ձեռքդ չէ նէ, օրը ի՞նչպէս ձեռքդ ըլլայ: Ի՞նչպէս կրնաս դուն քեզի խոստանալ թէ վաղը կը խոստովանիս, երբոր չես գիտեր թէ այսօր մէկ ժամ մըն ալ կունենա՞ս արդեօք: Ուստի նոյն սուրբը կըսէ ետևէն թէ Աստուած ապաշխարողին թողութիւն խոստացաւ, բայց մեղանչողին վաղուան օրը չի խոստացաւ. գուցէ կու տայ, գուցէ չի տար: Թէ որ հիմա մեղանչես նէ՝ Աստուած գուցէ ապաշխարութեան ժամանակ քեզի տայ, և գուցէ

չի տայ․․ և թէ որ չի տայ նէ՝ ան․ատեն քու վիճակդ ի՜նչ կըլլայ յաւիտենականութեան մէջ։ Այսու ամենայնիւ դուն մէկ չնչին հաճոյից համար հոգիդ կը կորսընցընես և զքեզ յաւիտենական կորստեան վտանգին մէջ կը դնես։ Հազար դահեկան կը դնէի՞ր արդեօք 'ի վտանգ ան անպիտան հաճոյից համար։ Աւելի մեծը ըսեմ, կըսէի՞ր արդեօք ան չնչին բանին համար թէ թող ամէն բանս երթայ կորսուի, ստակս ալ, տունս ալ, ունեցածս, չունեցածս, ազատութիւնս, կեանքս։ Չէ․ հապա ի՞նչպէս եաքը կելլես կուզես ատ չնչին հաճոյիցդ համար մէկ վայրկենի մէջ ամէն բան կորսընցընել, հոգիդ ալ, արքայութիւնն ալ, զԱստուած ալ։ Քեզի կըսեմ, շիտակն ըսէ ինծի, աս բաներս ճշմարտութի՞ւն են, ինչպէս որ հաւատքը կը սորվեցընէ, չէ նէ առասպել․ այսինքն թէ արքայութիւն կա՞յ արդեօք, դժոխք կա՞յ, յաւիտենականութիւն կա՞յ, կը հաւատա՞ս դուն թէ մեղքի մէջ մեռնիս նէ՝ կորսուած ես յաւիտեան։ Արդ ի՞նչ անխելքութիւն է ուրեմն, ի՜նչ յիմարութիւն է, որ դուն զքեզ կը դատապարտես 'ի յաւիտենական տանջանս, ըսելով թէ յուսամ որ եաքը ճար մը կընեմ։ Կըսէ սուրբն Օգոստինոս՝ թէ ոչ ոք յուսով առողջութեան յանձն կառնէ հիւանդանալ․ խենթ մը չի կայ որ թոյն առնէ՝ ըսելով թէ կարելի է որ եաքը դեղով կառողջանամ։ Իսկ դուն յաւիտենից մահուան զքեզ դատապարտել կուզես, ըսելով թէ կրնայ ըլլալ որ եաքը խալըսիմ։ Ո՜վ յիմարութեանս, որ շատերը տարաւ ու կը տանի 'ի դժոխս․ ինչպէս որ սուրբ գիրքն ալ կըսէ թէ վասն վստահութեան չարութեանց քոց հասցէ 'ի վերայ քո կորուստ, զոր ոչ գիտիցես։ Աստուծոյ անհուն ողորմութեան յանդգնաբար ապաւինելով մեղանչեցիր, յանկարծակի վրադ պիտի հասնի պատիժը և պիտի չիմանաս թէ ուսկից է։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ահա, տէր, ես ան խենթերէն մէկն եմ, որ շատ անգամ կորուսեր եմ հոգիս և քու շնորհքդ՝ ան յուսով որ նորէն կը գտնեմ։ Եւ թէ որ դուն ինծի մահ ղրկէիր ան ատեն կամ ան գիշերն որ ես 'ի մեղս էի, ի՜նչ կըլլար հիմա իմ վիճակս։ Գոհանամ զողորմութենէ քումմէ, որ ինծի երկայնամիտ եղար, և ինծի

ճանչնալ կու տաս իմ խենթութիւնս։ Կը տեսնեմ որ դուն զիս փրկել կուզես, ես ալ կուզեմ փրկուիլ։ Կը ցաւիմ կը զղջամ որ շատ անգամ քեզի երես դարձուցի. կը սիրեմ զքեզ յամենայն սրտէ, և կը յուսամ յարգիւնս չարչարանաց քոց, Յիսուս փրկիչ իմ, որ մէյմըն ալ զքեզ չի կորսընցընեմ. ընկալ զիս 'ի շնորհս քո, որ մէյմըն ալ զքեզ չուզեմ թողնել։ Ի քեզ տէր յուսացայ, մի ամաչեցից յաւիտեան։ Ա՜խ, չեմ կարծեր, ով փրկիչ իմ, որ ես մէյմըն ալ ան թշուառութիւնը և ամօթը քաշեմ, տեսնել զիս զուրկ 'ի շնորհացդ և 'ի սիրոյ քո։ Տուր ինծի սուրբ յարատեւութիւն, և տուր որ միշտ զքեզ խնդրեմ, մանաւանդ փորձութեան ատենը, և յօգնութիւն կանչեմ զսուրբ անունդ քո, և սուրբ մօր քոյ, ըսելով Յիսուս իմ օգնեա ինձ. Մարիամ, մայր իմ, օգնէ ինծի։ Գիտեմ, ով Թագուհիդ իմ, որ քեզի ապաւինիմ նէ՝ չեմ յաղթուիր բնաւ։ Եւ թէ որ սատականայ փորձութիւնը վրաս նէ՝ տուր որ աւելի սրտանց առ քեզ կարդամ։

ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԺԹ.

ՈՐՉԱՓ ՄԵԾ ԲԱՆ Է ԱՍՏՈՒԾՈՅ ՇՆՈՐՀՔԸ.

ԵՒ ՈՐՉԱՓ ՉԱՐ Է ԶՐԿՈՒԻԼ Ի ՇՆՈՐՀԱՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ

*Մարդս անոր յարգը չի գիտեր*[1]։

---

ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Այսպէս կըսէ տէր՝ Երեմիա մարգարէին բերնով. եթէ հանցես զպատուականն յանարգէ, իբրև զբերան իմ եղիցիս։ Ով որ գիտէ բաժնել պատուականն անարգէն՝ Աստուծոյ նման կըլլայ, որ գիտէ զչարն 'ար-

1 Ոչ գիտէ մարդ զկարգ նորա։ Յոբ. ԻԸ. 13. ըստ եօ։

համարհել և զբարին ընտրել։ Գիտենք որ շնորհքն Աստուծոյ պատուական բան է, և անշնորհք մնալը շատ գէշ և անարգ բան է։ Բայց մարդս չի գիտեր աստուածային շնորհքին յարգը, ուստի կը փոխէ զայն ոչինչ բանի մը հետ, ծուխի մը պէս բանի հետ, կտոր մը հողի հետ, մէկ անբանական հաճոյքի մը հետ. ուր Աստուծոյ շնորհքն է գանձ անհուն, որ զմեզ Աստուծոյ բարեկամ կընէ. զի անպակաս գանձ է մարդկան, որով որք վարեցան՝ առ Աստուած առաքեցին զբարեկամութիւն, կըսէ Իմաստունը։ Հեթանոսք որ զուրկ էին հաւատոյ լուսոյն, կը կարծէին թէ անկարելի է արարած մը բարեկամութիւն կարենայ ունենալ Աստուծոյ հետ. և իրաւ որ բնական լուսով խօսելով իրաւունք ունէին, վասն զի ինչպէս որ սուրբն Հերոնիմոս ալ կըսէ, բարեկամութիւնը կամ իրեն հաւասար կուզէ՝ կամ կընէ։ Բայց Աստուած շատ տեղ յայտնի ըրաւ թէ մենք իր շնորհքովը իրեն բարեկամ կըլլանք թէ որ իր օրէնքները պահենք նէ։ Դուք բարեկամք էք իմ, կըսէ. եթէ առնիցէք զոր ես պատուիրեմ ձեզ, ոչ ես կոչեմ զձեզ ծառայս . . . այլ զձեզ կոչեցի բարեկամս։ Ուստի կաղաղակէ սուրբն Գրիգոր, ո՜վ սքանչելի մարդասիրութեանն Աստուծոյ, մենք ծառայ ըսուելու արժանի չենք, և ահա բարեկամ կանուանինք։

Ինչպէս բարեբախտ կը սեպէր զինքը մէկը, թէ որ արժանի ըլլար բարեկամ ըսուիլ իր թագաւորին. բայց մեծ յանդգնութիւն կը սեպուէր, թէ որ հպատակ մը ետևէ իյնար բարեկամութիւն ընել իր թագաւորին հետ. և սակայն յանդգնութիւն չէ, թէ որ մէկը ուզենայ բարեկամ Աստուծոյ ըլլալ։ Կը պատմէ սուրբն Օգոստինոս թէ երկու ազնուական գտնուեցան միանձանց վանքի մը մէջ, մէկը հոն սուրբ Անտոն աբբային վարքը սկսաւ կարդալ, և որչափ կը կարդար՝ այնչափ սիրտը աշխրքէս կը հեռանար, և կրկին կրկին կարդալով ըսաւ իր ընկերին թէ մենք ի՞նչ կուզենք. շատ շատ յոյս պիտի ունենանք որ կայսեր բարեկամ ըլլանք. և ի՞նչ վտանգներ պիտի քաշենք աս բանիդ հասնելու համար։ Ուրեմն մենք խենթ ենք՝ որ ատանկ բան կը փնտռենք, և ուրիշ յոյս չունինք։ Թէ և կայսեր ծառայելով իր բարեկամներէն ըլլայինք, ատոր ալ հասնէինք նէ, աւելի վտանգ կըլլար մեր հոգւոյն փրկու-

թեանը․ իսկ Աստուծոյ բարեկամ ըլլալ ուզեմ նէ, ահա հիմա կրնամ ըլլալ։

Ուրեմն ով որ 'ի շնորհս Աստուծոյ է նէ, Աստուծոյ բարեկամ է, և որ մեծն է՝ Աստուծոյ որդի ալ կըլլայ․ ես ասացի թէ աստուածք իցէք, կամ որդի բարձրելոյ ամենեքեան։ Աս է մեծ պարգև սիրոյն Աստուծոյ միջնորդութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Տեսէք որպիսի սէր շնորհեաց մեզ հայր, կը գոչէ առաքեալը, զի որդիք Աստուծոյ կոչեսցուք, և եմք։ Ալ աւելին, հոգին շնորհօք կըլլայ հարսն Աստուծոյ․ խօսեցայց զքեզ հաւատով, կըսէ Աստուած։ Աստր համար անառակ որդիին հայրը իր շնորհքին մէջ ընդունելով նորէն իր զաւակը՝ հրամմեց որ հարսնախօսութեան մատանին տրուի իրեն․ տուր զմատանին 'ի ձեռս նորա․ միանգամայն կըլլայ և տաճար հոգւոյն սրբոյ։ Տոկնէս Մարիամ կոյսը տեսաւ որ երեխայի մը մկրտուելու ատեն սատանեան ելաւ անկէ և մտաւ հոգին սուրբ հրեշտակօք։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ուրեմն, Աստուած իմ, երբոր հոգիս 'ի շնորհս քո էր նէ, քու որդիդ էր, հարսդ էր ու տաճարդ էր․ և մեղանչելով ամէն բան կորսընցուց, ու եղաւ քու թըշնամիդ, և գերի դժոխոց։ Սակայն շնորհակալ եմ, որ ատեն տուիր ինծի ընդունելու քու շնորհքդ, Աստուած իմ։ Կը զղջամ ամէն բանէ վեր զքեզ վշտացընելուս վրայ, ով անհուն բարիդ, կը սիրեմ զքեզ 'ի վեր քան զամենայն։ Ա՛հ, կաղաչեմ, զիս նորէն ընդունէ 'ի քո բարեկամութիւնդ, մի անարժան համարիր զիս։ Գիտեմ որ ես արժանի էի քեզմէ պատժուելու, բայց արդիւնք Քրիստոսի Յիսուսի կարժեն՝ որ զիս նորէն ընդունիս յետ զղջալուս։ Վասն սիրոյ պատարագին որով ինքը մինքը զոհեց 'ի Գողգոթա, եկեսցէ արքայութիւն քո, հայր իմ, վասն զի աստանկ քեզի կարգալ սորվեցուց ինծի միածինդ․ եկ հայր իմ քու շնորհօքդ թագաւորել իմ սրտիս մէջ, տուր որ սիրտս քեզի միայն ծառայէ, քեզի համար միայն ապրի, և զքեզ միայն սիրէ։ Եւ մի տանիր զմեզ 'ի փորձութիւն․ մի թողներ կաղաչեմ որ սատանեան զիս փորձէ ու զիս յաղթէ։ Այլ փրկեա զմեզ 'ի չարէ, դժոխքէն զիս խալըսէ,

բայց նախ և առաջ մեղքէ զիս խալըսէ, որ միայն կըրնայ զիս դժոխք տանել։ Ով տիրամայր Մարիամ, բարեխօսէա վասն իմ, խալըսէ զիս աս մեծ չարէն որ մէյմըն ալ զիս չիտեսնեմ 'ի մեղս, և զուրկ քու շնորհքէդ և 'ի շնորհաց Աստուծոյ իմոյ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Սուրբն Թովմաս աքուինացին կըսէ թէ շնորհաց պարգևը 'ի վեր է քան զամենայն տուրս հաղորդելու արարածական բնութեան, վասն զի հաղորդակցութիւն է աստուածային բնութեան։ ինչպէս Պետրոս առաքեալն ալ ըսեր է թէ զի նորիմք աստուածեղէն բնութեան լինիցիմք հաղորդակիցք։ Ահա այսպիսի մեծ բան շահեցաւ մեզի համար Քրիստոս տէրն մեր իր չարչարանօքը, ինքը մեզի հաղորդեց ան փառքը զոր ընկալաւ 'ի հօրէ, վասն զի և ես զփառսն զոր ետուր ինձ, ետու նոցա՝ կըսէ։ Վերջապէս 'ի շնորհս Աստուծոյ եղողը Աստուծոյ հետ մէկ կըլլայ. որ մերձենայ 'ի տէր՝ մի հոգի է։ Փրկիչն մեր աս ալ ըսաւ թէ յաստուածասէր հոգին կու գայ բնակելու բոլոր սուրբ երրորդութիւնը. եթէ ոք սիրէ զիս. . . հայրն իմ սիրեսցէ զնա, և առ նա եկեսցուք, և օթևանս առ նմա արասցուք։ Շնորհքի մէջ եղող հոգին Աստուծոյ առջև այնչափ գեղեցիկ բան է որ ինքն Աստուած ալ զանիկայ գովելով կըսէ, գեղեցիկ ես, մերձաւոր իմ. ո՜վ քանի գեղեցիկ ես։ Այնպէս կերևնայ որ մէկ հոգի մը զորն որ սիրէ Աստուած, չի կրնար իր աչքը անկէ դարձընել, և ոչ ականջը. ինչ որ իրմէ ուզէ նէ՝ կը կատարէ. աչք տեառն 'ի վերայ արդարոց և ականջք նորա յաղօթս նոցա՝ կըսէ սաղմոսերգուն։ Սրբուհին Պրիճիտա կըսէր թէ չի կրնար մէկը տեսնել հոգւոյ մը գեղեցկութիւնը որ 'ի շնորհս Աստուծոյ է, և չմեռնիլ ուրախութենէն։ Եւ սրբուհին Կատարինէ սիենացին երբոր տեսաւ մէկ հոգի մը որ 'ի շնորհս էր, ըսաւ. սիրով կեանքս կու տայի, միայն թէ ան հոգին չկորսընցընէ իր այնչափ գեղեցկութիւնը. անոր համար աս կոյսը կը համբուրէր ան տեղուանքը ուսկից որ քահանայք կանցնէին, գիտնալով որ անոնց ձեռքով հոգիները կը դառնան 'ի շնորհս Աստուծոյ։

Հապա որչափ արդեօք կրնայ դիմել հոգի մը որ 'ի շնորհս Աստուծոյ է. ամէն վայրկենի մէջ կրնայ շահիլ մէկ յաւիտենական փառք մը։ Արդոյն Թովմայի ըսածին պէս՝ իւրաքանչիւր ներգործութիւն սիրոյ հոգւոյ մը, արժանի կըլլայ մասնաւոր յաւիտենից կենաց։ Ի՜նչ հապա մենք կեցեր ենք նախանձելու աշխարհիս մեծերուն։ Թէ որ 'ի շնորհս Աստուծոյ ըլլանք նէ, շարունակ կրնանք շահիլ աւելի մեծ մեծութիւններ յերկինս։ Հայրն Փադրինեանի կը գրէ իր յայսմաւուրին մէջ թէ մէկ-օգնական եղբայր մը Յեսուսեան կարգին, մեռնելէն ետքը երեւցաւ մէկին ու ըսաւ թէ փրկուած եմ ես երկրորդ Փիլիպպոսի Սպանիոյ Թագաւորին հետ, ու մէկտեղ կը վայելենք 'ի փառս, բայց որչափ քիչ էր իմ սէրս Փիլիպպոսի հետ երկրիս վրայ նէ, այնչափ հիմա շատ է արքայութեան մէջ։ Դարձեալ փորձ եղողը միայն կրնայ իմանալ զայն խաղաղութիւնը զոր կը վայելէ աշխարհիս վրայ ալ 'ի շնորհս Աստուծոյ եղողը. ճաշակեցէք և տեսէք զի քաղցր է տէր։ Աստուծոյ խօսքը գետին չիյնար որ կըսէ թէ խաղաղութիւն բազում է այնոցիկ՝ ոյք սիրեն զօրէնս քո, և խաղաղութիւնն Աստուծոյ՝ որ 'ի վեր է քան զամենայն միտս։

ԻՂՁՔ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով փրկիչ իմ Յիսուս, դուն ես ան բարի հովիւն որ քու կեանքդ տուիր մեզի համար, որ քու ոչխարդ ենք։ Երբոր ես քեզմէ կը փախչէի, դուն չդադրեցար ետեւէս վազելու զիս փնտռելով. հիմա զիս ընդունէ, երբոր ես զքեզ կը խնդրեմ, և զղջմամբ կը դառնամ առ ոտս քո։ Տուր ինծի նորէն քու շնորհքդ, զոր ես թշուառաբար կորուսի իմ յանցանքովս։ Կը զղջամ բոլոր սրտանց, երանի թէ ցաւէս մեռնէի՝ յիշելով որ այնչափ անգամ քեզմէ երես եմ դարձուցեր։ Ներէ ինծի արդեամբք դառն մահուան քո զոր վասն իմ 'ի վերայ խաչի մեռար, կապէ զիս քաղցր կապանօք սիրոյդ, և մի թողուր որ մէյմըն ալ քեզմէ զատուիմ։ Տուր ինծի համբերութեամբ տանիլ ամէն խաչի, որ ինծի կը խաւրես, ուր ես արժանի եղած եմ յաւիտենական տանջանաց դժոխոց։ Տուր որ սիրով գրկեմ զանարգանս 'ի մարդկանէ, ուր ես արժանի եղայ դիւաց ոտ-

քին տակն ըլլալ յաւիտեան։ Վերջապէս տուր ինծի որ ամէն կերպով հնազանդ ըլլամ քու ազդարարութեանցդ, և յաղթեմ ամենայն մարդկային նկատմանց քու սիրովդ։ Ես առաջադրեր եմ ասկից ետև քեզի միայն ծառայել, թող ուրիշները ինչ կուզեն ըսեն, ես զքեզ միայն կուզեմ սիրել, ամենասիրելի Աստուած իմ, քեզի միայն կուզեմ հաճոյ ըլլալ, միայն թէ տուր ինծի քու օգնութիւնդ, առանց անոր բան մը չեմ կրնար ընել։ Զքեզ կը սիրեմ, Յիսուս իմ, յամենայն սրտէ, և՛ի քո սուրբ արիւնդ կապաւինիմ։ Մարիամ յոյս իմ, օգնէ ինծի քու բարեխօսութեամբդ. ես կը պարծիմ քու ծառայ ըլլալուս, դուն ալ կը պարծիս փրկելով ըզմեղաւորս՝ որ կը դիմեն առ քեզ, հասիր ինծի յօգնութիւն և փրկէ զիս։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Տեսնանք հիմա ան հոգւոյն ողորմելութիւնն որ Աստուծոյ շնորհքէն ընկեր է։ Այնպիսին բաժնուած է իր ծայրագոյն բարիէն, որ է Աստուած. մեղք ձեր որոշեն 'ի մէջ ձեր և'ի մէջ Աստուծոյ, կըսէ Եսայի։ Անանկ որ՝ անկից ետև անիկայ Աստուծոյ չէ, Աստուած ալ իրենը չէ. դուք չէք ժողովուրդ իմ, և ես ոչ ինչ եմ ձեր։ Չէ թէ միայն Աստուծոյ չէ, հապա նաև կատէ զինքը Աստուած և կը դատապարտէ 'ի դժոխս։ Աստուած իր արարածը չատեր, և ոչ գազանները, իժերը և պիծակները. սիրես զամենայն որ ինչ է, և ոչ զարշիս յումեքէ յորոց արարեր, զի ոչ եթէ առ ատել հաստատեցեր ինչ, կըսէ Իմաստունը։ Բայց չի կրնար չատել մեղաւորները. ատեցեր զամենեսեան ոյք գործեն զանօրէնութիւն. վասն զի Աստուած չի կրնար չատել զմեղս, որ է բոլորովին իր կամացը հակառակ, ուստի մեղքը ատելով՝ հարկաւ մեղաւորն ալ կատէ, որ մեղքին հետ միացեր է. առ հասարակ ատելի են Աստուծոյ ամպարշտեալն և ամպարշտութիւն նորա։

Հիմա դուն եկուր նայէ, որ եթէ մէկը իրեն թշնամի ունենայ աշխարքիս թագաւոր մը, չի կրնար հանգիստ քուն ըլլալ. իրաւամբք, վասն զի միշտ մահուան վախը կը քաշէ։ Հապա մէկն որ զԱստուած իրեն թշնամի ունենայ նէ, ինչպէս կրնայ հանգիստ կենալ. թագաւորի

մը բարկութենէն մէկը կրնայ փախչել, անտառի մը մէջ թագչել, կամ ուրիշ թագաւորութիւն մը երթալով, բայց Աստուծոյ ձեռքէն ով կրնայ փախչել։ Տէր, կըսէր Դաւիթ, եթէ ելանեմ յերկինս, դու անդ ես, և եթէ իջանեմ 'ի դժոխս, և անդ մօտ ես . . . և անդ ձեռն քո առաջնորդեսցէ ինձ։

Վայ մեղաւորներուն գլխուն․ անիծեալ են յԱստուծոյ, անիծեալ են 'ի սրբոց, անիծեալ են 'ի հրեշտակաց, անիծեալ են աշխարքիս վրայ ալ ամէն օր քահանաներէն, կրօնաւորներէն՝ որ ժամերգութեան մէջ կըսեն․ անիծեալ, ոյք խոտորեցան 'ի պատուիրանաց քոց։ Ո՞ւր թողնենք որ Աստուծոյ շնորհքէն ընկնողը իր ամէն արդիւնքն ալ կը կորսընցընէ։ Թող մէկը այնչափ արդիւնք դիզէ, որչափ սուրբն Պօղոս անապատականը դիզեց, որ քառսունըութը տարի քարանձաւի մը մէջ ճգնեցաւ․ կամ որչափ սուրբն Ֆրանչիսկոս քսաւերեան դիզեց, որ տասը միլիոն հոգի շահեցաւ Աստուծոյ․ կամ սուրբ Պօղոս առաքեալին չափ արդիւնք ունենայ, որ սրբոյն Հերոնիմոսի ըսածին պէս՝ քան զամէն առաքեալներէն աւելի արդիւնք ունեցաւ։ Բայց թէ որ այսպիսի անձ մը մէկ մահուչափ մեղք մը գործէ, ամէն բան կը կորսընցընէ․ ամենայն արդարութիւնք նորա զորս արար, մի յիշեսցին․ տեսար ինչ կործանումն կը բերէ Աստուծոյ շնորհքէն ինկնալը․ Աստուծոյ որդի էր նէ, սատանայէն գերի կըլլայ․ Աստուծոյ սիրելի բարեկամ էր նէ, ծայրագոյն թշնամի և ատելի կը դառնայ․ արքայութեան ժառանգ ըլլալէն՝ դատապարտեալ մը կըլլայ 'ի դժոխս։ Սուրբն Ֆրանչիսկոս սալէզեանը կըսէր, թէ որ հրեշտակները կարենային լալ նէ, տեսնելով մէկ հոգւոյ մը թշուառութիւնն որ մահուչափ մեղքի մէջ ընկեր է, և կորուսեր է Աստուծոյ շնորհքը, ցաւակցելով արցունք կը թափէին։

Բայց աւելի մեծ թշուառութիւնն ան է որ հրեշտակներն ալ լալու ըլլան նէ, ինքը մեղաւորը չի լար։ Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս՝ մէկը պզտիկ անասուն մը կամ ոչխարիկ մը կորսընցընէ նէ, չուտեր, չի քնանար, կու լայ․ բայց երբոր Աստուծոյ շնորհքը կորսընցընէ նէ, կուտէ, կը քնանայ ու չի լար։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ահա այսպիսի ողորմելի վիճակի մը մէջ զիս ձգեր եմ, ով փրկիչ իմ։ Դուն զիս շնորհաց արժանի ընելու համար, երսունուիրեք տարի քրտինք և արիւն թափեցիր, և ես մէկ վայրկեանի մը մէջ մէկ զարշելի հաճոյից համար՝ փուճ տեղը անարգեցի և կորուսի զայն ամենայն։ Շնորհակալ եմ քու մարդասիրութեանդ, որ դեռ առեն կու տաս ինծի նորէն ձեռք բերելու, թէ որ կուզեմ նէ։ Այո տէր, կուզեմ ձեռքէս եկածը ընել, որ նորէն կարենամ շնորհքդ ձեռք բերել։ Ըսէ ինծի ինչ պէտք է ընել, որ քեզմէ թողութիւն առնեմ. կուզես որ զղջամ, այո փրկիչ իմ, կը զղջամ բոլոր սրտանց, քու անբաւ բարութիւնդ վշտացընելուս վրայ. կուզես որ զքեզ սիրեմ, այո կը սիրեմ զքեզ 'ի վեր քան զամենայն։ Ինչուան հիմա սիրտս տուեր էի 'ի սէր արարածոց և ունայնութեան, աս օրէս ետեւ կուզեմ քեզի համար միայն ապրիլ, և զքեզ միայն սիրել, Աստուած իմ, զանձ իմ, զօրութիւն իմ. սիրեցից զքեզ, տէր զօրութիւն իմ։ Քու արդիւնքդ, քու վէրքերդ իմ յոյս և զօրութիւնս պիտի ըլլան։ Քեզմէ կը յուսամ զօրութիւն հաւատարիմ ըլլալու քեզի։ Հապա ընդունէ զիս 'ի քո շնորհս, ով փրկիչ իմ. մի թողուր որ ես զքեզ մէյմըն ալ թողում. զիս հեռացուր 'ի յօժարութեանց աշխարհի, և բորբոքէ իմ սիրտըս սուրբ սիրովդ։ Մարիամ, մայր իմ, վառէ զիս սիրովն Աստուծոյ, որով դուն վառուած ես միշտ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Ի.

## ՄԵՂԱՒՈՐԻՆ ԽԵՆԹՈՒԹԻՒՆԸ

*Իմաստութիւն աշխարհիս այսորիկ յիմարութիւն է առաջի Աստուծոյ.*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Պատուական Ցովհաննէս Աւիլան կըսէր թէ աշխարհքս պէտք էր երկու բանտ բաժնել՝ մէկը անհաւատներուն համար, իսկ մէկալը ան հաւատացեալներուն համար որ մեղք կապրին՝ հեռի Աստուծմէ, և ատոնց կրնայ, կըսէր, խենթերուն բանտը։ Բայց աս խեղճերուն մեծ թշուառութիւնը և ողորմելութիւնը ան է որ իրենք գիրենք խելացիի տեղ դրեր են, որ աշխըրքիս վրայ իրենցմէ աւելի անխելք և խենթին խենթը չիկայ։ Ա՛լ աւելի գէշն ան է որ այսպիսիները անհամար թուով են, և Սիրաքայ ըսածին պէս՝ անհամար է անմտաց թիւը։ Կայ որ փառաց և պատուոյ խենթ է, կայ որ հեշտութեանց խենթ է, կայ ալ որ երկրիս գիրտը կը սիրէ։ Բայց ատոնք կը համարձակին խենթ սեպել զսուրբերը, որ կարհամարհեն աշխըրքիս բարիքը՝ որպէս զի յաւիտենից փրկութիւնը ստանան, և զճշմարիտ բարին, որ է Աստուած։ Անխելքութիւն կը սեպեն անարգանաց սիրով համբերելը, և անիրաւութեանց ներելը. խենթութիւն կը սեպեն զգայական հեշտութիւններէ զրկուիլը, և ինքը զինքը մահացընելը. խենթութիւն կը սեպեն փառքէ և հարստութենէ հրաժարիլը, և առանձնութիւն ու անծանօթ խոնարհ կեանք սիրելը. և չեն մտածեր որ իրենց իմաստութիւնը Աստուած խենթութիւն կը սեպէ. զի իմաստութիւն աշխարհիս այսորիկ յիմարութիւն է առաջի Աստուծոյ՝ կըսէ սուրբ գիրքը։ Ի՞նչ շահ, որ մէկ օր մը իրենք ալ պիտի խոստովանին իրենց խենթութիւնը. բայց երբ, երբոր ալ ճար ճարակ չիկայ, և պիտի ըսեն յուսա-

հաւատութեամբ թէ մեք անմիտք զվարս սոցա յիմարութիւն կամ մոլորութիւն համարէաք, և զվախճան դոցա անարգութիւն. զիա՛րդ համարեցան ընդ որդիս Աստուծոյ, և ընդ սուրբս վիճակ դոցա՝ որ յաւիտեան երջանիկ և երանելի պիտի ըլլան, իսկ մենք պիտի մնանք գերի սատանայի, և պիտի դատապարտուինք աս տանջանաց զուբին մէջ յաւիտեան. ուրեմն մոլորեցաք 'ի ճանապարհէ ճշմարտութեան, և լոյսն արդարութեան ոչ լուսաւորեաց զմեզ. և ան է մեր ետքի թշուառութիւնն որ մեր մոլորութեանը դեղ չիկայ, և պիտի չըլլայ յաւիտեան, քանի որ Աստուած՝ Աստուած է:

Ուրեմն որպիսի յիմարութիւն է Աստուծոյ շնորհքը կորսընցընել մէկ անարգ շահասիրութեան մը համար, մէկ ոչինչ անձնասիրութեան մը համար, քիչ մը ծուխի մուխի համար, անցաւոր և կարճատև հաճոյից համար: Ի՞նչ բան չէր ըներ մէկ գեղացի մը իր իշխանին առջևը շնորհք գտնելու համար: Հապա ի՞նչ ըսել է մէկ անպիտան հաճոյից համար կորսընցընել զծայրագոյն բարին որ է Աստուած. արքայութիւնը կորսընցընել. հանգիստն ալ կորսընցընել աս աշխարքիս վրայ, թող տալով մեղաց որ հոգւոյն տունը մտնէ, հետն ալ խղճմտանքի մշտատանջ խայթը առած. և այսպէս կամօք դատապարտուիլ 'ի յաւիտենական թշուառութիւն: Դուն յանձն կառնէի՞ր աս անարժան հաճոյքդ թէ որ ետքը անոր համար մէկ ձեռքդ երելու ըլլար նէ, կամ տարի մը գերեզմանի մէջ փակուիլ. կընէի՞ր աս մեղքը, եթէ պէտք ըլլար անոր համար հարիւր դահեկան կորսընցընել: Ու սակայն կը հաւատաս և գիտես թէ մեղանչելովդ կը կորսընցընես արքայութիւնն ալ, Աստուած ալ, և յաւիտեան դժոխք պիտի դատապարտուիս. և այստու ամենայնիւ ի՞նչպէս կը մեղանչես:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած հոգւոյս իմոյ, ի՞նչ կըլլար հիմա իմ վիճակս թէ որ այսչափ ողորմութիւն ինծի չի ցընէիր նէ. դժոխքին մէջ պիտի ըլլայի ես ալ ան խենթերուն հետ: Շնորհակալ եմ, և կաղաչեմ որ չիթողնես զիս աս կուրութեանս մէջ: Ես արժանի էի երեսէդ ձգուելու, բայց կը տեսնեմ որ քու շնորհքդ զիս դեռ երեսէ չէ ձգած, կըզգամ որ զիս կը կոչէ, և կը յորդորէ թո֊

գութիւն ուզելու և մեծամեծ բարիք քեզմէ յուսալու, թէպէտ և ես այնչափ ապերախտ գտնուեր եմ։ Այո տէր, կը յուսամ որ զիս դրախտի տեղ կընդունիս, թէպէտև ես անարժան ալ արժանի չեմ՝ այսչափ քու փափկանքդ սիրելին ըլլալուս։ Հայր, ոչ ևս եմ արժանի կոչել որդի քո... մեղայ յերկինս և առաջի քոյ. բայց կխնդրեմ որ դուն զիս ընդունելու հետ ես մոլորած ոչխարին նման, և քեզի մխիթարանք կը սեպես գրկել կորսուած որդիքդ։ Հայր իմ սիրեցեալ, կը ցաւիմ որ զքեզ վշտացուցի, ոտքդ կիյնամ կը փաթթուիմ, և չեմ ելլեր մինչև որ չներես ինծի, և զիս չօրհնես։ Ոչ թողից զքեզ, մինչև օրհնեսցես զիս։ Օրհնեա զիս, Հայր իմ, և քու օրհնութիւնդ ան ըլլայ՝ որ ինծի տաս մեծ ցաւ և զղջումն մեղքերուս վրայ, և մեծ սէր առ քեզ։ Հայր իմ, զքեզ կը սիրեմ, և յամենայն սրտէ կը սիրեմ. մի թողուր որ մէյմըն ալ ես քեզմէ բաժնուիմ։ Ամէն բանէ զիս զրկէ, և մի զրկեր 'ի քո սիրոյդ։ Ով Մարիամ, թէ որ Աստուած Հայր է, դուն ալ մայրս ես, օրհնէ զիս դուն ալ. արժանի չեմ քեզի որդի ըլլալու, ընկալ զիս քեզի ծառայ, միայն տուր որ քեզի ծառայեմ, և քաղցր սիրով զքեզ միշտ սիրեմ, և միշտ ապաւինիմ քու հովանաւորութեանդ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Խեղճ ողորմելի մեղաւորք կը ջանան կը քըտնին աշխարհային զուարթութիւն ստանալու, և արհեստ՝ աս կենացս մէջ հարստութիւն ստանալու համար, որ քիչ ատենէն պիտոր վերջանայ. և հոգ չեն տանիր ան կենաց բարեացը համար, որ վերջանալու չէ բնաւ։ Անանկ խելքերնին կը կորսնցընեն որ չէ թէ միայն խենթ կըլլան, այլ և անբան անասուն. վասն զի անբանաբար ապրելով՝ չեն հասկընար որն է բարի, որն է չար, հապա միայն անբանական դրդմամբ զգայութեանց կը հետևին, ձեռք զարնելով ան բանին որ ներկայապէս մարմնոյ հաճոյք է, առանց նայելու թէ ինչ կը կորսընցընեն, և թէ 'ի յաւիտենից կործանումն կը գլորին. աս բանս մարդու գործք չէ, հապա անբանի։ Ոսկեբերանին ըսածին պէս, մարդ անոր կըսենք որ մարդու կերպարանքը անաղարտ ունի. ինչ է

մարդուս կերպարանքը, բանական ըլլալ։ Մարդ ըլլալը բանական ըլլալն է, այսինքն բանականութեամբ գործելն է; չէ թէ պարզ զգայական՝ զգայութեանց ազդմամբը։ Թէ որ Աստուած անբանի մը բանականութիւն տար, որ բանականօրէն գործէ, կըսէինք թէ մարդու գործք կընէ. ուրեմն աստ ներհակը՝ երբոր մարդս պարզ զգայութեամբ կը գործէ բանականութեան դէմ, պէտք է ըսել որ աս մարդը անբանօրէն կը գործէ։

Ի՞նչ կըսէ սուրբ գիրքը. ոչ գոյ 'ի նոսա իմաստութիւն, և ոչ խորհեցան 'ի միտ առնուլ զայս. արդ ընկալցին առ յապա ժամանակս։ Բանականօրէն գործողը նախատես կըլլայ ապագային. այսինքն ինչ պիտի ըլլայ կենաց վերջը, որ է մահ, դատաստան, անոնցմէ ետև կամ դժոխք, և կամ արքայութիւն։ Ա՛խ, թէ որչափ իմաստուն է գեղացի մը որ փրկութեան կը հասնի, քան թէ մէկ թագաւոր մը՝ որ կը դատապարտուի։ Ժողովողին ըսածին պէս, լաւ է մանուկ աղքատ և իմաստուն՝ քան զթագաւոր ծեր և անմիտ։ Ո՛հ, տէր Աստուած, միթէ բոլորովին խելագար չէ՞ր ըսուէր ան մարդը, որ սատակ մը վաստըկելու համար կորսընցընելու վտանգի մէջ դնէր իր ամէն բանը։ Հապա ան որ մէկ չնչին հաճոյք մը ընելու համար հոգին կորսընցընէ նէ, և յաւիտեան կորսընցընելու վըտանգի դնէ, խելագար պիտի չսեպուի՞։ Աս է կործանումն այնչափ հոգիներուն որ կը դատապարտուին, միայն ներկայ բարիքներուն և չարիքներուն նային, և չնային յաւիտենական բարեացն և չարեացը։

Տարակոյս չիկայ որ Աստուած զմեզ այս երկրիս վրայ չէ դրեր, որ հարուստ ըլլանք, փառք պատիւ ստանանք, և մեր զգայութեանց հաճոյքը կատարենք, հապա յաւիտենից կեանքը շահինք. և վախճան նորա կեանք յաւիտենից։ Եւ աս վախճանին հասնիլն է մեր մէկ հատիկ ընելիքը. բայց մեղաւորք աւելի անհոգ են աս վախճանին, ներկան միայն կը մտածեն, դէպ 'ի մահ կը քալեն, յաւիտենականութեան կը մօտենան, և չեն գիտեր ուր կերթան։ Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս՝ ինչ կըսէիր ան նաւավարին՝ որ իրեն հարցընես թէ ուր կերթաս, ան ալ ըսէր թէ ես ալ չեմ գիտեր։ Ամէն լողը կըսէր թէ ասոր ետքը չելլեր,

կը կորսուի նաւաբեկութեամբ։ Ասանկ է ամէն համբայէ դուրս քաղողը, ասանկ են աշխարհիս խելացիները որ լաւ գիտեն ստակ վաստըկիլ, խնջոյք զբօսանք ընել, մեծ աստիճան մը ելլել, բայց չեն գիտեր իրենց հոգին վաստըկիլ։ Ասանկ խելացիներուն մէկն էր՝ այն ուտող խմող մեծատունը, որ մեռաւ և թաղեցաւ 'ի դըժոխս։ Մեծն Աղեքսանդր ալ խելացի էր այնքան թագաւորութիւններ վաստըկելու, բայց քիչ ատենէն մեռաւ, ու գնաց 'ի յաւիտենից դատապարտութիւն։ Ասանկ խելացի մըն էր Հենրիկոս ութերորդը որ գիտցաւ իր աթոռը պահել ապստամբելով յեկեղեցւոյ, բայց յետոյ ինքն ալ տեսնելով որ հոգին 'ի կորուստ կերթայ՝ խոստովանեցաւ իր բերնովը, թէ ամէն բան կորուսինք։ Որչափ ողորմելի թշուառականներ հիմա կուլան կը պոռան դժոխքի մէջ թէ զի՞նչ շահ եղև մեզ հըպարտութիւնն, և զի՞նչ մեծութիւն ամբարտաւանութեան իցէ մեզ նպաստաւոր, անց այն ամենայն իբրև զստուեր։ Ուրիշ բան չմնաց, հապա լաց և տանջանք յաւիտենական։.

Սիրաքայ ըսածին պէս՝ առաջի մարդոյ է կեանք և մահ, և զի՞նչ հաճոյ թուեսցի իւր՝ տացի նմա։ Քեզի համար է աս բանս, ով քրիստոնեայ, քու ձեռքդ է կեանք և մահ, այսինքն կամ զրկուիլ արգելած հաճոյքէն՝ որ յաւիտենից կեանքը ձեռք բերես, կամ անոնցմէ փախչելով յաւիտենից մահը քաշես. ի՞նչ կըսես, ո՞րը կընտրես։ Մարդու պէս ընտրէ, չէ թէ անբանի պէս. ընտրէ քրիստոնէաբար և ըստ հաւատոյ, որ կըսէ թէ զի՞նչ օգուտ է մարդոյ, եթէ զաշխարհ ամենայն շահեսցի և զանձն իւր տուժեսցէ։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Աստուած իմ, դուն ինծի տուիր բանականութիւն և խելք, դուն ինծի պարգևեցիր լոյս հաւատոյ. իսկ ես ինչուան հիմա անբանի պէս գործածեցի զանոնք, կորսընցընելով քու շնորհքդ աս ողորմելի զգայական հաճոյից համար, որ հովի պէս անցան, և հիմա ուրիշ բան չեմ գտներ, բայց եթէ խայթ խղճի մտաց, և համար՝ որ պէտք է տամ քու աստուածային բեմիդ առջև։ Ա՜հ տէր, մի՛ մտաներ 'ի դատաստան ընդ ծառայի քում. կաղաչեմ մի՛ դատեր զիս ըստ իմ արժանեացս,

ծայրագոյն մեծի ողորմութեան քում։ Տուր ինձի լոյս, տուր ինձի ցաւ մեղացս վրայ որովք զքեզ վշտացուցի, և ներէ ինձի. մոլորեցայ որպէս զոչխար կորուսեալ, խնդրեա զծառայ քո, չէ նէ ես ինձմէ կորսուած եմ։ Գթա ինձի առ քու արեանդ համար զոր հեղեր փրկան իմ։ Ես կը զղջամ, ով ծայրագոյն բարի, զքեզ թողնելուս համար, և կամաւորապէս եմ կենալուս քու շնորհքէդ։ Ցաւէս մեռնիլ կուզէի, բայց դուն տուր ինծի աւելի մեծ ցաւ, և արժանի ըրէ, որ զամ երկինքը փառաւորեմ քու ողորմութիւնդ։ Ով Մարիամ աստուածամայր, դու ես յոյս և ապաւէնս, աղաչէ զՅիսուս ինձի համար. աղաչէ մայր իմ, որ տայ ինձի թողութիւն և սուրբ յարատեւութիւն։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Աղէկ հասկընանք՝, անոնք են բուն խելացի և ճըշմարիտ իմաստուն, որոնք որ գիտեն շահիլ զշնորհս Աստուծոյ և զարքայութիւն երկնից։ Ուստի միշտ աղաչենք զՏէր, որ տայ մեզի սրբոց գիտութիւնը զոր կու տայ խնդրողաց։ Ո՜վ, որչափ գեղեցիկ գիտութիւն է գիտնալ սիրել զԱստուած, և իր հոգին փրկել, որ է գիտնալ յաւիտենից փրկութեան ճամբան բռնել։ Հոգւոյ փրկութեան բանը ամէն բանէն հարկաւոր է. թէ որ ամէն բան գիտնանք ու հոգինիս փրկել չգիտնանք, մեզի շահ չիկայ, և յաւիտեան թշուառ կըլլանք. ընդ հակառակն յաւիտեան երանելի կըլլանք, թէ որ զԱստուած սիրել գիտնանք, թէպէտև ամէն բանի մէջ տգէտ ըլլանք։ Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս, երանի անոր որ զքեզ կը ճանաչէ, թէ և անծանօթ ըլլայ ուրիշ ամենայն բանի։ Մէկ օր մը եղբայր Եգիտիոս ըսաւ սրբոյն Բոնաւենդուրայի՝ թէ երանի քեզի, հայր Բոնաւենդուրա, որ այնչափ բան գիտես, իսկ ես տգէտս բան մը չեմ գիտեր, ուստի դուն քան զիս աւելի սուրբ կրնաս ըլլալ։ — Ասոր դարձաւ ըսաւ Բոնաւենդուրա, թէ որ տգէտ պառաւիկ մը աւելի քան զիս գիտէ զԱստուած սիրել նէ, ան աւելի քան զիս սուրբ կըլլայ։ Աս որ լսեց եղբայր Եգիտիոս նէ, ելաւ վանքին բակը ու սկսաւ դէպ'ի քաղաք կանչել. քեզի կըսեմ, ով պառաւիկ, քեզի կըսեմ մտիկ ըրէ, թէ որ դուն զԱստուած

սիրես նէ, Հայրն Պոնաւենդուրայէն աւելի սուրբ կըր-նաս ըլլալ։

Սուրբն Օգոստինոս ալ կըսէ թէ տգէտները կելլեն ու երկինքը կը յափշտակեն։ Քանի՜ քանի ռամիկ մարդիկ՝ որ կարդալ չեն գիտեր, բայց զԱստուած սիրել գիտեն, փրկութեան կը հասնին, և որչափ գիտնականք աշխարհի կը դատապարտուին. ուստի չէ թէ ասոնք, հապա անոնք են ճշմարիտ իմաստուն։ Ա՜հ թէ որչափ մեծ իմաստուն գտնուեցան, սուրբ Պասքալէս մը, սուրբ Փելիքս քափուչին մը, սուրբ Յովհաննէս Աստուծոյ մը, թէպէտ տգէտ էին մարդկային գիտութեանց։ Ո՛րչափ մեծ իմաստուն եղան անոնք՝ որ աշխարհքս թողլով գնացին վանքերն անապատները փակուեցան, ինչպէս սուրբ Բենեդիկտոս մը, սուրբ Ֆրանչիսկոս Ասսիզացի մը, սուրբ Ալոզիոս տոլոզացի մը, որ երկրաւոր թագաւորութենէ հրաժարեցաւ։ Ո՛րչափ մեծ իմաստուն եղան այնչափ մարտիրոսներ, այնչափ կուսանք որ ետ կեցան մեծամեծներու հարսնանալէն, որպէս զի երթան մեռնին Քրիստոսի համար։ Աս ճըշմարտութիւնս կը ճանչնան աշխարհիս մարդիկն ալ, ու կը վկայեն ըսելով թէ ան անձը զինքը Աստուծոյ տըւաւ. երանի անոր որ աս բանս կը հասկընայ, և իր հոգին փրկել կը նայի։ Վերջապէս ան մարդիկն որ աշխարհիս բարիքը կը թողնեն զիրենք Աստուծոյ տալու համար, խելացի կըսուին։ Ուրեմն որոնք որ զԱստուած կը թողնեն աշխարհիս բարիքը գտնելու համար, ինչ պիտի ըսուին. անխելք ու խենթ մարդիկ։

Արդ դու, ով սիրելի եղբայր, ասոնց ո՛ր դասէն կուզես ըլլալ. աղէկ ընտրութիւն ընելու համար խրատ կու տամ քեզի սուրբն Յովհան ոսկեբերան, որ գերեզմաններու այցելութեան երթաս. երթանք գերեզմանները կըսէ։ Գեղեցիկ դպրատուններ են գերեզմանները աշխարհիս բարեաց ընդունայնութիւնը ճանչնալու համար և սրբոց գիտութիւնը սորվելու համար։ Ըսէ ինծի, կը հարցընէ սուրբն ոսկեբերան, հոն ո՛վ է թագաւորը, ո՞վ է ազնուականը, ո՛վ է գիտնականը։ Ես, կըսէ, իմ կողմանէս ոչ ինչ այլ տեսանեմ, եթէ ոչ նեխութիւն և որդունք։ Ամէն բան առասպել է, երազ է և ստուեր։ Բայց ով սիրելի քրիստոնեայ, թէ որ դուն խելացի կուզես ըլլալ նէ, հերիք չէ ճանչնալդ

թէ ամենէն հարկաւոր բանը՝ քու վախճանդ է, հապա պէտք է ձեռք զարնես ան միջոցներուն՝ որոնցմով կըր-նաս ատ վախճանին հասնիլ։ Ամէնքը կուզեն սուրբ ըլլալ ու փրկուիլ, բայց որովհետև միջոցներուն ձեռք չեն զարներ, սուրբ չեն ըլլար ու կը դատապարտուին։ Պէտք է կըսեմ աշխարհքին փախչել, սուրբ խորհուրդ-ներուն ստէպ մօտենալ, աղօթասէր ըլլալ, և ամէն բանէն առաջ պէտք է մեր սրտին մէջ տպաւորել սուրբ աւետարանին ան խօսքը թէ զի՞նչ օգուտ է մարդոյ, եթէ զաշխարհ ամենայն շահեսցի[1]. որ սիրէ զանձն իւր, կորուսցէ զնա[2]. որ ըսել է՝ թէ պէտք է կեանձն ալ մարդ կորսընցընէ հոգին փրկելու համար։ Որ գայ զկնի իմ ուրասցի զանձն[3]. այսինքն Քրիստոսի ե-տևէն երթալու համար պէտք է անձնասիրութիւնը և հաճոյքներն ուրանալ։ Կեանք են 'ի կամաց նորա[4]. այսինքն մեր փրկութիւնը հաստատեալ է 'ի կատարել զկամս նորա. ասոնց նման և այլ սկզբունքներ։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով հայր ողորմութեանց, նայէ իմ ողորմելութեանս, և ողորմէ ինծի։ Լոյս տուր ինծի, և տուր որ ճանչ-նամ իմ խեղճութիւնս՝ որպէս զի լամ, և քու անբաւ բարութիւնդ ճանչնամ՝ որպէս զի սիրեմ։ Յիսուս փըր-կիչ իմ, մի մտներ զազանաց զանձն, որ խոստովան առնիցի առ քեզ[5]։ Դուն քու արիւնդ թափեցիր զիս փրկելու համար, մի թողուր որ ես նորէն գերի ըլլամ սատանայի ինչպէս առաջ եղայ։ Կը ցաւիմ, ով ծայ-րագոյն բարի, զքեզ թողնելուս համար. կը նզովեմ բո-լոր ան վայրկեանները՝ որ իմ կամօքս հաւանութիւն տուի մեղաց, և կը գրկեմ սիրով քու սուրբ կամքդ, որ ուրիշ բանի չի ցանկար, բայց եթէ իմ բարւոյս։ Հայր երկնաւոր, վասն արդեանց միածնի քո Յիսուսի Քրիս-տոսի, տուր ինծի զօրութիւն 'ի գործ դնելու զայն ա-մենայն որ ինչ հաճոյ է քեզի. տուր ինծի մեռնիլ, քան թէ հակառակ կալ քու կամացդ։ Օգնէ ինծի քու շնորհօքդ, որպէս զի 'ի քեզ միայն հաստատեմ իմ բո-

1 Մտ. ԺԶ. 26։
2 Յհ. ԺԲ. 25։
3 Մտ. ԺԶ. 24։
4 Սղ. ԻԸ. 6։
5 Սղ. ՀԳ. 19։

լոր սէրս, և գիս բոլորովին զատեմ յամենայն յօժարութեանց, որ առ քեզ դիմել չեն թողներ: Զքեզ կը սիրեմ, Աստուած հոգւոյ իմոյ, զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր, և քեզմէ կը յուսամ իմ ամէն բարիքս, թողութիւն, և յարատևութիւն 'ի սէր քո, և արքայութիւն՝ ուր յաւիտեան զքեզ սիրեմ: Ով ամենասրբուհի Մարիամ, դուն խնդրէ ինծի համար աս շնորհքներս, միածինդ քեզի բանի մը չէ չըսէր. յոյս իմ և ապաւէն, 'ի քեզ եմ ապաւինեալ:

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԱ.

### ՄԵՂԱՒՈՐԻՆ ԹՇՈՒԱՌ ԿԵԱՆՔԸ, ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱՍԻՐԻՆ ԵՐՋԱՆԻԿ ԿԵԱՆՔԸ

*Ամպարշտաց խաղաղութիւն չիկայ, կըսէ տէր[1].*
*Խաղաղութիւն բազում է անոնց որոնք քու օրէնքդ կը սիրեն[2].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ամէն մարդ աս կեանքիս մէջ կաշխատի որ խաղաղութիւն և հանգիստ գտնէ: Վաճառականը, զինուորը, դատաստան ունեցողները կաշխատին, վասն զի մտքերնին կը դնեն որ ան վաստակովը, ան աստիճանովը, ան վէճին յաղթութեամբը, իրենց բարեբախտութեանը կը հասնին, և այնպէս խաղաղութիւն կը գտնեն: Խեղճ աշխարհասէրք աշխարքէս խաղաղութիւն կը խնդրեն, որ չի կրնար զայն տալ. Աստուած միայն կարող է խաղաղութիւն տալ մեզի. զխաղաղութիւն զիմ տամ ձեզ, ոչ որպէս աշխարհս տայ

1 Ոչ գոյ խաղաղութիւն ամբարշտաց, ասէ տէր: Ես. ԽԸ. 22:
2 Խաղաղութիւն բազում է այնոցիկ՝ ոյք սիրեն զօրէնս քո: Սաղ. ՃԺԸ. 165:

տամ եւ ձեզ, ըսաւ Քրիստոս։ Ու եկեղեցին ալ կաղաղակէ, տուր ծառայից քոց զխաղաղութիւն, զոր ոչ կարէ աշխարհս տալ. վասն զի աշխարհքս իր ամէն բարիքներովը չի կրնար զոհ ընել մարդուս սիրտը, վասն զի մարդս ան բարիքներուն համար ստեղծուած չէ, հապա Աստուծոյ համար միայն է, ուստի միայն Աստուած կրնայ զինքը զոհ ընել և յագեցընել։ Անասունները՝ որ ստեղծուած են զգայութեանց ախորժակին համար, անոնք կը գտնեն իրենց հանգիստը 'ի բարիս երկրի։ Տուր մէկ անասնոյ մը խուրձ մը խոտ, տուր շանը կտոր մը հաց, իսկոյն զոհ կըլլան, ուրիշ բան չեն ուզեր։ Բայց բանական հոգին՝ որ ստեղծուած է միայն զԱստուած սիրելու ու Աստուծոյ հետ միացած կենալու, զգայական հաճոյքներով չի կրնար բնաւ իր խաղաղութիւնը գտնել, Աստուած միայն կրնայ զինքը բոլորովին լիացընել։

Ան մեծատունը, որ ըստ պատմելոյ սրբոյն Ղուկասու[1] աղէկ բան ժողվեր էր երկրէն ու կըսէր ինքն իրեն. անձն, ունիս բազում բարութիւնս՝ ամբարեալ ամաց բազմաց, հանգիր, կեր, արբ, և ուրախ լեր, անմիտ ըսուեցաւ, վասն զի կըսէ իրեն Աստուած. անմիտ, յայսմ գիշերի զոգիդ 'ի քէն 'ի բաց պահանջեսցեն, իսկ զոր պատրաստեցեր ում լինիցի։ Ասոր կըսէ սուրբն Բարսեղ թէ իրաւ որ անմիտ ես. միթէ խոզի՞ հոգի է հոգիդ, որ կուզես հանգչել ուտելով խմելով ու զգայական հաճոյիւք։ Մարդս կրնայ աշխըրքիս բարիքներովը լեցուիլ, բայց կշտանալ չի կրնար, կըսէ սուրբն Բեռնարդոս։ Նոյն սուրբը աւետարանին աս խօսքին վրայ թէ ահաւասիկ մեք թողաք զամենայն[2], սապէս կը գրէ. տեսայ որ ամէն աշխարքիս խենթերը մէկմէկ խենթութիւն ունին, մէկմէկ անօթութիւն կը քաշեն. ոմանք քաղցեր էին հող ուտելու, որ են արծաթասէրք. ոմանք օդ ուտելու, ինչպէս են փառասէրք. ոմանք տուեր էին բերաննին փռան մը որ անկէ ցնդած մոխրին կայծերը կլլեն՝ որ են բարկացողք. ոմանք ալ մէկ հոտած լճի մը գարշելի ջուրը կը խմէին, որ են մարմնապաշտք։ Ուստի ասոնց դարձայ ըսի, կըսէ. ով ձեզի պէս խենթեր, ատ բաները

1 Ղկ. ԺԲ. 19։ 2 Մթ. ԺԹ. 27։

քաղց չեն անցըներ, հապա աւելի կը գրգռեն։ Աշխըրքիս բարիքը առ երեւոյթս բաներ են, ուստի չեն կրնար մարդուս սիրտը կշտացընել։ Անոր համար արծաթասէրը որչափ բան վաստըկի, այնչափ աւելի վաստըկիլ կուզէ։ Սրբոյն Օգոստինոսի ըսածին պէս՝ ստըկին շատութիւնը ագահին կոկորդը չի գոցեր, հապա կը լայնցընէ։ Մարմնասէրը որչափ աւելի գարշութեան մէջ տապլտըկի, այնչափ կը տաղտկանայ միանգամայն և կը քաղցենայ։ Եւ իրաւ որ ինչպէս աղտեղութիւնը և զգայական հոտած բաները կարենան մարդուս սիրտը գոհ ընել։ Նոյն բանն է փառասիրին ալ, որ կուզէ ծխով մխով կշտանալ. վասն զի փառասէրը աւելի կը նայի չունեցածին քան թէ ունեցածին։ Մեծն Աղեքսանդր այնչափ թագաւորութեանց տէր ըլլալէն ետև կը ցաւէր ուրիշ տէրութիւններ ալ չունենալուն համար։ Թէ որ աս երկրիս բարիքը զմարդը գոհ ընէին նէ, կատարեալ երջանիկ կըլլային հարուստներն ու թագաւորները, բայց փորձը ներհակը կը ցըընէ։ Նոյն բանը՝ փորձ եղող Սողոմոն իմաստունը կը վկայէ ըսելով, զամենայն զոր ինչ խնդրեցին աչք իմ, ոչ զրկեցի 'ի նոցանէ [1]։ Բայց 'ի վերայ այսր ամենայնի նայէ ինչ կըսէ. ունայնութիւն ունայնութեանց, ամենայն ինչ ընդունայն է [2]։ Ըսել կուզէ թէ ինչ որ աշխըրքիս մէջ կայ, սոսկ ընդունայնութիւն է, ստութիւն է և իսկապէս յիմարութիւն։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ Աստուած իմ, ինչ շահեցայ մեղօք որովք ըզքեզ վշտացուցի, բայց միայն պատիժ, դառնութիւն, և դժոխք։ Զեմ ցաւիր աս դառնութեանցս համար, որ հիմա կըզգամ, հապա մանաւանդ ինծի մխիթարանք կը սեպեմ, վասն զի ան ալ քու շնորհքիդ պարգեն է, և յոյս կու տայ ինծի քու խոստմանցդ համեմատ թէ կուզես ինծի ներել։ Իմ սրտիս նեղութիւն տուողը ան դառնութիւնն է որ քու կամքիդ դէմ կեցայ, փրկիչ իմ, որ զիս այնչափ սիրեցիր։ Ես արժանի էի, տէր իմ, որ ան ատեն զիս երեսէ ձգէիր. բայց ընդ հակառակն կը տեսնեմ որ կըսես, եկուր քեզի թողու-

1 Ժող. Բ. 10։ 2 Ժող. Ա. 2։

թիւն տամ, մանաւանդ թէ դուն առջինը կըլլաս ինծի հետ հաշտուելու, և խաղաղութիւն ինծի տալու։ Ահա ես ալ, Յիսուս փրկիչ իմ, խաղաղութիւն կուզեմ, և քու շնորհքիդ կը փափաքիմ ամէն բանէն աւել։ Կը ցաւիմ, ով անբաւ բարիդ, զքեզ վշտացընելուս համար. կուզէի որ ցաւէս մեռնիմ։ Հապա, կաղաչեմ, ան սիրոյն համար՝ զոր առ իս ունեցար խաչին վրայ հոգիդ աւանդելով ինծի համար, ներէ ինծի, և ընկալ զիս 'ի սէր քո, և իմ սիրտս փոխէ, անանկ որ՝ որչափ քու պատուիրանքներդ չպահեցի նէ ինչուան հիմա, անկից ետև կարենամ պահել։ Հիմա ես քու սիրոյդ համար կը հրաժարիմ յամենայն հաճոյից՝ զոր աշխարհքս ինծի կրնայ տալ, և կընտրեմ աւելի կեանքս կորսնցընել՝ քան թէ քու շնորհքդ։ Հրամմէ ըսէ ինչ որ ինծի պէտք է ընել զքեզ հաճելու համար, պատրաստ եմ ամէն բան ընելու։ Թող երթան կորսուին հեշտութիւնք, փառք, պատիւ և հարստութիւնք։ Զքեզ միայն կուզեմ, Աստուած իմ, բերկրութիւն իմ, փառք իմ, գանձ իմ, կեանք իմ, սէր իմ, և ամենայն ինչ։ Տուր տէր քու օգնականութիւնդ, որ քեզի հաւատարիմ ըլլամ. տուր ինծի սիրել զքեզ, և ըրէ ինծի ինչ որ կուզես նէ։ Մարիամ, մայր իմ և յոյս իմ յետ Յիսուսի, ընկալ զիս ընդ հովանեաւ պաշտպանութեան, և բոլորովին Աստուծոյ նուիրէ զիս։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Սողոմոն չէ թէ միայն ընդունայնութիւն կը կոչէ աշխարքիս բարիքը, որ զմարդը գոհ չեն ըներ, հապա կըսէ՝ սրտի նեղութիւն ալ կու տան. ահա ամենայն ինչ ընդունայն է և յօժարութիւն հոգւոյ[1]. այսինքն սէր մը կը բերեն, և չեն հանգչեցըներ։ Խեղճ ողորմելի մեղաւորք, կարծեն թէ երջանիկ պիտի ըլլան իրենց մեղքովը, և ուրիշ բան չեն գտներ, բայց միայն դառնութիւն, և խայթ խղճմտանաց. բեկումն և թըշուառութիւն 'ի ճանապարհս նոցա, և զճանապարհն խաղաղութեան ոչ ծանեան ըստ սաղմոսերգուին[2]։ Ո՞ւր կը մնայ խաղաղութիւնը. ոչ գոյ խաղաղութիւն

1 Ժող. Ա. 14։ 2 Սղ. ԺԹ. 3։

ամբարշտաց, ասէ տէր[1]։ Նախ և առաջ մեղաւորը կը քաշէ Աստուծոյ վրէժխնդրութեան ահն ու վախը։ Մէկն որ զօրաւոր թշնամի մը ունենայ նէ, հանգիստ կերակուր չի կրնար ուտել, քուն չի կրնար ըլլալ. հապա ով որ զԱստուած իրեն թշնամի ունենայ նէ, կրնա՞յ խաղաղ կենալ. բեկումն այնոցիկ՝ ոյք գործեն զչարիս[2]։ Մեղաց մէջ եղողը գետնաշարժ զգայ, կամ երկնից գոռալը լսէ նէ, ինչպէս կը դողայ կը սասանի. տերև մը շարժի նէ սիրտը դող կիյնայ. ահ նորա յականջս նորա[3]։ Կը փախչի առանց ետևը նայելու թէ ով է զինքն հալածողը. փախուցեալ է ամպարիշտն առանց ուրուք հալածելոյ[4]։ Գիտես ո՞վ է անոր հալածողը. քուն իր մեղքն է։ Կայէն իր եղբայրը սպաննելէն ետև կըսէր, ամենայն որ գտանիցէ զիս, սպանցէ զիս[5]. բայց Աստուած ըսաւ, ոչ այդպէս, այլ միայն երերեալ և տատանեալ եղիցիս՚ի վերայ երկրի[6]. ուստի միշտ տեղէ ՚ի տեղ կը փախչէր. և ո՞վ զինքը կը հալածէր, եթէ ոչ իր մեղքը։

Մէյմըն ալ մեղքը իր հետը կը բերէ խղճի մտաց խայթ, որ է բնաւոր որդ մը, որ միշտ կը կրծէ։ Ողորմելի մեղաւորը խաղի զուարճութեան կերթայ, պար և խնճոյք տեսնելու կերթայ, բայց խղճմտանքը կըսէ իրեն միշտ. դուն Աստուծոյ երեսէն ընկած ես, մեռնիս նէ ո՞ւր պիտի երթաս։ Խղճմտանքը անանկ մեծ պատիժ և տանջանք մըն է աս կեանքիս մէջն ալ, որ ոմանք անոր ձեռքէն խալըսելու համար իրենք զիրենք մեռուցին։ Ասոնցմէ մէկն ալ էր Յուդա, ինչպէս որ յայտնի է, որ յուսահատութենէն ինքը զինքը կախեց։ Մէկին համար ալ կը պատմուի թէ տղայ մը սպաններ է եղեր, խղճմտանքի խայթոցէն խալըսելու համար գնաց կրօնաւոր եղաւ, բայց կրօնքի մէջն ալ հանգիստ չիգտնելով, գնաց դատաւորին իր յանցանքը պատմեց, ան ալ ՚ի մահ դատապարտեց զինքը։

Ի՞նչ բան է ան հոգին որ առանց Աստուծոյ է։ Տես ի՞նչ կըսէ սուրբ գիրքը Եսայի մարգարէին բերնով. անօրէնք իբրև զծով ծփեսցին, և հանգիստ մի՛ գտցեն[7]։

1 Ես. ԽԸ. 21։
2 Առ. Ժ. 29։
3 Յոբ. ԺԵ. 21։
4 Առ. ԻԸ. 1։
5 Ծնն. Դ. 14։
6 Անդ . . . 15։
7 Ես. ԾԷ. 20։

Ի՞նչ կըսես, թէ որ մարդ մը տարուի մէկ խրախութեան, հանդէսի մը, պարու, ուտելու խմելու, և հոն ոտքերէն գլխիվար կախած, կրնա՞յ վայելել ան ուրախութիւնը։ Այսպէս է ան անձն ալ որուն հոգին տակնուվրայ է, և աշխրքիս բարիքներուն մէջ կեցած է, բայց առանց Աստուծոյ. կուտէ, կը խմէ, կը խաղայ, աղէկ հագուստ կը հագնի, պատիւ կը գտնէ, աստիճան մը կամ կալուածք մը կունենայ, բայց բնաւ խաղաղութիւն չունենար. վասն զի ոչ գոյ խաղաղութիւն ամպարշտաց, կըսէ սուրբ գիրքը։ Խաղաղութիւնը Աստուծմէ միայն կըլլայ, և Աստուած կու տայ իր բարեկամացը, չէ թէ թշնամեացը։

Աշխրքիս բարիքը, կըսէ սուրբն Վինչէնցիոս Ֆերերեան, ծաղկի պէս կանցնի, մարդուս սիրտը չմտներ. անանկ ջուր մը, որ ծարաւ եղած տեղը չի մտներ։ Թող ան մեղաւորը փառաւոր հագուստ մը հագնի, գեղեցիկ մատնի մը մատն ունենայ, ուզած կերակուրներն ուտէ, բայց իր խղճալի սիրտը լեցուն է փշով և լեղիով. անոր համար կը տեսնես զինքն որ իր հարստութեանց, փափկութեանց և զբօսանաց մէջն ալ միշտ անհանգիստ է, ամէն ներհակ բաներու մէջ կը կատղի կատղած շան մը պէս։ Իսկ աստուածասէրը ներհակ բաներն ալ կը համակերպի Աստուծոյ կամացը, ու խաղաղութիւն կը գտնէ. բայց ատ բանը Աստուծոյ կամացը թշնամի եղողը չի կրնար ընել, ուստի ճամբայ մը չունի հանգիստ գտնելու։ Ողորմելին սատանայի կը ծառայէ, բռնաւորի մը կը ծառայէ, որ իրեն թշուառութիւն և դառնութիւն կու տայ փոխանակ վարձուց։ Ա՜հ, Աստուծոյ խօսքը սուտ չելլեր, որ կըսէ. փոխանակ զի ոչ պաշտեցեր զտէր Աստուած քո ուրախութեամբ և ճշմարիտ սրտիւ, պաշտեսցես զթշնամիս քո 'ի սով և 'ի ծարաւ, 'ի մերկութիւն և 'ի նուազութիւն ամենայնի[1]։ Ի՞նչ չի քաշեր ան քինախնդիրը վրէժխնդրութիւն ընելէն ետև, մարմնապաշտը իր հաճոյքը ընելէն ետև. նոյնպէս ալ ան փառասէրը, արծաթասէրը։ Ա՜խ, քանիները թէ որ այնչափ բան քաշէին Աստուծոյ համար, որչափ կը քաշեն դժոխք երթալու համար նէ, մէկմէկ մեծ սուրբ կըլլային։

1 Բ. Օր. ԻԸ. 47. 48։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Վա՜խ իմ կենացս որ կորուսի։ Ա՜խ տէր Աստուած իմ. Թէ որ այնչափ բան քաշէի քեզի ծառայելու համար, որչափ որ քաշած եմ զքեզ վշտացընելու համար, որչափ արդիւնք կունենայի հիմա արքայութեան մէջ։ Ա՜հ տէր, ինչո՞ւ զքեզ Թողուցի, քու շնորհքդ կորուսի, աս Թունաւոր և անցաւոր հաճոյից համար՝ որ անցին գնացին, և իմ սիրտս փշալից և լի դառնութեամբ Թողուցին։ Ով անօրէն մեղք, կը զարշիմ ձեզնէ և կը նզովեմ զձեզ բիւր անգամ. և քու գթութիւնդ կօրհնեմ, Աստուած իմ, որ այնչափ երկայնամտութեամբ ինծի համբերեցիր։ Զքեզ կը սիրեմ, արարիչ իմ և փրկիչ, որ ինծի համար կեանքդ տուիր. և որովհետև զքեզ կը սիրեմ՝ ըրած մեղքերուս վրայ բոլոր սրտանց կը ցաւիմ։ Ա՜խ Աստուած իմ, ինչո՞ւ ըզքեզ կորուսի, և ուրիշ բանի հետ փոխեցի։ Հիմա կը ճանչնամ ըրած չարիքս, և կառաջադրեմ ամէն բանս, կեանքս ալ կորսընցընել, քան Թէ քու սէրդ։ Լոյս տուր ինծի, հայրդ յաւիտենից, վասն սիրոյ միածնի քո Յիսուսի Քրիստոսի. տուր ինծի ճանչնալ զքեզ զանբաւ բարիդ, ան անցաւոր բարեաց անպիտանութիւնը զոր կը ներկայացընէ ինծի չար սատանան, որ քու շնորհքդ կորսընցընեմ։ Ես զքեզ կը սիրեմ և կը ցանկամ էւելօք սիրել։ Տուր որ դու միայն ըլլաս իմ մտադրութիւնս, մէկ հատիկ ցանկութիւնս, մէկ հատիկ սէրս. ամէն բան կը յուսամ քու բարութենէդ արդեամբք միածնիդ։ Մարիամ մայր ողորմութեան, վասն սիրոյն զոր ունիս առ Յիսուս փրկիչը, կաղաչեմ տանել ինծի համար լոյս և զօրութիւն իրեն ծառայելու, և սիրելու զինքը մինչև 'ի մահ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Ապա ուրեմն բովանդակ աս աշխարհիս բարիքը և հաճոյքը չեն կրնար կշտացընել մարդուս սիրտը։ Հապա ո՞վ կրնայ զայն գոհ ընել. միայն Աստուած. ժտեա՛ 'ի տեառնէ, և նա տացէ քեզ զխնդրուածս սրտի քո [1],

1 Սղ. ԼԶ. 4։

կըսէ սաղմոսը ։ Մարդուս սիրտը անդադար փնտըռելու հետ է զինքը գոհ ընողը ։ Հարստութիւն, պատիւ և փառք ձեռք կը ձգէ, դարձեալ գոհ չէ . վասն զի ասոնք ժամանակաւոր բարիք են, իսկ ինքը ստեղծուած է անսահման բարւոյն համար . Թող գտնէ զԱստուած ու Աստուծոյ հետ միանայ, և ահա գոհ կըլլայ, ալ ուրիշ բանի չի ցանկար . ժտեա՛ 'ի տեառնէ, և նա տացէ քեզ զխնդրուածս սրտի քոյ ։ Սուրբն Օգոստինոս իր կեանքը զգայական բերկրութեանց մէջ մաշելով բնաւ խաղաղութիւն չիգտաւ . եաքը երբոր զինքը Աստուծոյ տուաւ նէ, ան ատեն կը խոստովանէր ըսելով առ տէր․ անհանգիստ է մեր սիրտը, մինչև քեզի գայ հանգչի ։ Աստուած իմ, կըսէր, հիմա կը ճանչնամ որ ամէն բան ունայնութիւն է և նեղութիւն, դու միայն ես խաղաղութիւն և հանգիստ հոգւոյ . ամէն բան խիստ է և դժնդակ, դու միայն ես հանգիստ ։ Ուստի իր վնասովը վարպետ ըլլալով այսպէս կը գրէր . ի՞նչ կուզես, խեղճ մարդուկդ, բարիք փնտըռելով . մէկ հատիկ բարին փնտըռէ, յորում են ամենայն բարիք ։ Դաւիթ Թագաւոր ըլլալով երբոր մեղաց մէջ կիյնար նէ, որսի կերթար, պարտէզ կելլէր, սեղան կը նըստէր, և ամէն Թագաւորական զբօսանքը ունէր . բայց սեղանն ալ, պարտէզն ալ, և ամէն բան որով կը զըւարճանար՝ իրեն կըսէին, ով Դաւիթ, մեղմով գոհ կուզես ըլլալ . չէ չէ, մենք զքեզ չենք կրնար գոհ ընել ։ Ո՞ւր է Աստուած քո[1] . գնա Աստուածդ գտիր, ան միայն զքեզ գոհ կրնայ ընել ։ Ուստի Դաւիթ իր ամէն զուարճութեանցը մէջ ուրիշ բան չէր ըներ, բայց եթէ կու լար ու կըսէր, եղեն ինձ արտասուք իմ կերակուր 'ի տուէ և 'ի գիշերի, և այն զի ասէին ցիս զօրհանապազ թէ ո՞ւր է Աստուած քո[2] ։

Ասոր ներհակը, ո՜վ թէ որչափ աղէկ գիտէ Աստուած գոհ ընել իր հաւատարիմ ծառայքն որ զինքը կը սիրեն ։ Սուրբ Ֆրանչիսկոս աստիզացին ամէն բանը թողլով Աստուծոյ համար, թէպէտ և բոպիկ էր, և քուրձ մը վրան, այնչափ ցրտէն և անօթութենէն եռև, մեռնելու ատեն կըսէր . Աստուած իմ, ամենայն ինչ . և արքայութեան համ կառնէր ։ Սուրբ Ֆրանչիսկոս

1 Սղ. ԽԱ. 4 ։ 2 Անդ ։

պօրճեանը կրօնաւոր ըլլալէն ետև ճամբայ ընելու ատեն յարդի վրայ պառկելով՝ այնչափ ուրախ էր սըրտով որ ուրախութենէն քանի մը գիշեր քունը չէր տաներ ։ Նմանապէս սուրբն Փիլիպպոս Ներեան ամէն բանը թողած երբոր պառկելու կերթար, այնչափ կը մխիթարուէր Աստուծմէ որ կըսկսէր ըսել ․ Յիսուս փրկիչ իմ, թող տուր որ քիչ մը քուն ըլլամ ։ Հայրն Կարոլոս յիսուսեան լորենացի իշխանազունը, իր աղքատ խցիկը այնչափ մխիթարանք կունենար որ կելլէր կը ցատքըտէր ։ Սուրբ Ֆրանչիսկոս քսաւերեան Հնդկաստանի դաշտերուն մէջ կուրծքը կը բանար՝ ըսելով ․ բաւական է, տէր, ալ աւելի զիս մի մխիթարեր, վասն զի սիրտս չի կրնար տանել ։ Սրբուհին Թէրէզա կըսէր թէ երկնային մխիթարութենէն կաթիլ մը աւելի գոհ կընէ զմարդ՝ քան թէ ամենայն հաճոյք և զբօսանք աշխարհիս ․ և յայտնի է Քրիստոսի ըսածն ալ, որ թողուցու զտուն կամ զեղբայր, և այլն՝ վասն անուան իմոյ, հարիւրապատիկ առցէ, և զկեանս յաւիտենականս ժառանգեսցէ[1] ։

Ալ ի՞նչ աւելի կը փնտռենք, երթանք առ Յիսուս՝ որ զմեզ կը կոչէ ըսելով ․ եկայք առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ[2] ։ Անտարակոյս աստուածասէր անձը ան խաղաղութիւնը կը գտնէ, որ գրած է թէ խաղաղութիւնն Աստուծոյ որ 'ի վեր է քան զամենայն միտս և զխորհուրդս[3] ։ Իրաւ է թէ սուրբերը աս աշխրքիս վրայ նեղութիւն կը քաշեն, վասն զի աս երկիրս արդիւնք ժողվելու տեղ է ․ իսկ արդիւնքը առանց բան քաշելու չըլլար ․ և սակայն կըսէ սուրբն Բոնաւենդուրա. թէ սէրն Աստուծոյ մեղրի նման է, որ քաղցր և անոյշ կընէ զամենայն լեղի և զդառն ։ ԶԱստուած սիրողը անոր կամքն ալ կը սիրէ, ուստի ուրախ կըլլայ հոգւով՝ դառնութեան մէջն ալ ․ վասն զի սիրով ընդունելով՝ գիտէ թէ Աստուծոյ հաճոյական բան կընէ, ու զԱստուած կուրախացընէ ։ Իսկ մեղաւորները սուրբ Բեռնարդոսի ըսածին պէս՝ խաչը կը տեսնեն, օծութիւնը չեն տեսներ ․ մահացուցման կը նային, զոր ունին աստուածասէրք զիրենք 'ի հաճոյից զրկելով, ու չեն տեսներ

1 Մտ․ ԺԹ․ 29 ։ 2 Մտ․ ԺԱ․ 29 ։ 3 Փիլ․ Դ․ 7 ։

հոգևոր զուարճութիւնները՝ որով Աստուած զանոնք կը փայփայէ։ Ախ թէ մեղաւորք համտես ընէին այն խաղաղութիւնը զոր հոգին կը վայելէ երբոր ուրիշ բան չուզեր բաց 'ի Աստուծոյ. կըսէ Դաւիթ՝ ճաշակեցէք և տեսէք զի քաղցր է տէր[1]։ Ով սիրելի եղբայր, սկսէ ամէն օր մտածական ընել, սրբութեան առջևը ջերմեռանդութիւն ըրէ, աշխարհքը մէկդի դիր, Աստուծոյ հետ եղիր, այն ատենը կը տեսնես որ այն քիչ ատենին մէջ Աստուած զքեզ անանկ կը մխիթարէ որ բնաւ աշխարհք զքեզ մխիթարած չէ իր ամէն զբօսանքովը։ Ճաշակեցէք և տեսէք. ով որ համը չէ առեր նէ, չի կրնար հասկընալ թէ Աստուած ինչպէս կը մխիթարէ զաստուածասէր հոգին։

## ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Սիրելի փրկիչ իմ, ինչպէս կոյր զտնուեցայ ինչուան հիմա զքեզ թողնելով, զանհուն բարիդ և աղբիւրդ ամենայն մխիթարութեանց, և հետևեցայ ողորմելի և կարճատօտ զգայական հաճոյից. կը զարմանամ իմ կուրութեանս վրայ, բայց աւելի կը զարմանամ քու ողորմութեանդ վրայ, որ այնչափ բարութեամբդ ինծի համբերեցիր։ Գոհանամ զքէն, որ ինծի ճանչնալ կու տաս իմ կուրութիւնս, և պարտականութիւնս զքեզ սիրելու։ Զքեզ կը սիրեմ բոլոր հոգւովս, և կը ցանկամ աւելի սիրել. էւելցուր իմ փափաքս և սէրս։ Տուր ինծի սիրով կապուիլ ընդ անհուն սիրելիդ, որ ամէն բան ըրիր որ ինծի սիրելի ըլլաս, և այդչափ կուզես ինծմէ սիրուիլ. տէր, եթէ կամիս՝ կարող ես զիս սրբել[2]։ Ա՜խ սիրելի փրկիչ իմ, սրբէ սիրտս այն ամէն անսուրբ յօժարութիւններէն, որ կը խափանեն զիս զքեզ սիրելու։ Ինչպէս որ կուզեմ՝ իմ ուժս չի բաւեր ընելու, որ սիրտս բոլորովին վառուի զքեզ սիրելու, և քեզմէ 'ի զատ ուրիշ բան չսիրելու. քու շնորհքիդ ուժը պէտք է որ կարենայ ընել իր ամէն ուզածը։ Ամէն բանէ զիս կտրէ, մերժէ իմ սրտէս ամենայն յօժարութիւն, որ քեզի համար չէ, և բոլորովին զիս քուկդ ըրէ։ Ես կը ցաւիմ կը զղջամ ամենայն չարութեանցս տհաճութեանցը վրայ որ քեզի տուեր եմ, և կառաջադրեմ

1 Սղ. ԼԳ. 9։ 2 Մրկ. Ա. 40։

քեզի նուիրել մնացած կեանքս, և քու սուրբ սիրոյդ, բայց քու ձեռքդ է գլուխ տանել աս բանս ընելու։ Աս շնորհքս ինծի ըրէ քու սուրբ արեանդ համար, որ թափեցիր ինծի համար անտանելի ցաւով, և անբաւ սիրով։ Պարծանք ըլլայ քու կարողութեանդ՝ ընել որ աս իմ սիրտս այնչափ ատենէ 'ի վեր լեցուած երկրաւոր յօժարութեամբք՝ հիմա ըլլայ բոլորովին բորբոքեալ բոցով սիրոյ քո, ով անսահման բարիդ։ Եւ դու մայր գեղեցիկ սիրոյ, քու բարեխօսութեամբդ անանկ ըրէ զիս, ինչպէս դուն միշտ էիր բոլորովին վառեալ սիրովն Աստուծոյ։



# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԲ.

## ՉԱՐ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ

*Ամբարիշտը չարեաց խորը հասնելով կարհամարհէ*[1].



## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Մ՝էկ մեծ վնասն որ ըրաւ մեզի մեղքն Ադամայ՝ է չար յօժարութիւն առ մեղս։ Աս բանս առաքելոյն ողբ առնել կու տար, տեսնելով զիւր հոգին յօժարեալ դէպ 'ի չարն՝ զոր կատէր։ Տեսանեմ զայլ օրէնս, կըսէր, յանդամս իմ, գերեալ զիս օրինաց մեղաց[2]։ Ասկից է որ արդէն ապականած ըլլալով աս ցանկութեամբ, միանգամայն այնչափ բազմութիւն թշնամեաց գրգռելով զմեզ 'ի չարն, դժուարին կըլլայ անմեղութեամբ երթալ յերանական կեանս։ Աս որ ասանկ է նէ, դուն ինչ կըսէիր ան ճամբորդին որ ծովէ կուզէ անցնիլ ալէկոծութեան ատեն կէսը կոտրած նաւակով մը, և կուզէ ծանրաբեռնել զայն այնչափ՝ որ առանց ալիքի աղէկ նաւ մըն ալ կրնար ընկղմիլ։ Ի՞նչ կը դու-

1 Ամբարիշտն հասեալ ի խորս չարեաց. արհամարհէ։ Առակ. ԺԸ. 3։

2 Հռ. Է. 23։

չափէիր այն մարդուն վերջը։ Արդ նոյն բանը ըսէ չար ունակութիւն ունեցողին համար ալ, որ ուզելով անցնիլ աս կենացս ծովէն, ուր շատերը կը կորսուին աւելկոծութեամբ մէկ տկար և կոտրած նաւակով մը, որ է մեր մարմինը, կը համարձակի ծանրացընել զինքը ունակացեալ մեղքերով։ Այդպիսի անձ մը դժուար է թէ փրկուի, վասն զի չար ունակութիւնը միտքը կը կուրցընէ, սիրտը կը խստացընէ, և այնպէս դիւրաւ յամառ կըլլայ մինչև 'ի մահ։

Նախ և առաջ չար ունակութիւնն է կուրացուցիչ, չէ նէ ինչու սուրբերը անդադար լոյս կը խնդրեն Աստուծմէ և կը դողան՝ որ չըլլայ թէ իրենք ըլլան վատթարագոյն մեղաւորք աշխարհի։ Վասն զի գիտեն թէ եթէ մէկ րոպէ մը լոյսը կորսընցընեն նէ, կրնան ամէն անօրէնութիւններ գործել։ Հապա ինչպէս այնչափ քրիստոնեայք խստասրտութեամբ ուզեցին մեղաց մէջ մնալ, ինչուան վերջապէս դատապարտեցան։ Վասն զի կուրացոյց զնոսա չարութիւն իւրեանց[1]։ Ամէն մեղք հետը կուրութիւն ունի, և որչափ մեղքը կը շատնայ նէ, կուրութիւնն ալ կը սաստկանայ։ Աստուած է մեր լոյսը. ուրեմն որչափ որ մէկը Աստուծմէ կը հեռանայ, այնչափ կը կուրնայ։ Ինչպէս ամանի մը մէջ որչափ հողը լեցուն ըլլայ, արևու լոյսը չի կըրնար թափանցել, նմանապէս ախտալից սիրտը չի կըրնար մտնել աստուածային լոյսը։ Ասոր համար կը տեսնենք՝ որ ոմանք 'ի մեղաւորաց լոյսը կորսընցընելէն ետև՝ մեղքէ 'ի մեղք կը խրին և մէյմըն ալ չեն հոգար զիրենք շտկելու. շուրջանակի ամպարիշտք շըրջին[2]։ Թշուառականները ան խաւար գուբը կիյնան նէ, ուրիշ բան չեն ըներ, բայց միայն կը մեղանչեն. ուրիշ բան չեն խօսիր չեն մտածեր, բաց 'ի մեղաց, և գրեթէ չեն հասկընար անկից ետև թէ չար է մեղքը։ Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս, չարին սովորութիւնը չի թողուր մեղաւորաց տեսնել գչարն զոր կը գործեն, և անանկ կեանք կը վարեն, որպէս թէ չհաւատային անկից ետև թէ Աստուած կայ, արքայութիւն կայ, դժոխք կայ, յաւիտենականութիւն կայ։

Ուստի ան մեղքն որ առաջ սոսկումն կը բերէր,

1 Իմաստ. Բ. 21։ 2 Առ. ԺԱ. 9։

չար ունակութեամբ՝ ետքը սոսկալի չերեւնար. արա զնոսա որպէս զանիւ, որպէս զեղէգն առաջի հողմոյ[1]: Կը տեսնես, կըսէ սուրբն Գրիգոր, ինչպէս գլուրա յարդէ եղէգը կը շարժի ամէն քամիէ, այսպէս ալ կը տեսնես և ան անձը՝ որ առաջ գոնէ ատեն մը դէմ կը դնէր փորձութեան, իսկ երբոր չար ունակութիւն ըրեր է նէ՝ զինչ և իցէ փորձութեամբ իսկոյն կիյնայ: Ինչու, վասն զի չարունակութիւնը վերուցեր է անոր լոյսը: Սուրբն Անսելմոս ալ կըսէ թէ սատանան ան կերպը կը բռնէ ոմանց 'ի մեղաւորաց, ինչ որ կընէ մէկը երբոր թռչուն մը բռնէ որ չուանով կը կապէ, և անանկ թող կու տայ որ թռչի, բայց երբոր կուզէ վար կը քաշէ գետին կը ձգէ: Ասոր նման են չար ունակութիւն ունեցողները: Իսկ սուրբն Բեռնարդոս սենացին ալ կեւեցընէ թէ ոմանք առիթ ալ չունենան նէ կը մեղանչեն՝ նման ան ջաղացքներուն, որ ամէն պզտիկ հովէ կը պտըտին, և աւելի կը պտըտին՝ երբոր աղալու բան ալ չունին նէ, և ջաղջըպանն ալ կուզէր որ պտըտին: Կը տեսնես որ չար ունակութեան տէրը առանց պատճառի գէշ խորհուրդներ կորոճայ, համ ալ չառնելով և գրեթէ չուզենալով, սոսկ չար ունակութեան ուժովը: Սուրբ ոսկեբերանի ըսածին պէս՝ դժընդակ բան է սովորութիւնը, որ երբեմն չուզողներն ալ կըստիպէ անարժան բան ընել: Պատճառն է, կըսէ սուրբ Օգոստինոս, վասն զի երբոր սովորութեան դէմ չի կեցուի նէ՝ հարկ կը դառնայ. կամ ինչպէս սուրբն Բեռնարտինոս ալ կըսէ, սովորութիւնը բնութիւն կը դառնայ: Ուստի ինչպէս հարկաւոր է մարդուս շնչառութիւն, այսպէս ալ չար ունակացելոց՝ որ գերի եղեր են մեղաց, կերեւնայ թէ հարկ է մեղանչել: Գերի ըսի, վասն զի ծառան վարձքով կաշխատի, իսկ գերին առանց վարձքի. ահա ասանկ կըլլայ նոյն թշուառականներուն որ առանց համ մըն ալ առնելու մեղանչել կը սորվին:

Սուրբ գիրքը կըսէ թէ ամբարիշտն հասեալ 'ի խորս չարեաց արհամարհէ[2]: Աս բանս ոսկեբերան բուն չար ունակութիւն ունեցողներուն վրայ կը մեկնէ, որ ան խաւարային փոսին մէջ ընկած ըլլալով կարհա-

1 Սղ. ԼԲ. 14: 2 Առակ. ԺԷ. 3:

մարհէն խորանէն ալ, քարոզէն ալ, բանաստեղծներէն ալ, դժոխքէն ալ, մինչև զԱստուած ալ, և ամենայն բան, և կըլլան նման անգեղ որ գիրկը ձեռքէ չի հանելու համար յանձն կառնու անոր վրայ որսորդներէն զարնուիլ ու սպաննուիլ։ Կը պատմէ հայրն Հռեհուպիոս թէ մահապարտ մը երբոր կախուելու կերթար նէ, աղջիկ մը տեսաւ՝ խնլքը անոր տուաւ։ Հայրն Կիտալիոս ալ կը պատմէ թէ նոյնպէս հայհոյիչ մարդ մըն ալ կախաղան ելլելու ատեն երբոր սանդուխին զարնուեցաւ՝ նորէն հայհոյութիւն ըրաւ։ Ուստի կըսէ սուրբն Բեռնարդոս թէ չար ունակութիւն ունեցողներուն համար շահ մը չըներ աղօթք ընելը, հապա պէտք է զանոնք լալ իբրև զգատապարտեալս։ Բայց ինչպէս ուզեն իրենց խորխորատէն ելլել երբոր չեն տեսներ որ մէջն են ընկեր։ Շնորհքի հրաշք մը պէտք է։ Աչուընին դըժոխքի մէջ պիտի բանան թշուառականները, ան ատենն որ աչք բանալը ուրիշ բանի չիգար՝ եթէ ոչ աւելի դառնութեամբ լալու իրենց խենթութիւնը։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած իմ, դուն ինծի առանձին շնորհքներ ըրիր աւելի քան զուրիշները, ես ալ աւելի ապերախտութեամբ զքեզ վշտացուցի, ուրիշներէն աւելի անիրաւութիւն ընելով քեզի դէմ։ Ով ցաւագին սիրտ փրկչիդ իմոյ, որ խաչին վրայ վշտացար իմ մեղքերս տեսնելով, տուր ինծի քու արդեանցդ համար կենդանի ճանաչումն և ցաւ իմ մեղքերուս վրայ։ Ով փրկիչ իմ, իրաւ որ ես ախտիւք լի եմ, բայց դուն ամենակարող ես, կրնաս զիս լեցընել քու սուրբ սիրովդ։ Ուստի քեզի կապաւինիմ, որ անբաւ բարութիւն ես և ողորմութիւն։ Կը զղջամ, ով ծայրագոյն բարի, զքեզ վըշտացընելուս համար, երանի թէ մեռած ըլլայի և քու կամքիդ դպած չըլլայի։ Ես զքեզ մոռցայ, բայց դուն զիս չիմոռցար, ինչպէս որ կը տեսնեմ աս լուսովս որ հիմա ինծի կու տաս։ Արդ ինչպէս որ լոյս կու տաս նէ, ուժ ալ տուր ինծի հաւատարիմ ըլլալու քեզի. ես իմ կողմանէս խօսք կու տամ բիւր անգամ մեռնիլ, քան թէ մէյմըն ալ քեզի երես դարձընեմ։ Բայց քու օգնականութեանդ վրայ է իմ յոյսս. 'ի քեզ տէր յու-

նեցայ, մի ամաչեցից յաւիտեան[1]: Քու բարեխօսութեանդ կապաւինիմ, ով յոյս իմ և ապաւէն, տիրուհի Մարիամ. 'ի քեզ եմ ապաւինեալ, որ մէյմըն ալ զիս չիտեսնեմ թշնամի միածնիդ: Կաղաչեմ, աղաչէ որ ինծի առաջ մեռնիլ տայ քան թէ զիս երեսէ ձգէ այսպիսի անշնորհութեան մէջ:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Չար ունակութեան մէկ գործքն ալ խստասրտութիւն բերելն է: Ինչպէս կըսէ Կուռնելիոս Ալափիտէ՝ մեղանչելու սովորութիւնը կը խստացընէ մարդուս սիրտը: Եւ ասիկայ իրաւամբք թող կու տայ Աստուած 'ի պատիժ իր կոչմանը դէմ կեցողներուն: Առաքելոյն ըսածին պէս, ում կամի ողորմի, ում կամի խստանայ[2]. ասանկ կը մեկնէ Օգոստինոս, խստացուցանելն Աստուծոյ՝ է չկամիլ ողորմիլ: Չէ թէ Աստուած կը խըստացընէ ունակութիւնը չար ընելու համար, հապա կամփոփէ իր շնորհքը 'ի պատիժ ապերախտութեան իրեն շնորհացը դէմ, և այնպէս սիրտը քարի պէս կը կարծրանայ: Սիրտ նորա սալացեալ է իբրև զվէմ, և հաստատեալ կայ իբրև զսալ զարբնաց անշարժ[3]: Ասկից է որ ուրիշներուն սիրտը կը փղձկի և կըսկսին լալ լսելով Աստուծոյ զատաստանին ահաւորութիւնը, դըժոխքին տանջանքը, Քրիստոսի չարչարանքը. չար ունակութիւն ունեցողը բնաւ չի շարժիր, անանկ բաները կը լսէ կը խօսի անտարբեր կերպով, որպէս թէ իրեն չեն վերաբերիր. և այնպիսի հարուածներ ուտելով աւելի կը խստանայ իբրև զսալ զարբնաց անշարժ:

Յանկարծական մահերն ալ, գետնաշարժ, որոտում, կայծակ, անկէց ետև վախ չեն տար անոր. ուստի զգաստանալէն առաջ վրան կու գայ քուն մահու, և անանկ կը քնանայ 'ի կորուստ. 'ի սաստէ քումմէ, Աստուած Յակոբայ, ննջեցին[4]: Չար ունակութիւնը կամաց կամաց կը կորսընցընէ խղճմտանքին զարնելն ալ: Չար ունակութիւն ունեցողին ամէնէն սոսկալի մեղքերն ալ բան մը չեն երևնար իրեն, կըսէ սուրբն

1 Սղ. Է. 1:
2 Հռ. Թ. 18:
3 Յոբ. ԽԱ. 15:
4 Սղ. ՀԵ. 7:

Օգոստինոս: Չար գործքը բնականապէս մէկ ամօթ մը կը բերէ. իսկ չար ունակութիւն ունեցողները ամօթ ալ չունին մեղանչելու ատեններն, կըսէ սուրբն Հերոնիմոս. չար ունակացեալը սուրբն Պետրոս խոզի կը նմանցընէ. խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ[1] ըսելով: Ինչպէս խոզը տղմի մէջ թապլտըկելով գարշութիւն չի զգար, ասանկ ալ չար ունակութեամբ գործողը ան գարշ հոտերն որ ամէնքը կիմանան ու կը գարշին, ինքը միայն չի զգար: Եւ երբոր գարշութիւնը իրեն աչքը կուրցուցեր է նէ, ի՞նչ զարմանք, կըսէ սուրբն Բեռնարդոս, երբոր Աստուծոյ հարուածներն ալ չիմանար նէ: Որով մեղքէն փոխանակ ետ քաշուելու, կը խնտայ և կը պարծի ալ. և ուրախ լինիցին ընդ չարիս[2], և ծիծաղելով գործէ անզգամն զչար[3]: Ի՞նչ նշան է այսպիսի դիւական խստասրտութիւնը: Սուրբն Թովմաս վիլլանովացին կըսէ թէ խստասրտութիւնն է նշան դատապարտութեան: Սոսկացիր, ով եղբայր, որ դուն ալ աս վիճակին մէջ չըլլաս, թէ որ գէշ ունակութիւն մը ունիս նէ շուտով զքեզ խալըսէ անկէ, քանի որ հիմա Աստուած զքեզ կը կանչէ. և քանի որ խղճմտանքդ զքեզ կը զարնէ՝ ուրախ եղիր, վասն զի նշան է թէ Աստուած զքեզ երեսէ չէ ձգեր. բայց ջանա որ շուտով զքեզ շտկես, չէ նէ վէրքդ քաղցկեղ կըլլայ, զքեզ կը կորսընցընէ:

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՜վ տէր, ինչպէս կարենամ շնորհակալ ըլլալ քեզի ըստ արժանւոյն այնչափ ինծի ըրած շնորհացդ համար: Քանի՜ անգամ՝ զիս կանչեցիր, և ես դէմ կեցայ: Գոհանալու և զքեզ սիրելու տեղ՝ որ զիս դժոխքէ խալըսեցիր, և այնչափ սիրով կոչեցիր, ես նորէն նայեցայ զքեզ բարկացընել, կրկին կրկին անիրաւելով: Ասկից ետև, Աստուած իմ, քաւ լիցի, չեմ ուզեր մէյմըն ալ ոտքի տակ առնել քու երկայնմտութիւնդ, հերիք է ինչուան հիմա ըրածս: Դու միայն անբաւ բարիդ, կըրնայիր այսչափ համբերել, բայց հիմա կը տեսնեմ որ՝ ալ չես կրնար ինծի համբերել: Իրաւունք ունիս, հապա ներէ ինծի, տէր, իմ ծայրագոյն բարիս. շատ ան-

1 Բ· Պետ· Բ· 22: 2 Առակ· Բ· 14: 3 Առակ· Ժ· 23:

արցունք լրած եմ քեզի դէմ, որոնց վրայ կը ցաւիմ 'ի բոլոր սրտէ, և կառաջադրեմ այսուհետև զքեզ չի վշտացընել : Հապա ինչ. միթէ միշտ զքեզ 'ի բարկութեան պիտի գրգռեմ : Ա՛հ, կաղաչեմ հաշտուէ հետս, Աստուած հոգւոյ իմոյ, չէ թէ իմ արդեանցս համար, որ ուրիշ բանի արժանի չեմ, բայց 'ի դժոխքէն, այլ վասն արդեանց միածնիդ՝ իմ փրկչիս, որուն վրայ դրած եմ բոլոր յոյսս : Ուստի վասն սիրոյ Յիսուսի Քրիստոսի ընդունէ զիս 'ի շնորհս քո, և տուր ինծի յարատեւութիւն 'ի սէր քո : Ազատէ զիս յանսուրբ յօժարութեանց, և բոլորովին քեզի առ : Կը սիրեմ զքեզ, ով ծայրագոյնդ Աստուած, ով ծայրագոյն հոգեսէր տէր, որ արժանի ես անհուն սիրոյ, երանի թէ զքեզ միայն սիրած ըլլայի : Ով կոյս տիրամայր, մայր իմ, տուր որ մնացած կեանքիս մէջ մէյմըն ալ չզայրացընեմ քու միածինդ, այլ զինքը միայն սիրեմ, և լամ որչափ որ իր կամքին դէմ ըրեր եմ :

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Լոյսն որ մէյմը կորսուի և սիրտն ալ մէյմը կարծրանայ, հասարակօրէն մեղաւորին բանը գէշ է, 'ի մեղս իւր կը մեռնի. խստասիրտը չարի կը հանդիպի վերջը, կըսէ Սիրաք : Իսկ արդարները ուղիղ ճամբուն մէջ առաջ կերթան անխոտոր. ճանապարհք բարեպաշտաց ուղիղ են[1], կըսէ Եսայի : Ընդ հակառակն գէշ ունակացեալները միշտ խոտոր կը շրջին. շուրջանակի ամպարիշտք շրջին[2]. այսինքն քիչ մը ատեն կը թողուն մեղքը, ետքը նորէն կը դառնան : Ուստի կըսէ սուրբն Բեռնարդոս թէ վայ անոր որ աս շրջանիս մէջ կը պտըտի : Մէկը կրնայ ըսել թէ ես մահէս առաջ զիս շտկել կուզեմ, բայց դժուար բան է որ 'ի չարն ունակացեալը զինքը շտկէ. ծերութեան ալ հասնի նէ, սուրբ գրոց ըսածին պէս, Նորոգումն երիտասարդի ըստ ճանապարհաց իւրոց, նաև յորժամ ծերասցի՝ ոչ մերժեսցի 'ի նոցանէ[3]. պատճառն է, կըսէ սուրբ Թովմաս վիլլանովացին, վասն զի մեր զօրութիւնը խիստ

1 Ես. ԻԶ. 7 : 2 Սղ. ԺԱ. 9 : 3 Առակ. ԻԲ. 6 :

տկար է. եղիցի զօրութիւն նոցա իբրև զծեծած վշոյ [1], կըսէ Եսայի։ Ուստի կըսէ նոյն սուրբը. Հոգի մը որ չնորհքէ զրկուած է, չիկրնար նորանոր մեղքերէ ազատ ըլլալ։ Բայց տակէց, ի՜նչ խենթութիւն է, որ մէկը ուզենայ խաղալ, և կամաւ կորսնցընել ամէն ունեցածը՝ յուսալով որ վերջի խաղին ատենը ամէն բանին տեղը լեցընէ. նոյնպէս խենթ է անիկայ որ մեղքէն ետ չի կենար ան յուսով որ կենաց ետքի թելին ատենը կարենայ ամէն բանի ճարը ընել։ Տես ի՜նչ կըսէ Աստուած մարգարէին ձեռքը. եթէ փոխիցէ հընդիկ զմորթ իւր, և ինձ զխայտուցս իւր, և դուք կարող լինիցիք գործել զբարիս ուսեալք զչարիս [2]։ Ասոր համար է որ չար ունակութիւն ունեցողը ետքը ետքը յուսահատութեան մէջ կիյնայ, և ասանկ կեանքը կը լըմըցընէ. խիստ սրտիւ անկցի 'ի չարիս [3]։ Եւ կըսէ Յոբ թէ կործանեցին զիս հարուածովք 'ի վերայ հարուածոց, յարձակեցան 'ի վերայ իմ զօրաւորք [4]։

Ասանկ կը խօսի սուրբն Գրիգոր աս խօսքիս վրայ թէ թշնամի յարձակի նէ, զուցէ առջի բերան կարենայ դէմ դնել. բայց երբոր շատ վէրք առնէ, այնչափ ուժը կը կորսընցընէ՝ որ վերջապէս կըսպաննուի։ Ասանկ կըլլայ մեղքին բանն ալ. մեղաւորը մէկ երկու ուժ կը ցցընէ չնորհաց գործակցութեամբը. բայց երբոր կը շարունակէ 'ի մեղս, մեղքը կըլլայ զօրաւոր հսկայի մը պէս. ան ատենն որ մեղաւորը աւելի տկարացած է, շատ վէրք ալ առեր է, ի՜նչպէս կրնայ մահուանէ խալըսիլ. մեղքը ծանր քարի մը նման է որ կը ճմլէ զհոգին։ Արդ կըսէ սուրբն Բեռնարդոս թէ դըժուարաւ կը կանգնի ան՝ զոր չար սովորութեան ծանրութիւնը իր տակը ճզմեր է։

Ուրեմն իմ բանս յուսահատելի է՝ կրնայ ըսել չար ունակութեան տէրը։ Քաւ լիցի, մի յուսահատիր, միայն թէ ուզենաս ճարը տեսնել։ Աղէկ կըսէ հեղինակին մէկը թէ ծանր հիւանդութեանց մէջ զօրաւոր դեղեր պէտք է առնել։ Թէ որ հիւանդ մը մահուան վտանգի ատեն չուզենայ դեղ առնել, վասն զի հիւանդութեան ծանրութիւնը չի գիտեր, ատոր բժիշկը ըսէր՝

1 Ես. Ա. 31։
2 Երեմ. ԺԳ. 23։
3 Առակ. ԻԸ. 14։
4 Յոբ. ԺԶ. 15։

բարեկամ գիր թեւադրած ես՝ թէ որ գեղ չառնես նէ . ինչ կըլլէր հիւանդը . յայտնի է որ կըլլէր թէ ահա պատրաստ եմ ամէն բան առնել . վասն զի բանը կենաց վրայ է ։ Ահա , ով սիրելի , ես ալ նոյն բանը քեզի կըսեմ . թէ որ մեղք մը ունակութիւն ըրած ես նէ , բանդ գէշ է , և անանկ հիւանդներէն ես որ առողջացող քիչ կըլլայ , հոգւոյդ կորուստը մօտ է ։ Բայց առողջանալ կուզես նէ՝ դեղը կայ , շնորհաց հրաշքին մի սպասեր . ջանա քու կողմանէդ առիթները վերցընել , վատթար ընկերներէն փախչիլ , երբոր փորձութիւն կունենաս դէմ դիր՝ զքեզ Աստուծոյ յանձնելով , ձեռք զարկ այնպիսի միջոցներու որ զքեզ չտկես , ստէպ ստէպ խոստովանանք ըլլալով , ամէն օր հոգևոր գիրք կարդալով , սուրբ Աստուածածնայ ալ ջերմեռանդութիւն ընելով , ու աղաչելով անդադար՝ որ ուժ առնէ քեզի համար մէյմըն ալ չիյնալու ։ Զքեզ պիտի բռնադատես , չէ նէ Քրիստոսի սպառնալեաց տակը կը մնաս . 'ի մեղս ձեր մեռանիցիք[1] ։ Թէ որ հիմա ճար չընես՝ քանի որ Աստուած լոյս կու տայ քեզի , ետքը դժար է որ կարենաս դեղ ընել ։ Մտիկ ըրէ Աստուծոյ , որ զքեզ կը կանչէ , Ղազարէ , արի եկ արտաքս[2] . խեղճ ողորմելի մեղաւոր , որ արդէն մեռեալ ես հոգւով , դուրս ելիր առ խաւարային փոսէն քու վատթար վարուցդ ։ Շուտով պատասխան տուր , և զքեզ Աստուծոյ տուր , և վախցիր որ աս վերջի կոչումը չըլլայ քեզի ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ Աստուած իմ, միթէ կըսպասեմ որ գլխս երեսէ ձգես , ու դժոխք խաւրես ։ Ա՜խ տէր , երկայնամիտ լեր առ իս , ահա ես կուզեմ վարքս փոխել , ու գլխս քեզի տալ . հրամայէ , ինչ պէտք է ինծի , ես ընելու պատրաստ եմ ։ Ով արիւն Յիսուսի , օգնէ ինծի . ով ապաստան մեղաւորաց Մարիամ , հաս ինծի օգնութիւն . և դու հայր երկնաւոր , վասն արդեանց Յիսուսի և Մարիամու , գթա յիս ։ Ես կը զղջամ , ով Աստուած իմ , անհուն բարութիւն , զքեզ վշտացընելուս համար , և ամէն բանէն վեր զքեզ կը սիրեմ ։ Թող ինծի վասն սիրոյ Յիսուսի Քրիստոսի , և տուր ինծի Նոր սէր . մեծ

1 Յովհ . Ը . 21 ։  2 Յովհ . ԺԱ . 43 ։

ցաւ մըն ալ տուր ինծի իմ կործանմանս վրայ, թէ որ նորէն զքեզ վշտացընելու ըլլամ նէ։ Աստուած իմ, յոյս իմ և զօրութիւն իմ, ամէն բանի յոյս ունիմ քու գթութենէդ։ Դուն ինծի այնչափ շնորհքներ ըրիր, երբոր ես քեզնէ հեռու կերթայի. ես առաւել կը յուսամ որ հիմա ալ ընես, երբոր առ քեզ դարձեր եմ հաստատուն սրտիւ, որ քեզնէ 'ի զատ ուրիշ բան չի սիրեմ։ Զքեզ կը սիրեմ, Աստուած իմ, կեանք իմ և ամենայն ինչ։ Զքեզ ալ կը սիրեմ, մայր իմ Մարիամ, քեզի կը յանձնեմ իմ հոգիս, դուն զիս պահէ քու բարեխօսութեամբդ որ մէյմըն ալ Աստուծոյ երեսէն չիյնամ։

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԳ·

### ԽԱԲԷՈՒԹԻՒՆՔ ՍԱՏԱՆԱՅԻ ՈՐ ՄԵՂԱՒՈՐԱՑ ՄԻՏՔԸ ԿԸ ԳՂՏՈՐԷ

### ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Գիտենք թէ երիտասարդ մը ծանր մեղքի մէջ ընկնելէն ետև խոստովանանք եղեր է, և նորէն Աստուծոյ շնորհքը ձեռք ձգեր է։ Սատանան ալ նորէն զինքը կը փորձէ՝ նոյն մեղքին մէջ մէյմըն ալ իյնկնալու. երիտասարդը դեռ դէմ կը կենայ, բայց կը ծփի թշնամիին խաբէական փորձութեամբը։ Արդ քեզի կըսեմ, ով երիտասարդ, ինչ կուզես ընել, կուզես հիմա Աստուծոյ շնորհքը կորսընցընել, որ նորէն ստացար և բոլոր աշխարքէս աւելի կաժէ, առ չնչին հաճոյքդ ընելու համար. կուզես որ դուն քեզմէ զրես քու յաւիտենից զատապարտութեանդ վճիռը, որ երթաս դժոխքը յաւիտեան երիս մրկիս։ Դուն ալ կըսես ինծի թէ չէ, ես դատապարտուիլ չեմ ուզեր, կուզեմ փրկուիլ՝ բայց թէ որ սոյն մեղքը ընեմ նէ, ետեէն կերթամ կը խոստովանիմ։ Եւ ահա աս է փորձողին առաջին խաբէութիւնը. դուն ինծի կըսես թէ ետքը կերթամ կը խոստո-

վանիմ, բայց արդէն հոգիդ կորսընցուցիր։ Ըսէ ինծի, որ եթէ ձեռքդ գոհար մը ըլլար՝ հազար ոսկի արժող, գետը կը ձգէի՞ր՝ ըսելով թէ ետքը ետեւէն կիյնամ, կը յուսամ որ գտնեմ։ Արդ քու ձեռքդ ունիս այս գեղեցիկ գոհարը քու հոգւոյդ, որ Յիսուս իր արիւնովը գներ է, և դուն կամօք գետինը կը նետես. վասն զի մեղանչելովդ արդէն դատապարտուած կը սեպուիս, և կըսես թէ կը յուսամ որ խոստովանանքով նորէն ձեռք ձգեմ. Հապա թէ չկրնաս ձեռք ձգել նէ՝ ինչ պիտի ընես, գիտես որ նորէն ձեռք ձգելու համար ճշմարիտ զղջում պէտք է՝ որ Աստուծոյ պարգեւն է. Հապա թէ Աստուած չտայ նէ քեզի այս ճշմարիտ զղջումը, մահն ալ վրայ հասնի, ու ատեն չունենաս խոստովանանք ըլլալու նէ։ Կըսես թէ շաբաթ չեմ անցըներ, կերթամ կը խոստովանիմ. և ո՞վ խոստացեր է քեզի այս շաբաթ մը ատենը։

Կըսես թէ վաղը կը խոստովանիմ. ո՞վ քեզի խօսք է տուեր վաղուան օրուան համար։ Սուրբն Օգոստինոսի ըսածին պէս, վաղուան օրը Աստուած չխոստացաւ, գուցէ կու տայ, գուցէ չի տար։ Ինչպէս որ շատին չտուաւ, որ իրիկունը անկողին մտան ու առաւօտը մեռած գտնուեցան յանկարծակի։ Քանի՜ քանիին եղան որ Աստուած զիրենք նոյն իսկ մեղք գործելու ատեններին պատժեց մահուամբ ու դժոխք խաւրեց։ Քեզ ալ անանկ ընելու ըլլայ նէ, անկից ետեւ ինչ ճար պիտի ընես քու յաւիտենական դատապարտութեանդ։ Գիտցիր որ այս խաբէութիւնով՝ թէ ետքը կը խոստովանիմ, սատանան հազարաւոր և բիւրաւոր քրիստոնեայք դժոխք տարաւ. որովհետեւ դժուար կը գտնուի անանկ յուսահատ մեղաւոր մը որ ուզենայ իր կամօքը դատապարտուիլ, ամէնքն ալ՝ երբոր կը մեղանչեն նէ, յուսով խոստովանանք ըլլալու կը մեղանչեն. բայց այս կերպով ետքը անհամար թշուառականներ դատապարտուեցան, ու հիմա ճար ճարակ չեն կրնար ընել։

Կըսես թէ ես հիմա չեմ կրնար այս մեղքիս դէմ դնել. և ահա այս է գլխին երկրորդ խաբէութիւնը, որ քեզի անանկ կերեւցնէ թէ դուն զօրութիւն չունիս դէմ դնելու ներկայ կրքիդ։ Նախ և առաջ պիտի գիտնաս որ առաքելոյն ըսածին պէս, հաւատարիմ է Աստուած որ ոչ արկցէ զձեզ 'ի փորձութիւն առաւել քան զկար

ձեր[1]. մէյմըն ալ քեզի հարցընեմ, թէ որ հիմա չես վստահիր դէմ դնելու նէ, ինչպէս եաքը ալիտի վստահիս։ Թշնամին չի դադրիր զքեզ փորձելու ուրիշ մեղքերով ալ, ու ինքը ան ատեն աւելի կը զօրանայ քեզի դէմ, և դուն աւելի տկար կը գտնուիս։ Ուրեմն թէ որ հիմա չես համարձակիր աս բոցը մարել նէ, ինչպէս եաքը ալիտի համարձակիս մարելու, երբոր կրակը աւելի շատցած է։ Կըսես թէ Աստուած ինծի օգնութիւն կու տայ. բայց ահա Աստուած քեզի հիմա կու տայ ան օգնութիւնը, ինչու աս օգնութեամբս հիմա չես ուզեր դէմ կենալու։ Գուցէ կը յուսաս թէ Աստուած ալիտի աւելցընէ իր օգնութիւնը և շնորհքը՝ երբոր դուն մեղքերդ աւելցընես նէ. և թէ որ հիմա աւելի օգնութիւն և զօրութիւն քեզի պէտք է նէ, ինչու Աստուծմէ չես խնդրեր։ Տարակոյս մը ունիս Աստուծոյ հաւատարմութեանը վրայ, որ խօսք տուաւ ըսելով թէ խնդրեցէք և տացի ձեզ[2]։ Գիտես որ Աստուած իր խօսքէն չի պակսիր, անոր ապաւինէ, անիկայ քեզի կու տայ ան ուժը որ քեզի պէտք է զինմանալու համար։ Վճիռ է Տրիդենտեան ժողովոյն թէ Աստուած ոչ հրամայէ զանկարելիս. այլ 'ի հրամայել ինչ ազդ առնէ առնել զոր կարես, և խնդրել զոր չկարես, և օգնէ զի կարող լիցիս։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ուրեմն, Աստուած իմ, որչափ դուն ինծի բարերար եղար, ես ալ այնչափ ապերախտ եղայ։ Կարծես թէ ասպարէզ ելեր էինք ես քեզմէ փախչելու, դուն ետևէս գալու. դուն բարի ընել ինծի կը նայէիր, և ես չար ընելու։ Ա՜հ, Աստուած իմ, ուրիշ բան ալ չըլլար՝ սակ քու բարութիւնդ որ ցուցիր ինծի, պէտք էր որ 'ի սէր քո զիս վառէր. որովհետև ես որչափ մեղքերս շատցուցի նէ, դուն ալ շնորհքներդ աւելցուցիր։ Եւ սակի՞ց արժանի էի ես աս լուսոյս, որ հիմա ինծի կու տաս։ Շնորհակալ եմ քեզմէ, Տէր իմ, բոլորով սրտիւ. և կը յուսամ որ ասկէց ետև ալ շնորհակալ ըլլամ յաւիտեանս յաւիտենից արքայութեան մէջ։ Աս բանիս յոյս ունիմ, որ քու արեանդ զիս փրկեր ես.

1 Ա. Կոր. Ժ. 13։ 2 Մտ. Է. 7։

և հաստատուն յոյս ունիմ, որովհետև այսչափ ողորմութիւն՝ ինծի ցուցիր․ հիմակուց հիմա կը յուսամ որ ուժ ալ կու տաս ինծի, որ մէյմըն ալ մատնիչ չըլլամ քեզի։ Ես քու շնորհքովդ միայն գրած եմ հազար անգամ մեռնիլ, քան թէ մէյմըն ալ դառնալ ու վշտացընել զքեզ։ Հերիք է որչափ որ զքեզ բարկացուցի, միացած կեանքիս մէջ զքեզ սիրել կուզեմ։ Ես ինչպէս չսիրեմ իմ Աստուածս, որ ինծի համար մեռնելէն ետև, այսչափ երկայնամտութեամբ ալ ինծի համբերեց յետ իմ այսչափ անօրէնութեանցս։ Աստուած հոգւոյ իմոյ, կը զզջամ յամենայն սրտէ, երանի թէ ցաւէս մեռնէի․ եթէ ինչուան հիմա քեզի երես դարձուցի նէ, հիմա ամէն բանէն աւելի զքեզ կը սիրեմ, իմ անձէս ալ աւելի։ Հայր երկնաւոր, վասն արգեանց օծելոյ քո Յիսուսի Քրիստոսի, օգնութիւն հասիր աս ողորմելի մեղաւորիս, որ զքեզ սիրել կուզէ։ Տիրամայր Մարիամ, դուն օգնէ ինծի, և շնորհք առ ինծի համար որ միշտ ապաւինիմ առ քո միածինդ և առ քեզ, քանի որ սատանան զիս փորձելու ըլլայ զԱստուած բարկացընելու։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Կըսես թէ Աստուած ողորմած է։ Աս է երկրորդ խաբէութիւնը առ հասարակ մեղաւորաց որով սատանան կը մոլորցընէ շատերն ու կը դատապարտուին։ Խելացի մատենագիր մը կը գրէ թէ Աստուծոյ ողորմութիւնը շատը դժոխք կը տանի քան թէ իրեն արդարութիւնը․ վասն զի ան ողորմելիքը յանդգնաբար վըստահանալով Աստուծոյ ողորմութեանը չեն դադրիր մեղանչելէն, և այնպէսով կը կորսուին։ Աստուած ողորմած է, ո՞վ չի գիտեր․ այսու ամենայնիւ որչափ մարդիկ Աստուած ամէն օր դժոխք կը ղրկէ։ Ողորմած է Աստուած, բայց արդար ալ է, որով կը հարկադրի պատժել զայն որ իրեն դէմ կը մեղանչէ։ Իր ողորմութիւնը կը բանեցընէ անոնց վրայ, որ իրմէ կը վախնան․ զօրացոյց Տէր զողորմութիւն իւր ՚ի վերայ երկիւղածաց իւրոց... գթացի Տէր յերկիւղածս իւր[1]։

1 Սղ․ ՃԲ․ 11․ 13։

Բայց ով որ զինքը կանարգէ և չարաչար կը վարէ իր ողորմութիւնք աւելի զինքը անարգելու համար, արդարութիւնը կը բանեցընէ։ Եւ յիրաւի. վասն զի Աստուած մեղաց թողութիւն կու տայ՝ բայց չի կրնար ներել մեղանչելու կամքին։ Սուրբ Օգոստինոսի ըսածին պէս, ով որ կը մեղանչէ՝ ետքը կը զղջամ ըսելով, զըղջացող չէ, հապա զԱստուած ծաղր ընող։ Բայց ընդ հակառակն առաքեալն ալ կըսէ թէ մի խաբիք, Աստուած ոչ արհամարհի[1]։ Ծաղր ընել կըլլայ զԱստուած, վշտացընել զինքը ինչպէս որ կուզես և երբ որ կուզես, ու ետքը ելլել արքայութիւն պահանջել։

Իսկ դուն կըսես թէ ինչպէս ինչուան հիմա ողորմեցաւ ինծի Աստուած ու չպատժեց, աստանկ ալ կը յուսամ որ ինծի ողորմի ասկէց ետև ալ. ահա քեզի չորրորդ խաբէութիւն դիւին։ Աս ի՞նչ ըսել է. Աստուած քեզի ողորմեր է նէ, ատոր համար միշտ ողորմի՞ պիտի, ու բնաւ չպատժէ՞ պիտի դքեզ։ Հապա մանաւանդ թէ որչափ շատ եղաւ քեզի Աստուծոյ ողորմութիւնը նէ, այնչափ աւելի վախնաս պիտի թէ ալ չի ներեր քեզի և կը պատժէ թէ որ նորէն զինքը բարկացընես նէ։ Աղէկ կըսէ Սիրաք թէ մի ասիցես, մեղայ և զի՞նչ եղև ինձ. տէր երկայնամիտ է[2]։ Աստուած կը համբերէ բայց միշտ չի համբերեր, երբոր կը հասնի առ մեղաւորն ըրած ողորմութեանց սահմանեալ ատենն, ան ատենը ամէն մեղաց պատիժը մէկէն կու տայ, և որչափ երկայնամտութեամբ սպասեց անոր ապաշխարութեանը, այնչափ աւելի սաստիկ կըլլայ պատիժը. աս է սուրբ Գրիգորի ըսածը թէ որոնց որ երկար ատեն սպասեց, զանոնք խստիւ կը դատապարտէ։

Ուրեմն, ով եղբայր, դուն թէ որ կը տեսնես որ շատ անգամ զԱստուած սրդողցուցեր ես ու Աստուած դքեզ դժոխք չի խաւրեր, պիտի ըսես. ողորմութիւնք տեառն անսպառք են զի ոչ սպառեաց զմեզ։ Գոհանամ դքէն, տէր, որ զիս չի խաւրեցիր դժոխք, ինչպէս որ ես արժանի էի. գիտցիր որ քանի՜ քանի հոգիներ քան զմեզ անմեղ դատապարտուեր են։ Աս գիտնալով նայէ որ Աստուծոյ դէմ ըրած մեղացդ վճարումն ընես զղջմամբ և նոյնչափ բարեգործութեամբք։ Աստուծոյ քեզի ը-

1 Գաղ. Զ. 7։ 2 Սիր. Ե. 4։

ուած երկայնամտութիւնը քու սիրտդ պիտի շարժէ՝ չէ թէ աւելի իր կամացը դէմ ընելու, հապա աւելի պաշտելու զինքը և սիրելու, տեսնելով որ ուրիշներուն չըրած ողորմութիւնը քեզի է ըրեր։

### ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Յիսուս իմ խաչելեալ, փրկիչ իմ և Աստուած իմ, ահա քու մատնիչդ ոտքդ ընկած կամաչէ աչքերդ առջևն երևնալ. աս քանի՞ անգամ է որ ես զքեզ ծաղր ըրի, քանի՞ անգամ է որ խօսք տուի մէյմըն ալ զքեզ չիբարկացընելու։ Բայց իմ խոստմունքներս ամէնն ալ մէկ մէկ մատնութիւն եղան. երբոր առիթն եկաւ նէ՝ զքեզ մոռցայ, ու նորէն քեզի երես դարձուցի։ Շնորհակալ եմ քեզնէ՝ որ չես թողուր զիս աս ժամս դժոխքին մէջ գտնուելու, հապա ամուր կը բռնես զիս քու ոտքիդ առջևը, լոյս կու տաս ինծի, ու կը հրաւիրես զիս 'ի սէր քո։ Այո այո, ես ալ զքեզ սիրել կուզեմ, փրկիչ իմ և Աստուած իմ, և չեմ ուզեր մէյմըն ալ զքեզ անարգել։ Կը տեսնեմ որ ալ ինծի չես կըրնար համբերել։ Վայ զլխուս, թէ որ յետ այսչափ շնորհաց դառնամ դարձեալ զքեզ վշտացընելու։ Տէր, ես հաստատուն առաջադրութեամբ կուզեմ վարքս փոխել. և որչափ զքեզ վշտացուցի նէ, այնչափ զքեզ սիրել կուզեմ։ Իմ մխիթարանքս ան է որ անհուն բարութեանդ հետ է բանս։ Կը ցաւիմ 'ի վերայ այնչափ չարեաց՝ որ քեզի դէմ ըրած եմ, և քեզի կը նուիրեմ ասկէ ետև բոլոր իմ սէրս։ Ներէ ինծի վասն արդեանց սուրբ չարչարանաց քոց. մոռցիր իմ անօրէնութիւններս, և տուր ինծի որ հաւատարիմ ըլլամ առ քեզ մնացած կեանքիս մէջ։ Զքեզ կը սիրեմ մինակ ծայրագոյն բարի, և կը յուսամ յաւիտեան զքեզ սիրել, Աստուած իմ, սէր իմ, մէյմըն ալ զքեզ թողնել չեմ ուզեր։ Ով աստուածածին Մարիամ կոյս, զիս կապէ Յիսուս միածնիդ հետ, և շնորհք առ ինծի համար, որ մէյմըն ալ չի զատուիմ իր ոտքէն. յոյս իմ և ապաւէն իմ դու ես։

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Բայց ես դեռ երիտասարդ եմ, կըսես, Աստուած կը զիջանի երիտասարդներուն, տեսնելով գիս Աստուծոյ կու տամ։ Աս է դիւրին հնգերորդ խաբէութիւնը։ Երիտասարդ ես. բայց չես գիտեր որ Աստուած տարիք չի նայիր, հապա ամէն մէկին բրած մեղքին կը նայի։ Դեռ կարին ես. բայց որչափ մեղք բրած ունիս։ Շատ ծերեր կրնան ըլլալ որ քու բրած մեղքերուդ տասներին մէկը չեն բրեր։ Չես գիտեր՝ որ Աստուած թիւ և չափ է դրեր նորերու ամէն մէկին մեղացը. սուրբ գիրքը կըսէ թէ երկայնամիտ լինի Աստուած մինչև լցցեն ըղչափ մեղաց իւրեանց, և եկեսցեն հասցեն 'ի դատաստանս անճնարինս[1]։ Որչափ ատկից ետև չիներեր կը պատժէ, յանկարծական մահ կը խաւրէ դատապարտութեան վիճակի մէջ եղած ատենդ, կամ երեսէ կը ձգէ՝ որ մահէն աւելի մեծ պատիժ է։ Քակեցից զցանկ նորա, և եղիցի յափշտակութիւն[2]։ Թէ որ դուն գետին մը ունենաս, որ պատի մէջ առեր ես, տարիներով մըշակեր ես, շատ ծախք բրեր ես, ետքը տեսնես որ պըտուղ չի բերեր ինչ կընես, պատը կը քակես երեսի վրայ կը թողնես. արդ վախցիր որ Աստուած ալ քեզի առանկ չընէ. Թէ որ դուն մեղքէ ետ չես կենար, խղճմտանքիդ զարնելուն չես նայիր, ոչ յաւիտենականութիւնը կը հոգաս և ոչ հոգիդ, ամէն լոյս և փախ մէկդի կը դնես, անհաւատին ցանկը քակուած է, եկեր է ատենն որ Աստուած զքեզ երեսէն ձգէ։

Տեսնենք հիմա վերջի խաբէութիւնը. դուն կըսես թէ յիրաւի է որ ես աս մեղքովս Աստուծոյ շնորհքը կը կորսնցընեմ, դժոխքի արժանի կըլլամ, և կրնամ դատապարտուիլ. բայց կրնայ ըլլալ՝ որ ետքը խոստովանիմ, ու փրկուիմ։ Այո պարոն, կրնայ ըլլալ որ փըրկուիս. ես մարգարէ չեմ որ քեզի ըսեմ թէ աս մեղքէդ ետքը Աստուած քեզի մէյմըն ալ ողորմութիւն չըներ. բայց դուն ալ չես կրնար ուրանալ թէ Աստուած քեզի այդչափ շնորհքներ ընելէն ետև, հիմայ դարձեալ արգողցընես նէ զինքը, շատ դիւրին է քեզի եր-

1 Բ · Մակ · Զ · 14 ։ 2 Ես · Ե · 5 ։

թալ 'ի կորուստ ։ Սուրբ գիրքն ալ սանկ կըսէ թէ խստասրտին ճամբը նեղը գէշ է ։ Չարք վաղվաղակի սատակեսցին[1] . զոր ինչ սերմանէ մարդ , զնոյն և հըն-ձեսցէ[2] . կոչէի զձեզ և ոչ անսայիք , այսուհետև ես ծիծաղեցայց զկորստեամբ ձերով[3] . իմ է վրէժխնդրու-թիւն և ես հատուցից , ասէ տէր[4] ։ Կը տեսնե՞ս , ըստ սուրբ գրոց , խստասիրտներուն վերջը ո՛ւր կերթայ ։ Դուն ինծի կըսես թէ , այսու ամենայնիւ կրնայ ըլլալ որ ես փրկուիմ . և ես ալ կըսեմ թէ ատ ինչ խենթութիւն է , հոգւոյն յաւիտենական փրկութիւնը դնել մէկ կրնայ ըլլալու վրայ , ան ալ կրնայ ըլլալ մը , որ շատ դժար է ։ Ասիկայ անպիտի բա՛ն է որ ծանր վտանգի մէջ դրուի ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Սիրելի փրկիչ իմ , ես ոտքիդ առջևը տարածուելով կը գոհանամ զքէն , որ այսչափ մեղքերէս ետև զիս ե-րեսէ չի ձգեցիր ։ Քանիներ կան ինծմէ սակաւամեղ , որ ատ լոյսը չեն ունեցեր , զոր հիմա ինծի կու տաս ։ Կը տեսնեմ որ զիս մասնաւոր կերպով փրկել կուզես , ես ալ կուզեմ փրկուիլ քեզի հաճոյական բան մը ընե-լու համար . կուզեմ գալ երկինքը յաւիտեան երգել գո-հաբանել ատ ինծի ըրած ողորմութիւններդ ։ Կը յու-սամ որ հիմա արդէն թողութիւն տուեր ես ինծի . բայց թէ որ դեռ սևերես եմ քու առջևդ աղէկ զղջում ու ցաւ չունենալով ըրածներուս վրայ , հիմա կը զղջամ բոլոր սրտանց , կը ցաւիմ 'ի վերայ ամենայն չարեացս , ներէ ինծի քու գթութեամբդ , և միշտ սաստկացուր իմ ցաւս զքեզ վշտացընելուս համար , Աստուած իմ , այնչափ բարի և բարերար ։ Տուր ինծի ցաւ , տուր ին-ծի քու սէրդ , ես զքեզ կը սիրեմ ամէն բանէ աւել . բայց գիտեմ որ քիչ է իմ սէրս , կուզեմ շատ սիրել , քեզնէ կը խնդրեմ ատ սէրը , և քեզնէ կը յուսամ ։ Լսէ ինծի , Յիսուս փրկիչ իմ , որ խոստացար լսել զքեզ աղաչողին ։ Ով սուրբ աստուածածին կոյս Մա-րիամ , ամենէն կը լսեմ որ դուն անմխիթար չես թող-ներ քեզի ապաւինողները , ով միակ յոյս իմ և ապա-ւէն Յիսուսէս ետև , առ քեզ կը դիմեմ , 'ի քեզ կա-պաւինիմ , զիս միածնիդ յանձնէ , ու փրկէ զիս ։

1 Սղ . ԼԶ . 9 ։
2 Գաղ . Զ . 8 ։
3 Առակ . Ա . 24 . 26 ։
4 Բ . Օր . 32 . 35 ։

ըստածին ակէս՝ երբոր մեղքը կեցեր է սրդողած դատաւո-րը, վերջը սոսկալի վճիռը, աջ դին ամբաստանող մեղ-քերը, ձախ դին դեւք՝ որ 'ի տանջանս կը քաշեն, ներ-սէն խղճմտանքը երող մրկող, ուր պիտի փախչի մե-ղաւորը, սաստիկ ամէն կողմանէ պաշարուած և բռ-նուած։

ԻՂՁ ՈՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Յիսուս իմ, միշտ զքեզ Յիսուս կուզեմ կանչել․ քու անունդ զիս կը մխիթարէ, զիս կը քաջալերէ, յի-շեցնելով որ իմ փրկիչս ես, որ զիս փրկելու համար կեանքդ տուիր։ Ահա այդքան անկեալ կը խոստովանիմ, որ այն-չափ դժոխքներու արժանի եմ, որչափ որ մահուչափ մեղքով զքեզ վշտացուցեր եմ։ Ես արժանի չեմ թո-ղութեան, բայց դուն մեռար ինծի թողութիւն տալու համար։ Կաղաչեմ, փրկիչ իմ Յիսուս, շուտով թո-ղութիւն տուր ինծի, քանի որ զիս դատելու չես եկած․ ան ատեն չեմ կրնար ես քու գթութիւնդ խնդրել, հի-մա կրնամ աղաչել և կը յուսամ։ Ան ատեն քու վէր-քերդ զիս կը վախցընեն, իսկ հիմա վստահութիւն ին-ծի կուտան։ Սիրելիդ իմ փրկիչ, ես ամէն չարեացմէ աւելի կը զղջամ զքեզ վշտացընելուս համար։ Յանձն կառնեմ ամէն տեսակ տանջանք և կորուստ՝ քան թէ քու շնորհքը կորսընցընել․ զքեզ կը սիրեմ 'ի բոլոր սըր-տէ, գթա իմ վրաս։ Ողորմեա ինձ Աստուած ըստ մե-ծի ողորմութեան քում [1]։ Ով Մարիամ մայր ողոր-մութեան, ով փաստաբան մեղաւորաց, առ ինծի հա-մար մեծ ցաւ մը 'ի վերայ մեղացս, թողութիւն և յա-րատեւութիւն 'ի սէրն Աստուծոյ։ Զքեզ կը սիրեմ, երկ-նաւոր իմ թագուհիս, և 'ի քեզ եմ ապաւինեալ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Մտածէ ամբաստանութիւնք և քննութիւնք, որ պի-տի ըլլան․ ատեան նստաւ, և դպրութիւնք բացան [2]։ Կրկին են աս դպրութիւնքը կամ գրեանքը, աւետա-րան և խիղճ մտաց․ աւետարանէն կը կարդացուի ինչ որ մեղաւորը պարտական էր ընել․ խղճմտանքէն

1 Սղ․ Ծ․ 1։ 2 Դան․ Է․ 10։

Այսպէս կըսէ տէր . եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ քըննեցից զԵրուսաղէմ ճրագաւ[1] . որ Մենտոցցային բաժին պէս , ճրագը տանը ամէն խորշերը պիտի քննէ . ինչպէս կըսէ Ալափիտէ ալ՝ թէ ճրագներով հասկըցիր որ Աստուած ան ատեն մեզաւորին առջևը կը դնէ սըրբոց օրինակը և ան ամենայն լաւաւորութիւնները և ազդարարութիւններն որ կենացը մէջ տուեր է իրեն . միանգամայն բոլոր ան տարիներն որ իրեն պարգեր է բարի գործք ընելու համար , այնպէս որ սրբոյն Անսելմոսի ըսածին պէս՝ ամէն ակնթարթի համար ալ քեզնէ հաշիւ պիտի ուզէ ։ Մարգարէն ալ կը վկայէ . սրբեսցէ զորդիս Ղեւեայ , և հալեսցէ զնոսա իբրև զոսկի և իբրև զարծաթ[2] . ինչպէս ոսկին կը մաքրուի աղտէն , ասանկ ալ պիտի քննուին զատուին բարի գործքերը , խոստովանանքը , հաղորդութիւնները և այլն . և յորժամ ժամ առից , ես ուղիղ դատեցայց[3] , ուղղութիւններն ալ աղէկութիւններն ալ ։ Ուստի կըսէ սուրբն Պետրոս՝ եթէ արդարն հազիւ կեցցէ , իսկ ամպարիշտն և մեղաւորն ո՞ւր գտանիցի[4] . և սուրբն Գրիգոր ալ կըսէ , թէ որ ամենայն դատարկ բանի՝ համար պիտի տրուի , հապա ի՞նչ համար պիտի տրուի անշնորհք և պիղծ բանից ։ Մասնաւորապէս դայթակղութիւն տըւողներուն համար կըսէ Աստուած , որոնք հոգւոց կորըստեան պատճառ եղած են . պատահեցից նոցա իբրև արջ քաղցեալ կամ որդեկոտոր[5] . և ըստ իւրաքանչիւր գործոց հատուցումը կը յայտնէ դատաւորն ըսելով , տուք նմա 'ի պտղոյ շրթանց և ձեռաց նորա ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ Յիսուս իմ, թէ որ հիմա ուզենայիր իմ գործոցս համեմատ հատուցումն ինծի ընել , դժոխք միայն կըլլար իմ բաժինս ։ Ո՜հ Աստուած իմ, քանի անգամ ես ինծմէ գրեցի իմ դատապարտութեանս վճիռը հոն երթալու ։ Գոհանամ զքէն վասն երկայնամտութեանդ, որ ինչուան հիմա ինծի համբերեցիր ։ Ա՜խ տէր , թէ որ հիմա քու առեանդ եկելու ըլլայի նէ , ի՞նչ համար պի-

1 Սոփ . Ա . 12 ։
2 Մաղ . Գ . 3 ։
3 Սղ . ՀԴ . 3 ։
4 Ա . Պետ ։ Դ . 18 ։
5 Ովս . ԺԳ . 8 ։

տի տայի իմ կենացս։ Մի՛ մտաներ՝ 'ի դատաստան ընդ
ծառայի քում։ Կաղաչեմ, քիչ մըն ալ համբերէ, շու-
տով հիմա մի՛ զատեր զիս. Թէ որ հիմա զիս զատէիր
նէ, հիմա ես ինչ պիտի ընէի։ Կաղաչեմ ազատէ, ո-
րովհետև ինչուան հիմա այսչափ ինծի ողորմեցար նէ,
աս ողորմութիւնս ալ ըրէ ինծի. տուր սատանիկ ցաւ
մեղքերուս վրայ։ Կը զղջամ ես, ով ծայրագոյն բարի,
իմ այսչափ անզգամութեանցս վրայ. զքեզ կը սիրեմ
ամէն բանէն վեր։ Հայր երկնաւոր, Թող ինծի վասն
սիրոյ միածնիդ, և իր արդիւնքովը տուր ինծի սուրբ
յարատեւութիւն։ Յիսուս փրկիչ իմ, ամէն բան քեզ-
մէ կը յուսամ սուրբ արիւնովդ։ Ամենասրբուհի Մա-
րիամ, քեզի եմ ապաւինած. հասիր ով բարեխօս իմ
և փաստաբան, դարձո առ իս զամենագութ աչաց քոց
զհայեցուածս. իմ ողորմելութիւնս նայէ, և ողորմէ
ինծի քու գթութեամբդ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Վերջապէս հոգին յաւիտենական փրկութիւն գըտ-
նելու համար՝ պէտք է որ դատաստանի ելլէ, նայի Թէ
Քրիստոսի կենացը համեմատ անցուցած է իր կեանքն
ալ. զորս յառաջն ճանաչէր՝ յառաջագոյն և հրաւի-
րեաց կերպարանակից լինել պատկերի որդւոյն Ա-
տուծոյ [1]։ Ասոր համար էր որ կը դողար երանելին
Յոբ, ըսելով Թէ ինչ պիտի ընեմ, երբոր Աստուած
ելլէ դատաստան ընելու, և հարցընէ ինծի նէ, ինչ
պատասխան պիտի տամ իրեն։ Փիլիպպոս երկրորդ
Սպանիոյ Թագաւորը սուտ մը լսելով իր պաշտօնէից
մէկէն, յանդիմանեց զանիկայ ըսելով՝ ասանկ զիս կը
խաբես. ան ողորմելին ալ տուն դարձաւ նէ, ցաւէն
մեռաւ։ Հապա ինչ պիտի ընէ, ինչ պատասխան պի-
տի տայ Քրիստոսի մեղաւորը դատաստանին օրը։ Այն-
պէս պիտի ընէ, ինչ որ ըրաւ առանց աղէկ հագուստի
հարսնիքը եկողը, երբոր յանդիմանուեցաւ. և նա պա-
պանձեցաւ [2]. իր մեղքը իր բերանը կը կապէ. ամենայն
անօրէն խցցէ զբերան իւր [3]։ Սրբոյն Բարսղի ըսածին
պէս, դժոխքի կրակէն աւելի սաստիկ է այն ամօթը։

1 Հռ. Ը. 29։ 2 Մր. ԺԲ. 12։ 3 Ղկ. ԻԳ. 42։

Ամէն բանէն առջը կարգը կու գայ որ դատաւորը ասանկ տայ իր վճիռը. երթալք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենական[1]: Ո՛վ թէ որչափ սարսափելի պիտի ըլլայ աս որոշումը Կարգուսեանին ըսածին պէս. սուրբն Անսելմոս ալ կըսէ թէ ով որ չի դողար ասանկ որոշումնքէն, քուն եղած չէ, հապա մեռած է: Եւսեբիոս ալ կըսէ թէ այնչափ սարսափ կը տիրէ չարերուն վրայ որ երբոր տեսնեն դատաւորն որ ասանկ վճիռ կու տայ, թէ որ անմահ չըլլային նէ՝ նորէն կը մեռնէին: Ան ատեն. կըսէ սուրբն Թովմաս վիլլանովացին, աղաչանաց տեղիք չիկայ քեզի, բարեխօս մը չիկայ, ոչ բարեկամ, ոչ հայր, հապա որո՞ւն պիտի դիմեն ան տեղը: Սրբոյն Բարսղի ըսածին պէս, ո՞վ քեզ պիտի խալըսէ, մի՞թէ ան Աստուածը զոր դուն անարգեցիր. սուրբերո՞ւն արդեօք պիտի դիմեն, ու Մարիա՞մ արդեօք: Չըլլար. վասն զի ան ատեն երկնքէն սրբոց դասքը ալ չեն բարեխօսեր, և լուսինն որ է Մարիամ, ոչ տացէ զլոյս իւր[2]:

Աղէկ կըսէ սուրբն Թովմաս վիլլանովացին. ա՜խ ինչպէս հանգիստ սրտով աս բաները կը զուրցենք ու կը լսենք, որպէս թէ մեզի չի մօտենար աս վիճակդ, կամ որպէս թէ բնաւ գալիք չունենար ան օրը. և կը յարէ թէ հապա որպիսի յիմարութիւն է անհոգ կենալ այսչափ վտանգի մէջ: Չըսես, կըսէ սուրբն Օգոստինոս, իրաւ արդեօք Աստուած զիս պիտի դատապարտէ՞: Երբայեցիք ալ չէին կրնար հաւատալ, կըսէ նոյն սուրբը, թէ Աստուած զիրենք պիտի ցրուէ փճացընէ: Այնչափ դատապարտեալք չէին հաւատար՝ թէ իրենք դժոխք պիտի երթան, բայց առջը պատիժնին հասաւ. եհաս վախճան... հասեալ է զըմբաղ... այժմ 'ի մօտոյ հեղից զբարկութիւն իմ 'ի վերայ քո[3]: Ասանկ կը հասնի Աստուծոյ դատաստանը. և կը տեսնես որ ստոյգ էր Աստուծոյ սպառնալիքը: Սուրբն Եղիփոս կըսէ թէ մեր ձեռքն է ինչ դատաստան ունենալնիս: Ուրեմն ինչ պիտի ընենք: Յառաջ քան զմահ զարդարութիւն գործեա[4], կըսէ Սիրաք: Սուրբն Պօնաւենդուրա ալ կըսէ թէ խելացի վաճառականնե-

1 Մտ. ԻԵ. 41:
2 Մտ. ԻԴ. 29:
3 Եզեկ. Է. 6. 8:
4 Սիր. ԺԴ. 17:

րը վտանգի մը չգալու համար անդադար իրենց հաշիւը կը նային կը շտկեն. և սուրբն Օգոստինոս կըսէ թէ դատաստանէն առաջ դատաւորը հաշտեցընել կըլլայ, իսկ դատաստանի նստինէ չըլլար: Սուրբն սրբոյն Բեռնարդոսի ըսածը ըսենք առ տէր. կուզեմ որ քեզի ներկայանամ՝ արդէն դատուած, չէ թէ որպէս դատելի, այսինքն է՝ տէր, կուզեմ որ աս կենացս մէջ զիս դատես ու պատժես, քանի որ ողորմութեան ատենն է, և կրնաս ինծի թողութիւն տալ. վասն զի մահուընէ ետև արդարութեան ատենն է:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած իմ, թէ որ հիմա չհաշտեցընեմ նէ զքեզ ինծի հետ, ան ատեն ա՛լ հաշտուիլ չըլլար: Բայց ինչպէս զքեզ հաշտ ընեմ յետ այնչափ անարգելուս զքո բարեկամութիւնդ չնչին և անբանական հաճոյից սիրոյն համար: Ես քու այնչափ բարեացդ փոխարէն ապերախտութիւն հատուցի, և ինչ արժանաւոր հատուցումն կրնայ ընել ողորմելի արարած մը այն անարգանացն որ ըրեր է իր արարչին. ով տէր իմ, շնորհակալ եմ քեզնէ, որ քու ողորմութիւնդ տուեր է ինծի հնարք մը զքեզ հաշտեցընելու և քեզի հատուցումն ընելու: Քեզի կը նուիրեմ զարիւն և զմահ միածնի որդւոյ քո Յիսուսի, և այնպէս կը տեսնեմ արդէն հաշտուած, և եւելօք հատուցուած զքու արդարութիւնդ: Գիտեմ որ ատոր հետ հարկաւոր է իմ զղջումս ալ. և ահա Աստուած իմ, ես յամենայն սրտէ կը զղջամ կը ցաւիմ քեզի ըրած անիրաւութեանցս վրայ: Հապա հիմա զիս դատէ, փրկիչ իմ. ես կը զարշիմ յամենայն տհաճութեանց որ քեզի տուած եմ, և յամենայն չարեացս: Կը սիրեմ զքեզ բոլոր սրտիւ 'ի վեր քան զամենայն, և կառաջադրեմ միշտ և հանապազ սիրել, և աւելի մեռնիլ քան զքեզ վշտացընել: Դու տէր, խօսք տուիր ներել դարձողին. ուստի հիմակուընէ զիս դատէ, և արձակէ զիս 'ի մեղաց իմոց: Սիրով կընդունիմ քու դրած ապաշխարանքդ. միայն թէ նորէն զիս ընդունիս քու շնորհքիդ մէջ, և պահես զիս 'ի նոյն մինչև 'ի մահ, իմ յոյսս աս է: Քեզնէ ալ շնորհակալ եմ, Մարիամ մայր իմ, այնչափ ողորմութեանցդ համար, որ ինծի համար խնդրեցիր ու առիր. հապա շարունակէ, կաղաչեմ, հովանի ինծի ըլլալ ինչուան ետքը:

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԵ·

## ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԴԱՏԱՍՏԱՆ

*Աստուած կը ճանչցուի իրեն դատաստաններն ընելու ատենը [1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Մէկ որ աղէկ նայինք նէ, հիմակուց հիմա աշխարքիս վրայ մէկը չիկայ որ այնչափ անարգեալ ըլլայ, ինչպէս Քրիստոս Յիսուս տէրն մեր։ Գեղացիի մը պատիւը կը նայուի, Աստուծոյ պատիւը բանի տեղ չի սեպուիր. վասն զի վախ կայ թէ գեղացին սրդողի նէ կրնայ չարիք մը ընել. իսկ Աստուծոյ դէմ ամէն անիրաւութիւն կըլլայ համարձակ, որպէս թէ Աստուած չի կարենար մարդուս վրէժխնդիր ըլլալ երբոր ուզէ նէ. ոյք ասեն, զի՞ արասցէ մեզ տէր, կամ զի՞նչ ածցէ 'ի վերայ մեր ամենակալն [2]։ Ուստի աոր համար օր սահմանեց Աստուած ընդհանրական դատաստանի. որ սուրբ գրոց մէջ կըսուի օր տեառն յորում կու գայ Յիսուս Քրիստոս, որ ճանչցուի թէ որպիսի մեծ տէր է ինքը. ճանաչի տէր յառնել զդատաստանս իւր։ Անոր համար ան օրն ալ չըսուիր օր ողորմութեան և թողութեան, հապա օր բարկութեան օրն այն, օր նեղութեան և վտանգի, օր թշուառութեան և ապականութեան [3]։ Եւ յիրաւի, վասն զի ան ատեն իրաւամբք պիտի պահանջէ Աստուած իր փառքը և պատիւը, զոր մեղաւորք ուզեցին բառնալ աս երկրիս վրայ։ Տեսնանք հիմա թէ ի՞նչպէս պիտի ըլլայ աս մեծ և ահաւոր օրը։

Դատաւորին գալէն առաջ, հուր առաջի նորա գընասցէ [4]։ Կրակ մը պիտի իջնայ երկնքէն, որ բոլոր

1 Ճանաչի տէր յառնել զդատաստանս իւր· Սղ. Թ. 17։
2 Յոբ. ԻԲ, 17։
3 Սոփ. Ա. 15։
4 Սղ. ՂԶ. 3։

երկիրս այրէ լափէ, և ինչ որ երկրիս վրայ կայ նէ . բնութիւնք հրով կիզեալ լուծցին . և երկիր և որ 'ի նմա գործք գտանիցին[1] ։ Անանկ որ տներ, պալատներ, ժամեր, գեղեր, քաղաքներ, տէրութիւններ պիտի ըլլան մոխրակոյտ մը . սա կրակովը պիտի մաքրուի աս աշխարքիս տունն որ ոտնակոխ եղեր էր մեղքը ։ Ահա աս վերջն է որ պիտի ունենան ամէն հաստատութիւնք փառաւորութիւնք և փափկութիւնք աշխարքիս ։ Մարդկանց մեռնելէն ետև՝ մեծ փող մը կը հնչուի և ամէնքը կելեն կը կայնին . քանզի փող հարկանի և մեռեալք յարիցեն[2]. սուրբն Հերոնիմոս կըսէր թէ քանի որ գատաստանին օրը կը յիշեմ կը դողամ, միշտ կարծեմ թէ փողին ձայնը անկանս կը հնչէ թէ արիք մեռեալք եկայք 'ի դատաստան ։

Աս փողը հնչուածին պէս, կելլեն գեղեցիկ հոգիք երանելեաց կը միանան իրենց մարմնոյն հետ, որով Աստուծոյ ծառայեցին աս կեանքիս մէջ . և թշուառ հոգիք դատապարտելոց կելլեն դժոխքէն, կու գան կը միանան իրենց նզովեալ մարմնոյն հետ, որով անարգեցին զԱստուած ։

Ան ինչ տարբերութիւն պիտի ըլլայ երանելոց և դատապարտելոց մարմնոց մէջ . երանեալքը կերևնան գեղեցիկ, պայծառ, փայլուն աւելի քան զարև, յայնժամ արդարքն ծագեսցին իբրև զարեգակն[3] ։ Երանի անոր որ աս կեանքիս մէջ զինքը մահացուցեր է՝ իր մարմինը հրաժարեցընելով արգելած հեշտութիւններէն, և աղէկ սանձելու համար անոնցմէ ետ կեցեր է նոյն իսկ օրինաւոր զգայական հաճոյիցմէ ու զսպեր չարչրկեր է ինչպէս սուրբերն ըրին ։ Ո՛րչափ զոհ և ուրախ կըլլայ ան ատենը, ինչպէս սուրբն Պետրոս Ալգանդարացին . որ մեռնելէն ետև երևնալով սրբուհւոյն Թերեզայի ըսաւ . երանի ան ապաշխարութեան ու ճգնութեանը, որ ինծի այսչափ փառաց պատճառ եղաւ ։ Աստ ներհակ մեղաւորաց մարմինները պիտի երևնան տգեղ, սև, զարշահոտ . ինչ սրտի խշխշուք պիտի ըլլայ մեղաւորին ան ատեն միանալը իր մարմնոյն հետ . ա՜յ նզոված մարմին, պիտի ըսէ իրեն հոգին, քու հաճոյքդ ընելու համար ես կորսուեցայ . մարմինն ալ պիտի

1 Բ . Պէտ . Գ . 10 ։ 2 Ա . Կոր . ԺԵ . 52 ։ 3 Մտ . ԺԳ . 43 ։

ըսէ. ա՜հ անիծած հոգի, դուն որ բանականութիւն ձեռքդ ունէիր, ինչո՞ւ թող տուիր ինծի աս հեշտութիւնները, որով զքեզ ալ՝ զիս ալ կորուսիր յաւիտեանս յաւիտենից։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ.

Ով փրկիչ իմ Յիսուս, որ մէկ օր մը իմ դատաւորս պիտի ըլլաս, կաղաչեմ հիմակուընէ թողութիւն ինծի տուր՝ քանի որ աս օրը չէ հասեր. մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն[1]։ Հիմա որ իմ հայրս ես, հօր պէս ընդունէ քու զաւակդ 'ի քո շնորհս, որ զղջմամբ քու ոտքդ ընկած է։ Թող ինծի, հայր իմ, որ զքեզ անարգեցի, մէկդի թողուցի, արժանի չէիր որ աս կերպով քեզի հետ վարուէի, ըրածիս վրայ կը զղջամ կը ցաւիմ յամենայն սրտէ, թող ինծի. մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն. զիս երեսէ մի՛ ձգեր և մի՛ մերժեր ինչպէս որ արժանի եմ։ Յիշէ ան արիւնը, որ ինծի համար թափեցիր, և գթա ինծի։ Ով Յիսուս իմ, ես քեզնէ 'ի զատ դատաւոր չեմ ուզեր։ Սրբոյն Թովմայի վիլլանովացւոյն ըսածը կը զուրցեմ, յօժար սրտով անոր դատաստանը կուզեմ որ ինծի համար մեռաւ, և որպէս զի ես չդատապարտուիմ թող տուաւ որ զինքը 'ի մահ դատապարտեն։ Սուրբն Պօղոս ալ արդէն ըսեր էր, ո՞ է որ դատապարտ առնիցէ, Քրիստոս Յիսուս որ մեռաւն[2]։ Հայր իմ սիրելի. ասկէ ետև ես քու ոտքէդ զատուիլ չեմ ուզեր, մի՛ յիշեր իմ ըրած անզգամութիւններս, և տուր ինծի սէր սաստիկ առ քո բարութիւնդ, իմ փափաքս է՝ որ զքեզ աւելի սիրեմ, որչափ որ վշտացուցի, բայց թէ որ դուն ինծի չօգնես նէ, ես չեմ կրնար զքեզ սիրել։ Օգնէ ինծի, փրկիչ իմ, և տուր ինծի ապրիլ սիրով 'ի սէր քո, որպէս զի ան ահեղ օրը զիս գտնեմ քու սիրելեացդ մէջ։ Ով Մարիամ, թագուհի իմ և փաստաբան իմ, հիմակուընէ օգնէ ինծի, վասն զի թէ որ զիս կորսընցընեմ նէ, ան օրը չես կրնար ինծի օգնել։ Դուն ամենուն բարեխօսն ես, բարեխօս եղիր և վասն իմ, որ կը պարծիմ քու ջերմեռանդ ծառայդ ըլլալ, և բոլորովին 'ի քեզ եմ ապաւինեալ։

1 Սղ. ԻԶ. 9։ 2 Հռ. Ը. 34։

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Մարդիկ յարութիւն առածին պէս՝ հրեշտակներուն խօսքովը ամէնքը կելլեն կերթան 'ի ձորն Յովսափաթու կամ դատաստանի, զի անդ նստայց դատել զամենայն ազգս շուրջանակի... ձայնք հնչեցին 'ի ձորն դատաստանի, զի մերձ է օր տեառն 'ի ձորն դատաստանի[1]։ Հոն որ ամէնքը ժողվուին նէ, ելցեն հրեշտակք, և մեկնեսցեն զչարս 'ի միջոյ արդարոց[2]։ Արդարները աջ կողմը պիտի կենան, և անօրէնք ձախ կողմը պիտի քշուին. ի՜նչ ցաւ կըլլայ անոր՝ որ դուրս քշուի քրիստոնէից ընկերութենէն կամ յեկեղեցւոյ. հապա ի՜նչ ցաւ կըլլայ ան ատեն երբոր տեսնէ զինքը սրբոց միաբանութենէն քշուած։ Ոսկեբերան կըսէ՝ թէ և ուրիշ պատիժ ալ չունենային դատապարտեալք, աս ամօթը միայն հերիք էր անոնց դժոխքի տեղ։ Զաւակը հօրմէն պիտի բաժնուի, էրիկը կնկանէն, տէրը ծառայէն, մին առցի և միւսն թողցի[3]։ Ի՞նչ կըսես, ով եղբայր, ո՞ր կողմը քեզի ալ պիտի վիճակի ան օրը. կուզե՞ս աջակողմեան դին գտնուիլ, ուրեմն թող ան ճամբան որ ձախակողմը կը տանի։

Երկրիս վրայ հիմա բարեբախտ կը սեպուին թագաւորք, իշխանք և մեծատունք, ու արհամարհեալ են սուրբերը՝ որ աղքատ և խոնարհ կապրին։ Ով դուք հաւատացեալք և աստուածասէրք, մի՛ լինիք սրտակոտոր՝ զձեզ տեսնելով իբրև անարգ և տառապեալ երկրիս վրայ. տրտմութիւն ձեր յուրախութիւն եղիցի։ Ան ատեն դուք պիտի ըսուիք իսկապէս բարեբախտ, ու փառք և պատիւ պիտի ըլլայ ձեզի Յիսուսի մեծամեծաց կարգին մէջը գտնուիլը։ Գիտե՞ս թէ ի՜նչ փառք պիտի ունենայ ան ատեն սուրբն Պետրոս ալգանդարացին, որ երբեմն թուք ու մուր առաւ իբրև ապըստամբ մը, սուրբ Յովհաննէս Աստուծոյ՝ որ խենթ մը սեպուեցաւ, սուրբ Պետրոս կեղեստինեան՝ որ պապական աթոռէն հրաժարելով բանտի մը մէջ մեռաւ։ Ի՞նչ փառաւորութիւն պիտի ունենան ան ատեն բոլոր մարտիրոսները, որ դահիճներուն ձեռքէն այնչափ

1 Յ-Հ. Գ. 12. 14։ 2 Մտ. ԺԳ. 49։ 3 Մտ. ԻԴ. 40։

բան քաշեցին: Հապա ինչպէս խաւար խայտառակ պիտի ըլլան Հերովդէս, Պիղատոս, Ներոն, և անհամար մեծամեծք երկրիս որ պիտի դատապարտուին: Ով աշխարհասէրք, գձեզ տեսնելու է 'ի ձորն դատաստանի. հոն տեղը անտարակոյս ձեր կարծիքը պիտի փոխէք, հոն տեղը լաք պիտի ձեր խենթութեանը վրայ: Ա՜յ խեղճ ողորմելիներ, որ քիչ մը ատեն բան մը երենալու համար աշխարքիս խաղի տեսարանին մէջ ետքը հոն տեղ դատապարտելոց հետ պիտի ըլլաք դատաստանին ողբերգական տեսարանին մէջ: Արդարք պիտի աջակողմը տեղաւորուին, և փառօք պիտի վերանան օդուն մէջ ամպերուն վրայ՝ ընդ առաջ ելլելու Քրիստոսի, որ յերկնից պիտի գայ. յափշտակեսցին նոքօք հանդերձ 'ի վերայ ամպոց ընդ առաջ տեառն յօդս[1]: Իսկ դատապարտեալները մորթուելու այծերու պէս՝ ձախակողմը կը քշուին՝ սպասելով դատաւորին, որ հանդիսապէս դատապարտութեան վճիռ պիտի տայ իր ամէն թշնամեացը:

Մէյմըն ալ նայիս որ երկինք կը բացուի, հրեշտակները կու գան ներկայ ըլլալ դատաստանին, իրենց հետ բերելով Քրիստոսի չարչարանաց գործիքները, մանաւանդ սուրբ խաչը երեւելի պիտի ըլլայ. յայնժամ երեւեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի[2]. Ալափիտէին ըսածին պէս՝ պիտի կոծին աղաղակաւ և լացով անոնք, որ անհոգ եղան Քրիստոսի սիրած բաներուն. ան ատեն ոսկեբերանին ըսածին պէս Յիսուսին բեւեռքը քեզի դէմ պիտի բողոքեն, վէրքերը քեզի դէմ ամբաստանեն պիտի: Իբրև աթոռակիցք Քրիստոսի իրեն քով աթոռներով պիտի նստին առաքեալներն ալ, և բոլոր իրենց հետեւողները որ փրկչին հետ զամէնքն ալ դատեն պիտի, ինչպէս որ կըսէ Իմաստութիւնը. պայծառասցին... դատեսցին զազգս[3]: Կուգայ հոս ներկայ ըլլալու և Թագուհին հրեշտակաց, տիրամայրն Մարիամ: Ետքը կու գայ յաւիտենից դատաւորն՝ իր փառաց և լուսոյ աթոռովն. և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ընդ ամպս երկնից, զօրութեամբ և փառօք բազ-

1 Ա. Թես. Դ. 16:
2 Մտ. ԻԴ. 30:
3 Իմաստ. Գ. 7. 8:

մեզ [1]. յերկնաց նորա խորտակեսցին ամպք [2]: Յիսուսի տեսքը մեծ մխիթարանք է ընտրելոց. իսկ դատապարտելոց, սրբոյն Հերոնիմոսի ըսածին պէս, ալ լաւ էր դժոխքին տանջանքը՝ քան թէ տեսնել անտանելի ներկայութեան տեսուն: Սրբուհին Թերեզա կըսէր. ով Յիսուս իմ, ամէն տանջանք ինծի տուր, միայն թէ ըզքեզ ինծի դէմ սրդողած չտեսնեմ ան օրը: Սուրբն Բարսեղ ալ կըսէ. աս ամօթը քան զամէն պատիժ վեր է: Ան ատեն չարք պիտի ըսեն լեռներուն թէ ինկերուք 'ի վերայ մեր, և ծածկեցէք զմեզ յերեսաց նստելոյն 'ի վերայ աթոռոյ, և 'ի բարկութենէ գառին [3]:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով սիրելի փրկիչ իմ, ով գառն Աստուծոյ, որ երբեմն աշխարհէք եկար՝ ոչ 'ի պատժել, այլ 'ի թողուլ զմեղս, կաղաչեմ հիմակուընէ թող ինծի՝ քանի որ չէ եկած ան օրը՝ յորում իմ դատաւորս պիտի ըլլաս: Դուն որ այնչափ երկայնմտութեամբ համբերեցիր, թէ որ կորսուելու ըլլամ նէ, ան ատեն աս գառինդ տեսքը պիտի ըլլայ ինծի դժոխքին դժոխքը: Ուստի կրկին կրկին կաղաչեմ, թող ինծի, և քու ամենողորմ ձեռքովդ հանէ զիս ան խորխորատէն՝ ուր զիս ընկած կը տեսնեմ իմ մեղքերովս: Ես կը զղջամ, ով ծայրագոյն բարի, զքեզ վշտացընելուս համար այնչափ անգամ: Կը սիրեմ զքեզ, դատաւոր իմ, որ այդչափ զիս սիրեցիր: Հայեա վասն արդեանց քու մահուանդ աս մեծ շնորհքն ինծի ըրէ, որ մեղաւոր ըլլալէս սուրբ մը դառնամ. դու խօսք տուիր թէ կարդասցես առ իս, և լուայց քեզ [4]: Չեմ ուզեր աշխրքիս բարիքը, քու շնորհքդ կուզեմ, քու սէրդ և ոչ ուրիշ բան մը: Ա՛հ Յիսուս իմ, ան սիրոյն համար ըլլայ, որով մեռար ինծի համար խաչին վրայ, լսէ աղաչանացս: Ով սիրելի դատաւորդ իմ, ես մահապարտ եմ. բայց այնպիսի մահապարտ որ ալ ինքը զինքը չի սիրեր. զքեզ կը սիրեմ: Գթա ինծի, մայր իմ Մարիամ, շուտով ինծի օգնութեան հասիր, հիմա է ատենը՝ որ կրնաս ինծի օգնել: Դուն զիս երեսէ չի ձգեցիր, երբոր ես զքեզ ալ զԱս-

1 Մտ. ԻԴ. 30:
2 Յովէլ. Բ. 6:
3 Յայտ. Զ. 16:
4 Երեմ. ԼԳ. 3.

մեծ և սոսկալի խորխորատ մը, ուր կիյնան պիտի միասին դիւանք և դատապարտեալք, ետեւներնէն ալ, ո՛հ, պիտի գոցուին իրենց վրայ. ան դռներն՝ որ մէյմըն ալ բացուելիք չունին յաւիտեանս յաւիտենից։ Ա՜յ անիծեալ մեղք, որ ողբալի կատարած պիտի հասցընես մէկ օր մը այնչափ խեղճ հոգիները։ Ո՛վ ողորմելի հոգիք, որոնց պահուած է սաստիկ տրտմութեան վախճան։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՛հ փրկիչ իմ և Աստուած իմ, որպիսի՜ վճիռ պիտի ըլլայ արդեօք ան ատեն ան օրը ինծի ալ։ Թէ որ հիմա, Յիսուս իմ, համար ուզես իմ կենացս վրայ՝ ուրիշ բան չունիմ ըսելիք, բայց եթէ դժոխքի արժանի եմ։ Իրաւ որ, սիրելի փրկիչ իմ, ես բիւր դժոխքի եմ արժանի. բայց գիտցիր՝ որ ես զքեզ կը սիրեմ, աւելի քան զիս կը սիրեմ զքեզ, և մեղքերուս վրայ այնչափ ցաւ ունիմ, որ զոհ կըլլայի ամէն չար պատիժ քաշել, միայն թէ զքեզ վշտացուցած չըլլայի։ Գիտեմ, փրկիչ իմ, որ դուն կը դատապարտես ամէն խստասիրտ մեղաւորները, բայց ոչ զանոնք որ կը զղջան, և զքեզ սիրել կուզեն։ Ահա ես քու ոտքդ եմ ընկեր զղջմամբ, տուր ինծի ըսել՝ թէ թողեր ես իմ մեղքերս. արդէն ըսեր ես մարգարէին բերնով թէ դարձարուք առ իս և ես դարձայց առ ձեզ[1]։ Ես մէկդի կը թողնեմ ամէն բան, և կը հրաժարիմ յամենայն հաճոյից և յընչից աշխարհիս, առ քեզ կը դառնամ, և քեզի կապուինիմ, սիրելի փրկիչդ իմ, ընդունէ իմ սիրտս, և ասկէ ետև վառէ զիս 'ի սուրբ սէր քո, և անանկ բորբոքէ որ մէյմըն ալ չուզեմ քեզնէ բաժնուիլ։ Յիսուս փրկիչ իմ, փրկէ զիս, և իմ փրկութիւնս աս ըլլայ՝ յաւիտեան զքեզ սիրել, և յաւիտեան օրհնել քու ողորմութիւններդ. զողորմութիւնս քո յաւիտեան օրհնեցից[2]։ Մարիամ, յոյս իմ, ապաւէն իմ, մայր իմ, օգնէ ինծի, և առ ինծի համար սուրբ յարատեւութիւն։ Ով որ քեզի դիմեր է, չէ կորսուած. կը յանձնեմ, վրաս գութ ունեցիր։

1 Զաք. Ա. Գ։ 2 Սղ. ՁԸ. Բ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԶ·

## ԴԺՈԽՔԻՆ ՏԱՆՋԱՆՔԸ

*Եւ երթիցեն նոքա 'ի տանջանս յաւիտենականս .*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Մեղաւորը երբոր մեղք կը գործէ, կրկին չարիք կընէ. զԱստուած կը թողնէ զծայրագոյն բարին, կը դառնայ յարարածս. երկու չարիս գործեաց ժողովուրդ իմ, զիս թողին զաղբիւրս ջրոյ կենդանւոյ, և փորեցին իւրեանց գուբս ծակոտս, որք ոչ կարացին ունել ջուր[1]: Արդ որովհետև մեղաւորը յարարածս կը դառնայ՝ Աստուծոյ կամացը դէմ ընելով՝ իրաւամբ դժոխքին մէջ չարաչար պիտի տանջուի ան արարածներէն, կրակէն և սատանաներէն, և աս է պատիժ զգայութեան: Բայց որովհետև իր մեծ յանցանքը և բուն մեղքը Աստուծոյ դէմ երես դարձընելն է, ուստի իր գլխաւոր պատիժը որ է խակութիւն դժոխոց, պիտի ըլլայ պատիժ վնասուն, զՅիսուս և զԱստուած կորսընցընել:

Նայինք առաջ զգայութեան պատիժը: Ի հաւատոց է, թէ դժոխք կայ: Ի՞նչ բան է աս դժոխքը. տեղի տանջանաց, ինչպէս որ կը կոչէր դժոխքի մէջ մեծատունը թէ յայս տեղի տանջանաց. անանկ տեղի տանջանաց, ուր բովանդակ զգայութիւնք և կարողութիւնք դատապարտելոյն ունենան պիտի իրենց յատուկ տանջանքը, և որչափ որ մէկը մէկ զգայութեամբ մը վիրաւորեր է զԱստուած, այնչափ աւելի ան զգայութիւնը պիտի տանջուի. զի որովք մեղանչէ ոք, նոքիմբք և տանջի[2]. որչափ փառաւորեաց զինքն և խայտաց, այնչափ հատուցէք սմա սուգ[3]: Աչքը պիտի տանջուի խաւարաւ. յերկիր խաւարին և մթին, յեր-

1 Երեմ. Բ. 13:
2 Իմաստ. ԺԱ. 17:
3 Յայտ. ԺԸ. 7:

կէր աղջամղջին յաւիտենականն[1], ուր ոչ գոյ լոյս։ Որչափ ցաւալի բան է շանթը, թէ խեղճ մարդ մը գոցուեր է մէկ մութ փոսի մը մէջ իր բոլոր կեանքը՝ քառասուն յիսուն տարի։ Դժոխքը անանկ խորխորատ մըն է, որ ամէն կողմանէ գոցուած է, ուր արևուն ճառագայթը կամ ուրիշ լոյս մը չի մտներ, մինչև յաւիտեան լոյս մի՛ տեսցէ[2]։ Կրակը որ աշխարքիս մէջ լոյս կու տայ, 'ի դժոխս պիտի ըլլայ բոլորովին մութ. ձայն տեառն հատանէ զբոց հրոյ[3], զոր աստանկ կը մեկնէ սուրբն Բարսեղ. զատէ պիտի տէրն լոյսը կրակէն. անանկ որ այրէ և չլուսաւորէ. ինչպէս մեծն Ալբերտ ալ կարճ խօսքով կըսէ, թէ զատէ պիտի տաքութենէն փայլունութիւնը։ Ան ծուխն ու մուխն որ ելլէ այն կրակէն, կըլլայ ան վիճն մրրկի՝ ըստ սըրբոյն Հերոնիմոսի, զոր կը յիշէ սուրբ գիրքն ալ. մէգք խաւարինալք 'ի մրրկէ, որոց աղջամուղջք խաւարին յաւիտենական պահեսցին կան[4]։ Սուրբն Թովմաս կըսէ թէ դատապարտելոց այնչափ լոյս պահուած է, որչափ որ բաւական է տեսնելու տանջող բաները, տեսնեն պիտի ան մէջուն լուսոյ մէջ ուրիշ մեղաւորաց և դևուց զարշելի տեսիլը որ ատոնցմէ կերպարանք կառնեն աւելի սարսափի ձգելու համար։

Ցանկի պիտի հոտոտելիքն ալ։ Ի՞նչ տանջանք կըլլար մէկի մը փակուիլ խցի մը մէջ մէկ հոտած դիակի մը հետ, վիրաւորք նոցա դիտապատ անկցին, և ելցէ հոտ նոցա[5]։ Դատապարտեալը պիտի կենայ միլիոնաւոր դատապարտելոց մէջ, որ կենդանի են պատժուելու համար. բայց մէկմէկ հոտած դի են իրենց գարշահոտութեամբը։ Սուրբն Բոնաւենտուրայի բանին պէս՝ թէ որ դատապարտուած մարմին մը դժոխքէն դուրս նէ, իր գէշ հոտովը կրնար բոլոր մարդիկը մեռցընել։ Բայց դուն նայէ խենթերէն ոմանք ինչ կըսեն. թէ որ դժոխք երթամ մինակ չեմ։ Ահ՛ ողորմելիներ, որչափ շատ որ ըլլան դժոխք եղողները, այնչափ աւելի պատիժ կըլլան ուրիշներուն։ Սուրբն Թովմայի ըսածին պէս, հոն տեղ թշուառներուն ընկերու-

1 Յոբ. Ժ. 21։
2 Սղ. ԽԸ. 20։
3 Սղ. ԻԸ. 7։
4 Բ. ՊԵՏ. Ա. 13։
5 Ես. ԼԴ. 3։

թիւնը չի պակսեցըներ զթշուառութիւնը, հապա կա-ւելցընէ. ուստի աւելի կը տանջեն մէկզմէկ իրենց փոքրշահութեամբը, աղաղակովը և անձկութեամբը. փասն զի դժոխքի մէջ իրարու վրայ դիզուած են, ինչպէս ոչխարները խոր ձմեռ տանն. որպէս խաշն 'ի դըժոխս մատնեցին[1]: Մանաւանդ թէ ճմլած խաղողներու պէս Աստուծոյ բարկութեան մամլոյն տակը կը ճզմուին. նա կոխեաց զհնձան գինւոյ ցասման բարկութեան Աստուծոյ ամենակալի[2]: Անկից ալ կու գայ պատժոյ անշարժութիւնը. մեծութեամբ բազկի քո քարասցին[3]: Անանկ որ՝ ինչպէս կիյնայ դատապարտեալ մը դատաստանին օրը 'ի դժոխս, անանկ պիտի մնայ՝ առանց կրնալու բնաւ դիրքը փոխել, առանց կրնալու մէկ ոտքն ալ փոխել կամ մէկ ձեռքը, քանի որ Աստուած՝ Աստուած է:

Անկանեն ալ պիտի տանջուի գոռում գոչումէն աղաղակէն և անդադար լացէն այն խեղճ յուսահատ դատապարտելոց: Դիւանքն ալ մէկ դիէն անդադար աղաղակ կը հանեն, ահ նորա յականջս նոցա[4]: Ի՞նչ նեղութիւն է հիւանդի մը՝ որ քունն ըլլալ կուզէ, ու անդադար կը լսէ շան հաջելը կամ տղու պոռալը: Խեղճ ողորմելի դատապարտեալք, պիտի լսեն անդադար յաւիտեանս յաւիտենից այն ահակալի ձայները և աղաղակը դահիճ դիւաց: Տանջուի պիտի կոկորդն ալ անօթութենէ, շան քաղց պիտի քաշէ դատապարտեալը. սովեսցին որպէս շունք[5], բայց պատառ մըն ալ հաց պիտի չունենան: Ծարաւ ալ պիտի ունենայ սոսկալի՝ որ հերիք պիտի չըլլայ ծովուն ջուրը, բայց մէկ կաթիլ մըն ալ ջուր պիտի չի գտնէ, ինչպէս կը փնտրուէր պապակեալ մեծատունը, բայց չի գտաւ ինչուան հիմա, և յաւիտեան ալ պիտի չի կարենայ գտնել:

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ տէր իմ, ահա քու առջևդ ոտքդ ընկած կեցեր է այն մեղաւորը՝ որ քանի անգամ չի ճանչցեց քու շնորհքդ ալ, քու սպառնալիքդ ալ տանջանաց: Վայ էր իմ

1 Սղ. ԽԸ. 15:
2 Յայտ. ԺԹ. 15:
3 Ելք. ԺԵ. 16:
4 Յոբ. ԺԵ. 21:
5 Սղ. ԾԸ. 15:

գլխուս եթէ դու Յիսուս փրկիչ իմ վրաս չգթայիր, շատոնց ես ան հոտած հնոցին մէջն էի, ուր կը տոչորէին ինծի պէս շատերը. ա՜խ փրկիչ իմ, ի՞նչպէս աս բանս մտածելով չեմ վառուիր քու սիրովդ, ի՞նչպէս կրնամ ասկից ետև համարձակիլ զքեզ վշտացընել: Ա՜խ չըլլայ չըլլայ մէյմըն ալ որ կրկնեմ իմ մեղքերս. ալ աղէկ է ինծի հազար անգամ մեռնիլ, Յիսուս փըրկիչ իմ, որովհետև սկսար ինծի ողորմիլ նէ, 'ի գլուխ հանէ ողորմութիւնդ: Դու զիս հանեցիր 'ի գարշահոտութենէ, այնչափ սիրով զիս կանչեցիր 'ի սիրել ըզքեզ. հապա տուր ինծի մնացած կեանքս բոլոր քեզի համար ծախել: Ո՛րչափ արդեօք կը փափաքին դատապարտեալք ունենալ օր մը, ժամ մը աս ժամանակէս՝ որ ինծի կը պարգևես, իսկ ես ի՞նչ կընեմ, և ի՞նչ պիտի ընեմ, նորէն ատենս անցընե՞մ պիտի քեզի անհաճոյ բաներով: Քաւ լիցի, մի՛ թողուր Յիսուս իմ, մի՛ թողուր արգեամբք սուրբ արեանդ, որ ինչուան հիմա դժոխքէն զիս խալըսեց: Զքեզ կը սիրեմ, ով ծայրագոյն բարի, և սիրելուս համար կը ցաւիմ զքեզ վշտացընելուս վրայ. չեմ ուզեր մէյմըն ալ վշտացընել, այլ սիրել զքեզ միշտ և յաւիտեան: Տիրամայր իմ Մարիամ, աղաչէ զՅիսուս վասն իմ, և առ ինծի համար պարգև յարատևութեան և սուրբ սիրոյ իւրոյ:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Այլ աւելի տանջանք զգայութեան դատապարտելոց՝ դժոխոց կրակն է, որ գշօշափականը կը կսկըծցընէ. Սիրաքայ ըսածին պէս՝ ամբարշտին մարմնոյն վրէժն է հուր և որդն: Ուստի մասնաւորապէս զայն կը յիշէ տէրն դատաստանին օրը թէ երթայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենական[1]: Երկրիս վրայ ալ կրակէն մեծ տանջանք չիկայ, բայց այնչափ տարբերութիւն կայ՝ մեր և դժոխքի կրակին մէջ, որ կըսէր սուրբն Օգոստինոս, թէ անոր առջևը՝ աս մերը նկարք մըն է կրակի, և սուրբն Վինչենցիոս Ֆերարեան կըսէ թէ անոր առջևը մեր կրակը ցուրտ է: Պատճառն է, վասն զի կրակը մեր օգտին համար եղած է, իսկ դժոխքի

1 Մտ. ԻԵ. 41:

կրակը մասնաւոր ստեղծեր է Աստուած տանջելու համար։ Աս է Ցերտուղիանոսին ըսածն ալ թէ կարծ այլազգ է հուրն՝ որ 'ի պէտս մարդկան, և այն որ գործի է արդարութեան Աստուծոյ։ Ուստի ըսաւ Աստուած մարգարէին բերնով թէ հուր վառեալ է 'ի սրտմտութենէ իմմէ, 'ի վերայ ձեր բորբոքեսցի[1]։ Երբոր կը լսուի թէ երթայք 'ի հուրն, հասկըցիր թէ կրակին մէջ. անանկ որ դատապարտեալը պիտի պաշարուի կրակով՝ ինչպէս փայտ մը հնոցի մէջ, տակն ալ վրան ալ չորս դին ալ կրակէ ծով պիտի ըլլայ։ Շօշափածն ալ, տեսածն ալ, շունչ առած տուածն ալ, սոսկ կրակ է, կրակին մէջ պիտի կենայ. ինչպէս ձուկը ջրի մէջ։ Բայց աս կրակը չէ թէ միայն դատապարտելոց չորս դին պիտի պատէ, հապա անոր աղիքին մէջն ալ պիտի մտնէ չարչարելու համար, բոլոր մարմինը կրակ պիտի դառնայ, ուստի տոչորէ պիտի բոլոր ներսի դին, դրսի դին, գլխուն ըղեղն ալ, երակներուն արիւնն ալ, ամէն մեղաւոր մէկմէկ փուռ պիտի ըլլայ. դիցես զնոսա որպէս հնոց 'ի հուր։

Մարդ կայ որ տաք արևու մէջ չի կրնար քալել, կրակ վառած խցի մէջ չի կրնար կենալ, կայծ մը ճրագէն ընկնայ նէ չի կրնար համբերել. ետքը ամենևին չի վախնար ան լափող կրակէն։ Ինչպէս կատաղի գազան մը կը լափէ այծու պզտիկ ուլը, անանկ դժոխքին կրակը կը լափէ զմեղաւորը, բայց առանց մեռցընելու։ Սուրբն Պետրոս դամիանեան յանդիմանելով զըղջախոհը կըսէ, չարունակէ քու անառակութիւններդ, չարունակէ, օր կու գայ, մանաւանդ գիշեր կու գայ՝ որ քու անառակութիւնդ ձիւթ և նաւթ պիտի դառնան, որով սնանի պիտի մշտնջենաւոր հուրը աղիքներուդ մէջ։ Սուրբն Հերոնիմոս ալ կսեւեւցընէ թէ կրակը իր հետը կը բերէ ան ամէն տանջանքներն ու ցաւերը որ երկրիս վրայ կը քաշեն. կողացաւ, գլխացաւ, լերդացաւ. մէկ կրակով, կըսէ, ամէն պատիժ կը գտնեն դժոխքի մէջ մեղաւորները։ Նոյն կրակին մէջ կըլլայ նաև ցրտի նեղութիւն, ան ալ հասկընալու է որ բոլոր աշխրքի նեղութիւնները առուեր մըն են դժոխքի տանջանքին առջև, կըսէ ոսկեբերան։

1 Երեմ. ժե. 14։

կարողութիւնքն ալ պիտի ունենան իրենց մասնաւոր տանջանքը. դատապարտեալը յիշողութեամբ պիտի տանջուի յիշելով ան ժամանակին որ ունէր աս կեանքին մէջ փրկուելու համար, իսկ ինքը բանեցուց իրեն դատապարտութեան համար, և Աստուծմէ տրուած շնորհքներն որ չուզեց բանեցընել։ Միտքը, մտածելով թէ մեծ բարիք կորսնցուց, զարքայութիւնն ալ և զԱստուած, ու ճար ճարակ չիկայ նորէն գտնելու։ Կամքը, տեսնելով որ մէյմըն ալ իր ուզածը իրեն չի տրուիր. ցանկութիւն մեղաւորաց կորիցէ[1]։ Խեղճ ողորմելին յաւիտեան պիտի չունենայ՝ ինչ բանի որ կը բաղձայ, հապա պիտի ունենայ միայն ինչ բանէ որ կը խորշի նէ. այսինքն յաւիտենից տանջանքները։ Կուզէ խալըսիլ և հանգիստ գտնել, բայց յաւիտեան խաղաղութիւն պիտի չի գտնէ։

ԻՂՁ ԵՒ ԳԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ Յիսուս իմ, քու պատուական արիւնդ և մահդ իմ յոյսս են։ Դու մեռար զիս յաւիտենից մահուանէն փրկելու համար։ Ա՜խ տէր, և ո՞վ աւելի մասնակից եղաւ սուրբ չարչարանացդ արդեանցը՝ քան թէ ոչ ես խեղճ ողորմելիս, որ շատ անգամ դժոխքի արժանի եղեր եմ։ Ո՜հ, մի թողուր որ ալ ապերախտ ապրիմ քու այնչափ շնորհացդ՝ որ ինծի ըրած ես։ Դուն զիս խալըսեցիր դժոխքին կրակէն, վասն զի չես ուզեր որ ես տանջուիմ տանջանաց կրակին մէջ, այլ վառուիմ քաղցր կրակովդ քու սիրոյդ։ Օգնէ ինծի, որ կարենամ կատարել քու կամքդ։ Թէ որ հիմա դժոխքի մէջ ըլլայի նէ, չէի կրնար ալ զքեզ սիրել. արդ հիմա որ կրնամ սիրել նէ, ես ալ կուզեմ սիրել զքեզ։ Կը սիրեմ զքեզ, անբաւ բարի. կը սիրեմ զքեզ, փրկիչ իմ, որ այնչափ զիս սիրեցիր։ Ի՞նչպէս կրցայ ես այնչափ ատեն ապրիլ զքեզ մոռնալով. շնորհակալ եմ որ դուն զիս չմոռցար. Թէ որ զիս մոռցած ըլլայիր նէ, հիմա դժոխքին մէջ կըլլայի, և չէի ունենար ցաւ մեղացս վրայ։ Աս ցաւս որ կըզգամ սրտիս մէջ զքեզ վշտացընելուս համար, աս փափաքս որ ունիմ զքեզ շատ սիրելու, քու շնորհքիդ պարգևն է՝ որ դեռ հետս է։

1 Սղ. ՃԺԱ. 10։

Գոհանամ զքէն, Յիսուս փրկիչ իմ, յուսամ որ զիս բոլոր քեզի կու տամ մնացած կեանքիս մէջ. ամէն բան մէկդի կը թողնեմ. կուզեմ զքեզ միայն աղաչել, պաշտել և հաճել. տուր ինծի յիշել միշտ դժոխքը, որուն արժանի եղայ, և ինծի ըրած շնորհքներդ. և մի թողներ որ մէյմըն ալ քեզի երես դարձընեմ, և ես զիս դատապարտեմ յայն վիհ տանջանաց: Ով սուրբ աստուածածին, աղաչէ վասն իմ մեղաւորիս, քու բարեխօսութիւնդ զիս դժոխքէն խալըսեց, անով զիս իմ մեղքէս ալ խալըսէ, տիրամայր, որ կրնայ զիս նորէն 'ի դժոխս տանել»

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Բայց աս ամենայն պատիժները բան մը չեն համեմատութեամբ պատժոյ վնասուն: Դժոխքին իսկութիւնը՝ մութը չէ, ժահահոտութիւնը չէ, աղաղակը չէ, կրակը չէ. բուն դժոխքն է զԱստուած կորսընցընելը: Ուստի կըսէ սուրբն Բրունոն թէ թող էւելնան տանջանք տանջանքի վրայ, միայն թէ Աստուծմէ զրկուիլ չըլլայ: Սուրբ ոսկեբերանն ալ կըսէ. թէ և բիւր գեհեան ալ ըսես, չես կրնար հաւասար ընել աս ցաւոյս. և սուրբն Օգոստինոս կըսէ, թէ որ դատապարտեալք վայելէին 'ի տեսութեանն Աստուծոյ, պատիժ մը չէին զգար, և դժոխքը իրենց արքայութիւն կը դառնար: Աս պատժոյս վրայ քիչ մը բան իմանալու համար օրինակ աս ըլլայ՝ թէ մէկն որ կորսընցընէ հարիւր դահեկան արժող գոհարեղէն մը, բաւական մեծ ցաւ կզգայ. հապա թէ որ երկու հարիւր արժէ նէ՝ կրկին ցաւ կունենայ. թէ որ չորս հարիւր արժէ, աւելի ցաւ կըլլայ. մէկ խօսքով՝ որչափ շատնայ կորսուած բանին արժէքը, այնչափ շատ կըլլայ ցաւը. արդ դատապարտեալը 'որպիսի՞ բարիք է կորուսեր. զանհուն բարին, որ է Աստուած. ատոր համար կըսէ սուրբն Թովմաս թէ պատիժ կամ տանջանք դատապարտելոց է անսահման, վասն զի է կորուստ անսահման բարւոյն:

Աս պատիժս է միայն, ուսկից հիմա կը վախնան սուրբերը: Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս՝ աս բանս տանջանք է սիրողաց, և ոչ եթէ արհամարհողաց: Սուրբն Իգնատիոս Լոյոլեան կըսէր թէ տէր, ամէն

պատաժոց կը համբերեմ, բայց ածոր չէ, քանզի զուրկ մնալու : Բայց աս տանջանքը բնաւ չեն հասկընար մեղաւոր մարդիկ, որոնց փոյթը չէ ամիսներով տարիներով առանց Աստուծոյ ապրիլ, վասն զի թշուառականները խաւարի մէջ կապրին, մեռնելէն ետև պիտի իմանան թէ ինչ մեծ բարիք կորուսին : Ուստի կըսէ սուրբն Անտոնինոս թէ ընդ անջատիլ հոգւոյն 'ի մարմնոյն՝ իմանայ զԱստուած զծայրագոյն բարին, և զըստեղծանիլ իւր առ այն. ուստի նոյն վայրկենին կը դիմէ երթալ գրկել ու գրկուիլ իր ծայրագոյն բարւոյն հետ. բայց թէ որ 'ի մեղս է նէ՝ կը վռընտուի Աստուծմէ : Թէ որ շունը նապաստակ մը տեսնէ, և ուրիշը զինքը շղթայով բռնէ կապէ, ինչ սաստիկ ուժ կու տայ շունը շղթան կոտրելու, և երթալու որսը բռնելու : Հոգին մարմնէն զատուածին պէս՝ բնականաբար կը ձգուի առ Աստուած, բայց մեղքը զինքը Աստուծմէ կը բաժնէ, և հեռու կը ձգէ 'ի դժոխս. մեղք ձեր որոշեն 'ի մէջ ձեր և 'ի մէջ Աստուծոյ[1] : Ուստի բոլոր դժոխքը կայացած է ան առջի խօսքին վրայ առ դատապարտեալս, երթայք յինէն անիծեալք. ասոր համար կըսէ ոսկեբերան թէ բիւր գեհեան ալ դնէ մէկը նէ, անանկ բան մը չըսեր, ինչպէս է վռընտուիլ Քրիստոսէ իբրև ատելի : Երբոր Դաւիթ վռընտեց զԱբիսողոմ որ մէյմըն ալ իր առջևը չերևնայ, այնչափ մեծ պատիժ եղաւ աս Աբիսողոմայ որ կըսէր թէ կամ թող տայ ինծի որ գամ իր երեսը տեսնեմ, և կամ թէ թող զիս մեռցընէ : Փիլիպպոս երկրորդ երբոր տեսաւ մեծերէն մէկը՝ որ առանց յարգութեան ժամը կեցած էր, ըսաւ անոր թէ մէյմըն ալ աչքիս մի երևնար. աս պատիժը այնչափ մեծ սեպեց ան իշխանը, որ տուն եկածին պէս ցաւէն մեռաւ : Հապա ինչ պիտի ըլլայ երբոր Աստուած մեղաւորի մը մահուան ատեն ըսէ թէ գնա կորիր մէյմըն ալ զքեզ չտեսնեմ. դարձուցից զերեսս իմ 'ի դոցանէ, և գտցեն զնոսա չարիք բազումք և նեղութիւնք : Ան ատեն պիտի լսուի ան բանն ալ 'ի բերանոյ Քրիստոսի. դուք չէք ժողովուրդ իմ, և ես ոչ ինչ եմ ձեր[2] :

Ի՞նչ ցաւ է որդւոյն իր հօրը մեռնելը, հարսի մը

1 Ես. ԾԹ. 2 :

2 Ովս. Ա. 9 :

փեսին մահը. մէկը կըսէ՝ ոհ հայր իմ մէյմըն ալ ըզքեզ պիտի չտեսնեմ. մէկալն ալ, ախ փեսաս որ ալ զքեզ պիտի չիտեսնեմ։ Ա՜խ թէ լսէինք մէկ դատապարտելոյ մը լացը, ու հարցընէինք թէ ինչու կուլաս այդչափ. ան ալ աս միայն պիտի ըսէր, կուլամ կողբամ, վասն զի զԱստուած կորուսի, ալ մէյմըն ալ զինքը պիտի չիտեսնեմ։ Գոնէ կարենար խեղճ ողորմելին դժոխքի մէջ զԱստուած սիրել, ու համակերպել զինքը անոր կամաց։ Բայց չէ. վասն զի թէ որ աս կարենար ընել, նէ, դժոխքը դժոխք չէր ըլլար։ Չի կրնար թշուառականը համակերպիլ Աստուծոյ կամացը, վասն զի թշնամի եղած է Աստուծոյ կամքին. չի կրնար սիրել իր ստեղծողը, հապա կատէ, և յաւիտեան պիտի ատէ. և աս է իր իսկական դժոխքը, գիտնալ թէ Աստուած է ծայրագոյն բարի, և միանգամայն հարկաւորիլ ատել զինքը, զոր կը ճանչնայ արժանի անբաւ սիրոյ։ Սրբուհին Կատարինէ գենուացի տեսնելով մէկ դև մը հարցուց թէ դուն ով ես. ան ալ ըսաւ. թէ ես եմ ան անզգամը որ զըրկուած եմ 'ի սիրոյն Աստուծոյ։ Դատապարտեալը պիտի ատէ զԱստուած, և պիտի անիծէ անկից առած բարիքն ալ, ստեղծումն ալ և փրկագործութիւնն ալ, մանաւանդ ապաշխարութեան խորհուրդը, և աւելի սուրբ հաղորդութիւնը. ատէ պիտի հրեշտակները և սուրբերը, մանաւանդ իր պահապան հրեշտակը, և պաշտպան սուրբերը, ևս առաւել զսուրբ Աստուածամայրը, բայց գլխաւորաբար անիծէ և հայհոյէ պիտի զամենասուրբ երրորդութիւնը, և մանաւանդ զորդին Աստուծոյ, որ մեռաւ իրեն փրկութեանը համար, նըմանապէս անոր վէրքերը, արիւնը, չարչարանքը և մահը։

### ԻՂՁՔ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ա՜խ Աստուած իմ, դուն ես իմ ծայրագոյն բարիս և անհուն բարիս, և ես այնչափ անգամ իմ կամօքս զքեզ կորուսեր եմ։ Գիտէի ալ որ իմ մեղքովս քու կամացդ կը դպչէի, քու շնորհքդ կը կորսընցընէի, և այսու ամենայնիւ ըրի։ Ա՜խ, ով որդի Աստուծոյ, թէ որ չիտեսնէի զքեզ խաչի վրայ բևեռած ու մեռած ինծի համար, չէի համարձակեր խնդրել և յուսալ քեզ-

նէ թողութիւն։ Հայր երկնաւոր, իմ վրաս միայն, հապա նայէ աս քու սիրելի որդւոյդ վրայ, որ ինծի համար կը խնդրէ ներումն գթութենէդ. անոր լսէ և ինծի ներէ. Ես հիմա շատոնց դժոխքը պիտի ըլլայի առանց յուսոյ կարող ըլլալու մէյմըն ալ զքեզ սիրել, և նորէն ձեռք բերել կորուսած շնորհքս։ Եւ արդ Աստուած իմ, կը զղջամ ես քեզի ըրած անարգանացս վրայ, ամէն բանէն աւել, ետ կենալով քու բարեկամութենէդ, և ոտքի տակ առնելով քու սէրդ չնչին երկրիս հաճոյիցը պատճառաւ։ Երանի թէ մեռած ըլլայի բիւր անգամ։ Ի՛նչպէս կրցայ այսանկ կոյր ու խենթ ըլլալ. շնորհակալ եմ քեզնէ, տէր իմ, որ ինծի պատեհ տուիր ճար գտնելու իմ չարեացս, արդ որովհետև քու ողորմութեամբդ դժոխքէ զուրս եմ, և կրնամ սէր ունենալ, կը սիրեմ զքեզ անբաւ բարիդ, իմ կեանքս, իմ գանձս. սէր իմ տէր, և ամենայն ինչ։ Յիշեցուր, տէր, միշտ քու սէրդ զոր առ իս ցցուցիր, և զդժոխքը ուր ես պիտի ըլլայի, որպէս զի աս մտածութիւնը զիս վառէ միշտ ներգործութիւն սիրոյ ընելու, և միշտ քեզի ըսելու, կը սիրեմ զքեզ, և սիրելով կը սիրեմ։ Մարիամ կոյս, թագուհի իմ և մայր իմ, յոյս իմ և ապաւէն իմ, թէ որ դժոխքի մէջ ըլլայի նէ, զքեզ ալ չէի կրնար սիրել։ Կը սիրեմ զքեզ, մայր իմ, և քեզի կը վստահիմ ետ չկենալ մէյմըն ալ 'ի սիրելոյ զքեզ և զԱստուածն իմ, օգնէ ինծի և աղաչէ զՅիսուս վասն իմ։

—●●●●—

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԷ·

## ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԴԺՈԽՈՑ

*Ու անոնք յաւիտենական տանջանաց պիտի մտանուին*[1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

*Թէ որ դժոխքը յաւիտենական չըլլար, դժոխք չէր ըլլար: Քիչ ատեն դիմացող պատիժը պատիժ չէ: Հիւանդի մը վէրքը կը կտրեն, մէկալին քաղցկեղը կը տաղեն, ցաւը մեծ է, բայց որովհետեւ քիչ մը ետեւ կը վերջանայ, շատ տանջանք չէ: Հապա ինչ տանջանք կըլլար թէ որ ան կտրուածքը կամ այն տաղելը շարունակէր շաբաթ մը, կամ ամիս մը ամբողջ: Երբոր տանջանք մը շատ կերկըննայ, թեթեւ ալ ըլլայ, ինչպէս աչքի ցաւը, ակռայի ցաւը, անտանելի կըլլայ: Բայց ինչ կըսեմ ցաւ, խաղարկութիւն մըն ալ, կատակերգութիւն մըն ալ երաժշտութիւն մըն ալ թէ որ շատ երկըննայ կամ բոլոր օրն ըլլայ, ձանձրանալէն չէինք համբերէր: Հապա թէ ամիս մը կամ տարի մը դիմանալու ըլլա՞ր նէ: Իսկ դժոխքը ինչ պիտի ըլլայ. ուր նոյն խաղարկութիւնը միշտ չի տեսնուիր, կամ նոյն երաժշտութիւնը միշտ չի լսուիր. սոսկ մէկ աչքի կամ ակռայի ցաւ չէ, սոսկ մէկ կտրելու կամ տաղելու ցաւ չէ, հապա ամէն տանջանք եւ ամէն ցաւ հոն են: Եւ ո՞րչափ ատեն. յաւիտեանս յաւիտենից. եւ չարչարեսցին զտիւ եւ զգիշեր*[2]:

*Աս յաւիտենականութիւնս հաւատոյ բան է, չէ թէ կարծիք մըն է, կամ կասկած մըն է, այլ ճշմարտութիւն վկայեալ յԱստուծոյ յամենայն գիրս սուրբս. երթայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենական. եւ երթիցեն նոքա 'ի տանջանսն յաւիտենականս*[3]*. որք տայ-*

1 Եւ երթիցեն նոքա 'ի տանջանս յաւիտենականս: Մատթ. ԻԵ. 46:

2 Յայտ. Ի. 10:

3 Մտ. ԻԵ. 41 ... 46:

նէ թողութիւն։ Հայր երկնաւոր, իմ վրայ մի՛ նայիր, հապա նայէ սա քու սիրելի որդւոյդ վրայ, որ ինծի համար կը խնդրէ ներումն գթութենէդ. անոր լսէ և ինծի ներէ. ես հիմա շատոնց դժոխքը պիտի ըլլայի առանց յուսոյ կարող լինելոյ մէյմըն ալ զքեզ սիրել, և նորէն ձեռք բերել կորուսած շնորհքս։ Ու արդ Աստուած իմ, կը զղջամ ես քեզի ըրած անարգանացս վրայ, ամէն բանէն էւել, ետ կենալով քու բարեկամութենէդ, և ոտքի տակ առնելով քու սէրդ չնչին երկրիս հաճոյիցը պատճառաւ։ Երանի թէ մեռած ըլլայի բիւր անգամ։ Ի՜նչպէս կրցայ այսանկ կոյր ու խենթ ըլլալ. շնորհակալ եմ քեզնէ, տէր իմ, որ ինծի պատեհ տուիր ճար գտնելու իմ չարեացս, արդ որովհետև քու ողորմութեամբդ դժոխքէ դուրս եմ, և կրնամ սէր ունենալ, կը սիրեմ զքեզ անբաւ բարիդ, իմ կեանքս, իմ գանձս. սէր իմ տէր, և ամենայն ինչ։ Յիշեցուր, տէր, միշտ քու սէրդ զոր առ իս ցցուցիր, և զդժոխքը ուր ես պիտի ըլլայի, որպէս զի աս մտածութիւնը զիս վառէ միշտ ներգործութիւն սիրոյ ընելու, և միշտ քեզի ըսելու, կը սիրեմ զքեզ, և սիրելով կը սիրեմ։ Մարիամ կոյս, թագուհի իմ և մայր իմ, յոյս իմ և ապաւէն իմ, թէ որ դժոխքի մէջ ըլլայի նէ, զքեզ ալ չէի կրնար սիրել։ Կը սիրեմ զքեզ, մայր իմ, և քեզի կը վստահիմ ետ չկենալ մէյմըն ալ 'ի սիրելոյ զքեզ և զԱստուածն իմ, օգնէ ինծի և աղաչէ զՅիսուս վասն իմ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԷ․

## ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԴԺՈԽՈՑ

*Որ ամենք յաւիտենական տանջանաց պիտի մատնուին*[1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

*Թէ որ դժոխքը յաւիտենական չըլլար, դժոխք չէր ըլլար։ Քիչ ատեն դիմացող պատիժը պատիժ չէ։ Հիւանդի մը վէրքը կը կտրեն, մէկայլին քաղցկեղը կը տաղեն, ցաւը մեծ է, բայց որովհետեւ քիչ մը ետեւ կը վերջանայ, շատ տանջանք չէ։ Հապա ինչ տանջանք կըլլար թէ որ ան կտրուածքը կամ այն տաղելը շաբունակէր շաբաթ մը, կամ ամիս մը ամբողջ։ Երբոր տանջանք մը շատ կերկըննայ, թեթեւ ալ ըլլայ, ինչպէս աչքի ցաւը, ակռայի ցաւը, անտանելի կըլլայ։ Բայց ինչ կըսեմ ցաւ, խաղարկութիւն մըն ալ, կատակերգութիւն մըն ալ երաժշտութիւն մըն ալ թէ որ շատ երկըննայ կամ բոլոր օրն ըլլայ, ձանձրանալէն չէինք համբերէր։ Հապա թէ ամիս մը կամ տարի մը դիմանալու ըլլա՞ր նէ։ Իսկ դժոխքը ինչ պիտի ըլլայ․ ուր նոյն խաղարկութիւնը միշտ չի տեսնուիր, կամ նոյն երաժշտութիւնը միշտ չի լսուիր․ ոչ մէկ աչքի կամ ակռայի ցաւ չէ, ոչ մէկ կտրելու կամ տաղելու ցաւ չէ, հապա ամէն տանջանք և ամէն ցաւ հոն են։ Եւ ո՞րչափ ատեն․ յաւիտեանս յաւիտենից․ և չարչարեսցին զտիւ և զգիշեր*[2]։

*Այս յաւիտենականութիւնս հաւատոյ բան է, չէ թէ կարծիք մըն է, կամ կասկած մըն է, այլ ճշմարտութիւն վկայեալ յԱստուծոյ յամենայն գիրս սուրբս․ երթայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենական․ և երթիցեն նոքա 'ի տանջանսն յաւիտենականս*[3]*․ որք տայ-*

1 Եւ երթիցեն նոքա 'ի տանջանս յաւիտենականս։ Մատթ․ ԻԵ․ 46։
2 Յայտ․ Ի․ 10։
3 Մտ․ ԻԵ․ 41․․․ 46։

ցեն վրէժս 'ի սատակումն յաւիտենից[1]. ամենայն ինչ հրով յաղեսցի[2]: Ինչպէս որ աղը ամէն բան կը պահէ, ասանկ ալ դժոխքին կրակը դատապարտեալները տանջելու ատեն՝ միանգամայն աղին յատկութիւնն ալ ունի, պահելով անոնց կեանքը: Սուրբ Բեռնարդոսի ըսածին պէս, ան տեղի կրակը անանկ կը՝ տոչորէ որ միանգամայն միշտ ողջ պահէ:

Ուրեմն ինչ մեծ խենթութիւն է ան մարդուն ըրածը, որ մէկ օր մը զբօսանք ընելու համար՝ ուզենայ պարտաւորիլ գոցուած մնալ մէկ փոսի մը մէջ քսան երսուն տարի: Թէ որ դժոխքը հարիւր տարի դիմանար, ի՞նչ կըսեմ հարիւր, հապա երկու իրեք տարի միայն, և ոչ աւելի, տակաւին մեծ խենթութիւն էր՝ մէկ քանի վայրկենի չնչին հաճոյից համար, կրակի մէջ դատապարտուիլ երկու իրեք տարի: Բայց մեր բանը երսուն քառասուն տարիի վրայ չէ, հազար կամ հարիւր հազար տարուան համար չէ, հապա նոյն տանջանքը քաշելու վրայ է միշտ և յաւիտեան, անանկ որ ոչ վերջանալ կայ և ոչ թեթենալ բնաւ: Ուստի իրաւունք ունէին եղեր սուրբերը՝ երբոր աշխարքիս վրայ էին նէ, ու դեռ 'ի վտանգի դատապարտութեան, լալ ու դողալ: Երանելի հայրն Եսայի անապատն ալ կենալով պահօք և ճգնութեամբք, կու լար ու կըսէր, վայ ինծի ողորմելւոյս, որ դեռ գեհենին կրակէն ազատ չեմ:

ԻՂՁ ԵՒ ԳԱՂԱՑԱՆՔ

Ո՛հ Աստուած իմ, թէ որ զիս դժոխք խաւրած ըլլայիր, ինչպէս որ շատ անգամ արժանի եղայ ու ետքը ազատեցիր զիս քու գթութեամբդ, որչափ պարտական քեզի պիտի մնայի, և անկէց ետև ի՛նչ սուրբ կեանք կըսկսէի վարել: Արդ հիմա աւելի մեծ ողորմութեամբ զիս պահեցիր՝ որ հոն չիյնկնամ, ի՞նչ պիտի ընեմ, նորէն պիտի դառնա՞մ արդեօք զքեզ վշտացընելու, և քու բարկութիւնդ շարժելու, որ իրօք խաւրես զիս հոն տանջուելու ան ապստամբներուն բանտին մէջ, ուր շատ ինծմէ սակաւամեղք կը տոչորին: Ա՛խ փրկիչ իմ, ասանկ ըրի առաջուց ալ. փոխանակ բանեցընելու ան ատենն որ տուիր ինծի իմ մեղքերս լա-

1 Բ. Թէս. Ա. 9:
2 Մարկ. Թ. 48:

լու, ես աւելի զքեզ սրտողջընելու ծախեցի: Գոհանամ զանբաւ բարութենէդ, որ այսչափ ինծի երկայնամիտ եղար. թէ որ անսահման չըլլար քու համբերութիւնդ, ինչպէս կրնայիր ինծի համբերել: Ուստի գոհանամ զքէն ինչուան հիմա ինծի սպասելուդ համար. մեծապէս գոհանամ հիմա ալ ինծի լոյս տալուդ համար. որով կու տաս ինծի ճանչնալ իմ խենթութիւնս, և այնչափ անարգանքը՝ որ քեզ տուեր եմ իմ մեղքովս. ուստի կը զարշիմ անոնցմէ և կը զղջամ 'ի բոլոր սրտէ, թող ինծի վասն քո սուրբ չարչարանացդ, և ձեռք տուր ինծի քու շնորհքովդ, որ մէյմըն ալ զքեզ չվշտացընեմ. իրաւամբք հիմա պէտք է որ վախնամ, չըլլայ թէ զիս թողնես մէկ մահուչափ մեղաց մէջ ալ ինկնալ: Ա՜խ տէր, աչքիս առջև դիր ան իրաւցընէ վախնալու բանը, երբոր սատանան զիս փորձելու ըլլայ մէյմըն ալ զքեզ վշտացընելու: Աստուած իմ, զքեզ կը սիրեմ, չեմ ուզեր մէյմըն ալ ըզքեզ կորսընցընել, զիս փրկէ քու շնորհքովդ: Օգնէ ինծի, կոյսդ ամենասուրբ, տուր որ միշտ քեզի ապաւինիմ յամենայն փորձութիւնս իմ, որպէս զի չի կորսընցընեմ զԱստուածն իմ. Մարիամ մայր իմ, դու ես յոյս իմ:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Ով որ մէյմը գծոխք իյնայ նէ, յաւիտեան անկից ելլելիք չունի: Աս բանիս մտածութիւնը դողալ կու տար Դաւթի, ուստի կըսէր. մի ընկղմեսցեն զիս անդունդք խորոց, Ջրհոր մի կափուսցէ զբերան իւր 'ի վերայ իմ[1]: Դատապարտեալը ընկածին պէս ան տանջանաց խորխորատը՝ փոսին բերանը կը գոցուի, ալ չի բացուիր. գծոխքը մտնելու դուռ ունի, ելլելու դուռ չունի: Աս է Սեբերիանոսի ըսածն ալ թէ էջք ունի, ելք չունի: Ուստի սաանկ կը բացատրէ նոյն սաղմոսին խօսքը, մի թէ կափուսցէ զբերան իւր. վասն զի երբոր վար առնէ եկողները, վերէն կը գոցուի վարէն կը բացուի: Քանի որ մեղաւորը աս աշխարքիս վրայ կապրի նէ, կրնայ յոյս ունենալ ճար ընելու, բայց

1 Սղ. ԿԸ. 16:

մէյմը որ մեղքով մահէն բանտը, ամէն յոյս իրեն համար վերջացած է. յոյս ամբարշտի կորիցէ[1], կըսէ սուրբ գիրքը. Գոնէ մէկ սուտ յոյս մը կարենային ունենալ դատապարտեալք, որ քիչ մը մխիթարանք ըլլար յուսահատութեան դէմ. Վիրաւորեալ հիւանդ մը մահին ընկած՝ թէ և անյոյս ըլլայ բժիշկներէն, ինքը դեռ կը յուսայ թէ կարելի է որ ինծի դեղ մը գտնուի առողջանալու. ինչուան 'ի մահ բանտի դատապարտեալն ալ ինքը զինքը կը մխիթարէ յուսով մը թէ ով գիտէ կրնայ ըլլալ որ աս շղթաներէն խալըսիմ: Գոնէ, կըսեմ, ատանկ կարենար ըսելու դժոխքի դատապարտեալն ալ, թէ ով գիտէ գուցէ մէկ օր մը աս բանտէս ելլեմ: Չէ չէ, դժոխքի մէջ բնաւ յոյս չիկայ, ոչ իրաւ ոչ սուտ, հոն չըլլար ըսել՝ ով գիտէ, գուցէ: Յանդիմանեցից և կացուցից դայս առնենայն առաջի քո[2]. վասն զի խեղճ ադօրմելին միշտ աչքին առջևը կը տեսնէ գրած դատապարտութիւնը, թէ յաւիտեան պիտոր լայ անտանջանաց խորխորատին մէջ: Յարիցեն ոմանք 'ի կեանս յաւիտենականս, և ոմանք 'ի նախատինս և յամօթ յաւիտենական[3]. ուստի դատապարտեալը չէ թէ միայն ամէն վայրկեան կը տանջուի, հապա ամէն վայրկենի մէջ ալ կը քաշէ յաւիտենականութեան տանջանքը. ըսելով, ինչ որ հիմա կը քաշեմ նէ, յաւիտեան պիտի քաշեմ. Տերտուղիանոսին ըսածին պէս՝ յաւիտենականութեան ծանր բեռը կը քաշէ:

Ուրեմն աղաչենք զԱստուած սուրբ Օգոստինոսին հետ, աստ կիզեա, աստ սղոցեա, աստ մի խնայեր, զի յաւիտեան խնայեսցես: Աս կեանքիս պատիժները կանցնին կերթան. Նետք քո գնան 'ի ձայնէ որոտալոյ քո անուի[4]. բայց անդին կենաց պատիժները բնաւ անցնելիք չունին: Թէ որ հիմակուան որոտմունքէն կը վախնանք, վախնանք ան որոտմունքէն յաւիտենական դատապարտութեան, որ գոռալով կելլէ դատաւորին բերնէն անօրինաց դէմ, երթայք յինէն անիծեալք՝ 'ի հուրն յաւիտենական[5]. Ահա աս է վախնալու ձայն որոտալոյ անուին Աստուծոյ, վասն զի անիւը օրինակ է յա-

1 Առակ. ԺԱ. 7:
2 Սղ. ԽԹ. 21:
3 Դան. ԺԲ. 2:
4 Սղ. ՀԶ. 18. 19:
5 Մտ. ԻԵ. 41:

ւիտենականութեան, որուն շրջանը ծայր ու ծոթ չունի. Ես տէր մերկացի, կըսէ, զվաղակաւորն իմ ՚ի պատենից իւրոց, և անդրէն ոչ ևս դարձցի[1]։ Որչափ մեծ է դժոխքի պատիժը, այլ աւելի վախնալու բանը ան է որ մէյմըն ալ ետ դառնալիք չունի։

Գուցէ անհաւատին մէկը ըսէ թէ ատ ինչպէս դատաստան է, մէկ վայրկենի մեղքը յաւիտենական տանջանքով պատժել։ Ես ալ կըսեմ. հապա ինչպէս մեղաւորը կը համարձակի մէկ չնչին ու վայրկենական հաճոյից համար անարգել զանբաւ մեծվայելչութիւնն Աստուծոյ։ Սրբոյն Թովմայի ըսածին պէս, մարդկային դատաստաններին համեմատ ալ՝ մարդասպանութիւնը մէկ վայրկենի մէջ ըլլալուն համար՝ վայրկենական պատժով չի տանջուիր։ Մէկ մահուչափ մեղքին մէկ դժոխքը քիչ է, ինչպէս որ կըսէ սուրբն Բեռնարդինոս Սենացին. ինչ և իցէ մահուչափ մեղքով անհուն անարգանք կըլլուի Աստուծոյ. ուստի անհուն անարգանաց անհուն պատիժ պէտք է. բայց որովհետև սրբոյն Թովմային ըսածին պէս, արարածը ընդունակ չէ անհուն պատժոյ ըստ սաստկութեան, Աստուած ալ իրաւամբք կընէ, որ անոր պատիժն անհուն ըլլայ ըստ տարածութեան, որ է ըսել յաւիտենական։

Նոր թողունք որ ատ պատիժը պէտք է որ յաւիտենական ըլլայ։ Նախ, վասն զի մեղաւորը ՚ի դժոխս չի կրնար վճարք ընել իր յանցանացը. աս կեանքիս մէջ կրնայ մեղաւորը վճարումն ընել արդեամբք փրկչին իւրոյ, ասկից դուրս կը մնայ դատապարտեալը, և այնպէս յաւիտեան կը մնայ անճողոպրելի ՚ի պատժոց. ոչ փրկէ մարդ, և ոչ տայ Աստուծոյ փրկանս . . . վաստակեա յաւիտեան[2]։ Ուստի կըսէ Բելուակեցին թէ հոն յանցանքը միշտ կրնայ պատժուիլ, բայց ոչ երբէք կրնայ քաւուիլ. վասն զի սրբոյն Անտոնինոսի ըսածին պէս, հոն տեղ մեղաւորը չի կրնար զղջալ, ասնոր համար Աստուած միշտ սրդողած կը մնայ. ժողովուրդ՝ ընդ որում տացէ պատերազմ Տէր մինչև ցյաւիտեան[3]։ Երկրորդ, թէ և Աստուած ուզենայ ալ ներել, ինքն դատապարտեալը ներումն չուզեր, վասն զի է խստասիրտ կամակոր հաստատեալ յամառութեան

1 Եզեկ. ԻԱ. 5 ։ 2 Սղ. ԽԸ. 8 ։ 3 Մաղաք. Ա. 4 ։

ընդդէմ Աստուծոյ։ Ուստի կըսէ Իննովկենտիոս Գ. պապը թէ դատապարտեալքը չեն խոնարհիր, վասն զի անզգամութիւնը ատելութիւնը տիրած է իրենց վըրայ. և սուրբն Հերոնիմոս ալ կըսէ թէ անյագ են 'ի ցանկութիւն մեղանչելոյ։ Ասկից է որ դատապարտեալոյն վէրքն է անբժշկելի. վասն զի տեղիք չի տար բըժըշկելու։ Վէրք իմ սաստիկք՝ ուստի՞ բժշկեցայց[1]։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ուրեմն փրկիչ իմ, թէ որ ես դժոխքն ըլլայի նէ ըստ արժանեացս, յամառեալ պնդագլուխ պիտի ըլլայի յատելութեան քեզի դէմ, Աստուած իմ, որ ինծի համար մեռար։ Ա՜խ, որպիսի՜ դժոխք կըլլար ատ, ատել զքեզ, որ զիս սիրեցիր, ով գեղեցկութիւն անչափ, ով բարութիւն անբաւ, արժանի անհուն սիրոյ։ Ուրեմն թէ որ հիմա դժոխքին մէջն ըլլայի նէ, պիտի անանկ թշուառ վիճակի մէջ ըլլայի, որ ներումն ալ պիտի չուզէի թողութեան, որ ինծի հիմա կուզես տալ։ Յիսուս փրկիչ իմ, գոհանամ զքէն աս ամէն գթութեանց համար, որ իմ վրաս բանեցուցիր, ուստի թողութիւն ալ կուզեմ, զքեզ սիրել ալ կուզեմ. դուն ինծի ներումն կուզես տալ, ես ալ ան կը խնդրեմ, և կը յուսամ քու արդիւնքովդ։ Կը ցաւիմ ամէն մեղացս վրայ, որով զքեզ վշտացուցի, ով անբաւ բարութիւնդ, թողութիւն ինծի շնորհէ։ Կը սիրեմ զքեզ ամենայն հոգւով, ո՜հ Տէր։ Ի՞նչ վնաս ինծի ըրած ունիս, որ ես կարենամ զքեզ ատել որպէս թշնամի յաւիտեան. և ի՛նչ բարեկամ ունեցեր եմ ես բնաւ, որ այնչափ բան ըրած ըլլայ ինծի, և այնչափ բան քաշած ըլլայ ինծի համար, որչափ դուն ըրիր և քաշեցիր, ով Յիսուս իմ։ Հապա մի՛ թողուր որ ես մէյմըն ալ քու կամքիդ դէմ ըլլամ, ու կորսընցընեմ քու սէրդ։ Տուր ինծի մեռնիլ քան թէ մէյմըն ալ աս կործանման մէջ իյնալ։ Ով տիրամայր, քու հովանաւորութեանդ տակը զիս պահէ, և մի՛ թող տար որ մէյմըն ալ ես ապստամբ ըլլամ ընդդէմ Աստուծոյ և ընդդէմ քեզի։

1 Երեմ. ժե. 18։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Մահն որ աս կենացս մէջ մեղաւորաց աչքին առջև շատ փախնալու բան է, դժոխքին մէջ իրենց ամէնէն փափաքելի բանը պիտի ըլլայ. խնդրեսցեն զմահ, և ոչ գտցեն. ցանկան մեռանիլ, և փախիցէ 'ի նոցանէ մահ[1]: Ուստի ասանկ կը գրէ սուրբն Հերոնիմոս. ով մահ, որչափ անուշ կըլլաս անոնց որոնց այնչափ դառն երեցար: Դաւթի ըսածին պէս, մահ հովուեսցէ զնոսա[2]. զոր ասանկ կը պարզաբանէ սուրբն Բեռնարդոս, թէ ոչխարը երբոր կարածի նէ, կանանչը կուտէ, բայց արմատը կը թողնէ, ասանկ ալ մահը դատապարտեալներով կարածի, ամէն վայրկեան մահ կու տայ իրենց. բայց կենդանի կը թողնէ զիրենք՝ որպէս զի անդադար սպաննէ զիրենք դժոխքին տանջանքովը: Ուստի կըսէ նաև սուրբն Գրիգոր թէ ան սոսկալի բոցին մէջ մեղաւորը միշտ կը մեռնի, և կենդանի կը մնայ: Հոս որ մէկը ցաւագին մահուամբ մեռնելու ըլլայ, ամէնքը ցաւակից կըլլան. դատապարտելոյն ցաւակից եղող մըն ալ չիկայ: Ցաւէն ամէն վայրկեան կը մեռնի, բայց չունի և պիտի չունենայ զմէկը որ իրեն ցաւակից ըլլայ: Զենոն կայսրը մէկ փոսի մը մէջ գոցուած կաղաղակէր, ողորմեցէք բացէք ինծի, բայց լսող չի գտնուեցաւ, և անանկ յուսահատ մեռաւ. վերջէն տեսան որ իր թևին միսը կրծեր կերեր է: Կիւրեղ աղեքսանդրացին դատապարտելոց համար կըսէ թէ կը պոռան կը պոռչան, խալըսող չիկայ. կուլան կողբան, ցաւակից եղող չիկայ:

Եւ աս իրենց թշուառութիւնը որչափ ատեն պիտի դիմանայ. միշտ և յաւիտեան, և յաւիտեանս յաւիտենից: Կը պատմուի 'ի հոգևոր կրթութիւնս հօրն Սէնիերի կրօնաւորոյ, թէ Հռոմ հարցուցին դիւին դիւահարի մը թէ որչափ պիտի կենայ դժոխքը. ան ալ կատաղութեամբ ձեռքը զարնելով աթոռի մը ըսաւ՝ միշտ և միշտ: Աս բանէս այնչափ սարսափ ընկաւ լսողներուն վրայ, որ շատը ընդհանրական խոստովանանք եղան, և վարքերնին փոխեցին՝ աս երկու բառին հա-

1 Յայտ. Թ. 6: 2 Սղ. ԽԸ. 15:

մար թէ միշտ միշտ ։ Խեղճ ողորմելի Ցուպա Թըշուառականը՝ հազար ութ հարիւր այսչափ տարի է որ դժոխքին մէջն է, և իր դժոխքը միշտ նոր կըսկսի ։ Իսկ Թշուառականն կայէնը վեց հազար տարիէն աւել է որ ան կրակին մէջն է, և միշտ նոր կըսկսի իր դժոխքը ։ Մէկ դիւք մըն ալ հարցուցին, թէ քանի՞ տարի է որ ինքը դժոխքն է. ըսաւ երեկուընէ 'ի վեր է. ասոր ըսին թէ ի՞նչպէս երեկուընէ կըսես, հինգ հազար տարիէն աւել է քանի որ դուն դատապարտուած ես. պատասխան տուաւ. թէ որ գիտնայիք ինչ ըսել է յաւիտենականութիւնը, կիմանայիք որ անոր առջևը հինգ հազար տարին մէկ վայրկեան ալ չի սեպուիր ։ Դնենք թէ հրեշտակ մը գար ըսէր մէկ դատապարտուածի մը թէ դուն դժոխքէն պիտի ելլես, երբոր անցնին այնչափ դարեր որչափ են անձրևին կաթիլները, ծառերուն տերևները և ծովուն աւազը, դատապարտեալն մեծ ուրախութեան բան կըլլար՝ քան թէ մուրացկանի մը ըսուէր թէ դուն թագաւոր պիտի ըլլաս ։ Բայց սակայն թող անցնին այնչափ դարեր, և բազմապատկուին անհուն անգամ, դժոխքը միշտ նոր կըսկսի ։ Ամէն դատապարտեալ աս դաշինքը կը դնէր Աստուծոյ հետ ըսելով. տէր, սաստկացուր իմ տանջանքս որչափ կուզես նէ, երկընցուր որչափ կուզես, միայն թէ ետքը ետքը լմննայ, ես գոհ եմ ։ Բայց աս ըլլալու բան չէ, բնաւ լմննալիք չկայ ։ Աստուծոյ փողը աս արդարութեան ձայնը միշտ պիտի հնչեցընէ դժոխքին մէջ, միշտ և յաւիտեանս յաւիտենից և ևս ։

Թող հարցընեն դիւաց դատապարտեալքը, քանի՞ մէկ զմեզ հոս պիտի պահէք, քանի՞ գիշեր, երբ կը լմննայ աս վայրկեանը, աս աղաղակը, աս գարշութիւնը, աս կրակը և բոցը, աս տանջանքս. պատասխան կուտեն՝ ոչ երբէք ոչ երբէք ։ Որչափ ատեն պիտի դիմանան. միշտ և միշտ ։ Ա՛խ տէր, լոյս տուր այնչափ կուրերուն, որ կը խրատուին դժոխք չերթալու համար նէ, պատասխան աս կուտան. թէ որ դժոխք երթամ նէ, երթամ, համբերութիւն ։ Ո՛վ տէր Աստուած, ասանկները համբերութիւն չունին՝ քիչ մը ցուրտ քաշեն նէ, տաք խցի մէջ կենան նէ, ծեծ մը ուտեն նէ. հապա ինչպէս պիտոր համբերեն կրակի ծովուն մէջ, տանջակոխ եղած սատանաներէն, և Աստուծոյ երեսէն ընկած, և ամէն բանէ զրկուած յաւիտեանս յաւիտենից։

## ԽՂՃՆԻ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով հայր գթութեանց և Աստուած ողորմութեանց , Դաւթի ըսածին պէս՝ ոչ թողցես զայնոսիկ որ խնդրեն զքեզ տէր[1] ։ Ես ինչուան հիմա քեզի երես դարձուցի , և դուն զիս երբեք չիձգեցիր · կաղաչեմ զիս երբեք մի ձգեր հիմա ալ՝ որ զքեզ կը խնդրեմ ։ Կը զղջամ , ով ծայրագոյն բարի , որ քու շնորհքդ բանի տեղ չի սեպեցի , և ոչինչ բաներու հետ փոխեցի , նայէ 'ի վէրս միածնիդ , և անոնց ձայնը լսելով որ կը բարեխօսեն վասն իմ , ներէ և թող ինծի ։ Եւ դու փրկիչ իմ , յիշէ միշտ զչարչարանս քո որ ինծի համար քաշեցիր , և զսէրդ որ իմ վրաս ցցուցիր , հետոն ալ իմ ապերախտութիւնս , որովք այնչափ անգամ դժոխքի արժանի եղայ , որպէս զի միշտ լամ իմ անզգամութիւնս՝ որ քեզի դէմ ըրի , և ապրիմ միշտ վառուած 'ի սէր քո ։ Ա՜խ Յիսուս , ինչպէս չիվառուիմ քու սիրովդ , մտածելով թէ շատ տարիներէն առաջ , ես դժոխքը տաչորէի պիտի , և յաւիտեան ալ պիտի տաչորէի · և դուն զիս խալըսելու համար մեռար , և անբաւ գթութեամբդ զիս խալըսեցիր · թէ որ դժոխքի մէջ ըլլայի նէ հիմա , զքեզ պիտի ատէի , ան ալ յաւիտեան · բայց հիմա ըզքեզ կը սիրեմ , և կուզեմ յաւիտեան սիրել , ասանկ յոյս ունիմ զօրութեամբ քո սուրբ արեանդ ։ Դուն որ զիս կը սիրես , ես ալ զքեզ կը սիրեմ · դուն զիս միշտ կուզես սիրել , թէ որ ես զքեզ չիթողնեմ նէ ։ Ա՜խ տէր իմ , դուն պահէ զիս , որ մէյմըն ալ զքեզ չիթողնեմ , անկէց ետև ինչ որ կուզես ինծի ըրէ · ես արժանի եմ ամէն պատուհասի , և սիրով ալ կընդունիմ , միայն թէ զիս խալըսես ան պատուհասէն զուրկ մնալու 'ի քո սիրոյդ ։ Ով Մարիամ ապաւէն իմ , քանի անգամ ես զիս դժոխքի արժանի ըրի , և դուն զիս խալըսեցիր , հիմա ալ զիս մեղքէ խալըսէ , որ միայն կրնայ զիս զրկել Աստուծոյ շնորհքէն և դժոխքը տանիլ ։

1 Սղ · Թ · 11 ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԲ.

## ԴԱՏԱՊԱՐՏԵԼՈՑ ԽՂՃՄՏԱՆԱՑ ԽԱՅԹԸ

*Անոնց որդը չի մեռնիր*[1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ն՝ս որդը որ չի մեռնիր՝ կիմացուի, կըսէ սուրբն Թովմաս, խղճմտանքի խայթոցը, որով յաւիտեան կը տանջուի մեղաւորն 'ի դժոխս ։ Շատ կերպ պիտի ըլլան խղճմտանաց խայթոցքը որ պիտի կրծեն դատապարտելոց սիրտը, բայց աս իրեք խայթոցն աւելի պիտի տանջէ զիրենք . մէյմը թէ ինչ չնչին բանի համար դըժոխք ընկան, մէյմըն ալ թէ ինչ թեթև էր որ պիտի ընէին փրկուելու համար, և երրորդ թէ ինչ մեծ բարիք կորուսին ։ Առաջին խայթոցը ըսինք ան է՝ որ դատապարտեալը պիտի տեսնէ թէ ինչ չնչին բանի համար կորսուած է . Եսաւ ոսպնաթանը ուտելէն ետև՝ որուն համար անդրանկութիւնը ծախեց, սուրբ գրքին պատմածին պէս, սրտին ցաւէն կորսուած բանին վըրայ կատղելով՝ ամուր ձայնով կը պոռար . աղաղակեաց 'ի ձայն մեծ՝ դառնացեալ յոյժ[2], կըսէ սուրբ գիրքը ։ Հապա ո՛րչափ պիտի պոռչայ պոռչըտայ դատապարտեալը՝ քանի որ մտածէ թէ մէկ վայրկենական և թունաւոր հաճոյքը կատարելով՝ կորսընցուց յաւիտենական թագաւորութիւնը ամենայն զուարճութիւններովը . և պիտի տեսնէ զինքը յաւիտեան դատապարտուած անմահ մահուան ։ Ուստի շատ աւելի դառն լաց պիտի ունենայ քան զլալն Յովնաթանու, որ իր հօրմէն մահուան դատապարտուելով կըսէր . ճաշակելով ճաշակեցի սակաւ մի մեղր, և ահա մեռանիցիմ ես[3] ։ Ա՜խ, ինչ տանջանք կըլլայ դատապարտելոյն

1 Որդն նոցա ոչ մեռանի ։ Մարկ . Թ . 47 ։
2 Ծնն . ԻԷ . 34 ։
3 Ա . Թագ . ԺԴ . 43 ։

ան տանէն տեսնելը իր դատապարտութեան պատճառը ։ Մեզի հիմա մեր անցած կեանքը ինչ կերեւնայ, եթէ ոչ մէկ վայրկենի երազ մը . իսկ ինչ պիտի երեւնան դժոխք եղողներուն՝ իրենց յիսուն կամ վաթսուն տարին որ ունեցեր են երկրիս վրայ, երբոր 'ի խորս յաւիտենականութեան գտնուին նէ, ուր հարիւրաւոր և հազարաւոր միլիոն տարիներ անցնին նէ կը տեսնեն որ իրենց յաւիտենականութիւնը դեռ նոր կըսկսի ։ Բայց ինչ կըսեմ յիսուն տարի կենաց, միթէ յիսուն տարուան մէջ մէկիին հաճոյքը կրնայ կատարուիլ . միթէ մեղաւորը առանց Աստուծոյ ապրելով միշտ կը վայելէ՞ր իր մեղացը մէջ . մէկ քանի վայրկեան կը դիմանայ մեղքը, մնացած բոլոր ատենն որ Աստուծոյ թշնամի կապրի մէկը, պատիժ է ամենևին և ամօթ ։ Արդ ինչ կերեւնան դատապարտելոց առջև ան իր մարմնոյ հաճոյից վայրկեանները . մանաւանդ ան վերջին մեղքը՝ որով դատապարտուեր է, ուստի պիտի ըսէ . ուրեմն մէկ ողորմելի և անբանական հաճոյից համար, որ վայրկեան մը հազիւ տևեց, և իսկոյն անցաւ գնաց հովի պէս, ես պիտի կենամ աս կրակին մէջ տոչորած, յուսահատ, և ամէն բանէ զուրկ՝ միշտ և յաւիտեան, քանի որ Աստուած Աստուած է ։

### ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Լոյս տուր ինծի տէր, որ ճանչնամ իմ անզգամութիւնս որով վշտացուցի զքեզ, և յաւիտենից պատուհասին արժանի եղայ ։ Աստուած իմ, մեծ ցաւ է ինծի զքեզ վշտացընելս, բայց նոյն ցաւը զիս կը մխիթարէ . թէ որ դուն զիս դժոխք խաւրած ըլլայիր նէ ըստ իմ արժանեացս, աս խղճմտանքս կըլլար ինծի դժոխք դժոխոց, տեսնելով որ ինչ չնչին բանի համար դատապարտուեր եմ . բայց հիմա աս խղճմտանքը զիս կը մխիթարէ, վասն զի կը քաջալերէ զիս թողութեան յոյս ունենալ քեզմէ, որ խոստացար ներել զղջացողին ։ Այո, տէր, ես ալ կը զղջամ զքեզ անարգելուս համար, սիրով կը քաշեմ այս քաղցր պատիժս . մանաւանդ թէ կաղաչեմ որ սաստկացընես, և պահես զայն վրաս մինչև 'ի մահ, որպէս զի լամ դառնապէս ան տհաճութիւններն որ քեզի տուի ։ Թող ինծի, փըր-

կէչ իմ, որ ինծի գթալով անձիդ չխղճացիր, յանձն առնելով ցաւագին մահ քաշել զիս դժոխքէն խալըսելու համար։ Ո՛հ կաղաչեմ, գթա ինծի և ողորմէ, ըրէ որ ան զքեզ վշտացընելուս խղճմտանքի խայթը անդադար ցաւի մէջ զիս թողու, միանգամայն բորբոքէ զիս բոլոր սիրով առ քեզ. որ այսչափ զիս սիրեցիր, և այնչափ երկայնամտութեամբ ինծի համբերեցիր, և հիմա ալ պատժելու տեղը բարիքով և շնորհքով կը լեցընես։ Գոհանամ զքէն, փրկիչ իմ, և կը սիրեմ ըզքեզ ինծմէ էւել և 'ի բոլոր սրտէ։ Ձես մերժեր զան ընաւ զքեզ սիրողը. արդ ես զքեզ կը սիրեմ, զիս ալ մի մերժեր քու երեսէդ, պահէ զիս միշտ և հանապազ քու շնորհիդ մէջ. և մի թողուր որ ես զքեզ մէյմըն ալ կորսընցընեմ։ Մարիամ սուրբ Աստուածածին, ընդունէ զիս քեզի ծառայ, և կապէ զիս սիրով քու միածնիդ հետ. աղաչէ որ ինծի ներէ, և տայ ինծի իր սէրը և յարատեւութեան շնորհքը ինչուան 'ի մահ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Սուրբն Թովմաս կըսէ թէ աս պէտք ըլլայ գլխաւոր տանջանք դատապարտելոց, տեսնել թէ չնչին բանի մը համար կորսուեցան, երբոր այնչափ դիւրաւ կըրնային արքայութեան յաւիտենից փառքը ձեռք բերել, թէ որ ուզենային նէ։ Ուստի խղճմտանքին երկրորդ խայթոցը աս կըլլայ՝ այսինքն մտածել որ քիչ բան ունէին ընելիք փրկուելու համար։ Սրբոյն Ումբերդոսի դատապարտեալ մը երեցաւ և ըսաւ, թէ աս էր իր բուն ցաւն որ զինքը կը տանջէր 'ի դժոխս, մտածելն թէ ինչ պզտիկ բան է որուն համար դատապարտուեր է, և ինչ պզտիկ բանով մը կրնար փրկութեան հասնիլ։ Պիտի ըսէ ան ատեն թշուառական մեղաւորը, թէ որ զիս մահացընէի չնայել ան մեղանչական առարկային վրայ, թէ որ յաղթէի մարդկային նկատմանց, թէ որ փախչէի աս ան առիթներէն, ընկերութենէն, կենցաղավարութենէն, ես չէի դատապարտուեր։ Թէ որ շաբաթն անգամ մը խոստովանանք ըլլայի, թէ որ հոգևոր խրատներու սիրով երթայի, թէ որ ամէն օր հոգևոր գրքոյկ մը կարդայի, թէ որ զիս Աստուծոյ յանձնէի և Մարիամու, ես չէի նորէն իյնար։ Շատ

անգամ առաջադրեցի ատ ընել, բայց 'ի գործ չդրի. կամ սկսայ ընել, ետքը թողուցի, ատոր համար կոր-սուեցայ:

Այս խղճի տանջանքը կը սաստկանայ բարի օրինակ-ներէն որ տեսած էր աղէկ բարեկամներէն և ընկեր-ներէն, և աւելի կը սաստկանայ փրկուելու համար Աս-տուծոյ իրեն տուած պարգևներէն, թէ բնական պար-գև ըլլայ, ինչպէս կատարեալ առողջութիւնը, թէ բախ-տի բարիք ըլլայ, և թէ քանքար որ Աստուած իրեն տուեր էր 'ի բարին բանեցընելու և սուրբ ըլլալու, շը-նորհքներ, լուսաւորութիւններ, ազդեցութիւնք, կոչ-մունք, և այնչափ տարի ալ՝ ըրած միասին ճարը տես-նելու, բայց կը տեսնէ որ ան թշուառ վիճակին մէջ ուր ընկած է, ալ ատեն չիկայ ճար ճարակ ընելու, վասն զի կը լսէ գրոց ան բանը թէ հրեշտակին զոր տե-սի.. երդուաւ 'ի կենդանին յաւիտենից.. զի ոչ ևս կայ այլ ժամանակ [1]: Ա՜խ, որպիսի սուր տառապանք պիտի ըլլան աս ամենայն առած շնորհքները թշուառական դատապարտելոյն սրտին մէջ, երբոր կը տեսնէ որ լմնցեր գացեր է ատենը ճար մը ընելու իր յաւիտենա-կան կործանմանը, ուստի պիտի ըսէ իր յուսահատ ընկերներուն հետ. անցին հունձք, անց ամառն, և մեք ոչ փրկեցաք [2]: Պիտի ըսէ, երանի թէ ան աշխա-տանքներն որ ըրի զիս դատապարտելու, Աստուծոյ համար ըրած ըլլայի, ես մեծ սուրբ մը կըլլայի: Ո՜հ, հիմա ինչ մնաց քովս, եթէ ոչ խայթ խղճմտանաց, և տանջանք որ զիս պիտի չարչարեն յաւիտեան. իրաւ որ աս մտածութիւնը պիտի տանջէ դատապարտեալը կրակէն աւելի, և ամէն դժոխքի տանջանքներէն էւել, ըսելով ինքն իրեն, ես կրնայի յաւիտեան երանելի ըլ-լալ, ու հիմա յաւիտեան թշուառ պիտի ըլլամ:

ԻՂՁ ԵՒ ԳԱՂԱՑԱՆՔ

Ո՜հ Յիսուս, հապա ինչպէս կրցար այդչափ ինծի համբերել, քանի անգամ քեզի երես դարձուցի և դուն չի դադրեցար քովս գալէն, ես այնչափ զքեզ բարկա-ցուցի և դուն ինծի այնչափ ներեցիր, նորէն դարձայ զքեզ վշտացուցի և դուն կրկին դարձար թողութիւն ին-

1 Յայտ. Ժ. 5. 6:　　2 Երեմ. Ը. 20:

ծի տալու ։ Որեմն զիս մասնակից ըրէ ան ցաւուն որ քաշեցիր Գեթսեմանի պարտէզին մէջ իմ մեղքերուս համար, այնչափ որ արիւն քրտնիլ քեզ տուին ։ Կը զղջամ, փրկիչ իմ սիրելի, ասանկ չարաչար փոխարէն ընելուս քու սիրոյդ ։ Ո՜հ, Նզովեալ հաճոյք, կանիծեմ զքեզ, դուն եղար ինծի պատճառ կորսընցընելու զշնորհս տեառն իմոյ ։ Ով սիրեցեալդ իմ Յիսուս, հիմա զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր, կը հրաժարիմ յամենայն անարժան հաճոյից, և կառաջադրեմ բիւր անգամ մեռնիլ, քան թէ մէյմըն ալ զքեզ վշտացընել ։ Հապա ան քաղցր սրտիդ համար՝ որով զիս սիրեցիր խաչին վրայ, և ինծի համար տուիր աստուածային կեանքդ, տուր ինծի լոյս և ուժ դէմ դնելու փորձութեանց, և ապաւինելու 'ի քո օգնութիւնդ՝ երբոր փորձուելու ըլլամ նէ ։ Ով Մարիամ կոյս, իմ յոյսս, դու ամէն բանի կարող ես Աստուծոյ քով, առ ինծի համար սուրբ յարատևութիւն, անանկ որ մէյմըն ալ իր սուրբ սիրոյն չի բաժնուիմ ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Երրորդ խայթոց խղճի դատապարտուած անձին պիտի ըլլայ տեսնելը թէ ինչ մեծ բարիք կորսընցուց ։ Սուրբ Յովհան ոսկեբերանի ըսածին պէս, աւելի կըլլայ տանջանքներին երկնքէն քան թէ դժոխքէն ․ արքայութեան կորստեանը վրայ աւելի կը ցաւին քան թէ դժոխքին տանջանացը վրայ ։ Թշուառական Թագուհին Անգղիոյ Եղիսաբեթ կըսէր թէ տուր ինծի, Աստուած, քառասուն տարի թագաւորութիւն, ալ արքայութիւն չեմ ուզեր քեզնէ ։ Իրաւ որ անզգամը ունեցաւ քառասուն տարի թագաւորութիւնը, բայց հիմա քանի որ աս աշխրքէս ելաւ նէ, ինչ կարծես ինչ կըսէ ․ անտարակոյս հիմա ան խելքին վրայ չէ ․ հիմա ինչ տանջանք կը քաշէ յուսահատաբար քանի որ կը մտածէ թէ ան քառասուն տարուան թագաւորութեան տեղ՝ որ ախով վախով և նեղութեամբ անցուց, յաւիտեան կորսընցուց երկնից թագաւորութիւնը, որ է արքայութիւն ։

Բայց դատապարտելոյն աւելի տանջանք տուողն է յաւիտեան տեսնելը թէ կորոյս երկինքը, և իւր ծայ֊

րագոյն բարին զԱստուած. չէ թէ դժբաղդութեամբ մը կամ ուրիշի չարութեամբ, հապա իր բուն յանցանքովը. կը տեսնէ որ ինքը արքայութեան համար ըստեղծուած էր, կը տեսնէ որ Աստուած իր ձեռքը թողեր էր ընտրել և հոգալ կամ կեանք, կամ մահ յաւիտեանս յաւիտենից: Ինչպէս որ կըսէ Սիրաք, առաջի մարդոյ կեանք և մահ, և զինչ հաճոյ թուեսցի իւր՝ տացի նմա[1]: Ուստի՝ կը տեսնէ որ իր ձեռքն էր, թէ որ ուզենար փրկուիլ և երջանիկ ըլլալ յաւիտեան. իսկ ինքը ուզեց գլորիլ այն տանջանաց խորխորատը, ուսկից մէյմըն ալ ելնելիք չունի, և ուրիշ մըն ալ զինքը հանելու հոգ ունեցող չկայ: Կը տեսնէ փրկուած իր այնչափ ընկերները, որ նոյնպիսի կամ աւելի վըտանգ ունէին մեղանչելու, բայց խելք բանեցուցին զգոյշ կենալ, իրենք զիրենք Աստուծոյ յանձնելով, բայց թէ որ ընկան ալ նէ, գիտցան չուտով կանգնիլ, Աստուծոյ տալ զիրենք, և անանկ փրկուեցան. բայց ինքը չուզենալով այս ճամբան բռնել՝ թշուառաբար դժոխք ինկաւ. որ է ծով տանջանաց, առանց յուսոյ մէյմըն ալ ճար գտնելու:

Ով եղբայր, թէ որ ինչուան հիմա դուն ալ ատանկ խենթութիւն ըրիր, ուզենալով արքայութիւնը և զԱստուած կորսընցընել մէկ անպիտան հաճոյքի մը համար, նայէ որ ճարը ընես հիմա քանի որ ատենն է, և չուտով ընես, խենթութեանդ մէջ մի մնար: Սոսկա դողա, չըլլայ թէ երթաս յաւիտեան այս խենթութիւնդ լաս: Ո՛վ գիտէ գուցէ աս մտածութիւնս որ կը կարդաս, վերջին կոչումն ըլլայ որ քեզի կընէ Աստուած: Ո՛ գիտէ գուցէ հիմա վարքդ չփոխես նէ, ուրիշ մահուչափ մեղաց մէջ ինկնաս. և Աստուած ալ զքեզ երեսէ ձգէ, և ետքը այսպէս զքեզ խաւրէ յաւիտեան տանջուիլ այն խենթերուն հետ՝ որ հիմա դժոխքն են և կը խոստովանին իրենց չարաչար սխալմունքը, ուրեմն մոլորեցաք, ըսելով. որ է յուսահատ խոստովանութիւն, տեսնելով որ ալ ճար ճարակ չկայ: Երբոր սատանան զքեզ փորձէ, դժոխքը միտքդ բեր, առ Աստուած դիմէ և առ սուրբ Աստուածածինն, դժոխքին մտածութիւնը զքեզ դժոխքէն կը խալըսէ: Յիշեա ըզ-

1 Սիր. ժե. 18:

փոխանակ քո, և յաւիտեան ոչ մեղիցես [1], կ'ըսէ Սիրաք. վասն զի գժոխքը մտածելը՝ քեզի կու տայ զերծել ու Աստուած։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով ծայրագոյն բարի, քանի՛ անգամ ես զքեզ կորուսի չնչին բանի մը համար, և արժանի եղայ յաւիտեան զքեզ կորսընցընելու։ Բայց զիս կը մխիթարէ մարգարէին ան խօսքը. Ապաշխ. եղիցին սիրտք այնոցիկ, որք խնդրեն զտէր [2]։ Ուրեմն պէտք չէ որ յուսահատ ըլլամ զքեզ նորէն գտնելու, Աստուած իմ, թէ որ սրտանց կը խնդրեմ նէ։ Այո տէր, հիմա կը փափաքիմ կը հառաչեմ քու շնորհքիդ՝ քան ուրիշ այլ ամենայն բարեաց. գոհ եմ ամէն բանէ հրաժարիլ, կեանքէս ալ, քան թէ 'ի քո սիրոյդ։ Զքեզ կը սիրեմ, Յիսուս իմ, 'ի վեր քան զամենայն, և զքեզ սիրելուս համար կը ցաւիմ զքեզ վշտացընելուս վրայ։ Աստուած իմ, զոր անարգեցի և կորուսի, շուտով ներէ ինծի, և տուր որ շուտով զքեզ գտնեմ, վասն զի չեմ ուզեր ըզքեզ մէյմըն ալ կորսընցընել. Թէ որ զիս նորէն ընդունիս 'ի քո բարեկամութիւնդ, կուզեմ ամէն բան թողնել, և բոլորովին զիս տալ 'ի սիրել զքեզ, և զայս կը յուսամ 'ի քո գթութենէդ։ Հայր երկնաւոր, լսէ ինծի վասն սիրոյ միածնի քո, ներէ ինծի և շնորհք տուր, որ մէյմըն ալ քեզնէ չխզատուիմ. Թէ որ նորէն կամաւորապէս զքեզ կորսընցընեմ նէ, պէտք է որ վախնամ թէ զիս երեսէ կը ձգես։ Ով Մարիամ հաշտարար մեղաւորաց, տուր ինծի Աստուծոյ հետ հաշտուիլ, և անկից ետև քու հովանաւորութեանդ տակը զիս պահէ, որպէս զի մէյմըն ալ զինքը չկորսընցընեմ։

1 Սիր. Է. 40։ 2 Սղ. ՃԴ. 3։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԻԹ.

## ԱՐՔԱՅՈՒԹԻՒՆ

*Ձեր տրտմութիւնը ուրախութեան պիտի փոխուի [1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

*Պանանք հիմա համբերութեամբ տանել աս կենացս վշտացը, Աստուծոյ նուիրելով փոխանակ Յիսուսի չարչարանացը զոր մեր սիրոյն համար քաշեց, և քաջալերենք մենք զմեզ արքայութեան յուսով։ Կը լմննան մէկ օր մը աս ամէն նեղութիւնները, ցաւերը, հալածանքները, վախը, և փրկութեան հասնինք նէ՝ ան բաները մեզի կըլլան ուրախութիւն և հաճութիւն երանելեաց արքայութեանը մէջ։ Աստանկ մեզի սիրտ կու տայ տէրն թէ տրտմութիւն ձեր ուրախութիւն եղիցի։ Հիմա ուրեմն քանի մը բան մտածենք արքայութեան վրայ։ Բայց ի՞նչ կրնանք խօսիլ արքայութեան վրայ, ուր մեծամեծ սուրբերն ալ չկրցան մեզի հասկըցընել ան ուրախութիւնները, զոր պահեր է Աստուած իր հաւատարիմ ծառայիցը։ Դաւիթ այսչափ միայն ըսել կրցաւ թէ որպէս սիրելի են յարկք քո՝ տէր զօրութեանց [2]։ Բայց դուն միայն, ով Պօղոս, դուն որ արժանի եղար երկնից դրախտը յափշտակուիլ, ըսէ շատ քիչ, ինչ որ տեսար և լսեցիր։ Աս չի կրնար ըլլալ կըսէ առաքեալը, վասն զի լուայ կըսէ բանս անճառս, զոր ոչ է պարտ մարդոյ խօսել [3]։ Այնպիսի մեծամեծ բաներ են որ վայելել կըլլայ, պատմել չըլլար։ Այսչափ ըսեմ ձեզի՝ կըսէ նոյն առաքեալը, զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և՚ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց [4]։*

1 Տրտմութիւն ձեր ուրախութիւն եղիցի. Յովհ. ԺԶ. 20։
2 Սղ. ՁԳ. 2։
3 Բ. Կոր. ԺԲ. 4։
4 Ա. Կոր. Բ. 9։

Մենք չենք կրնար հասկընալ արքայութեան բարիքը, վասն զի մենք երկրիս բարիքէն վեր բան մը չենք կրնար ըմբռնել։ Թէ որ ձիերը խօսք հասկընային, և լսէին թէ իրենց տէրը աղէկ սեղան մը կը պատրաստէ, ուրիշ բան չէին իմանար, բայց եթէ աղէկ յարդ և աղէկ գարի, վասն զի ուրիշ աղէկ բանի գաղափար չունին ասոնցմէ 'ի զատ։ Ասանկ կը մտածենք մենք ալ արքայութեան աղէկ բաներուն վրայ. աղուոր բան է ամառուան գիշերները տեսնել աստղալից երկինքը, զուարճալի բան է գարնան ատեն ծովուն քովը գըտնուիլ որ հանդարտ է, և մէջը կը տեսնուի կանաչազգեաց ժայռեր և կայտռացող ձկներ, շատ ախորժելու բան է պարտէզի մը մէջ ըլլալ՝ որ լեցուն ըլլայ պըտուղներով ծաղիկներով, ջրեր և շատրուաններն ալ չորս դին վազեն, թռչունները թռչըտին, և անուշ երգեն անանկ որ տեսնողը ըսեր թէ արքայութիւն է հոս տեղս։ Ասանկ կըլլա՞յ արքայութիւնը. արքայութիւնն ուրիշ բան է. կուզե՞ս քիչ մը հասկընալ թէ ի՞նչ է արքայութիւնը, միտքդ բեր թէ հոն է Աստուած ամենակալ, որ կեցեր է զուարճացընելու զիւր սիրելի հոգիքը։ Սուրբն Բեռնարդոս կըսէ թէ կուզե՞ս հասկընալ թէ ի՞նչ է արքայութիւնը, ան է ուր բնաւ չուզած բանդ չիկայ, ուր ամէն ուզած բանդ կայ։

Ի՞նչ կարծես, ի՞նչ պիտի ըսէ երանեալ հոգի մը՝ արքայութիւն մտածին պէս։ Դնենք թէ կտրիճ մը կամ կոյս մը որ նուիրուած է 'ի սէր փրկչին՝ իր մահը հասածին պէս թողնէ աս երկիրս. հոգին երբ որ կելլէ դատաստան կը ներկայանայ, դատաւորը կողջագուրէ զինքն ու կըսէ, մի վախնար, ուրախ կեցիր, դուն փըրկուած ես. պահապան հրեշտակն ընդ առաջ կելլէ ուրախութեամբ, ինքն ալ շնորհակալ կըլլայ անոր գալուն, հրեշտակներն ալ իրեն կըսեն, ելիր, վեր ելիր, գեղեցիկ հոգի, արդէն փրկուած ես դուն. եկէ տես քու տիրոջդ երեսը. հոգին ալ արդէն ամպերէն վեր անցեր է, երկնից կամարներէն վեր ելեր է, աստղերէն երկինք կը մտնայ։ Ա՜խ, տէր Աստուած, ի՞նչ պիտի ըսէ ոտքը դրածին պէս առջի անգամ ան երջանիկ հայրենիքը, և առաջի տեսնելուն պէս աչքով զայն քաղաքն փափկութեանց։ Հրեշտակներն ալ սուրբերն ալ դիմացը կելլեն, և ուրախութեամբ բարի եկար կը-

ւեն. ինչ ուրախութիւն կրնայ ան տեղը, երբոր զի-մարդ կերպն իր ծնողքը ազգականքը բարեկամքը՝ որ անանջուց արքայութիւն համար են, և իր պաշտպան սուրբերն ալ։ Ան ատեն կուզէ հոգին զանոնք մեծարել երկրպագութեամբ, իսկ սուրբերը իրեն կըսեն, անանկ մի աներաներ առաջք իմ, քանզի և ես ծառայակից քո եմ. անկէց կը տանին զինքը սուրբ Աստուածածնայ առջը պագնելու որ է գլխոյ արքայութեան. ինչ սրտի ուրախութիւն կիմանայ հոգին՝ առջի անգամն որ կը տեսնէ զաստուածամայրն, որ այնչափ օգնական եղեր է իր փրկութեանը, վասն զի ան ատեն կը հասկընայ հոգին բոլոր շնորհքները՝ որ Մարիամու ձեռքովը առեր է. ան ալ զինքը ամենայն սիրով կը գրկէ, անկից ինքը թագուհին կը տանի զհոգին առ Յիսուս, որ իրեն իբրև իր հարսին կըսէ, եկ'ի Լիբանանէ քոյր իմ հարսն, եկ զի պսակեսցիս[1]։ Ուրախ կեցիր իմ հարսս, անցան գացին արցունք, նեղութիւն, և վախ, առ յաւիտենից պսակը, զոր ես քեզի համար ստացայ իմ արիւնովս։ Ապա ինքն Յիսուս կառնէ կը տանի զհոգին որ ընդունի հօր Աստուծոյ օրհնութիւնը, որ ողջագուրելով կօրհնէ զնա, ըսելով մուտ յուրախութիւն տեառն քո[2]. և կընէ զայն երանելի երանութեամբ զոր ինքը կը վայելէ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ահա, Աստուած իմ, առջդ ընկած է ապերախտ մեղաւոր մը, զոր դուն ստեղծեր ես արքայութեան համար. բայց ինքը այնչափ անգամ փուճ հաճոյքի մը համար ետ կեցեր է անկէց՝ զոհ ըլլալով դժոխքը դատապարտուիլ։ Այլ ես կը յուսամ որ ներեր ես իրեն բոլոր քեզի դէմ ըրած անզգամութիւններուս, որոնց վրայ միշտ նորէն կը զղջամ. և զքեզ կուզեմ մինչև'ի մահ, և կը փափաքիմ որ նորէն ինծի դառնաս ներես։ Թող տէր Աստուած իմ, թէպէտ և դուն թողութիւն տըւած ես, բայց սա ալ միշտ ստոյգ է թէ ես յանդգնեցայ զքեզ վշտացընել, իմ փրկիչս, որ կեանքդ զրեր զիս արքայութիւն տանելու համար։ Օրհնեալ եղիցի յաւիտեան քու ողորմութիւնդ, Յիսուս իմ, որ այնչափ

1 Երգ. Դ. 8։ 2 Մտ. ԻԵ. 21։

երկայնմտութեամբ ինծի համբերեցիր, և պատժելու տեղը աւելցուցիր իմ վրաս շնորհքներ լուսաւորութիւններ, և միշտ առ քեզ կանչեցիր զիս: Կը տեսնեմ, սիրելիդ իմ փրկիչ, որ իսկապէս զիս փրկել կուզես, որ յաւիտեան զքեզ սիրեմ երկինքը, բայց կուզես որ առաջ երկրիս վրայ զքեզ սիրեմ, ես ալ անանկ կուզեմ, անանկ որ արքայութիւնն ալ չըլլամ, ես զքեզ կուզեմ սիրել, քանի որ ապրիմ, բոլոր հոգւովս և ամենայն կարողութեամբս: Հերիք է ինծի գիտնալ որ, Աստուած իմ, դու կը ցանկաս ինծմէ սիրուիլ: Յիսուս իմ, օգնէ ինծի քու շնորհօքդ, զիս երեսէ մի ձգեր. իմ հոգիս յաւիտենական է, ուրեմն անանկ վիճակի մէջ եմ, որ յաւիտեան զքեզ կամ պիտի սիրեմ և կամ պիտի ատեմ: Ես զքեզ յաւիտեան սիրել կուզեմ, և կուզեմ շատ սիրել զքեզ աս կեանքիս մէջ, որ անդին ալ շատ՝ սիրեմ: Իմ վրաս ինչ կուզես կարգաւորէ, միայն 'ի քո սիրոյդ զիս մի զրկեր, անկից ետև ինչ կուզես նէ ինծի ըրէ, Յիսուս իմ, քու արդիւնքդ է իմ յոյսս: Ով Մարիամ, 'ի քո բարեխօսութիւնդ եմ ապաւինեալ բոլորովին. դուն զիս դժոխքէն խալըսեցիր, երբոր մեղաց մէջն էի, հիմա որ զԱստուած կուզեմ, քեզի կը մնայ զիս սուրբ ընել ու փրկութեան հասցընել:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Հոգին Աստուծոյ յերանութիւնը մտնելէն ետև՝ ըլնալ չուզած բանը պիտի չըլլայ. Ջնջեսցէ Աստուած զամենայն արտօսր յաչաց նոցա, և մահ ոչ ևս դոյ. զի առաջինն էանց, և ասաց ցիս՝ որ նստէր 'ի վերայ աթոռոյն, ահաւասիկ առնեմ զամենայն նոր[1]: Արքայութեան մէջ չկան այլ հիւանդութիւնք, և ոչ նեղութիւն մը. չկան հոն մէյմըն ալ օրերու փոփոխութիւնք, գիշեր ցորեկ, ցուրտ կամ տաք; հոն մէկ շարունակ ցորեկ մըն է միշտ, շարունակ գարուն մը միշտ զուարճալի. չկան հոն հալածանք կամ նախանձ, արքայութեան մէջ մէկզմէկ սրտանց կը սիրեն, և ամէն մէկը ուրիշին բարիքն ալ կը վայելէ իրենինին պէս. ալ վախ մը չկայ հոն, վասն զի հոգին 'ի շնորհս հաստա-

1 Յայտ. ԻԱ. 4. 5:

տեսալ, մէջմըն ալ չի կրնար մեղանչել, և իր Աստուածը կորսընցընել. ահաւասիկ առնեմ զամենայն նոր. ամէն բան նոր է, մխիթարանք տուող և կշտացընող, ամէն իր ուզած բանը կայ: Աչքը պիտի կշտանայ ան քաղքին տեսքով, որ կատարեալ է ամենայն գեղեցկութեամբ. Ինչ աղուոր բան կըլլայ տեսնել քաղաք մը, որ յատակը բիւրեղ ըլլայ, տները արծաթէ՝ ոսկիէ ձեղունով, և բոլորը զարդարած ծաղկըներով: Ո՛վ, որչափ գեղեցիկ բան պիտի ըլլայ արքայութեան քաղաքը: Հապա ինչ բան կըլլայ տեսնելն զգահն Աստուծոյ և զՔրիստոս փեսայն: Սրբուհին Թերեզա մէկ անգամ մը տեսնելով Յիսուսին մէկ ձեռքը ապշեցաւ ձեռաց գեղեցկութենէն: Հոտոտելիքն ալ պիտի լեցուի երկնից անուշահոտութեամբ, և լսելիքն՝ երկնային երաժշտութեամբ: Սուրբն Ֆրանչիսկոս մէկ անգամ լսեց հրեշտակէ մը քնարի բախում մը, անուշութենէն մօտ էր մեռնելու: Հապա ինչ պիտի ըլլայ լսելը որ բոլոր սուրբերը և բովանդակ հրեշտակները երգեն դաս առ դաս Աստուծոյ օրհնաբանութիւնը. յաւիտեանս յաւիտենից օրհնեսցեն զքեզ[1]: Ինչ պիտի ըլլայ լսել՝ որ սուրբ Աստուածածինն ալ երբոր կօրհնէ զԱստուած. Մարիամու ձայնը երկինքը, կըսէ սուրբն Ֆրանչիսկոս սալէզեան, պիտի ըլլայ իբրև սոխակ յանտառի, որ ամէն թռչուններուն ձայնին կը յաղթէ իրեն քաղցրութեամբը: Մէկ խօսքով, հոն են ամենայն զուարճութիւնք որ կրնայ մտածուիլ:

Բայց այս ամենայն զուարճութիւնները որ ինչուան հիմա ըսինք՝ բարիք մը կրնան սեպուիլ արքայութեան մէջ. արքայութեան բուն բարին կացուցանողն է ծայրագոյն բարին Աստուած: Սրբոյն Օգոստինոսի ըսածին պէս, բովանդակ բարին որուն ակն ունինք, այս մէկ բառն է երկու վանկով Աստուած: Տեառն մերոյ մեզի խոստացած վարձքը՝ չէ սոսկ այն երանաւէտ քաղքին գեղեցկութիւնը, երաժշտութիւնքը և այլ ամենայն ուրախութիւնները, գլխաւոր վարձքն է ինքն Աստուած, այսինքն զինքը տեսնել դէմ յանդիման և սիրել. ես եղէց վարձք քո մեծ յոյժ: Սուրբ Օգոստինոս կըսէ. թէ որ Աստուած իր երեսը ցցընէ դա-

1 Սղ. ՁԳ. 5:

տապարտելոց, իսկ այն դժոխքը կըլլար դրախտ զուարճալի. և վրայ կը բերէ, թէ որ աս կեանքէս ելած հոգւոյ մը ձեռքն ըլլար ընտրել կամ զԱստուած տեսնել ու մնալ դժոխքի տանջանքի մէջ, կամ առանց տեսնելու զԱստուած ազատ ըլլալ դժոխքէն, աւելի կընտրէր տեսնել զԱստուած և դժոխքի մէջ ըլլալ:

Ո՛րչափ մեծ ուրախութիւն է զԱստուած տեսնել և սիրել դէմ յանդիման, մենք աս կեանքիս մէջ չենք կրնար հասկընալ. բայց ձեռնարկութեամբ քիչ մը բան կրնանք ըմբռնել թէ նախ և առաջ Աստուծոյ սէրը այնչափ քաղցր է, որ ինչպէս աս կեանքիս մէջն ալ եղաւ, մինչև գետնէն վեր բարձրացուց սուրբերուն չէ թէ միայն հոգին, հապա մարմինն ալ: Սուրբ Փիլիպպոս Ներեան մէկ անգամ մը յափշտակեցաւ մարմնով յօդս: Նաև սուրբն Պետրոս ալգանթարացին երկրէս վեր ելաւ՝ մարմնաւոր հրեշտակի մը պէս: Ան ալ գիտենք՝ որ սուրբ մարտիրոսները Աստուծոյ սիրոյն քաղցրութեամբը ուրախ կըլլային գառն տանջանաց մէջ: Սուրբն Վինկենտիոս՝ սուրբ Օգոստինոսի ըսածին պէս, չարչարուելու ատենը անանկ կը խօսէր որ կարծես թէ ուրիշ մըն է չարչարուողը, և ուրիշ մը խօսողը: Սուրբն Լաւրենտիոս կրակի կասկարային վրայ կեցած՝ ձայն կու տար բռնաւորին թէ մէկալ գիս դարձուր: Վասն զի, կըսէ սուրբն Օգոստինոս, ան ատեն Լաւրենտիոս Աստուծոյ սիրոյն կրակովը վառուած, իր երիլը չէր զգար: Բաց ասկէց՝ ինչ քաղցրութիւն կիմանայ մեղաւոր մը երկրիս վրայ՝ իր մեղքերը լալու ատենն ալ. ուստի կըսէ սուրբն Բեռնարդոս, թէ որ այդչափ քաղցր է՝ ով տէր, քեզի համար լալը նէ, ինչ պիտի ըլլայ քեզի համար ուրախանալը: Ի՞նչ քաղցրութիւն ալ չիմանար ան հոգին, որուն աղօթքի մէջ Աստուած կը ցցընէ իր աստուածային բարութեան մէկ ճառագայթը, և իր ողորմութիւնն որ անոր ըրեր է, և ան սէրն որ Քրիստոս անոր ցցուցեր է: Ան ատեն մարդուս սիրտը կը ճմլի, և մարմըրկիլն ալ կու գայ 'ի սիրոյ. և սակայն մենք երկրիս վրայ չենք տեսներ զԱստուած ինչպէս որ է. զի այժմ տեսանեմք իբրև ընդ հայելի օրինակաւ, այլ յայնժամ դէմ յանդիման[1]. հիմակուց հիմա մենք առագաստ մը ու-

1 Ա. Կոր. ԺԳ. 12:

նինք աչքերնուս վրայ, և Աստուած կայ հաւատքի վարագուրին տակը, և չի տեսնուիր մեզի: Ի՞նչ կըսես, ի՞նչ կըլլայ երբոր ան առագաստը մեր աչքէն վերնայ, վարագոյրն ալ վերցուի, և զԱստուած երես առ երես տեսնենք: Ան ատեն կը տեսնենք թէ որչափ գեղեցիկ է Աստուած, որչափ արդար, որչափ կատարեալ, որչափ սիրելի և որչափ սիրալիր:

### ԻՂՁ ԵՒ ԳՈՂԱՑՈՆՔ

Ով իմ ծայրագոյն բարիս, ես եմ ան թշուառականը, որ քեզի դէմ կռնակ դարձուցի, և ետ կեցայ 'ի քո սիրոյդ. ուստի արժանի չէի զքեզ տեսնելու, և ոչ զքեզ սիրելու: Բայց դուն ինծի խնայելով քեզի չի խնայեցիր, զքեզ 'ի մահ մատնելով անարգական խաչին վրայ. ուստի քու մահդ ինծի յոյս կու տայ՝ որ մէկ օր մը գամ տեսնեմ և վայելեմ քու տեսութիւնդ, և ան ատեն սիրեմ զքեզ յաւիտենայն զօրութենէ: Բայց հիմա որ վտանգի մէջ եմ զքեզ կորսընցընելու յաւիտեան, ինչպէս որ արդէն կորուսի իմ մեղքերովս, ի՞նչ ունիմ ընելու միացած կեանքիս մէջ, նորէն ըզքեզ վշտացընեմ. քաւ լիցի Յիսուս իմ. ես կը ցաւիմ և կը զղջամ կատարեալ ատելութեամբ իմ ըրած չարիքներուս ծայրագոյն կերպով. անհաճոյ է ինծի վիշտն որ քեզի տուի, և կը սիրեմ զքեզ յաւիտենայն սրտէ. միթէ կը վռնտես քեզնէ զայն հոգին որ զղջացեր է, և զքեզ կը սիրէ: Չէ չէ. գիտեմ քու ըսածդ, փրկիչ իմ սիրելի. որ գայ առ իս, ոչ հանից արտաքս[1]: Յիսուս իմ, ես ամէն բան մէկդի կը ձգեմ, և առ քեզ կը դառնամ, քեզի կը փաթթուիմ սրտանց. դուն ալ զիս գրկէ, և սրտիդ հետ միացուր: Ասանկ խօսիլ կը համարձակիմ, վասն զի իմ բանս իմ անհուն բարւոյս հետ է, այսինքն Աստուծոյ, որ իմ սիրոյս համար մահ յանձն առաւ: Փրկիչ իմ սիրելի, տուր յարատեւութիւն 'ի սէր քո: Սիրեցեալ մայր իմ Մարիամ, վասն քու սիրոյդ առ միածինդ առ ինծի համար յարատեւութիւն, ասանկ կը յուսամ և ասանկ պիտի ըլլայ:

[1] Յովհ. Զ. 37:

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Աս երկրիս վրայ աստուածասէր անձանց մեծ վիշտը և նեղութիւնը սա է որ չըլլայ թէ չսիրեն զԱստուած, և չսիրուին Աստուծմէ։ Ոչ գիտէ մարդ, սիրոյ՞ իցէ արժանի եթէ ատելութեան։ Իսկ արքայութեան մէջ ապահով է հոգին, թէ ինքը զԱստուած կը սիրէ, և սիրելի է Աստուծոյ. կը տեսնէ ինքը զինքը որ բոլորովին ընկղմած է 'ի սէրն Աստուծոյ, և Աստուած զինքը ողջագուրեր է իբրև զաւակ սիրելի, և գիտէ որ յաւիտեան աս սէրը չի քակուիր։ Աս երջանիկ բոցը աւելի կը բորբոքէ աղէկ ճանչնալ և աղէկ հասկընալ թէ Աստուած իրեն ինչ բարիք է ըրեր, մարդանալով և մեռնելով մարդկանց համար։ Ի՜նչ մեծ սէր էր հաստատելն զխորհուրդ սուրբ հաղորդութեան. որով զինքը կերակուր կու տայ չնչին որդու մը. ան ատեն յատակ կը տեսնէ հոգին ան ամենայն շնորհքը՝ որ Աստուած ըրեր է իրեն, խալըսելով յամենայն փորձութեանց և 'ի վտանգից կորստեան. ան ատեն կը տեսնէ թէ ան նեղութիւնքը, հիւանդութիւնները, հալածանքները և վնասները որ ինքը դժբախտութիւն և պատիժ Աստուծոյ կը սեպէր, բոլորը նշան սիրոյ են եղեր և Աստուծոյ մէյմէկ նախախնամութիւն զինքը արքայութիւն տանելու համար։ Աւելի կը տեսնէ թէ Աստուած որչափ երկայնմտութեամբ իրեն համբերեր է այնչափ մեղքերէն ետև, և որչափ ողորմութիւն է ցուցեր իրեն՝ շատ լոյս տալով և յիւր սէրը հրաւիրելով։ Կը տեսնէ ալ դէպ 'ի վար ան երջանիկ լեռնէն, թէ որչափ հոգիներ դատապարտուած են 'ի դժոխս քան զինքը պակաս մեղք ունեցող, և զինքը կը տեսնէ փըրկուած և ժառանգ Աստուծոյ, և ապահով ալ է, որ մէյմըն ալ ան բարիքը կորսընցընելիք չունի։

Ուստի երանեալը միշտ պիտի վայելէ ան երջանկութիւնը, որ յաւիտեան ամէն վայրկեան իրեն միշտ նոր պիտի երևնայ. որպէս թէ նոյն ատենը արքայութիւն մտած ըլլար, միշտ կը փափաքի ան ուրախութեան, և միշտ կը վայելէ և միշտ վայելքը ձանձրութիւն չի տար։ Մէկ խօսքով, ինչպէս դատապարտեալքը անօթ են բարկութեամբ լի, սանկ ալ երանեալքը անօթ են ու-

բախտութեամբ լի , անանկ որ մէկ բան մը բաղձալիք չունին ։ Կըսէ սրբուհին Թերեզա թէ աս երկրիս վրայ ալ երբոր Աստուած զմէկը 'ի սեննակ զինուոյ , այսինքն աստուածային սիրոյ կը խօթէ նէ , անանկ հոգևոր և երջանիկ արբեցութիւն կու տայ անոր , որ բնաւ երկրաւոր բանի մը յօժարութիւն չունենար , հապա երբոր արքայութիւն մտնայ նէ . Դաւիթ ըսածն է , յագեսցին նոքա 'ի պարարտութենէ տան քո , և զուղխս փափկութեան քո տացես ըմպել նոցա ։ Ան ատեն երբոր հոգին յայտնապէս տեսնէ և զրկէ ծայրագոյն բարին , անանկ արբեալ կըլլայ սիրով , որ երջանկապէս կընկըղմի յԱստուած . և զինքը բոլորովին կը մոռնայ , և ուրիշ բանի խելքը չի տար , բայց միայն սիրել , օրհնել և գովել ժառանգած անհուն բարին ։

Ուրեմն երբոր զմեզ հոս կը նեղեն աս տեղի խաչերը , զօրանանք համբերութեամբ , և սիրով քաշենք արքայութեան յուսով ։ Սրբուհին Մարիամ եգիպտացի երբոր հարցուց զհայրն Զոսիմոս թէ ինչպէս կրցար համբերել և կենդանի մնալ աս անապատին մէջ , ըսաւ թէ արքայութեան յուսով ։ Երբոր սրբոյն Փիլիպպոսի Ներեան կարդինալութեան պատիւ ուզեցին տալ նէ , վեր նետեց ան գտակը ըսելով թէ արքայութիւն արքայութիւն ։ Եղբայրն Եգիտիոս Ֆրանչիսկանը երբոր արքայութեան անունը կը լսէր նէ , ուրախութենէն գետնէն վեր օդը կը ցատքէր ։ Նոյնպէս մենք ալ երբոր զմեզ կը տեսնենք նեղեալ աշխարհիս թշուառութենէն՝ աչուընիս երկինք վերցընենք , և մենք զմեզ մխիթարենք հառաչելով և ըսելով , արքայութիւն , արքայութիւն . մտմտանք որ եթէ Աստուծոյ հաւատարիմ ըլլանք նէ , մէկ օր մը կը վերջանան աս վիշտերը տառապանքները և վախերը , և կը մտնենք ան երանաւէտ մեր հայրենիքը , ուր ամէն կերպով երջանիկ կըլլանք , երբոր Աստուած հետերնիս է ։ Մեզի կըսպասեն սուրբերը և սուրբ Աստուածածինը , և Յիսուս ալ պսակը ձեռքը կեցած է՝ որ զմեզ մէկմէկ թագաւոր ընէ 'ի յաւիտենից թագաւորութեան , որ է արքայութիւն ։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Տէր իմ Յիսուս, դուն ինծի սորվեցուցիր այսպէս աղօթել, եկեսցէ արքայութիւն քո[1]. ուստի ես ալ գայն կաղաչեմ, որ քու արքայութիւնդ գայ իմ հոգիս, անանկ որ դուն միայն զիս ժառանգես, ես ալ զքեզ ժառանգեմ, իմ ծայրագոյն բարիս: Ով փրկիչ իմ, դուն մէկ բանի մը չխնայեցիր զիս փրկելու համար, և շահելու իմ սիրտս. ուրեմն փրկէ զիս, և իմ փրկութիւնս ըլլայ զքեզ սիրելու համար միշտ և հանապազ հոս և անդին: Ես շատ անգամ քեզմէ երես դարձուցի, այսու ամենայնիւ՝ դուն կիմացընես ինծի թէ չես ուզեր արգողիլ, այլ արժանի կը սեպես ողջագուրել զիս յաւիտեան արքայութիւնը անանկ սիրով, որպէս թէ բնաւ զքեզ վշտացուցած չըլլայի. ես ալ աս գիտնալով կընամ ուրիշ բան սիրել բաց 'ի քէն, տեսնելով ալ որ կուզես արքայութիւնդ ինծի տալ՝ այսչափ անգամ դըժոխքի արժանի ըլլալէս ետև: Ա՜խ, տէր իմ, երանի թէ բնաւ զքեզ վշտացուցած չըլլայի. ա՜խ թէ որ կարենայի նորէն ծնանիլ՝ կուզէի միշտ զքեզ սիրել. բայց ինչ որ եղաւ նէ եղաւ, հիմա ուրիշ բան չեմ կրնար ընել, բայց եթէ քեզի նուիրել մնացած կեանքս: Այո, իսկապէս կը նուիրեմ բոլորովին զիս 'ի սէր քո: Ով երկրաւոր յօժարութիւնք, ելէք գնացէք բովանդակ իմ սրտէս, և տեղիք տուէք Աստուծոյ իմոյ, որ կուզէ զիս բոլորովին ժառանգել: Այո այո, զիս բոլոր ժառանգէ, իմ փրկիչս, տէր իմ և Աստուած իմ, աս օրէս ետև չեմ ուզեր ուրիշ բան մտածել, բայց միայն քեզի հաճոյանալ. օգնէ ինծի տէր քու շնորհօքդ, ինչպէս որ կը յուսամ յարդիւնս քո. միշտ աճեցուր յիս զսէր քո, և զփափաք քու կամքդ ընելու: Արքայութիւն արքայութիւն, երբ պիտի ըլլայ, տէր, որ ըզքեզ երես առ երես տեսնեմ, և զգուեմ և պատուեմ զքեզ առանց վախի մէյմըն ալ ձեռքէ հանելու: Ա՜խ տէր Աստուած իմ, ձեռքդ վրաս ըլլայ՝ որ մէյմըն ալ զքեզ չվշտացընեմ: Ով ամենասրբուհիդ Մարիամ, երբ պիտի ըլլայ որ քու ոտքիդ առջեն ընկած ըլլամ արքայութիւնը. հասիր ինծի օգնութիւն, մայր իմ, մի թողուր որ ես զիս դատապարտեմ, և հեռի ըլլամ քեզմէ և յորդւոյ քումմէ:

1 Ղուկ. ԺԱ. 2:

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Լ.

## ԱՂՕԹՔ

*խնդրեցէք որպէս զի ձեզի տրուի . . . վասն զի ով որ խնդրէ նէ պիտի առնէ[1].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Չէ թէ սա բնաբանիս մէջ, հազար հազար տեղ հին և Նոր կտակարանին կը խոստանայ Աստուած լսել աղաչողին. կարդասցես առ իս և ես լուայց քեզ[2]. կարդասցես առ իս, և ես փրկեցից զքեզ[3]. զոր ինչ խնդրիցէք յինէն, արարից զայն[4]. զոր միանգամ կամիցիք խնդրեցէք և եղիցի ձեզ[5]. ասոնց նման ուրիշ շատ տեղեր ալ: Ուստի կըսէ Թէոդորետոս թէ աղօթքը մէկ է, բայց ամէն բան կրնայ առնել: Սուրբ Բեռնարդոս ալ կըսէ թէ 'ի խնդրելն մեր Աստուած կու տայ ամէն մեր խնդիրքը, կամ զայն որ աւելի մեզի օգտակար կը ճանչնայ: Նայէ ինչ կըսէ մարգարէն, զի դու տէր քաղցր և ուղիղ ես, բազումողորմ որ կարդան առ քեզ[6]: Յակոբոս առաքեալն ալ յորդոր կու տայ ըսելով, եթէ ոք 'ի ձէնջ նուազեալ իցէ յիմաստութենէ, խնդրեսցէ յԱստուծոյ, որ տայ առատապէս և ոչ նախատէ[7]. որպէս թէ Աստուած մեր ըրած յանցանքը մոռցածի պէս ըլլար:

Սուրբ Յովհաննէս Կլիմաքոս կըսէր թէ երկիւղածութեամբ աղօթքը կերպով մը կը բռնադատէ զԱստուած: Տերտուղիանոս ալ կըսէ թէ սա բռնադատութիւնս հաճոյական է Աստուծոյ. պատճառն է, կըսէ

1 խնդրեցէք և տացի ձեզ . . . զի ամենայն որ խնդրէ առնու: Ղուկ. ԺԱ. 9. 10:
2 Երեմ. ԼԳ. 3:
3 Սղ. ԽԹ. 15:
4 Յովհ. ԺԴ. 13:
5 Յովհ. ԺԵ. 7:
6 Սղ. ՁԵ. 5:
7 Յակ. Ա. 5:

սուրբն Օգոստինոս, վասն զի Աստուած ինքիրմէ աւելի կուզէ առատաձեռնել մեզի, քան որ մենք կը ցանկանք ձեռք բերել։ Ատոր պատճառն ալ է սրբոյն Լեւոնի ըսածին պէս, վասն զի Աստուծոյ բնութիւնն է բարութիւն, և կուզէ հաղորդել ուրիշներուն իր բարութիւնը։ Անոր համար կըսէր սրբուհին Մարիամ մագդաղենացին տէփացեան, թէ Աստուած զինքը պարտական կը սեպէ ողորմել աղաչողին, վասն զի ասով ճամբայ կը բացուի՝ որ իր բաղձանքը կատարուի սփռելու մեզի իր շնորհքը։ Դաւիթ ալ կըսէ թէ յաւուր յորում կարդացից առ քեզ, ահա ծանեայ՝ զի Աստուած իմ ես դու [1], այսինքն բարի և բարերար։ Աղէկ կըսէ սուրբն Բեռնարդոս թէ ոմանք յանիրաւի կը գանգատին թէ Աստուած իրենց կը պակսի. ուր ընդ հակառակն Աստուած աւելի կը գանգատի, թէ չեն գար շնորհք խնդրելու իրմէ։ Յարմար կուգայ Քրիստոսի ըսածն ալ աշակերտաց. մինչև ցայժմ ոչ ինչ խնդրեցիք յանուն իմ, խնդրեցէք և առնուցուք... զի ուրախութիւնն ձեր լցեալ եղիցի [2]։

Անոր համար հին միայնակեացք կըսէին՝ թէ չիկայ ուրիշ աւելի օգտակար բան փրկուելու համար, ինչպէս անդադար աղօթել ըսելով Աստուած, յօգնել ինձ նայեաց, և տէր յընկերել ինձ փութա [3]։ Հայրն Պօղոս Սէյնէրի իրեն համար կըսէ, թէ մտածականիս ատենը նախ խզձեր կընէի, բայց ետքը տեսնելով որ աղօթքի պէս զօրաւոր բան չիկայ, աղօթել կը սիրէի։ Ուրեմն մենք ալ միշտ աստանկ ընենք. Աստուած մը ունինք՝ որ զմեզ չափէ դուրս կը սիրէ, և փոյթ ունի, մեր փրկութեանը, ուստի միշտ պատրաստ կեցած է մեր աղաչանքը լսելու։ Ոսկեբերանի ըսածին պէս, աշխարհիս թագաւորները քիչ մարդու թող կու տան իրենց հետ խօսելու, իսկ Աստուած ամէն ուզողին։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած յաւիտենական, քեզ երկիր պագանեմ, և գոհանամ վասն ամենայն երախտեաց քոց առ իս, զիս ստեղծելուդ համար և գնելուդ արեամբ միածնիդ, զիս քրիստոնեայ ընելուդ, ինծի այնչափ ան-

1 Սղ. ԾԵ. 10։ 2 Յովհ. ԺԶ. 24։ 3 Սղ. ԿԹ. 2։

պատմ հանդերձելոց մեղացս մէջ, և այնչափ անգամ ներելոյդ։ Ա՜խ, Աստուած իմ, ես չէի լինար բընաւ դքեզ վշտացընելու վտանգի մէջ, թէ որ փորձութեանցս ատենը առ քեզ դիմէի։ Շնորհակալ եմ որ հիմա լոյս տուիր ինծի ճանչնալու որ իմ բոլոր փըրկութիւնս ասով կըլլայ որ աղօթք ընեմ, և քու շնորհքըդ խնդրեմ։ Արդ կաղաչեմ անուամբ Յիսուսի Քրիստոսի փրկչին իմոյ, որ պարգևես ինծի մեծ ցաւ մը մեղացս վրայ, և սուրբ յարատևութիւն 'ի շնորհս քո, բարի մահ և արքայութիւն, ամէն բանէ վեր՝ քու սէրդ, և կատարեալ համակերպութիւն ընդ ամենասուրբ կամս քո։ Գիտեմ որ ես աս շնորհքիս արժանի չեմ, բայց դուն խոստացար անոր՝ որ կը խնդրէ արդեամբք միածնիդ Յիսուսի Քրիստոսի, ես ալ անով կը խընդրեմ և կը յուսամ։ Սուրբ Աստուածածին, քու բարեխօսութիւնդ կընդունի ինչ որ ուզես նէ, բարեխօս եղիր ինծի համար։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Աղօթքին հարկաւորութիւնն ալ մտուընիս բերենք։ Սուրբ Յովհան ոսկեբերան կըսէ թէ ինչպէս մարմինը առանց հոգւոյ մեռած է, ասանկ ալ հոգին մեռած է առանց աղօթքի. դարձեալ կըսէ, թէ ինչպէս ջուրը հարկաւոր է բուսոց և տնկոց որ չի չորնան, ասանկ ալ աղօթքը հարկաւոր է՝ որ մեղք չիյնանք։ Գիտենք որ Աստուած կամի զամենայն մարդիկ զի կեցցեն[1], և չուզեր որ մէկը կորսուի, երկայնամիտ լինի առ ձեզ, քանզի ոչ կամի եթէ ոք կորիցէ, այլ զամենեցուն հասանել յապաշխարութիւն[2]։ Բայց կուզէ որ մենք ալ խնդրենք զշնորհս հարկաւորս առ մեր փրկութիւն։ Վասն զի մէկ կողմանէ չենք կրնար Աստուծոյ պատուիրանքը պահել ու փրկուիլ առանց միանգամայն իրեն օգնականութեանը. և մէկալ կողմանէ հասարակ կերպով խօսելով, չուզեր իր շնորհքը տալ առանց մեր խնդրելուն։ Ասոր համար ըսաւ Տրիդենտեան սուրբ ժողովը, թէ Աստուած անկարելի բան չի հրամմեր. հապա հրամմելով կազդէ որ կրցածդ ընես, չի կրցածդ

1 Ա․ Տիմ․ Բ․ 4։ 2 Բ․ Պետ․ Գ․ 9։

խնդրես, ինքն ալ կօգնէ որ կարենաս։ Սուրբ Օգոստինոս ալ կըսէ թէ յայտնի է որ Աստուած ոմանց աղօթք չըրած բաները կու տայ, ինչպէս սկիզբն հաւատոյ. աղօթք ընողներուն ալ՝ ուրիշ բան պատրաստեր է, ինչպէս յարատեւութիւն մինչեւ 'ի մահ։

Ասկից կը հետեւցընեն աստուածաբանք, ինչպէս նաեւ սուրբն Բարսեղ, սուրբն Ոսկեբերան, Կղեմէս աղեքսանդրացին եւ ուրիշները, թէ աղօթքը չափահասներուն հարկաւոր է հարկաւորութեամբ միջոցի. անանկ որ առանց աղօթք ընելու անկարելի է փրկութեան հասնիլ. եւ աս է բան հաւաստոյ, ըստ Լեքսիոսի գիտնականին, թէ աղօթքը չափահասաց հարկաւոր է փրկութեան համար, ինչպէս որ կիմացուի 'ի սուրբ գրոց։

Յայտնի է գրոց խօսքը թէ պարտ է յամենայն ժամ յաղօթս կալ[1]. յաղօթս կացէք, զի մի մտանիցէք 'ի փորձութիւն[2]. կամ աղօթս արարէք, զի մի անկանիցիք 'ի փորձութիւն. կամ խնդրեցէք եւ առնուցուք[3]. կամ անդադար աղօթս արարէք[4]։ Աս բաները ըստ հասարակ կարծեաց վարդապետաց՝ սրբոյն Թովմայի հետ, պատուիրան մէջ կը բերեն՝ պարտաւորիչ ընդ ծանր յանցանօք, մանաւանդ իրեք դիպուածի մէջ. նախ երբոր մարդս մեղքի մէջ է, երկրորդ 'ի վտանգի մահուան, եւ երրորդ 'ի ծանր վտանգի մեղանչելոյ։ Եւ հասարակօրէն կուսուցանեն վարդապետք թէ ով որ ամիսն անգամ մը կամ շատ շատ երկու ամիսն անգամ մը աղօթք չընէ նէ, մահուչափ մեղքէն ազատ չըլլար։ Պատճառն է, վասն զի աղօթքը միջոց մըն է որ առանց անոր չըլլար ունենալ հարկաւոր օգնութիւններ փրկութեան։

Խնդրեցէք եւ առնուցուք. ուրեմն սուրբ Թերեզիայի ըսածին պէս, որ ոչն խնդրէ՝ ոչ առնու. ինչպէս որ գրած ալ է, ոչ ունիք, վասն զի ոչ խնդրէք[5]։ Մանաւորապէս հարկաւոր է աղօթքը՝ ժուժկալութեան առաքինութիւն ունենալու համար. գիտացի եթէ ոչ այլ ազգ լինիցիմ ժուժկալ, բայց եթէ Աստուած տայցէ...

1 Ղուկ. ԺԸ. 1։
2 Ղուկ. ԻԲ. 40։
3 Յովհ. ԺԶ. 24։
4 Ա. Թես. Ե. 17։
5 Յակ. Դ. 2։

անկայ առաջի տեառն, և աղաչեցի զնա յամենայն սրտէ իմմէ [1]։ Վերջապէս աղօթասէրը ստոյգ կը փըրկուի. աղօթք չընողը ստոյգ կը դատապարտուի։ Ամէն փրկեալք աղօթքով փրկուեցան, և ամէն դատապարտեալք աղօթք չընելով դատապարտուեցան. և աս է որ պիտի ըլլայ յաւիտեան մեծ յուսահատութիւն 'ի դժոխս, թէ այնչափ դիւրին էր աղօթքով երջանկապէս փրկուիլ, և հիմա ատեն չկայ աղօթք ընելու։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ո՜հ փրկիչ իմ, ինչպէս կրցայ առաջ ապրիլ զքեզ չյիշելով. դուն պատրաստ կեցեր էիր ամէն շնորհք ինծի տալու, որն որ խնդրէի նէ, միայն կըսպասէիր որ ես ուզեմ. իսկ ես սոսկ կը նայէի զգայութիւնքս հաճեցընել, և անհոգ էի կենալով զուրկ 'ի քո սիրոյդ և 'ի քո շնորհացդ։ Ո՜հ, տէր իմ, մի յիշեր իմ այնչափ ապերախտութիւններս, գթա և ողորմէ ինծի, ներէ այնչափ անզգամութեանցս, և տուր յարատեւութիւն 'ի բարին, տուր շնորհք խնդրելու միշտ քու օգնականութիւնդ մէյմըն ալ զքեզ չվշտացընելու Աստուածդ հոգւոյ իմոյ, մի թողուր որ անհոգ ըլլամ աս բանիս մէջ, ինչպէս ինչուան հիմա եղայ. տուր ինծի լոյս և ուժ, որ միշտ զիս քեզի յանձնեմ, մանաւանդ երբոր զիս թշնամին կը փորձէ զքեզ վշտացընելու։ Ինծի աս շնորհքս ըրէ, Աստուած իմ, վասն արդեանց Քրիստոսին քո, և վասն սիրոյդ զոր ունիս առ նա։ Հերիք է, տէր իմ, որ զքեզ չիդառնացընեմ, ինչպէս մինչև հիմա դառնացուցի, ասկից ետև մնացած կեանքիս մէջ ըզքեզ սիրել կուզեմ. տուր ինծի քու սուրբ սէրդ՝ որ ինծի յիշեցընէ զքեզ խնդրել և քու օգնութիւնդ, քանի որ զքեզ կորսնցընելու մեղօք վտանգին մէջ կը գըտնուիմ։ Մարիամ մայր իմ, յոյս և ապաւէն, քեզնէ կը յուսամ աս շնորհքս, զիս միշտ քեզի յանձնելու և քու միածնիդ 'ի փորձութիւնս իմ։ Լսէ ինծի, դշխոյ իմ, վասն սիրոյ քո առ Յիսուս։

1 Իմաստ. Ը. 21։

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Կը մնայ որ նայինք աղօթքին պայմանները. շատ մարդ աղօթք կընէ, և խնդիրը չառներ. պատճառը կըսէ սուրբ գիրքը, խնդրէք և ոչ առնուք, վասն զի չարաչար խնդրէք[1]։ Առջի աղօթք ընելու նախ և առաջ խոնարհութիւն պէտք է. տէր ամբարտաւանից հակառակ կայ, տայ շնորհս խոնարհաց[2]։ Սիրաքայ ըսածին պէս, աղօթք տառապելոց անցցեն... և ոչ կացցեն 'ի բաց, մինչև այց արասցէ բարձրեալն[3], ան ալ թէ և առաջուց մեղաւոր եղած ալ ըլլայ. վասն զի զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ[4]։ Երկրորդ՝ հաւատքով և յուսով վստահ ըլլալ պէտք է. ո՞ հաւատաց 'ի տէր և յամօթ եղև[5]։ Ասոր համար Յիսուս մեզի սորվեցուց, որ աղօթք և խնդիրք ընելու ատեն, հայր անունով կարդանք առ Աստուած, հայր մեր ըսելով, որպէս զի այնու համարձակութեամբ դիմենք որով զաւակը հօրմէն բան կուզէ, ասով կըլլայ ամէն ուզածը առնել. զամենայն ինչ վասն որոյ աղօթս արարեալ խնդրիցէք, և հաւատայցէք թէ առնուցուք, եղիցի ձեզ[6]։ Արդ կըսէ սուրբն Օգոստինոս թէ ո՞վ կրնայ կասկածիլ թէ պարապ կելլէ, երբոր ճշմարտութիւնը խօսք կու տայ։ Սուրբ գրոց ըսածին պէս, ոչ իբրև զմարդ է Աստուած 'ի զարթնուլ կամ 'ի ստել, և ոչ իբրև զորդի մարդոյ 'ի սպառնալ կամ 'ի փոփոխել, խօսեսցի և ոչ կացուսցէ կամ արասցէ[7]. և նոյն Օգոստինոսին ըսածին պէս. չէր զմեզ յորդորեր որ խնդրենք, թէ որ տալու կամք չունենար նէ, մանաւանդ թէ կըսէ, խոստանալով զինքը պարտական ըրաւ։

Բայց ըսէ մէկը թէ ես մեղաւոր եմ, ուստի արժանի չեմ որ Աստուած ինծի լսէ։ Բայց պատասխան կու տայ սուրբն Թովմաս թէ աղօթքը՝ խնդիրք ընելու ատեն՝ մեր արժանաւորութեան վրայ չի կայանար, այլ

1 Յակ. Դ. 3։
2 Նոյն. Դ. 6։
3 Սիր. ԼԵ. 21։
4 Սղ. Ծ. 19։
5 Սիր. Բ. 11։
6 Մարկ. ԺԱ. 24։
7 Թւոց. ԻԳ. 19։

միայն Աստուծոյ ողորմութեանը վրայ։ Քրիստոս տէրն մեր ալ ըսաւ թէ ամենայն որ խնդրէ առնու[1]. որ կը մեկնուի թէ ամէն մարդ եթէ արդար, և եթէ մեղաւոր։ Բայց մեր փրկիչն աւելի կապահովցընէ զմեզ ըսելով թէ ամէն ամէն ասեմ ձեզ, զոր ինչ խնդրիցէք 'ի Հօրէ յանուն իմ, տացէ ձեզ[2]։ Որպէս թէ ըսէր, ով մեղաւորք, թէ որ դուք արժանաւորութիւն չունիք նէ, ես ունիմ իմ արդիւնքովս Հօրս առջևը, ուրեմն խնդրեցէք իմ անունովս, և ես խօսք կու տամ որ ինչ որ ուզէք նէ՝ կառնէք։ Ուր հասկընալու է որ այս խոստմունքը ժամանակաւոր բաներու համար չէ, ինչպէս առողջութիւն, հարստութիւն, և այլն, վասն զի այսպիսի բարիքները շատ անգամ չի տար Աստուած, երբոր վնաս կըլլան մեր յաւիտենից փրկութեանը, ինչպէս սուրբն Օգոստինոս ալ կըսէ թէ հիւանդին օգտակար բանը բժիշկը աւելի գիտէ՝ քան թէ հիւանդը, ուստի կըսէ թէ Աստուած ողորմութիւն ընելով՝ ան բանը չի տար, ինչ որ ուրիշի մը բարկանալով կու տայ։ Ասոր համար մարմնաւոր բարիքը միշտ պիտի խընդրենք Աստուծմէ սա թէութեամբ որ թէ որ հոգւոյն ալ օգուտ են. իսկ ընդ հակառակն հոգևոր բարիքը, ինչպէս թողութիւն մեղաց, յարատևութիւն, Աստուծոյ սէրը, և ասոնց նման բաները, բացարձակ պիտի խնդրենք հաստատուն հաւատքով թէ կառնենք, ինչպէս ինքը Քրիստոս տէրն մեր ըսաւ. զի եթէ դուք որ չարքեր էք, գիտէք պարգևս բարիս տալ որդւոց ձերոց, որչափ ևս առաւել հայրն ձեր յերկնից տացէ բարիս այնոցիկ որ խնդրեսցեն 'ի նմանէ[3]։

Ի վեր քան զամենայն պէտք է յաղօթս շարունակութիւն։ Կոռնելիոս Ալափիտէ կըսէ թէ Աստուած կուզէ որ մենք յարատևենք յաղօթս՝ մինչև թախանձել և ձանձրացուցանել զինքը։ Աս է գրոց խօսքն ալ թէ պարտ է յամենայն ժամ յաղօթս կալ[4]... արթուն կացէք, յամենայն ժամ աղօթս արարէք[5]. անդադար աղօթս արարէք[6]։ Աս է ան կրկին կրկին ըսելն ալ. խնդրեցէք և առնուցուք, հայցեցէք և գտջիք, բախե-

1 Ղկ. ԺԱ. 10։
2 Յովհ. ԺԶ. 23։
3 Ղկ. ԺԱ. 13։
4 Ղկ. ԺԸ. 1։
5 Ղկ. ԻԱ. 36։
6 Ա. Թես. Ե. 17։

ցէք և բացցի ձեզ[1]։ Բաւական չէր խնդրեցէք ըսելը. բայց Քրիստոս ուզեր մեզ ասով հասկըցընել ուզեց որ մուրացկաններու պէս պէտք է ընել, որ չեն դադրիր ուզելէն, վրայ տալէն, դուռը չաղելէն, մինչև որ ողորմութիւն առնեն։ Մանաւանդ վախճանական յարատևութիւնը անանկ շնորհք մըն է, որ չառնուիր առանց շարունակ աղօթքի։ Ուստի կըսէ Օգոստինոս, թէ Աստուծոյ աս պարգևը աղօթքով և պաղատանքով միայն կըլլայ ձեռք ձգել։ Ապա ուրեմն միշտ աղօթենք, և աղօթքը ձեռքէ չձգենք, թէ որ փրկուիլ կուզենք նէ։ Խոստովանահայրք ալ, քարոզիչք ալ, թէ որ հոգւոց փրկութիւնը կուզեն, անդադար պէտք է յորդորեն աղօթք ընելու։ Ազէկ կըսէ սուրբն Բեռնարդոս, թէ շնորհք խնդրենք և Մարիամու ձեռքով խնդրենք, վասն զի ով որ իրմէ խնդրէ կը գտնէ, և չի կրնար դատարկ ելլել։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Աստուած իմ, ես յոյս ունիմ որ ինծի թողութիւն տուեր ես, բայց իմ թշնամիքս չեն դադրիր ինծի հետ կռուելէն մինչև 'ի մահ. թէ որ դուն ինծի չօգնես, ես նորէն գիս կը կորսընցընեմ։ Վասն արդեանց օծելոյ քո Յիսուսի Քրիստոսի կը խնդրեմ սուրբ յարատևութիւն. մի թողուր գիս մեկնիլ 'ի քէն. նոյն շնորհքը կը խնդրեմ անոնց ամենուն ալ համար որ հիմա 'ի շնորհս քո են։ Յոյսս եմ ես՝ ապաւինեալ 'ի խոստմունս քո, թէ յարատևութիւն կու տաս ինծի, թէ որ ես միշտ խնդրեմ նէ. միայն աս բանէս կը վախնամ որ չըլլայ թէ փորձութեանս ատենը անհոգանամ դիմել 'առ քեզ, և նոյնպէս նորէն իյնամ։ Ուստի շնորհք կը խնդրեմ, որ աղօթքը ձեռքէ չիթողնեմ. տուր որ յառիթս մեղաց միշտ քեզի դիմեմ, գիս քեզի յանձնեմ, և յօգնութիւն կարդամ զսուրբ անունն Յիսուսի և Մարիամու։ Աստուած իմ, ասանկ կառաջադրեմ և ասանկ կը յուսամ ընել քու շնորհքովդ. լսէ ինծի, տէր իմ, վասն սիրոյ Յիսուսի Քրիստոսի օծելոյ քո։ Մարիամ մայր իմ, խնդրէ ինծի համար, որ 'ի վտանգս կորուսանելոյ զԱստուած՝ միշտ դիմեմ առ քեզ և առ քո միածինդ։

[1] Ղկ. ԺԱ. 9։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԼԱ·

## ՅԱՐԱՏԵՒՈՒԹԻՒՆ

*Ով որ մինչուան ծայրը համբերէ, անիկայ պիտի փրկուի*[1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ըրած է սրբոյն Հերոնիմոսի թէ սկսանիլն բազմաց է, և հանապազորդելն սակաւուց։ Աղէկ սկսան Սաւուղ, Յուդա, Տերտուղիանոս, բայց ետքը վատթարացան. վասն զի չյարատևեցին 'ի բարին։ Ուստի կըսէ նոյն սուրբն Հերոնիմոս թէ քրիստոնէիցմէ ըսկիզբն չի փնտռուիր, այլ կատարած, վասն զի կատարածը վարձք կառնէ, վախճանը կը պսակէ. ուստի Աստուած մեզմէ չէ թէ միայն բարի կեանք սկըսիլը, ա՛յլ և կատարելը կուզէ։ Աս է սրբոյն Պոնաւենդուրայի ըսածն ալ, միայն յարատևութիւնն պսակեսցի. ուստի սուրբն Լաւրենտիոս Յուստինեանն ալ զյարատևութիւնը կը կոչէ դուռն երկնից։ Ուրեմն չի կրնար արքայութիւն մտնել, ով որ մտնելու դուռը չի գտներ նէ։ Ով եղբայր, դուն հիմա մեղքէն ետ կեցեր ես, և իրաւամբք կը յուսաս որ թողութիւն առած ես, ուրեմն Աստուծոյ բարեկամ ես. բայց գիտցած ըլլաս որ դեռ ապահով չես։ Ո՛հ, Ե՛րբ կրնաս ապահով ըլլալ. երբոր յարատևես մինչև 'ի վերջը. որ համբերեսցէ 'ի սպառ, նա կեցցէ։ Բարի վարք սկսար, փառք տուր Աստուծոյ. բայց նայէ, ի՛նչ կըսէ քեզի սուրբն Բեռնարդոս. վարձք կը խոստացուի սկսողներուն, բայց կը տրուի յարատևողներուն։ Բաւական չէ վազելը դէպ 'ի յաղթանակը, պէտք է վազես մինչև որ առնես, կըսէ առաքեալը. այնպէս ընթացարուք զի հասանիցէք[2]։

1 Որ համբերեսցէ 'ի սպառ, 2 Ա. Կոր. Թ. 24։
նա կեցցէ։ Մատթ. ԻԴ. 13։

Արդ որովհետև ձեռք զարկեր ես մաճին , սկսեր ես աղէկ ապրիլ , բայց հիմա աւելի պիտի վախնաս և դողաս . ահիւ և դողութեամբ զանձանց փրկութիւն գործեցէք[1] : ինչո՞ւ համար ըսես նէ , վասն զի Աստուած պահէ՝ թէ որ ետեւդ նայիլ ուզես և վատթար կեանքդ դառնաս , Աստուած զքեզ արքայութենէ դուրս կընեմ կըսէ . ոչ ոք է որ արկանիցէ ձեռն զմաճով , և հայիցի յետս , եթէ յաջողեալ իցէ արքայութեան Աստուծոյ[2] . հիմա Աստուծոյ շնորհքով նայէ որ չար աուիթներէ փախչիս , սուրբ խորհուրդներուն ստէպ մօտչիս , ամէն օր մտածական ընես : Երանի քեզի թէ որ անպակաս ասոնք ընես . և ասանկ ընելով Քրիստոս երբոր դատաստանի կու գայ , զքեզ կը գտնէ իր ըսածին պէս . երանի ծառային այնմիկ զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս[3] : Բայց միտքդ մի դներ թէ հիմա որ զքեզ Աստուծոյ ծառայելու տուեր ես նէ , իբր թէ լմնցած կամ պակսած են փորձութիւնք . նայէ ինչ կըսէ հոգին սուրբ . եթէ մերձենաս ծառայել Աստուծոյ , պատրաստեա զանձն քո ամենայն փորձութեան[4] : Գիտցիր որ հիմա աւելի քան զուրիշ ատեն պիտի պատրաստուիս 'ի կռիւ , վասն զի թշնամիդ աշխարհք , սատանայ և մարմին՝ հիմա շատ աւելի կը զինուորին քեզի դէմ ելլելու , և կորսընցընել տալու վաստըկածդ : Դիոնեսիոս կարդուսեանին ըսածին պէս , որչափ որ մէկը աւելի կը ջանայ Աստուծոյ ծառայել , այնչափ թշնամին անոր դէմ կը խստանայ . զայս տեղնիտեղը կը բացատրէ աւետարանը . յորժամ այսն պիղծ ելանիցէ 'ի մարդոյ , շրջի ընդ անջրդին տեղիս խնդրէ հանգիստ , և իբրև ոչ գտանէ , ասէ . դարձայց անդրէն 'ի տուն իմ ուստի ելի . . . յայնժամ երթայ և առնու եօթն այլ այս չար ևս քան զինքն , և մտանէ բնակէ անդ . և լինի յետինն մարդոյն այնորիկ չար քան զառաջինն[5] :

Ուրեմն աղէկ նայէ թէ ինչ զէնք ունիս դէմ դնելու և զքեզ պաշտպանելու ատ թշնամիներուդ դէմ , և զքեզ Աստուծոյ շնորհացը մէջ պահելու : Սատա-

1 Փիլ. Բ. 12:
2 Ղկ. Թ. 62:
3 Մտթ. ԻԴ. 46:
4 Սիր. Բ. 1:
5 Ղկ. ԺԱ. 24. 26:

նային յաղթելու՝ աղօթքին պէս ուրիշ աղէկ զէնք չի֊կայ։ Ցիչէ Պօղոս առաքելոյն ըսածը, ոչ է մեզ պատերազմ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս[1]. որով կուզէ զմեզ արթընցընել թէ մենք մեզմէ ուժ չունինք դէմ դնելու ատիշխանութեանցը, ուստի կարօտ ենք Աստուծոյ օգնականութեանը։ Տես ինքը ինչ կըսէ. յամենայնի կարող եմ այնու՝ որ զօրացոյցն զիս[2]. մենք ամէնքս ալ անանկ պիտի ըսենք. բայց աս օգնութիւնս կը տրուի միայն աղօթքով խնդրողին. խնդրեցէ.ք և առնուցուք[3]։ Ուստի չապաւինինք մեր առաջագրութեանը, չէ նէ կը կորսուինք. բովանդակ մեր վստահութիւնը, երբոր սատանան զմեզ կը փորձէ, դնենք Աստուծոյ օգնականութեանը վրայ, յանձնելով զմեզ Յիսուսի և ամենասուրբ կուսին։ Եւ աս մասնաւորապէս ան ատեն պիտի ընենք, երբոր մարմնոյ փորձութիւն քաշենք նէ, վասն զի աս փորձութիւնը ամենէն աւելի վախնալու բանն է, և ասով յաղթող կըլլայ սատանան։ Մենք մեզմով ուժ չունինք մաքրութիւն պահել, Աստուած պիտի տայ։ Սողոմոնին ըսածին պէս, գիտացի թէ ոչ այլ ազգ լինիցիմ ժուժկալ, բայց եթէ Աստուած տայցէ . . . անկայ առաջի տեառն, և աղաչեցի զնա յամենայն սրտէ իմմէ[4]։ Ուրեմն այնպիսի փորձութեան ատեն պէտք է շուտով դիմել առ փրկիչն Յիսուս, և առ ամենասրբուհի մայր նորա, կարդալով նոյն ատեն իրենց սուրբ անունը, Յիսուս և Մարիամ. այսպէս ընողը կը յաղթէ, չընողը կը կորսուի։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Մի ընկէնուր զիս տէր յերեսաց քոց[5]։ Աստուած իմ, գիտեմ որ դուն զիս երեսէ չես ձգեր թէ որ ես առաջ քեզ չթողում նէ. և ասկից կը վախնամ իմ տկարութիւնս փորձով գիտնալուս համար։ Տէր, դուն պիտի տաս ինծի ան ուժը՝ որ պէտք է գժոխոց դէմ, որ կուզէ զիս նորէն գերի ընել իրեն։ Աս բանս կը խընդրեմ վասն սիրոյ օծելոյ քո Յիսուսի։ Տէր, ով փրկիչ

1 Եփես. Զ. 12։
2 Փիլ. Դ. 13։
3 Յովհ. ԺԶ. 24։
4 Իմաստ. Ը. 21։
5 Սղ. Ծ. 13։

*իմ, մէկ մշտնջենաւոր հաշտութիւն մը իմ և քու մէջդ, անանկ որ յաւիտեան չիքակուի, և ասոր համար տուր ինծի քու սուրբ սէրդ. ով որ չիսիրեր մեռած է։ Աս թշուառ մահէն դուն զիս պիտի ազատես, Աստուած հոգւոյ իմոյ. գիտես որ ես արդէն կորսուած էի. բովանդակ քու բարութիւնդ եղաւ որ զիս աս վիճակս բերաւ, և կը յուսամ մնալ 'ի շնորհս քո։ Ուրեմն թող մի տար, փրկիչ իմ, վասն դառն մահուանդ զոր կրեցիր ինծի համար, որ մէյմըն ալ իմ կամօքս դառնամ և զիս կորսընցընեմ։ Ես զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր, յոյս ունիմ որ միշտ կապուած մնամ աս սուրբ սիրով, և անանկ կապուած մեռնիմ, և կապուած մնամ յաւիտեան։ Ով տիրամայր, որ զքեզ կը կոչես մայր յարատեւութեան, աս մեծ շնորհքս քու ձեռքովդ կը բաշխուի, զայդ քեզմէ կը խնդրեմ, և քեզմով կը յուսամ։*

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

*Հիմա տեսնենք թէ ինչպէս պէտք է յաղթել աշխարհի։ Իրաւ որ մեծ թշնամի է սատանան, բայց աշխարհքս աւելի չար է։ Թէ որ սատանան չիզօրանար աշխրքի և գէշ մարդկանց ձեռքով, որոնցմով աշխարհք կիմացուի, չէր յաջողէր իր յաղթանակը։ Մեր փրկիչը ոչ այնչափ զգուշացոյց զմեզ 'ի դիւաց, որչափ 'ի մարդկանէ. զգոյշ լինիջիք 'ի մարդկանէ[1], կըսէ. կուզէ իմանալ թէ շատ անգամ աւելի գէշ են մարդիկ քան զդեւս. վասն զի աղօթքով և Յիսուսի ու Մարիամու սուրբ անունը տալով սատանաները կը փախչին, բայց երբոր չար ընկերները զմէկը կը փորձեն մեղանչելու, ան ալ թէ որ հոգևոր խօսք մը զուրցէ նէ, անոնք չէ թէ կը փախչին, հապա աւելի կը փորձեն զանի և ծաղր կընեն, ըսելով թէ դու ինչ կոպիտ և փուճ մարդ ես եղեր, բանի մը չեկող. ուրիշ բան ալ չկարենան ըսել նէ՝ կեղծաւոր է կըսեն և սուրբ կը ձեւանայ։ Ոմանք ալ տկար գտնուելով և չուզելով ալ լսել աս նախատինքներն ու անարգանքները, ողորմելաբար կը միաբանին սադայէլի աս պաշտօնէից հետ, և կը դառնան 'ի փրախածն։ Ով դու եղբայր, միտքդ դիր որ եթէ կուզես*

1 Մատ. Ժ. 17։

բարի կեանք ունենալ, 'ի հարկէ զքեզ ծաղր պիտի ընեն, և վար պիտի զարնեն չարերը. սուրբն պիղծ թուի չարագործաց [1], կըսէ սուրբ գիրքը։ Ով որ չարութեամբ կապրի, չի կրնար աղէկ ապրողները քաշել. ինչո՞ւ. վասն զի աղէկներուն վարքը ամէն օր յանդիմանութիւն է չարերուն, ուստի ուրիշներուն բարի վարքով խղճմտանքի խայթ չիքաշելու համար, կուզեն որ անոնք ալ իրենց նման գէշ ըլլան։ Ցիշէ առաքելոյն խօսքն ալ որ կըսէ. ամենքին որ կամիցին աստուածպաշտութեամբ կեալ 'ի Քրիստոս Յիսուս, 'ի հալածանս կացցեն [2]։ Բոլոր սուրբերը հալածուեցան. և ո՞վ կար աւելի սուրբ քան զփրկիչն մեր, և ահա աշխարհք զինքն ալ հալածեց մինչև 'ի մահ խաչին։

Աս բանիս ճար չիկայ, վասն զի աշխրքիս ամէն մէկ սկզբունքը հակառակ են Քրիստոսի սկզբանցը. ան որ բան մը կը սեպուի աշխրքիս աչքին, խենթութիւն է Քրիստոսի առջև. զի իմաստութիւն աշխարհիս այսորիկ յիմարութիւն է առաջի Աստուծոյ [3]։ Ասոր ներհակ՝ աշխարհքս խենթութիւն կը սեպէ Քրիստոսի աղէկ սեպած բանը. ինչպէս է խաչ, ցաւ, արհամարհութիւն. զի ճառ խաչին կորուսելոցն յիմարութիւն է։ Բայց մխիթարուինք, երբոր չարերը զմեզ կանիծանեն և կը բամբասեն ու կանարգեն, Աստուած կօրհնէ և կը գովէ. Նոքա անիծանեն և դու օրհնեսցես [4]։ Հերիք չէ՞ մեզի որ Աստուած, սուրբ կոյսը, հրեշտակները, ամենայն սուրբք և ամէն աղէկ մարդիկ գովեն զքեզ. թող մեղաւորները ինչ որ կուզեն նէ ըսեն, և զմեզ հալածեն, որով հաճոյ կըլլանք Աստուծոյ, և աս է Աստուծոյ ծառայից ուզածը։ Որչափ աւելի ընդդիմութիւն և նեղութիւն քաշելով գործենք զբարին, 'այնչափ աւելի Աստուծոյ հաճոյական բան կընենք, և մեզի վարձք կը դիզենք։ Անանկ դնենք թէ աշխրքիս մէջ ուրիշ մարդ չըլլար, բայց միայն Աստուած և մենք։ Երբոր աս չարերը զմեզ ծաղր կընեն, զմեզ Աստուծոյ յանձնենք և գոհանանք զԱստուծոյ, որ մեզի տուեր է ան լոյսը՝ որ ան ողորմելիները չունին, և մենք մեր բանը տեսնենք։ Ամօթ չիսեպենք

1 Առակ. ԻԵ. 15։
2 Բ. Տիմ. Գ. 12։
3 Ա. Կոր. Գ. 19։
4 Սղ. ՃԸ. 28։

իմ, մէկ մշտնջենաւոր հաշտութիւն մը իմ և քու մէջդ, անանկ որ յաւիտեան չիքակուի, և ասոր համար տուր ինծի քու սուրբ սէրդ. ով որ չիսիրեր մեռած է: Աս թշուառ մահէն դուն զիս պիտի ազատես, Աստուած հոգւոյ իմոյ. գիտես որ ես արդէն կորսուած էի. բովանդակ քու բարութիւնդ եղաւ որ զիս աս վիճակս բերաւ, և կը յուսամ մնալ 'ի շնորհս քո: Ուրեմն թող մի տար, փրկիչ իմ, վասն դառն մահուանդ զոր կրեցիր ինծի համար, որ մէյմըն ալ իմ կամօքս դառնամ և զիս կորսընցընեմ: Ես զքեզ կը սիրեմ ամէն բանէ վեր, յոյս ունիմ որ միշտ կապուած մնամ աս սուրբ սիրով, և անանկ կապուած մեռնիմ, և կապուած մնամ յաւիտեան: Ով տիրամայր, որ զքեզ կը կոչես մայր յարատեւութեան, աս մեծ շնորհքս քու ձեռքովդ կը բաշխուի, զայդ քեզմէ կը խնդրեմ, և քեզմով կը յուսամ:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Հիմա տեսնենք թէ ինչպէս պէտք է յաղթել աշխարհի: Իրաւ որ մեծ թշնամի է սատանան, բայց աշխարհքս աւելի չար է: Թէ որ սատանան չիզօրանար աշխրքի և գէշ մարդկանց ձեռքով, որոնցմով աշխարհք կիմացուի, չէր յաջողէր իր յաղթանակը: Մեր փրկիչը ոչ այնչափ զգուշացոյց զմեզ 'ի դիւաց, որչափ 'ի մարդկանէ. զգոյշ լինիջիք 'ի մարդկանէ[1], կըսէ. կուզէ իմանալ թէ շատ անգամ աւելի գէշ են մարդիկ քան զդեւս. վասն զի աղօթքով և Յիսուսի ու Մարիամու սուրբ անունը տալով սատանաները կը փախչին, բայց երբոր չար ընկերները զմէկը կը փորձեն մեղանչելու, ան ալ թէ որ հոգևոր խօսք մը զուրցէ նէ, անոնք չէ թէ կը փախչին, հապա աւելի կը փորձեն զանի և ծաղր կընեն, ըսելով թէ դու ինչ կոպիտ և փուճ մարդ ես եղեր, բանի մը չեկող. ուրիշ բան ալ չկարենան ըսել նէ՝ կեղծաւոր է կըսեն և սուրբ կը ձևանայ: Ոմանք ալ տկար գտնուելով և չուզելով ալ լսել ատ նախատինքներն ու անարգանքները, ողորմելաբար կը միաբանին սադայէլի աս պաշտօնէիցը հետ, և կը դառնան 'ի փըսխածն: Ով դու եղբայր, միտքդ դիր որ եթէ կուզես

1 Մատ. ժ. 17:

բարի կեանք ունենալ, 'ի հարկէ զքեզ ծաղր պիտի ընեն, և վար պիտի զարնեն չարերը. սուրբն պիղծ թուի չարագործաց[1], կըսէ սուրբ գիրքը: Ով որ չարութեամբ կապրի, չի կրնար աղէկ ապրողները քաշել. ինչո՞ւ. վասն զի աղէկներուն վարքը ամէն օր յանդիմանութիւն է չարերուն, ուստի ուրիշներուն բարի վարքով խղճմտանքի խայթ չիքաշելու համար, կուզեն որ անոնք ալ իրենց նման գէշ ըլլան: Յիշէ առաքելոյն խօսքն ալ որ կըսէ. ամենքին որ կամիցին աստուածպաշտութեամբ կեալ 'ի Քրիստոս Յիսուս, 'ի հալածանս կացցեն[2]: Բոլոր սուրբերը հալածուեցան. և ո՞վ կար աւելի սուրբ քան զփրկիչն մեր, և ահա աշխարհք զինքն ալ հալածեց մինչև 'ի մահ խաչին:

Աս բանիս ճար չիկայ, վասն զի աշխրքիս ամէն մէկ սկզբունքը հակառակ են Քրիստոսի սկզբանցը. ան որ բան մը կը սեպուի աշխրքիս աչքին, խենթութիւն է Քրիստոսի առջև. զի իմաստութիւն աշխարհիս այսորիկ յիմարութիւն է առաջի Աստուծոյ[3]: Ասոր ներհակ՝ աշխարհքս խենթութիւն կը սեպէ Քրիստոսի աղէկ սեպած բանը. ինչպէս է խաչ, ցաւ, արհամարհութիւն. զի ճառ խաչին կորուսելոցն յիմարութիւն է: Բայց մխիթարուինք, երբոր չարերը զմեզ կանիծանեն և կը բամբասեն ու կանարգեն, Աստուած կօրհնէ և կը գովէ. Նոքա անիծանեն և դու օրհնեսցես[4]: Հերիք չէ՞ մեզի որ Աստուած, սուրբ կոյսը, հրեշտակները, ամենայն սուրբք և ամէն աղէկ մարդիկ գովեն զքեզ. Թող մեղաւորները ինչ որ կուզեն նէ ըսեն, և զմեզ հալածեն, որով հաճոյ կըլլանք Աստուծոյ, և աս է Աստուծոյ ծառայից ուզածը: Որչափ աւելի ընդդիմութիւն և նեղութիւն քաշելով գործենք զբարին, այնչափ աւելի Աստուծոյ հաճոյական բան կընենք, և մեզի վարձք կը դիզենք: Անանկ դնենք թէ աշխրքիս մէջ ուրիշ մարդ չըլլար, բայց միայն Աստուած և մենք: Երբոր աս չարերը զմեզ ծաղր կընեն, զմեզ Աստուծոյ յանձնենք և գոհանանք զԱստուծոյ, որ մեզի տուեր է ան լոյսը՝ որ ան ողորմելիները չունին, և մենք մեր բանը տեսնենք: Ամօթ չիսեպենք

1 Առակ. ԻԹ. 15:
2 Բ. Տիմ. Գ. 12:
3 Ա. Կոր. Գ. 19:
4 Սղ. ՃԸ. 28:

մեզի քրիստոնեայ երևնալը․ չէ նէ, յայտնի է Քրիստոսի ըսածը․ զի որ ամօթ համարեսցի զիս և զբանս իմ, զնա և որդի մարդոյ յամօթ արասցէ յորժամ գայցէ փառօք իւրովք[1]։

Թէ որ փրկութեան հասնիլ կուզենք նէ, պէտք է որ յանձն առնենք համբասիլ, կրել, մանաւանդ թէ բռնադատենք զմեզ, վասն զի անձուկ է ճանապարհն որ տանի 'ի կեանս[2]... արքայութիւնն երկնից բռնադատի, և բռնիք յափշտակեն զնա[3]։ Ով որ զինքը չի բռնադատեր նէ, փրկութեան չի հասնիր․ ուրիշ ճար չիկայ, պէտք է որ մեր ապստամբ բնութեան դէմ քալենք, թէ որ կուզենք բարի գործել․ մանաւանդ 'ի սկըզբան պիտի բռնադատենք զմեզ, չար սովորութիւնները արմատէն խլելու, և բարի ունակութիւն ստանալու, վասն զի բարի ունակութիւն ըլլալէն ետև, դիւրին կըլլայ, մանաւանդ թէ կը քաղցրանայ ալ պատուիրանապահութիւնը։ Տէրն մեր ըսաւ սրբուհի Պրիճիտային թէ համբերութեամբ և քաջութեամբ առաքինութիւն գործելը՝ առջի բերան լայթող փուշ կերևնայ, բայց ետքը փշերը վարդ կը դառնան։ Ուստի խելքդ գլուխդ ժողվէ, ով քրիստոնեայ․ դիր միտքդ թէ Քրիստոս տէրն մեր հիմա քեզի կըսէ անդամալուծին ըսածը․ ահաւասիկ ողջացար, մի ևս մեղանչեր, զի մի չար ևս ինչ լինիցի քեզ[4]։ Հասկըցիր, կըսէ սուրբն Բեռնարդոս, նորէն իյնալը առջի իյնալէն աւելի գէշ է։ Մարգարէն ալ կըսէ Աստուծոյ բերնէն․ վայ ձեզ, որդիք ապստամբք[5]։ Շատ վախնալու բան է ըսածն ալ․ 'ի դառնալ արդարոյն յարդարութենէ իւրմէ և առնել զանիրաւութիւն, ըստ ամենայն անօրէնութեանց զոր առնիցէ անօրէնն, ամենայն արդարութիւնք նորա զոր արար, մի յիշեսցին․ 'ի յանցանս իւր զոր անկաւ, և 'ի մեղս իւր զոր մեղաւ, 'ի նոսին մեռցի[6]։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Աստուած իմ, ես շատ անգամ ատ պատիժներուն արժանի եղայ, որովհետև քանի անգամ ալ որ

1 Ղկ. Թ. 26։
2 Մատթ. Է. 14։
3 Մատթ. ԺԱ. 12։
4 Յովհ. Ե. 14։
5 Ես. Լ. 1։
6 Եզեկ. ԺԸ. 24։

*Թէպէտ ետ կեցայ մեղքէն քու տուած լուսովդ, բայց վերջէն Թշուառաբար նորէն դարձայ: Գոհանամ զանբաւ ողորմութենէդ, որ զիս իմ կորստեանս մէջ չիթողիր բոլորովին զուրկ 'ի լուսոյ, ինչպէս որ արժանի էի: Ուստի չափէ դուրս պարտական եմ քեզի, և յետին ապերախտ կըլլայի Թէ որ նորէն քեզի երես դարձընէի. Քաւ լիցի, փրկիչ իմ. զողորմութիւնս տեառն յաւիտեան օրհնեցից[1], հոս ալ անդին ալ, յուսալով 'ի քո շնորհս: Կուլամ կողբամ ինչուան հիմա ըրած ապերախտութիւններս, և կը վառուիմ զքեզ սիրելու քու ըրած շնորհքներովդ: Այո, կը սիրեմ զքեզ տէր, որ արժանիդ ես անբաւ սիրոյ, աս օրէս ետև դուն պիտի ըլլաս իմ մէկ հատիկ սէրս. և մէկ հատիկ բարիս: Հայր երկնաւոր, վասն արդեանց միածնիդ կը խնդրեմ 'ի քէն վախճանական յարատևութիւն 'ի նորհս և 'ի սէր քո, և գիտեմ որ անպակաս կու տաս քանի որ քեզնէ կուզեմ նէ. բայց ո՞վ կընայ զիս ապահովցընել Թէ միշտ ուշադիր պիտի ըլլամ խնդրելու քեզնէ աս յարատևութիւնը: Ուստի Աստուած իմ, Թէ յարատևութիւն կը խնդրեմ, և Թէ շնորհք միշտ խընդրելու զայն: Մարիամ կոյս բարեխօս իմ և փաստաբան, ապաւէն իմ և յոյս, քու միջնորդութեամբդ առ ինծի համար հաստատութիւն խնդրելու միշտ Աստուծմէ յարատևութիւն վախճանական, կաղաչեմ առ վասն սիրոյ քո Յիսուսի միածնիդ:*

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

*Գանք երրորդ Թշնամին տեսնելու որ ամենէն մեծն է, այսինքն մարմինը. և նայինք Թէ ինչպէս զմեզ պիտի պաշտպանենք: Նախ և առաջ աղօթքով, որուն վրայ առաջ խօսեցանք. երկրորդ առիթներէն փախչելով. հիմա ասիկայ աղէկ մը քննենք: Սուրբ Բեռնարդինոս սենացին կըսէ Թէ Քրիստոսի խրատներուն մէջ շատ հռչակաւոր է, և գրեթէ հիմն կրօնի, փախչիլ մեղաց առիթներէն: Մէկ անգամ մը դիւին մէկը ստիպեալ երդմնեցուցիչներէն՝ ստոյգը ըսաւ Թէ ամէն քարոզէն աւելի իրեն անհաճոյ է ան քարոզն որ-*

1 Սղ. ՁԸ. 2:

մեղաց առիթներէն փախչելու վրայ է. և իրաւ է, վասն զի սատանան կը ծածկէ առաջադրութիւններուն և խոստմունքներուն վրայ, որ կընէ մեղաւորը ապաշխարելու ատեն, թէ՛ որ առիթները մէկդի չի թողնէ։ Առիթը, մասնաւորապէս զգայական հեշտութեանց մէջ, վարագոյր մըն է ձգած աչքին առջև, որ չի թողներ մարդու տեսնել ոչ առաջադրութիւնները՝ որ ըրեր է, ոչ առած լուսաւորութիւնները և ոչ յաւիտենական ճշմարտութիւնները. մէկ խօսքով, ամէն բան մոռնալ կու տայ, և կոյր մը կը դարձընէ։ Աս եղաւ պատճառ իյնալու մեր առաջին նախահարցը, այսինքն առթէն չփախչիլ։ Աստուած իրենց արգիլեր էր չդպչիլ մէկ ծառի մը պտղուն, ինչպէս որ Եւա ալ օձին ըսաւ թէ պիտի չուտենք և ոչ պիտի մօտենանք[1]. բայց անզգոյշ ըլլալով տեսաւ, առաւ և կերաւ։ Նախ սկսաւ զարմանալով նայիլ պտղուն, ետքը ձեռքն առաւ, ետևէն ալ կերաւ. որ սիրէ զվտանգ, 'ի նմին կորիցէ[2]։ Սրբոյն Պետրոսի ըսածին պէս՝ սատանայ շրջի և խնդրէ թէ զո՛ կլանիցէ[3]. ուստի ի՞նչ կընէ, կըսէ սուրբն Կիպրիանոս, որ կարենայ մտնել 'ի հոգին ուստի վռընտուեր է. առիթ կը փնտըռէ, կը նայի կը զննէ, կամ արդեօք մէկ կողմ մը ուսկից մտնելը կարելի ըլլայ. թէ որ մարդը տեղիք տայ առթի մը, մէկէն նորէն ներս կը մտնէ թշնամին և զինքը կը լափէ։ Աղէկ կըսէ Գուերիկոս աբբայն, թէ որովհետև Ղազար դուրս ելաւ ձեռքը ոտքը կապուած, ուստի նորէն ալ մեռաւ։ Ասոր նման ով որ մեղքէն դուրս կելլէ՝ առթէ մը կապուած ըլլալով, թէ և յարութիւն է առեր, նորէն կը մեռնի։ Ուրեմն ով որ փրկուիլ կուզէ նէ, չէ թէ միայն մեղքը մէկդի պիտի ձգէ, հապա մեղաց առիթն ալ, այսինքն չար ընկերները, սա տունը, ան թղթակցութիւնները, և այլն։

Մէկը կրնայ ըսել թէ ես հիմա վարքս փոխեր եմ, չար վախճան մը չունիմ ան անձին հետ, փորձութիւն ալ չունիմ. ատոր ըսելու է թէ Մուղրիններուն երկիրը տեսակ մը արջ կայ կըսեն, որ կապիկ որսալու կելլէ. կապիկները տեսնելով արջուն գալը՝ ծառերուն վրայ կելլեն, կը խալըսին. բայց արջը ի՞նչ կընէ. ծա-

1 Ծննդ. Գ. 3։ 2 Սիր. Գ. 27։ 3 Ա. Պետ. Ե. 8։

ռին տակը կը պառկի մեռած կը ձեւանայ, երբոր կա-պիկները վար կիջնան նէ, կ'ելլէ վրանին կը վազէ կը բանէ կուտէ: Սատանան ալ ասանկ կընէ, փորձու-թիւնը մեռած կը ցցընէ, երբոր մէկը զինքը առթի մէջ կը դնէ նէ՝ ոտք կը հանէ զփորձութիւնը; որ զանի կուլ կու տայ: Քանի՛ քանի հոգիներ եղած են, որ ա-զոթքի հետ կըլլային, կը հաղորդուէին, անանկ որ սուրբ կրնային ըսուիլ. բայց առթի մէջ ձգելով զի-րենք, որս եղան դժոխոց: Եկեղեցական պատմու-թեանց մէջ գրած է թէ մէկ սրբակաց տիկին մը կար որ զմարտիրոսները թաղելու բարեպաշտ ծառայու-թիւնը կընէր. անգամ՝ մը անոնց մէջ մէկը գտաւ որ գեռ հոգին չէր աւանդեր, իր տունը տարաւ առողջա-ցուց: Տես ետքը ի՛նչ եղաւ. մօտ առիթ ունենալով աս երկուքս, առաջ որ սուրբ կրնային ըսուիլ, ետքը Ա-ստուծոյ շնորհքը կորուսին, վերջն ալ հաւատքէ ելան:

Աստուած հրամմեց Եսայի մարգարէին, գոչէ՛ր, կանչէ ու ըսէ թէ ամենայն մարմին խոտ է[1]: Ուր կը-սէ ոսկեբերան թէ ճրագը խոտին մէջ դիր, և կրնաս նէ ըսէ թէ խոտը չայրիր: Սուրբ Կիպրիանոս ալ կըսէ թէ անկարելի է բոցի մէջ կենալ և չայրիլ: Մարգա-րէն կը հասկըցընէ թէ եղիցի զօրութիւն նոցա իբրև զծեծած վշոյ, և գործք նոցա իբրև զկայծակունս հրոյ, և այրեսցին անօրէնք և մեղաւորք 'ի միասին[2]: Սողո-մոն ալ ըսաւ, թէ ծրարիցէ՞ ոք հուր 'ի գոգ և զհան-դերձսն ոչ այրիցէ. կամ՝ գնայցէ՞ ոք 'ի վերայ կայծա-կանց հրոյ, և զոտս իւր ոչ խարշիցէ[3]: Ասանկ խենթ է առթի մէջ ալ մտնողը և չեմ՝ իյնար ըսողը. ուրեմն սուրբ գիրք կըսեն թէ փախիր 'ի մեղաց որպէս յերեսաց օձի[4]: Պէտք է փախչիլ ոչ միայն օձին խածուածքէն կը-սէ Գուափրիդոս, այլ նաև անոր դպչելէն, անոր մօտե-նալէն: Բայց զուցէ դուն կըսես թէ ան տունը ան բա-րեկամութիւնը ինծի շահ և վաստակ կը բերէ. ինչո՞ւ չես ըսեր թէ քեզի դժոխոց ճամբայ ալ է. ճանա-պարհք դժոխոց են տուն նորա, որ իջուցանեն 'ի շտե-մարանս մահու[5]: Ուրեմն ճար չիկայ, փրկութեան

1 Ես. Խ. 6:
2 Ես. Ա. 31:
3 Առակ. Զ. 27. 28:
4 Սիր. ԻԱ. 1:
5 Առակ. Է. 27:

հասնիլ կուզես նէ, անկից հեռու պիտի կենաս. ինչ
ըսաւ տէրն մեր. եթէ աչքն քո աջ գայթակղեցուցանէ
զքեզ, խլեա զնա և ընկեա 'ի քէն[1]: Քեզնէ հեռու ձգէ-
կըսէ, որ է ըսել թէ պէտք է ամէն առիթը վերցընել:
Սուրբ Ֆրանչիսկոս սասիզացի կըսէր թէ սատանան
հոգեոր անձինքը ուրիշ կերպով կը փորձէ քան թէ գէշ
վարք ունեցողները. առջի բերանը չուզեր զանոնք
չուանով մը կապել, հապա մազով մը, ետքը դերձա-
նով, ետքը աւելի հաստ դերձանով, անկէ ետքը չուա-
նով մը. և ասանկ վերջապէս մեղքով կը կապէ կը
խղդէ: Ուստի ով որ կուզէ աս վտանգէն ազատ ըլ-
լալ, պէտք է որ 'ի սկզբան բոլոր մազերը կտրէ, բո-
վանդակ առիթները, բարևներ տալը, ընծաներ խաւ-
բելը և առնելը, թղթիկներ գրելը, և այլն. և ընդհան-
րապէս խօսելով անմաքուր սիրտ ունեցողին համար
բաւական չէ մերձաւոր առիթներէն փախչիլը, վասն
զի թէ որ հեռաւորներէն փախուստ չտայ, կը գտա-
նայ նորէն կը գլորի մեղաց անդունդը: Ով որ իսկա-
պէս փրկուիլ կուզէ, պէտք է որ հաստատէ իր սրտին
մէջ և շարունակ նորոգէ աս առաջադրութիւնը որ
մէյմըն ալ Աստուծմէ չզատուի. և պէտք է որ շատ
անգամ կրկնէ սրբոց ան խօսքը թէ թող ամէն բանս
կորսուի, բաւական է որ զԱստուած չիկորսընցընեմ.
բայց պարզ առաջադրութենէն բան չելլեր. հապա ա-
մէն ջանք ընելու է միջոցները չկորսընցընելու համար.
և ասոնց մէջ առաջինն է՝ յառթից փախչիլը, երկրորդ
ստէպ ստէպ խոստովանիլ և հաղորդուիլ. վասն զի
ստէպ աւլըւող տանը մէջ աղտեղութիւն դժուարաւ
կը գտնուի. խոստովանանքով հոգին մաքուր կը մնայ,
և չէ թէ միայն թողութիւն կառնուի, այլ և փորձու-
թեանց դէմ գնելու զօրութիւն կըստանանք. իսկ հա-
ղորդութիւնը հաց երկնային կըսուի, վասն զի ինչպէս
մարմինը չի կրնար ապրիլ առանց երկրաւոր կերակրոյ,
նմանապէս հոգին ալ չի կրնար ապրիլ առանց աս երկ-
նաւոր կերակրոյն: Քրիստոսի տեառն մերոյ խօսքն
է, եթէ ոչ կերիջիք զմարմին որդւոյ մարդոյ, և արբ-
ջիք զարիւն նորա, ոչ ունիք կեանս յանձինս ձեր[2].
ատոր ներհակ, որ ուտէ 'ի հացէս յայսմանէ, կեցցէ

1 Մատ. Ե. 29:  2 Յովհ. Զ. 54:

յաւիտեան։ Ասոր համար Տրիդենտեան ժողովը զհաղորդութիւնը կը կոչէ դեղթափ մեր հանապազօրեայ յանցանաց և մահուչափ մեղաց դէմ։ Երրորդ միջոցն է մտածականը կամ մտաւոր աղօթքը. Սիրաքայ ըսածին պէս, թէ որ վախճաննիս յիշելու ըլլանք, ամենևին չենք մեղանչեր։ Ով որ իր աչքին առջևը մտածելու նիւթ դրած է յաւիտենական ճշմարտութիւնները, զմահ, զդատաստան և զդժոխս և զարքայութիւն, դժուարաւ մեղաց մէջ կիյնէ. վասն զի Աստուծոյ լոյսը զինքը կը լուսաւորէ մտածականով. հոն կը լսէ և կիմանայ մարդ թէ ինչէն պիտի փախչի, և ինչ պիտոր ընէ. փուռ մըն ալ է մտածականը, ուր կը վառի բոց սիրոյն Աստուծոյ։ Ինչպէս որ շատ անգամ ալ ըսինք, Աստուծոյ շնորհացը մէջ հաստատուն մնալու համար պարզապէս հարկաւոր է՝ անդադար աղօթել, և խընդրել զշնորհս մեր պիտանիս. և ով որ մտածական աղօթք չընէր, դժուարաւ աղօթքի կը նստի այնպիսին. առանց աղօթից ալ չի կրնար փրկուիլ։

Ուրեմն փրկութեան հասնելու համար պէտք է միջոցները ձեռք առնել, և կարգաւորեալ կեանք մը վարել։ Առաւօտանց ելածին պէս՝ քրիստոնէաբար շնորհակալութիւն ընել, սիրոյ ներգործութեամբ և առաջադրութեամբ, Յիսուսի և Մարիամու շնորհքը խընդրելով, որ նոյն օրը առանց մեղաց զմեզ պահեն. ետքը մտածական ընել, պատարագ տեսնել, ցորեկը հոգևոր գրքեր ընթեռնուլ, այցելութեան երթալ սրբութեան և աստուածածնայ, իրիկունը սուրբ կուսին վարդարանը դարձընել և քննութիւն խղճի մտաց, շաբաթը մէկ քանի անգամ հաղորդուիլ հրամանաւ հոգևոր հօրն, և մէյմը սկսելէն ետքը միշտ նոյն ճամբան բռնել։ Շատ օգտակար ալ կըլլայ հոգևոր կրթութեան մտնել վանքի մը մէջ։ Մեծարել պէտք է մասնաւոր պաշտօնով զսուրբ կոյսն, զոր օրինակ ծոմ բռնել շաբաթ օրը. վասն զի ինքը մայր յարատևութեան կըսուի, և կը խոստանայ զայն իրեն ծառայից։ Ի վեր քան զամենայն պէտք է խնդրել Աստուծմէ զսուրբ յարատևութիւն, մանաւանդ փորձութեան ատեն, կարդալով ստէպ զսուրբ անունն Յիսուսի և Մարիամու, քանի որ փորձութեան մէջ ես։ Թէ որ ասանկ ընես նէ, ստոյգ գիտցիր որ փրկութեան որդի ես. իսկ թէ զանցառութեամբ քու պարտքերէդ թուլնաս, վայ քեզի։

## ԻՂՁ ԵՒ ԳԱՂԱՑԱՆՔ

Սիրելիդ իմ փրկիչ, շնորհակալ եմ քեզի առ լուսաւորութեանց համար որ ինծի կու տաս, և ան միջոցներուն զորոնք ինծի կը սորվեցընես զիս փրկելու համար, ես ալ կը խոստանամ հաստատ 'ի գործ դնել. օգնէ ինծի, որ հաւատարիմ մնամ խոստմանս մէջ, յայտնապէս կը տեսնեմ որ դուն զիս փրկել կուզես, ես ալ փրկուիլ կուզեմ. մանաւանդ քու սրտիդ հաճոյքը լեցընելու համար, որ այնչափ կը փափաքիս իմ փրկութեանս, չեմ ուզեր բնաւ ասկից ետև հակառակ ելլել քու սիրոյդ. առ սէրդ էր որով այդչափ ինծի համբերեցիր. երբոր ես զքեզ կը դառնացընէի, դուն զիս հրաւիրեցիր 'ի սէր քո, ես ալ կը փափաքիմ քեզ սիրել: Կը սիրեմ զքեզ, անբաւ բարութիւն և անհուն բարի. կաղաչեմ վասն արգեանց Յիսուսի օծելոյ քո, մի թողուր որ ես մէյմըն ալ քեզ ապերախտ ըլլամ. շնորհք տուր որ կամ ետ կենամ ապերախտութենէ, կամ մեռնիմ երթամ. կատարէ, տէր, ան գործը զոր սկսար վասն իմոյ փրկութեան. ինծի լոյս և ուժ տուր, զօրացո իմ սէրս: Տիրամայր կոյս, որ գանձապետ ես շնորհաց, օգնէ ինծի, զիս քու ծառայութեանդ մէջ հաստատուն պահէ, ինչպէս որ կը փափաքիմ. բարեխօսէ ինծի համար առ Յիսուս, վասն զի նախ արգիւնքը փրկչիս, ետքը քու բարեխօսութիւնդ զիս պիտոր փրկեն:



# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԼԲ.

## ԱԶԱԻՆՈՒԹԻՒՆ Ի ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ

*Զիս գտնողը կեանքը գտած կը սեպուի, ու Աստուծմէ փրկութիւն պիտի գտնէ*[1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Ո՛րչափ Աստուծոյ շնորհակալ ըլլալու պարտական ենք, որ մեզի փաստաբան տուեր է զՄարիամ, որպէս զի իր բարեխօսութեամբը առնէ մեզի համար ինչ շնորհք որ կը խնդրենք իրմէ. աս է սրբոյն Պոնաւենդուրայի ըսածը. Ինչ մեծ գթութիւն և մարդասիրութիւն է Աստուծոյ ըրածը, որ մեզի պէս խեղճերուն զքեզ փաստաբան շնորհեր է, տիրամայր, որ քու ձեռքդ ինչ որ կուզես նէ կրնաս առնել: Ուրեմն սիրեցեալ մեղաւոր եղբարք, թէ որ զմեզ մեղապարտ գըտնենք ընդդէմ աստուածային արդարութեան և պարտաւոր դժոխոց, չյուսահատինք, այլ դիմենք առ սուրբ աստուածածինն, իր հովանույն տակը մտնենք, ան զմեզ փրկութեան կը հասցընէ, բարի դիտաւորութիւն մեզի պէտք է վարքերնիս փոխելու, և բարի դիտաւորութեան հետ մեծ վստահութիւն առ Մարիամ. ասանկ կը փրկուինք, վասն զի Մարիամ փաստաբան է զօրաւոր, բարեգութ, և մեր փրկութեան փափաքովը վառուած. Նախ մտածենք թէ Մարիամ է հզօր փաստաբան, որ կրնայ ամէն բան առաջ տանիլ դատաւորին առջև իրեն դիմողներուն համար: աս մէկ եզական ձիրք մըն է որ իրեն տուեր է դատաւորն որ միանգամայն իր միածին որդին է, և սրբոյն Պոնաւենդուրայի

1 Սողոմոն իմաստունին աս խօսքը (Առակ. Ը. 35) ըստ լատինական Թարգմանութեան գրինք. մերն է. “Ելք իմ են ելք կենաց, և պատրաստին կամք իմ 'ի տեառնէ„:

ըստածին պէս, մեծ ձիրք է մարդուս, սուրբ կուսին ամէն բանի կարող ըլլալը իր միածնին առջև. Գերսոն ալ կըսէ թէ բան չիկայ որ պարզապէս խնդրէ Աստուածամէ սուրբ կոյսը և չառնէ. և ինքն որպէս գլխոյ հրեշտակները կը խաւրէ, որ երթան իր ջերմեռանդները լուսաւորեն, մաքրագործեն և կատարելագործեն։ Ուստի եկեղեցին մեզ վստահացընելու համար՝ի բարեխօսութիւն տիրամօր, հրամայեր է որ աստանկ աղաղակենք առ նա, կոյս կարող բարեխօսեա վասն մեր. և Մարիամու այսչափ կարողութեան պատճառը յայտնի է. վասն զի է մայր Աստուծոյ։ Ասոր համար ըսաւ սուրբն Անտոնինոս, թէ աստուածամօր բարեխօսութիւնը հետը իշխանութեան բան մըն ալ ունի, ուստի անկարելի է որ իր խօսքը չիկատարուի. սուրբ Գրիգոր արքեպիսկոպոս Նիկոմիդեայ առ կոյսն կըսէ թէ քու որդիդ որպէս թէ իր որդիական պարտքը վճարելու համար ամէն խնդիրքդ կը կատարէ։ Սուրբն Թէոփիլոս Աղեքսանդրու եպիսկոպոսն ալ աստանկ գրեց, որդին կախորժի որ մայրը իրմէն բան մը խնդրէ, վասն զի կուզէ ընել ամէն խնդիրքը. աս կերպով ուզելով հատուցումն ընել անկից առած մարմնոյն համար. սուրբն Մեթոդիոս վկայն ալ աստանկ կաղաղակէ առ ամենասուրբ կոյսն. ինչ մեծ զարմանալի բան է, կըսէ, որ քու միածինդ պարտական է քեզի, ինչպէս որ մենք ամէնքնիս ալ պարտական ենք Աստուծոյ. ասոր համար կըսէր Կոզմաս Երուսաղեմացի, թէ ամէն բանի հասնող է քու օգնութիւնդ, սուրբ աստուածամայր. պատճառը կու տայ Հոռիքարտոս սուրբ Լաւրենտեան. որովհետև նոյն կարողութիւնը կամ իշխանութիւնն է որդւոյ և մօր, ուստի ամենակարող որդւոյն մայրն ալ ամենակարող եղաւ. և ինչ բան որ Աստուած իր իշխանութեամբը կրնայ ընել՝ նոյնը կոյսն ալ բարեխօսութեամբ։ Սրբուհին Բրիճիտա ալ տեսիլք տեսաւ որ Յիսուս մէկ օր մը խօսելով իր մօրը հետ ըսաւ. մայր իմ, ինչ որ կուզես նէ ինծմէ խնդրէ. վասն զի անկարելի է որ քու խնդրուածոցդ մտիկ չընեմ. որովհետև դուն, ըսաւ, երկրիս վրայ իմ ամէն ուզածս կատարեցիր, նմանապէս ես ալ երկինքը քու ամէն խնդրուածքդ պիտի կատարեմ. մէկ խօսքով, չիկայ մարդ մը՝ որչափ մեղաւոր ալ ըլլայ, զոր չիկարենայ Մարիամ փրկութեան հասցընել իր բարեխօսութեամբը։

ԻՂՁ ԵՒ ԳԱՆԳԱՏԱՆՔ

Սիրեցեալդ իմ Թագուհի և մայր, որոյն Գերմանոսի հետ առ քեզ կաղաղակեմ. դու ամենազօր ես 'ի փրկել զմեղաւորս, և կարօտ չես ուրիշ յանձնարարութեան Աստուծոյ առջև, վասն զի մայր ես ճշմարիտ կենաց։ Ուստի տիրուհի իմ, երբոր քեզի կը դիմեմ, իմ մեղքերս չեն կրնար անյոյս ընել զիս 'ի փրկութենէ. դուն քու աղաչանքովդ ամէն բան կառնես. ուստի ինծի համար աղաչէ, ես անտարակոյս կը փրկուիմ. բարեխօս եղիր վասն ողորմելւոյս. որոյն Բեռնարդոսի հետ կաղաղակեմ, խօսեաց Տիրամայր, վասն զի կը լսէ քեզ միածին քո, և զոր ինչ խնդրես ընդունի. իրաւ որ ես մեղաւոր եմ, բայց կ'ուզեմ զիս շտկել, և պարծանք կը սեպեմ քու ծառայդ ըլլալը. և թէպէտ արժանի չեմ քու պաշտպանութեանդ, բայց գիտեմ որ դուն ոչ երբէք երեսէ ձգեր ես ով որ բոլորովին 'ի քեզ ապաւիներ է, դուն կարող ես զիս փրկել, ես ալ քեզի վստահացեր եմ. երբոր ես կորուսած էի և զքեզ չէի յիշեր, դուն զիս կը յիշէիր, և ինծի համար շնորհք առիր զղջմանութեան, որչափ ևս առաւել հիմա պիտի վստահ ըլլամ 'ի քո գթութիւնդ, հիմա որ զիս նուիրեցի քու ծառայութեանդ. ուստի քեզ կը յանձնեմ, 'ի քեզ կը յուսամ։ Ով Մարիամ, աղաչէ ինծի համար, և զիս սուրբ ըրէ, առ ինծի համար զսուրբ յարատեւութիւն և զսէր առ միածինդ և առ քեզ. մայր ամենասիրելի, ես զքեզ կը սիրեմ իմ արքայուհիս, և յոյս ունիմ որ միշտ զքեզ սիրեմ. դուն ալ զիս սիրէ կաղաչեմ զքեզ, և մեղքերէ զիս սրբելով արժանի ըրէ քու մաքուր սիրոյդ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Աս ալ գիտնանք որ Մարիամ որչափ զօրաւոր փաստաբան է նէ, նոյնչափ ալ բարեգութ է, և չի կրնար չպաշտպանել իրեն ապաւինողը. սուրբ գիրքը կըսէ թէ Աստուծոյ աչքը արդարոց վրայ է, իսկ աչք տիրամօր Ռիքարտոսի ըսածին պէս, թէ արդարոց վրայ է և թէ մեղաւորաց, որ մեղաց մէջ չիյնան, կամ ընկած ալ են նէ, կանգնին իր միջնորդութեամբը։ Սուրբն Գո-

Նաւենդուրա կըսէր առ սուրբ կոյսն. քանի որ աչքս քու վրադ կը դարձընեմ, տիրուհի, ուրիշ բան չեմ տեսներ; բայց միայն ողորմութիւն. սուրբ Բեռնարդոս ալ ասանկ սիրտ կու տայ մեզի. ինչո՞ւ կը վախնայ մարդկային տկարութիւնը դիմել առ Մարիամ, որուն քովը խիստ բան մը կամ վախնալու բան մը չիկայ, և բոլորովին քաղցր է. Սիրաքայ ըսածին պէս, Մարիամ դաշտի մէջ տնկուած գեղեցիկ ձիթենւոյ մը կը նմանի[1]. ձիթենիէն իւղ ձիթոյ միայն կելլէ, որ է նշան գթոյ և ողորմութեան. ասանկ ալ 'ի Մարիամայ ուրիշ բան չելլեր, եթէ ոչ շնորհք և ողորմութիւն. զոր կը սփռէ անոնց վրայ, որ իր ողորմութեանը կապաւինին. ուստի աղէկ կըսէ Դիոնեսիոս կարդուսեանը, թէ սուրբ կոյսն է պաշտպան իրեն օգնութեանը դիմող յանցաւորաց: Ո՛րչափ պիտի զղջայ դժոխքի մէջ քրիստոնեայ մը, մտածելով որ այնչափ դիւրաւ կրնար փըրկուիլ դիմելով առ մայրն ողորմութեան՝ և չդիմեց, և թէ ատենն ալ անցաւ մէյմըն ալ դիմելու: Սրբուհւոյն Բրիճիտայի մէկ անգամ մը ըսաւ ամենասուրբ կոյսն. զիս ամէնքը մայր ողորմութեան կը կոչեն, և իրաւ որ ողորմութիւնն Աստուծոյ զիս ողորմած ըրաւ, որ ամենուն փրկութիւնը կուզէ. ուստի ողորմելի կըլլայ ով որ կրցած ատեն չիդիմեր առ ողորմածն: Չի վախնանք, կըսէ սուրբ Բոնաւենդուրա, թէ աստուածածնայ օգնութեանը ապաւինելու որ ըլլանք՝ ինքը չընդունի, վասն զի ինքը չողորմիլ չիդիտեր, և չէ եղած որ ողորմելեաց չիհաւանի. սուրբն Բեռնարդոս կըսէ առ կոյսն, դու դշխոյ ես ողորմութեան. և ո՞վ է ողորմութեան կարօտ, բայց եթէ ողորմելին. արդ ահա դու ողորմութեան թագուհի ես, և ես յետին ողորմելի մեղաւոր, և յետինը քու ձեռքիդ տակը եղողներուն. ուստի դուն զմեզ կառավարէ, դշխոյ ողորմութեան: Ասանկ մայր ըլլալով 'ի հարկէ կը ջանայ իր հիւանդ զաւկըները մահուընէ խալըսել, որով կերևնայ իր գթած մայր ըլլալը: Չի տարակուսինք բնաւ սուրբ աստուածածնայ գթութեանը վրայ. մէկ օր մը սրբուհին Բրիճիտա լսեց որ փրկիչը կըսէր մօրը. աստուածային ալ ողորմութիւն կընէիր թէ որ խոնարհութեամբ ինքը

1 Իբրև ձիթենի վայելուչ 'ի դաշտի. Սիր. ԻԴ. 19:

ուզեր նէ. որով կուզէր ըսել թէ որչափ մեծ մեղաւոր ըլլայ նէ մէկը, երբոր կը դիմէ առ կոյսն, անոր մեղքը չի նայուիր, հապա սիրտը, և թէ ինչ հոգւով կու գայ. թէ որ կամք ունի զինքը շտկելու նէ, սիրով կընդունի և անոր ամէն վէրքը կը բժշկէ։ Ուստի ասանկ քաջալերութիւն կու տայ Պոնաւենդուրա. տիրամօր օգնութեանը ինկէք, մեղաւորք, զձեզ ինքը կը հասցընէ խաղաղութեան նաւահանգիստը։ Ուստի կաղաղակէ Բեռնարդոս թէ շնորհք խնդրենք Աստուծմէ Մարիամու ձեռքովը. Հռիքարտոս ալ կըսէ, թէ որ կուզենք շնորհք գտնել, զանիկայ խնդրենք որ Աստուծոյ առջեը շնորհք գտաւ, որուն որ Գաբրիէլ աւետիս տալու ատեն ըսաւ թէ մի երկնչիր, Մարիամ, զի գտեր շնորհս յԱստուծոյ, որովհետև կոյսը միշտ շնորհօք լի էր։

ԽՂՁՔ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ահա տիրամայր, ողբդ ընկած է ինծի պէս մեղաւորը, որ չէ թէ մէկ անգամ. հապա շատ անգամ ուզեր է կորսընցընել զայս աստուածային շնորհքը, զոր քու միածինդ ստացեր էր իր մահուամբը։ Ով մայր ողորմութեան, քեզի ապաւիներ եմ իմ վիրաւոր հոգւովս, բայց և դուն մի բարկանար ասոր համար, այլ աւելի ցաւակից եղիր, և օգնէ ինձ, տես որ 'ի քեզ եմ ապաւինեալ. և երեսէդ զիս մի ձգեր։ Չեմ ուզեր քեզնէ աշխրքիս բարիքը, հապա զշնորհս Աստուծոյ և զսէր որդւոյ քո. մայր իմ, աղաչեա վասն իմ, և աղաչելէն մի դադրիր։ Արդիւնք փրկչիս և քու բարեխօսութիւնդ զիս պիտի փրկեն. քու պաշտօնդ է միջնորդ և բարեխօս ըլլալ մեղաւորաց համար, ով փաստաբան մեր. կը գոչեմ առ քեզ սրբոյն Թովմայի վիլլանովացւոյն հետ թէ զպաշտօն քո կատարեա. Աստուծոյ յանձնէ զիս և պաշտպանէ։ Դատ մը չիկայ որ յուսահատելի ըլլայ և կորսուի, երբոր դուն պաշտպան կեցեր ես նէ, դուն ես իմ յոյսս և ամենայն մեղաւորաց ապաւէնը։ Ով տիրամայր, իմ պարտքս է ծառայել քեզ, սիրել զքեզ և առ քեզ դիմել միշտ. դուն ալ օգնէ ինծի, մանաւանդ երբոր զիս կը տեսնես 'ի վտանգի նորանց կորսընցընելու Աստուծոյ շնորհքը։

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Գանք աս ալ մտածելու թէ սուրբ կոյսն ոչ միայն բարեգութ փաստաբան է, և ձեռք կը դնէ իրեն ապաւինողացը վրայ, հապա ինքը կելլէ կը փնտռէ ողորմելի անձինքը, որ անոնց պաշտպանութիւն ընէ, և փրկութեան հասցընէ։ Նայէ թէ ինչպէս կը հրաւիրէ մեզ ըսելով, ինև ամենայն յոյս կենդանութեան և զօրութեան[1]. ուր կըսէ Ջերմեռանդն և երանելին Բեռնարդոս, զամենայն կոչէ զարդարս և մեղաւորս. սըրբոյն Պետրոսի ըսածին պէս, մեր թշնամին սատանան անդադար կը պտըտի թէ զով կլլէ[2]. բայց ինչպէս որ կըսէ Բեռնարդոս բուստեան, սուրբ կոյսն ալ ընդհակառակն ամէն հնարք կընէ թէ զով փրկէ։ Մարիամ մայր է ողորմութեան, վասն զի ան գթովը որ ունի մեր վրայ՝ անդադար մեզի ցաւակից կըլլայ, և կը փափաքի միշտ զմեզ փրկել, ինչպէս որ մայր մը չկրնար իր որդին կորստեան վտանգի մէջ տեսնել և անոր չօգնել։ Սրբոյն Գերմանոսի ըսածին պէս ով սուրբ կոյսն, ո՞ք զկնի միածնիդ խնամ տանի ազգի մարդկան, որպէս դու. և սուրբն Պոնաւենդուրա կըսէ թէ ամէն հոգ կընես մեղաւորաց համար, և կը ցցընես թէ ուրիշ բանի մը չես, բայց միայն ողորմութիւն ընելու։ Անտարակոյս սուրբ աստուածածինը մեզ օգնութիւն կը հասնի երբոր իրեն դիմենք. աստուածածնայ բարեգթութիւնը այնչափ է որ մէկն ալ իր շնորհքէն չի մերժեր. մանաւանդ թէ աւելի շուտով կը հասնի իր գթութիւնը, յառաջ քան զմեր օգնութիւն կանչելը։ Ասոր օրինակը ցցուց 'ի հարսանիս Կանա գալիլեացւոց. ուր երբ ըսաւ Յիսուսի թէ գինի չունին[3], ուզածը եղաւ երբոր Յիսուս զջուրն գինի փոխեց. արդ եթէ հոս տեղ այսչափ գթութիւն երևցուց, կըսէ սուրբն Պոնաւենդուրա, որչափ աւելի կըլլայ երկինքը, ուսկից աղէկ կը տեսնէ մեր խեղճութիւնը և ցաւակից կըլլայ. ուստի թէ որ առանց ուրիշներու աղաչանաց՝ ցցուց Մարիամ այնչափ փոյթ կարօտելոց օգնելու, որչափ աւելի պատ-

1 Սիր. 24. 25. 26։ Նիցէ ։ Ա. Պետ. Ե. 8։
2 Շրջի և խնդրէ թէ զո կլա. 3 Գինի ոչ ունին ։ Յովհ. Բ. 3։

բաստ կըլլայ աղաչողին . ուստի չծուլանանք մեր ամէն պիտոյից ատենը դիմել առ աստուածամայրն , որ միշտ պատրաստ կեցած է օգնել խնդրողին։ Եւ ինչպէս սուրբ վարդապետք կը հաստատեն , ինքը աւելի կուզէ մեզի բարիք ընել և շնորհք տալ , քան որչափ մենք առնել կը փափաքինք . ուստի երբոր իրեն կը դիմենք , իր շնորհաց գանձարանը բաց կը գտնենք ։

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով տիրամայր , ահա ոտքիդ առջևն ընկած է ինծի պէս ողորմելի գերի մը դժոխոց , և քու գթութիւնդ կը խնդրէ . իրաւ որ ես բարւոյ մը արժանի չեմ , բայց դուն մայր ես ողորմութեան , և քու գութդ անարժաններուն վրայ ալ կը ցցընես . բովանդակ աշխարհք զքեզ կը կոչէ յոյս և ապաւէն մեղաւորաց . ուստի դուն ես իմ ապաստանս և ակնկալութիւնս . ես մոլորեալ ոչխար մըն եմ , և ասանկ ոչխարները խալըսելու համար եկաւ յերկնից բանն յաւիտենական և քու որդիդ եղաւ . և կուզէ որ ես քեզ դիմեմ , դուն ալ օգնես ինծի քու աղաչանօքդ . սրբուհի Մարիամ մայր Աստուծոյ , բարեխօսեա վասն մեր մեղաւորացս ։ Ով գերահրաշ մայր Աստուծոյ , որ ամենուն համար կաղաչես , ինծի համար ալ աղաչէ միածնիդ . ըսէ իրեն թէ աս ալ իմ ջերմեռանդս է , որովհետև ինծի պաշտպանութիւն կընես , ըսէ թէ ասիկայ իր յոյսը իմ վրաս է դրեր . և ըսէ որ ներէ ինծի , և ես ալ կը զղջամ իրեն դէմ ըրած յանցանքներուս վրայ . խնդրէ որ պարգևէ ինծի իր ողորմութեամբը զսուրբ յարատևութիւն , տայ ինծի զշնորհ սիրելոյ զԱստուած յամենայն սրտէ . մի լռեր , տիրամայր , ես չեմ տարակուսիր որ քու խընդրուածոցդ ձայնը լսելի կըլլայ իրեն ։

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԼԳ·

## ԱՍՏՈՒԾՈՅ ՍԷՐԸ

*Զաստուած սիրենք, վասն զի նախ ինքը զմեզ սիրեց*[1]*.*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

*Նախ աս բանս մտածէ թէ պէտք է որ զԱստուած սիրենք, վասն զի ինքը առաջ զմեզ սիրեց· դո՛ւն զԱստուած չսիրեցիր, այլ Աստուած զքեզ սիրեց· յաւիտենական սիրով սիրեցի զքեզ*[2]*, ըսաւ Երեմիա մարգարէին բերնովը։ Քեզ աշխարքիս վրայ առաջին սիրողը եղան քու ծնողքդ· բայց ե՞րբ· զքեզ ծնանելէն և ճանչնալէն ետքը, և սակայն քու ըլլալէդ առա՛ջ Աստուած զքեզ կը սիրէր, դեռ աշխարքիս երեսը չիկար ոչ հայրդ, ոչ մայրդ, աշխարհս ալ դեռ չէր ստեղծուած, և Աստուած զքեզ կը սիրէր։ Արդեօք աշխարքիս ըստեղծուելէն հազա՞ր տարի ալ առաջ, հազա՞ր դարեր առաջ· ի՞նչ կըսես սիրելի եղբայր· ի՞նչ հազարաւոր տարիներէ և դարերէ, այլ 'ի յաւիտենից· սէր յաւիտենական սիրեցի զքեզ, վասն այնորիկ 'ի գթութիւն ձգեցի զքեզ· մէկ խօսքով, քանի որ Աստուած Աստուած է, զքեզ միշտ սիրած է· քանի որ զինքը կը սիրէր՝ զքեզ ալ սիրեր է։ Ուստի իրաւամբ կըսէ սրբուհին Ագնէս, ուրիշ սիրող ունիմ ես, ամենէն առաջ ինքը զիս սիրեց, ուստի արժան է որ ամէն բանէ աւելի ես ալ զինքը սիրեմ։*

*Ուրեմն ով եղբայր, 'ի յաւիտենից սիրեր է զքեզ Աստուած, և միայն իր սիրոյն զքեզ դուրս հաներ է անհամար մարդկանց մէջէն որ կրնար ըլլալ, և տուեր է քեզ գոյութիւն, և աշխարքիս մէջ դրեր է, քու սի-*

1 *Սիրեսցուք զԱստուած, վասն զի նա նախ սիրեաց զմեզ։* Ա. Յովհ. Դ. 19։

2 *Սէր յաւիտենական սիրեցի զքեզ։* Երեմ. ԼԱ. 3։

րոյդ համար ալ ըրեր է այնչափ գեղեցիկ արարածներ, որպէս զի քեզ ծառայեն, և յիշեցընեն քեզ զսէրն՝ զոր քու վրադ ունի, ասոր համար դուն իրեն պարտական ես. սրբոյն Օգոստինոսի ըսածին պէս, երկինքը և երկիրս և ամենայն արարածք կը յորդորեն զմեզ որ զԱստուած սիրենք: Լռակացեց հիմնադիրը նրբոր կը նայէր լերանց և բլրոց վրայ, աղբիւրներուն և ծաղկըններուն վրայ, կըսէր թէ աս ամէնը ինծի կը յիշեցընեն զսէրն՝ զոր Աստուած վրաս ունի. սրբուհին Թերեզա ալ կըսէր, թէ արարածք երեսս կը զարնեն իմ Աստուծոյ դէմ ըրած ապերախտութիւնս: Աւելի մտածէ Աստուծոյ մասնաւոր սէրը, որով զքեզ քրիստոնեայ, և իր ճշմարիտ հաւատոցը հետևող ըրեր է: Ո՛րչափ մարդիկ կը ծնանին 'ի մէջ կռապաշտից, Հրէից, այլազգեաց, հերետիկոսաց, որոնց ամէնքն ալ կը կորսուին, քիչ են անոնք՝ որ իրենց շնորհք եղեր է ծնանիլ 'ի ճշմարիտ հաւատս, և աս քիչերուն մէջ Աստուած զքեզ ալ ընտրեր է. ի՞նչ մեծ պարգև է հաւատքի շնորհքը: Քանի միլիոնաւոր անձինք զուրկ են 'ի սուրբ խորհրդոց, 'ի քարոզից, 'ի բարի օրինակաց, և ուրիշ ամէն փրկութեան միջոցներէն. և աս ամէն մեծամեծ նպաստները Աստուած քեզ տուեր է առանց քու արժանաւորութեանդ, մանաւանդ թէ տեսնելով առաջուց քու անարժանութիւնդ. վասն զի դեռ զքեզ չստեղծած և աս շնորհքները քեզի չըրած՝ կը տեսնէ թէ որչափ պիտի անիրաւիս իրեն դէմ:

ԽՂՃ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով գերագոյն տէր երկնի և երկրի՝ անհուն բարի, անսահման մեծվայելչութիւն, դուն որ այսչափ սիրեր ես զմարդիկ, ինչպէս իրենք զքեզ կանարգեն. աս մարդկանց մէջն ալ, Աստուած իմ, զիս մասնաւոր կերպով սիրեցիր, անանկ առանձին շնորհքներ ընելով որ շատերին չես ըրած. իսկ ես քան զայլս աւելի զքեզ անարգեր եմ: Ոտքդ կիյնամ, փրկիչ իմ Յիսուս, մի՛ ընկենուր զիս տէր յերեսաց քոց[1]. արժան էր որ զիս վռընտէիր իմ ապերախտութեանցս համար, այլ դուն ըսիր

1 Սղ. Ծ. 13:

թէ ով որ ինծի կու գայ դուրս չեմ հաներ զինքը[1]։ Յիսուս փրկիչ իմ, կը զղջամ զքեզ դառնացընելուս վրայ. առաջուց քեզ չճանչցայ, հիմա իսկապէս զքեզ ինծի տէր կը ճանչնամ, ով փրկիչ իմ, որ զիս փրկելու և ինծի սիրելի ըլլալու համար մեռար։ Ո՛հ, տէր իմ, երբ պիտի դադրիմ քեզ ապերախտ ըլլալէս, երբ պիտի սկսիմ իսկապէս զքեզ սիրել. ահա աս օրէս կառաջադրեմ սիրել զքեզ 'ի բոլոր սրտէ, և ուրիշ բան չսիրել քեզնէ 'ի զատ. ով անսահման բարութիւն, քեզ երկիր պագանեմ ընդ ամենայն երկրպագուս քո և ըզքեզ կը սիրեմ ընդ ամենայն սիրելիս քո, 'ի քեզ հաւատամ, 'ի քեզ յուսամ, զքեզ կը սիրեմ, զիս բոլորովին քեզ կը նուիրեմ, օգնէ ինծի քու շնորհօքդ։ Տէր, դուն գիտես իմ տկարութիւնս, և սակայն այնչափ շընորհք ըրիր քանի որ ես զքեզ չէի սիրեր, և չէի փափաքեր զքեզ սիրելու, որչափ աւելի հիմա պէտք է յոյս ունենամ քու ողորմութեանդ, որովհետև զքեզ կը սիրեմ, և ուրիշ բանի մը փափաք չունիմ, բայց միայն զքեզ սիրելու։ Տուր ինծի տէր զսէր քո, զայն սէր եռանդագին՝ որ ամէն արարածական մխիթարութիւն ինծի մոռցընել տայ, սէր զօրաւոր՝ որով կարենամ ոտքի տակ առնել ամէն դժուարութիւնք քու կամքըդ ընելու համար, սէր մշտնջենաւոր՝ որ ասկից ետև անլուծանելի պահէ զիս իմ փրկչիս հետ։ Ամէն բանի յոյս ունիմ քու արդեամբքդ, փրկութիւն իմ Յիսուս, և ամէն բանի յոյս ունիմ քու բարեխօսութեամբդ սուրբ աստուածածին։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Չէ թէ միայն այնչափ գեղեցիկ արարածներ մեզ պարգևեց Աստուած, այլ բնական չխնայեց ամէն բանը, ինչուան որ զինքն ալ մեզի չտայ։ Անիծած մեղքը կորսընցընել տուեր էր մեզի Աստուծոյ շնորհքն ալ, արքայութիւնն ալ, և գերի ըրեր էր զմեզ դժոխոց, և որդին Աստուծոյ զարմացընելով զերկինս և զընութիւն՝ ուզեց աս երկիրս գալ և մարդ ըլլալ, որ զմեզ խալըսէ յաւիտենից մահուանէ, և նորէն պարգևէ մե-

1 Որ գայ առ իս, ոչ հանից արտաքս։ Յովհ. Զ. 37։

զի զարքայութիւն, զոր կորուսեր էինք։ Ա՜ս ինչ զար-մանալի բան է որ թագաւոր մը գայ որդ մը ըլլայ որդերուն համար. անչափապէս մենք պիտի զարմանանք, որ Աստուած գայ մարդ ըլլայ մարդկանց համար. զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ.. կերպարանօք գտեալ իբրև զմարդ[1]. և այնպէս բանն մարմին եղև և բնակեցաւ 'ի մեզ[2]. աւելի մեծ զարմանք ան է տեսնելը թէ ինչ ըրաւ և ինչ քաշեց մեր սիրոյն համար։ Զմեզ փրկելու համար բաւական էր իր մի միայն արեան կաթիլը, մէկ կաթիլ մը արցունքը, և մէկ սոսկ աղօթքը, վասն զի իր աղօթքը անհուն էր արժողութեամբ, ուստի բաւական էր փրկելու բոլոր աշխարհքը և այլ ուրիշ անբաւ աշխարհքներ։ Բայց նայէ ինչ կըսէ ոսկեբերան. որ ինչ բաւական էր վասն գնոց, չէր բաւական վասն սիրոյ. ուստի ամէն բան քաշեց, սաստիկ դառն մահ ալ, որ հասկըցընէ իր անբաւ սէրը որով վառուած էր մեզի համար։ Խոնարհեցոյց զանձն՝ լեալ հնազանդ մահու չափ, և մահու խաչի[3]։ Ա՜հ, ինչչափ մեծ էր Աստուծոյ սէրը, որուն չի համեմատիր բոլոր հրեշտակաց և մարդկանց սէրը. սրբոյն Պոնաւենդուրայի ըսածին պէս, չափազանց էր Յիսուսի ցաւը, չափազանց էր սէրն ալ։ Թէ որ փրկիչն Աստուած չըլլար, հապա մէկ պարզ մեր բարեկամը կամ ազգականը, ինչ աւելի սէր և գութ կրնար մեզի ցցընել քան մեռնելով մեզի համար. մեծ ևս քան զայս սէր ոչ ոք ունի, եթէ զանձն իւր դիցէ 'ի վերայ բարեկամաց իւրոց[4]։ Թէ որ Յիսուս մեռած ըլլար իր հայրը խալըսելու համար, ինչ աւելի կրնար ընել անոր սիրոյն համար. Թէ որ դուն, ով մարդ, Աստուած մը ըլլայիր և Յիսուսի արարիչը, ինչ աւելի կրնար ընել քեզի համար, ինչպէս իր կեանքը զոհել անարգանաց և ցաւոց ծովուն մէջ. Թէ որ երկրիս ամենէն անարգ մարդը ըրած ըլլար քեզի համար ինչ որ Քրիստոս ըրաւ նէ, կրնայի՞ր զինքը չսիրել։ Հիմա ինչ կըսես, կը հաւատա՞ս դուն 'ի մարդեղութիւն և 'ի մահ Քրիստոսի. կը հաւատաս և չես սիրեր. կրնա՞ս ուրիշ բան մը սիրել առաւել քան զՔրիստոս, գուցէ կը տարակուսի՞ս թէ

1 Փիլ. բ. 7։ 3 Փիլ. բ. 8։
2 Յովհ. ա. 14։ 4 Յովհ. ժե. 13։

ինքը զքեզ չի սիրեր· սրբոյն Օգոստինոսի ըսածին պէս, Քրիստոս անոր համար եկաւ, որ մարդս ճանչնայ թէ որչափ զինքը կը սիրէ Աստուած, մարդեղութենէն առաջ կրնար մարդ տարակուսիլ թէ արդեօք Աստուած սրտանց զիս կը սիրէ՞, բայց յետ մարդեղութեան և մահուան Քրիստոսի ինչպէս կրնայ մէկը տարակուսիլ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Յիսուս փրկիչ իմ, կը տեսնեմ որ քու բոլոր բանդ ուրիշ բան չէ, եթէ ոչ ստիպել զիս հարկաւ զքեզ սիրելու· ան ալ կը տեսնեմ որ իմ ապերախտութիւնս զքեզ կըստիպէ որ զիս մոռնաս և երեսէ ձգես· օրհնեալ լիցի միշտ քու երկայնմտութիւնդ, որով ինծի այդչափ համբերեցիր։ Արժան էր որ ինծի համար զատ դժոխք մը ըլլար· միայն քու մահդ ինծի վստահութիւն կու տայ։ Տուր ինծի աղէկ ճանչնալ քու արդիւնքդ, ով անբաւ բարի, թէ որչափ սիրելի ես, և իմ պարտքս զքեզ սիրելու· ես արդէն գիտէի, Յիսուս իմ, որ դուն ինծի համար մեռար, և ետքը ինչպէս կրցայ, Աստուած իմ, ապրիլ այնչափ տարի առանց զքեզ սիրելու։ Ա՜խ, թէ կարենայի նորէն ապրիլ նոյն տարիները՝ զիս բոլոր քեզի տալով, բայց որովհետև տարիները դառնալու պէս չեն, գոնէ շնորհք տուր որ մնացած կեանքս 'ի սէր քո անցընեմ և 'ի հաճութիւն քո· սիրելիդ իմ փրկիչ, ես զքեզ յամենայն սրտէ կը սիրեմ, աւելցուր աս սէրս, յիշէ միշտ ինչ որ ինծի համար ըրիր, և մի թողուր որ մէյմըն ալ ապերախտ ըլլամ քեզի· քաւ լիցի, չեմ ուզեր մէյմըն ալ դէմ կենալ ինծի տուած լուսաւորութեանդ։ Դուն կուզես ինծմէ սիրուիլ, ես ալ քեզ կուզեմ սիրել, և ի՞նչ բան պիտի սիրեմ բաց 'ի քէն, Աստուած իմ, անբաւ գեղեցկութիւն, անբաւ բարութիւն, Աստուած մարդացեալ և մահացեալ վասն իմ, Աստուած որ այնչափ երկայնմտութեամբ ինծի համբերեցիր, և զիս պատժելու տեղը ըստ արժանեացս, պատիժը փոխեցիր 'ի շնորհս և 'ի բարիս։ Ուստի զքեզ միայն կը սիրեմ, Աստուած իմ, որ արժանի ես անհուն սիրոյ· ուրիշ բանի չեմ ցանկար, ուրիշ բան չեմ ուզեր, ապրիլ ալ չեմ ուզեր ուրիշ բանի համար, բայց միայն զքեզ սիրելու, մոռնալով զայլ ամենայն բան որ դուն չես։ Ով անսահման սէր տեառնդ

խմոյ, զուն օգնութիւն հասիր աս հոգւոյս, որ սրտանց կը հառաչէ և կը փափաքի բովանդակ քուկդ ըլլալու։ Ձեռն տուր ինձ, ով գչխոյ աստուածամայր Մարիամ, քու բարեխօսութեամբդ, աղաչէ զՅիսուս որ զիս իրեն արժանի ընէ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Զարմանքս կը շատնայ տեսնելով զփափաքը զոր Յիսուս ունէր մեզի համար չարչարուելու և մեռնելու. Մկրտութիւն մի ունիմ մկրտիլ և զիա՞րդ փութամ մինչև կատարեսցի[1]. արիւնովս պիտոր մկրտուիմ, կըսէր, և այնչափ կը փափաքիմ շուտով չարչարուիլ և մեռնիլ, որպէս զի մարդիկ ալ շուտով ճանչնան իրենց վրայ ունեցած սէրս. Նոյն էր ըսելն ալ, ցանկանալով ցանկացայ զայս պասեք ուտել ընդ ձեզ[2]։ Ով Յիսուս իմ, մարդիկ քեզ անոր համար չեն սիրեր, վասն զի չեն մտածեր ան սէրն որ դուն իրենց ցցուցիր։ Ա՛ս տէր Աստուած,՝ մէկն որ միտքը բերէ թէ Աստուած իրեն համար մեռեր է, և մեռնիլ ուզեր է որ մարդկանց իր սէրը յայտնի ցցընէ, ի՞նչպէս կարելի է որ ապրի առանց զինքը սիրելու. սէրն Քրիստոսի ստիպէ զմեզ[3], կըսէ Պօղոս առաքեալը. չէ թէ այնչափ իր ըրածը և քաշածը, որչափ իր սէրը՝ զոր ցցուց չարչարուելով մեզի համար, աս կըստիպէ և կը բռնադատէ զմեզ՝ որ զինքը սիրենք։ Աս մտածելով սուրբն Լաւրենտիոս յուստինեան կըսէ. տեսանեմք զիմաստութիւնն յիմար եղեալ առ սաստկութեամբ սիրոյ։ Աստնկ յիմարեալ ձևացաւ աստուածորդին յանչափութենէ սիրոյ իւրոյ առ մեզ. և ո՞վ կրնար հաւատալ թէ որ հաւատքը չըսէր, թէ արարիչն յանձն էառ մեռանիլ վասն արարածոց իւրոց։ Ի՞նչ էր արդեօք Յիսուսի այսչափ սիրոյն պատճառը. ա՛հ, ուրիշ բանի համար չէ, բայց միայն որ իր ցցուցած սիրովը ամենուս սիրտը շահի. վասն այսորիկ Քրիստոս 'ի վերայ ամենայնի մեռաւ և յարեաւ, զի մեռելոց և կենդանեաց առ հասարակ տիրեսցէ[4]։ Ուստի սուրբերը նայելով 'ի

1 Ղուկ. ԺԲ. 50։
2 Ղուկ. ԻԲ. 15։
3 Բ. Կոր. Ե. 14։
4 Բ Կոր. Ե, 15։

մահն Քրիստոսի՝ Թէև սեպեցին իրենց կեանքը տալ վասն սիրոյն Աստուծոյ, որ սաստիկ մարդասէր է. քանի՜ քանի ազնուականք, իշխանք և Թագաւորք, Թողուցին իրենց ազգականները, հայրենիքը, հարստութիւնը, Թագաւորութիւնն ալ, և վանքերը ճգնեցան որ կեանքերնին անցընեն Քրիստոսի սիրոյն համար միայն. որչափ մարտիրոսներ իրենց կեանքը զոհեցին, որչափ կոյս աղջկունք հրաժարելով մեծներուն պսակէն՝ փափաքանօք 'ի մահ դիմեցին, որ կերպով մը վրճարք ընեն սիրոյն Աստուծոյ մահացելոյ առ սէր իւրեանց. հապա դուն ինչ ըրած ունիս ինչուան հիմա Քրիստոսի սիրոյն համար։ Ինչպէս որ ինքը մեռաւ սուրբերուն համար, սրբոյն Լաւրենտիոսի ըսենք, սուրբ Լուչիայի, սուրբ Ագնեսի՝ սաստիկ ալ քեզի համար մեռաւ, ուրեմն գոնէ մնացած կեանքիդ մէջ՝ որ Աստուած քեզի կու տայ զինքը սիրելու համար, ձեռքէդ եկածն ընես. աս օրէս սկսեալ միշտ նայէ խաչելութեան վրայ՝ յիշելով ան սէրը որ քեզի ցուցեր է, և ըսէ, ո՜հ տէր Աստուած իմ, դուն 'ինծի համար մահ յանձն առեր ես։ Գոնէ ասչափ ըրէ, ան ատեն չես կրնար չշարժիլ քաղցր սիրով, այլ կըստիպիս սիրել զԱստուած, որ այնչափ զքեզ սիրեր է։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով սիրելի փրկիչ իմ, իրաւ է որ անոր համար ըզքեզ չեմ սիրած, վասն զի միտքս չեմ բերած ան սէրն որ դուն ինծի ցուցիր։ Յիսուս փրկիչ իմ, ես քեզի դէմ չափէ դուրս ապերախտ գտնուեցայ, դուն կեանքդ տուիր ինծի համար դառն և սոսկալի մահուանք քան զամէն մահ, իսկ ես չիճանչցայ զքեզ, չուզեցի ալ միտքս բերել. Ներէ Թող ինծի, ես խօսք կու տամ աս օրէս, ով տէր իմ խաչեալ, որ դուն միայն ըլլաս իմ մտածելիքս, մէկ հատիկ խորհուրդս և յօժարութիւնս։ Ուստի երբոր սատանան և աշխարհք զիս կը գրգռեն արգելած բանի մը, կաղաչեմ դուն ինծի օգնութիւն հասիր, փրկիչ իմ. յիշեցուր ինծի իմ սիրոյս համար քաշածներդ, որպէս զի ես կապուիմ 'ի սէր քո, և մէյմըն ալ քեզ չվշտացընեմ. Թէ որ իմ մէկ ծառաս ինծի այնչափ բան ըրած ըլլար՝ ինչպէս դուն ըրիր, կը համարձակէ՞ր անոր կամացը դպչիլ, և ահա ես յանդգնե-

ցայ այնչափ անգամ երես դարձընել քեզէ, որ ինծի համար մեռար: Ով քաղցր աստուածային սիրոյ, որ զԱստուած առիպեց իր կեանքը տալու ինծի համար, վառէ բորբոքէ իմ բոլոր սիրտս, և փճացուր զամէն յօժարութիւն արարածոց. ով սիրելի փրկիչս ինչպէս կարելի է որ մէկը զքեզ մոռնայ կամ 'ի մսուրն Բեթղեհէմի կամ 'ի վերայ խաչին 'ի Գողգոթա կամ 'ի սեղան սուրբ խորհրդոյ, և քու սիրովդ չվառուիր: Շատ եղան ան դժբաղդ տարիները, որոնց մէջ թշուառաբար ապրեցայ առանց յիշելու քու չարչարանքդ և քու սէրդ, հիմա զիս բոլոր քեզ կու տամ. ու թէ որ չեմ գիտեր ըստ արժանւոյն զիս նուիրել, դուն զիս ափինդ բռնէ, և բոլորովին թագաւորէ սրտիս վրայ. եկեսցէ արքայութիւն քո[1]: Ուրիշ բանի ծառայ չըլլամ, բայց միայն քու սիրոյդ. ուրիշ բանի խնդրքս չփնտռամ չհաւատամ, բայց միայն զքեզ սիրել և զքեզ հաճեցընել: Դուն ինծի մօտ եղիր միշտ քու շնորհքովդ, որպէս զի հաւատարիմ մնամ առ քեզ: Ի քո արդիւնս ապաւինեալ եմ, Յիսուս, և դու մայր սիրոյ, շնորհէ տուր ինծի սիրելու զՄիածինդ, որ այնչափ սիրելի է և այնչափ զիս սիրեր է:

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԼԴ.

### ՑԱՂԱԳՍ ՍՈՒՐԲ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ

*Առէք ու կերէք, աս իմ մարմինս է[2].*

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Գանք նայինք մեծ պարգևս սուրբ խորհրդոյ Հաղորդութեան, տեսնենք զմեծ սէրն զոր Յիսուս ցցուց աս պարգևովս, զմեծ փափաքն Յիսուսի, որով ուզեր

1 Ղուկ. ԺԱ. 2:
2 Առէք կերայք, այս է մարմին իմ. Մատ. ԻԶ. 26:

ընդունինք աս իրեն պարգևը։ Նախ և առաջ մտածենք զմեծութիւն պարգևին՝ զոր ըրաւ մեր փրկիչը բովանդակ մեզ 'ի կերակուր սուրբ հաղորդութեամբս։ Սուրբ Օգոստինոսին ըսածին պէս, ան որ ամենակարող էր, չէր կրնար աւելի բան մը տալ. սուրբ Բեռնարդոս անոնցին ալ կըսէր թէ ալ ի՞նչ աւելի աղէկ գանձ կրնար ըլլալ մարդուս սրտին մէջ քան զՔրիստոսի մարմինը։ Ի՞նչ կըսէ մարգարէն. օրհնեցէք ըզտէր, հնչեցէք զանուն նորա, պատմեցէք 'ի հեթանոսս զփառս նորա[1]։ Թէ որ մեր փրկիչը աս շնորհքս չըներ նէ, ո՞վ կրնար անիկայ իրմէ խնդրել, ո՞վ կը համարձակէր բնաւ իրեն ըսել, տէր թէ որ կուզես որ մենք քու սէրդ ճանչնանք, դիր զքեզ հացի կերպով, և թող տուր որ մենք կարենանք կերակրի պէս զքեզ ուտել. աստանկ բան խելքէ ալ անցընել անխելքութիւն էր և խենթութիւն։ Քրիստոս երբոր յայտնեց աշակերտելոց Հրէից աս պարգևս որ պիտի թողուր՝ այսինքն սուրբ հաղորդութիւնը, անոնք չկրցան բնաւ հաւտալ, հեռու գացին իրմէ ըսելով, զի՞արդ կարէ սա տալ մեզ զմարմին իւր յուտել . . . խիստ է բանս այդ, ո՞վ կարէ լսել դմա[2]։ Բայց ան բանն որ մարդկանց խելքէն չէր կրնար անցնիլ, խորհեցաւ և գործադրեց մեծ սէրն Քրիստոսի, սրբոյն Բեռնարդոսի ըսածին պէս՝ աս խորհուրդս Քրիստոսի սիրոյն յիշատակն է. զայս հասկըցուց ինքը տէրն ալ ըսելով թէ հաղորդութեան խորհուրդը իբրև իմ յիշատակս պահեցէք։ Բաւական չսեպեց իր սիրոյն կեանքը զոհել մեզի համար, այլ մահէն առաջ աս սիրոյ շնորհքը մեզի ընել հաճեցաւ, և այս Քրիստոսի ըրածներուն մէջ ամենէն մեծն է. սուրբ Ֆրանչիսկոս սալեզեան կըսէ թէ ի՞նչ մեծ բան երևնար պիտի մեզի, թէ որ թագաւոր մը սեղան նստած իր պնակէն բաժին մը խաւրէր մէկ խեղճ աղքատի մը, հապա ո՞րչափ մեծ բան էր թէ որ բովանդակ իր սեղանը անոր խաւրէր. իսկ ո՞րչափ աւելի, թէ որ կտոր մը կտրէր իր թևէն, և անոր տար որ ուտէ։ Արդ Յիսուս 'ի սուրբ հաղորդութեան մեզ կերակուր կու տայ, չէ թէ բաժին մը իր սեղանէն, և ոչ կտոր մը իր մսէն, հապա իր բովանդակ մարմինը. առէք կերայք այս է

1 Սղ. ՃԲ. 4։ 2 Յովհ. Զ. 53. 61։

մարմին իմ[1]. մարմնոյն և արեան հետ ալ կու տայ մեզ իր հոգին և իր աստուածութիւնը: Ուստի կըսէ սուրբ ոսկեբերան. բոլորն ալ քեզի տուաւ, և իրեն բան մը չպահեց. աս է սրբոյն Թովմայի ըսածն ալ, թէ Աստուած 'ի հաղորդութեան բոլոր իր ունեցածը մեզ տըւաւ, և սուրբն Պոնաւենդուրա զարմացմամբ մը ըսաւ. ահա զոր աշխարհս ոչ կարէ տանել, մեզի գերի մը եղաւ. արդ եթէ տէրն 'ի հաղորդութեան զինքը բոլոր մեզի կու տայ, ալ ինչպէս կրնանք տարակուսիլ թէ ինչ շնորհք ուզենք նէ չտայ մեզի. զիա՞րդ ոչ նովաւ հանդերձ զամենայն շնորհեսցէ մեզ[2]:

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Յիսուս իմ փրկիչ, ո՞վ ստիպեց զքեզ որ բոլոր զքեզ մեզի կերակուր տաս, ալ ինչ աւելի ունէիր տալու՝ որ մեզ պարտաւորես 'ի սիրել զքեզ: Ով Աստուած իմ, լոյս տուր մեզի որ կարենանք ճանչնալ թէ ինչ չափազանց բան է աս որ մեզի կերակուր ըլլաս զքեզ. որպէս զի միանաս մեզի պէս խեղճ ողորմելի մեղաւորներուն հետ. արդ եթէ դուն զքեզ բովանդակ մեզ կու տաս, իրաւունք է որ մենք ալ զմեզ բովանդակ քեզի տանք: Ով փրկիչ իմ, հապա ես ինչպէս կըրցայ զքեզ դառնացընել, որ այսչափ զիս սիրեցիր, և դուն բան չի թողուցիր որ չընես, իմ սէրս շահելու համար: Մարդացար վասն իմ, մեռար վասն իմ, և դուն ինքդ ինծի կերակուր եղար, արդեօք ուրիշ բան մնա՞ց ընելիք. զքեզ կը սիրեմ, ով անբաւ բարութիւն. զքեզ կը սիրեմ, ով անբաւ սէր. տէր իմ և Աստուած, ստէպ իմ սիրտս եկուր և բորբոքէ սուրբ սիրովդ. շնորհք տուր ինծի որ զիս բոլորովին մոռնամ, ոչ ուրիշ բան մտմտամ և ոչ ուրիշ բան մը սիրեմ քեզմէ 'ի զատ: Ամենասրբուհիդ Մարիամ, բարեխօս եղիր ինծի համար, և քու միջնորդութեամբդ արժանի ըրէ զիս շատ անգամ ընդունելու զմիածինդ 'ի սուրբ հաղորդութեան:

1 Մտթ. ԻԶ. 26:    2 Հռ. Ը. 32:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Մէյմըն ալ նայինք թէ աս ինչ մեծ սէր է զոր ցըցուց փրկիչն աս խորհրդովս : Սուրբ հաղորդութիւնն է բաժանդակ սիրոյ պարգև մը . հարկ էր մեր փրկութեանը համար ըստ վճռոյն Աստուծոյ՝ որ փրկիչը մեռնէր , և պատարագելով իր կեանքը՝ մեր մեղաց վըճարում մը ընէր աստուածային արդարութեան , բայց ինչ հարկ կար որ Քրիստոս մեռնելէն 'ի զատ գինքը մեզ կերակուր թողնէր , և ահա սէրն գոյս ուզեց. սուրբն Լաւրենտիոս յուստիննեան կըսէ թէ տէրն մեր ուրիշ բանի համար չի գրաւ զխորհուրդ հաղորդութեան , եթէ ոչ յայտնի նշան գերազանց սիրոյ իւրոյ. աս է Յովհաննէս աւետարանչի գրածն ալ . գիտաց Յիսուս եթէ հասեալ է ժամ նորա , զի փոխեսցի յաշխարհէ աստի առ հայր , սիրեաց զիւրսն , 'ի սպառ սիրեաց զնոսա[1] , այսինքն , իրեն մեծ սէրը ցցուց՝ սահմանելով զխորհուրդ սուրբ հաղորդութեան , ուստի աստնէ կը մեկնէ Թէոփիլակտոս ոսկեբերանի հետ , 'ի սպառ սիրեաց զնոսա , այսինքն գերազանց սիրով չափէ դուրս սիրեց՝ սուրբ հաղորդութեան խորհուրդը սահմանելով : Ասոր համար կըսէ առաքեալը թէ իր մահուան մօտ տէրն աս բանս ըրաւ . 'ի գիշերին յորում մատնէր , առ հաց , գոհացաւ , եբեկ և ասէ . առէք կերայք , այս է մարմին իմ [2] : Երբոր թշնամիք կը պատրաստէին ճամկանք , փուշ և խաչ զինքը սպաննելու , ան ատեն սիրալից փրկիչն աս եղբի նշանը թողուց իր սիրոյն : Եւ ինչո՞ւ մահուան մօտ , և ոչ առաջուց դրաւ աս սուրբ խորհուրդս . անոր համար է , կըսէ սուրբն Բեռնարդինոս , վասն զի նշանք սիրոյ բարեկամաց երբոր մահուան ատեն կերևնան նէ , աւելի հաստատ և դիւրաւ կը յիշատակուին , և աւելի սիրով կը պահուին : Արդէն կըսէ առաջուց շատ կերպով Յիսուս մեզի տըրուած էր իբր կենցաղակից , վարդապետ , հայր , լոյս , օրինակ և զոհ . կը մնար վերջի աստիճան սիրոյ , որ պիտի տրուէր մեզի 'ի կերակուր՝ բոլորովին մեզի հետ միանալու համար ինչպէս կերակուրը ուտողին հետ կը

[1] Յ-հ · ԺԳ · 1 :

[2] Ա · Կոր · ԺԱ · 23 · 24 :

միանայ. վերջին աստիճան սիրոյ եղաւ, երբոր ինքը տուաւ մեզի կերակուր, վասն զի մեզ տուաւ զինքը որ ամէն կերպով միանայ, ինչպէս կերակուրը և ուտողը կը միանան։ Ուստի փրկիչն մեր բաւական չսեպեց մէկ ըլլալ մեզի հետ սոսկ մարդանալով, այլ ուզեց աս սուրբ խորհրդովս ճար մը գտնել որ ամէն մէկերնուս հետ 'ի մասնաւորի միանայ։ Սուրբն Ֆրանչիսկոս սալեզեան կըսէ թէ բնաւ ուրիշ բանի մը մէջ չենք կըրնար իմանալ թէ ինչպէս սրտանց մեզ կը սիրէ Յիսուս և կը փափաքի, ինչպէս աս խորհրդոյս մէջ ուր զինքը զրեթէ ոչինչ կը դարձընէ և կերակուր կըլլայ որ մեր սիրտը թափանցէ, և միանայ իր հաւատացելոց սըրտին հետ։ Ուստի կըսէ սուրբն ոսկեբերան. յոր ոչ կարեն համարձակ ակնարկել հրեշտակք, մեք ընդ նմա միանամք, և եղեալք իսկ մի մարմին և մի հոգի։ Ո՞ր հովիւ կայ, կըսէ, որ իր ոչխարները իրեն արիւնովը պահէ, մայրեր ալ երբեմն իրենց զաւակները ծծմարի կը յանձնեն. բայց Յիսուս Հաղորդութեանը իր մարմնով և արեամբը զմեզ կը պարարէ և զմեզ իրեն հետ կը միացնէ։ Իսկ թէ հարցընես, ինչո՞ւ մեզի կերակուր ըրաւ ինք զինքը, վասն զի սաստիկ սիրով զմեզ կը սիրէր, անոր համար ուզեց բոլորովին մեզի հետ միանալ մէկ ըլլալ։

Ապա ուրեմն Յիսուս Քրիստոս ուզեց ընել սքանչելեաց սքանչելիքը, յիշատակ արար սքանչելեաց իւրոց. ողորմած գթած է տէր, կերակուր տայ երկիւղածաց իւրոց [1]. որպէս զի իր փափաքը լեցընէ քեզի հետ ըլլալու, և միացընելու մեր և իր սիրտը։ Ուստի կաղաղակէ սուրբն Լաւրենտիոս յուստինեան. ով սքանչելի սիրոյ քո Յիսուս Քրիստոս, որ անանկ ուզեցեր քու մարմնոյդ հետ զմեզ մարմնացընել, որ քեզի հետ մէկ սիրտ մէկ հոգի ըլլանք՝ անբաժան կապուած։ Մեծ ծառայն Աստուծոյ հայրն Գոլոմպիէր կըսէր թէ իրաւ որ հաւատալու համար 'ի խորհուրդ սուրբ հաղորդութեան չեմ տարակուսիր Աստուծոյ կարողութեանը, բայց աւելի կը զարմանամ սիրոյն վրայ զոր Աստուած մեզ կը ցըընէ աս խորհրդովս. ըսենք թէ ինչպէս հացը մարմին Քրիստոսի կըլլայ, ինչպէս նոյն Յիսու-

1 Սղ. ճժ. 45։

սը չատ տեղ կը գտնուի . գիտենք որ Աստուած ամէն բանի կարող է . իսկ թէ հարցընես ինծի թէ ինչպէս Աստուած այնչափ սիրեր է զմարդը՝ որ ուզենայ անոր կերակուր ըլլալ , ուրիշ պատասխան չունիմ, բայց զայս թէ չեմ հասկընար , և թէ Յիսուսի սէրը անհասանելի է ։ Եւ սակայն , ով տէր , ասանկ չափազանց բանը՝ որ դուն կերակուր ըլլաս , կերենայ թէ անվայել է քու մեծվայելչութեանդ . ասոր պատասխանը կու տայ սուրբն Բեռնարդոս . սէրը իր պատիւը չի նայիր . նոյն է ոսկեբերանին պատասխանն ալ , սէրը պատճառ չունի՝ կը դիմէ ուր որ կը յօժարի , չէ թէ ուր որ պարտական է . ուստի հրեշտակային վարդապետն Թովմաս աս խորհուրդս կը կոչէ խորհուրդ սիրոյ և սիրոյ գրաւական . և սուրբն Բեռնարդոս , սէր ամէն սիրոյ ։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՑԱՆՔ

Ով անհուն սէր Յիսուսի , արժանի անհուն սիրոյ ։ Ա՜խ Յիսուս փրկիչ իմ, երբ պիտի ըլլայ որ ես ալ ըզքեզ սիրեմ, ինչպէս դուն զիս սիրեցիր . ալ ուրիշ բան չունիս դուն ընելու որ զքեզ ինծի սիրելի ընես . իսկ ես յանդգնեցայ թողուլ զքեզ զանբաւ բարիդ , որ դանամ չնչին և ողորմելի բաներ սիրեմ . կաղաչեմ, ինծի լոյս տուր , և բաց ինծի միշտ քու բարութեանդ մեծութիւնները . որպէս զի բոլորովին վառուիմ 'ի սէր քո , ջանամ քու կամքդ ընել ։ Ահա կը սիրեմ զքեզ , Յիսուս իմ, սէր իմ և իմ ամէն բանս , և կը փափաքիմ զիս քեզի հետ միացընել աս սուրբ խորհրդովս . ամէն բանէ զիս բաժնել և զքեզ միայն սիրել, կեանք իմ ։ Օգնեա ինձ , փրկիչ իմ Յիսուս , վասն արդեանց չարչարանաց քոց ։ Դուն ալ ինծի օգնութիւն հասիր , մայրդ Յիսուսի և մայր իմ, աղաչէ զինքը որ բոլորովին զիս վառէ 'ի սէր իւր սուրբ ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Մտածենք Յիսուսին մեծ փափաքն ալ որ մեզի կը ցցընէ 'ի սուրբ հաղորդութեան . գիտաց Յիսուս զի հասեալ է ժամ նորա [1] ։ Ինչպէս կրնար Յիսուս իր ժամը սեպել զայն գիշերն՝ որ իրեն դառն չարչարանաց

1 Յովհ . ԺԳ . 1 ։

սկիզբը պիտի ըլլար . անոր համար իր ժամը կը կոչէր , վասն զի նոյն գիշերը պիտի աւանդէր մեզի զայս խորհուրդ աստուածային , որ բոլորովին միանար իր ամէն սիրելեաց հետ . աս փափաքովս ըսաւ Թէ ցանկանալով ցանկացայ զայս պասեք ուտել ընդ ձեզ[1] ։ Աս խօսքով ուզեց փրկիչը հասկըցընել Թէ որչափ կը ցանկար սիրով կապուիլ մեր ամէն մէկին հետ յայս սուրբ խորհուրդ . ցանկանալով ցանկացայ ըսելը առաջ կու գար յայնչափ սիրոյն զոր ունէր առ մեզ ։ Ուստի կըսէ սուրբն Լաւրենտիոս յուստինեան Թէ կրակ ու բոց սիրոյ է աս խօսքս ։ Ուզեց զինքը մեզի Թողնել հացի տեսաքով , որպէս զի ամէն մարդ կարենայ զինքը ընդունել . Թէ որ մէկ տեսքով և սուղ ուտելիք մը Թողնէր նէ , աղքատները կարողուԹիւն չէին ունենար զինքը առնել , Թէ և աժան ուտելիքի կերպով տար նէ , գուցէ ան բանը դիւրաւ չէր գտնուէր բոլոր երկրիս վրայ . ուստի Յիսուս ուզեց հացի տեսակով Թողնել , որ աժան ալ է , և ամէն տեղ ալ կը գտնուի , և այնպէս ամէնն ալ կրնան գտնել և ճաշակել ։ Աս մեծ փափաքովս՝ որ ունի փրկիչն մեզի կերակուր ըլլալու , չէ Թէ կը հրաւիրէ զմեզ գալ զինքը ընդունել՝ ըսելով Եկայք կերայք'ի հացէ իմմէ , և արբէք զգինին զոր խառնեցի ձեզ , կերայք և արբէք և արբեցարուք եղբօրորդեակք իմ[2] , հապա պատուիրելով կը հրամայէ ալ Թէ առէք կերայք , այս է մարմին իմ[3]. մինչև յաւիտենից կենաց խոստմունք ալ կըսէ , որ յօժարուԹեամբ ընդունինք . որ ուտէ զմարմին իմ, ընդունի զկեանս յաւիտենականս[4] , որ ուտէ զհացս զայս , կեցցէ յաւիտեան[5] ։ Կէ նէ կըսպառնայ որ արքայուԹիւն չի կարենայ մտնել . եԹէ ոչ կերիջիք զմարմին որդւոյ մարդոյ , ոչ ունիք կեանս յանձինս[6] ։ Աս հրաւէրս , խոստմունքս և ըսպառնալիքս բոլոր առաջ կու գան 'ի փափաքանաց փրկչին միանալոյ մեզի հետ աս սուրբ խորհրդովս , և աս փափաքս է ծնունդ իր մեծ սիրոյն առ մեզ ։ Վասն զի սալեզեանին ըսածին պէս՝ սիրոյն վախճանը ուրիշ բան չէ , բայց միայն միանալ ընդ սիրելւոյն , որովհետև

1 Ղկ . ԻԲ . 15 ։
2 Առակ . Թ . 5 ։
3 Մատ . ԻԶ . 26 ։
4 Յովհ . Զ . 55 ։
5 Յովհ . Զ . 59 ։
6 Յովհ . Զ . 54 ։

աս խորհրդոյս մէջ Յիսուս բոլորովին կը միանայ հոգւոյ հետ, ինչպէս որ ինքն ըսաւ թէ՝ որ ուտէ զմարմին իմ և ըմպէ զարիւն իմ, յիս բնակեսցէ և ես 'ի նմա[1]։ Երանի թէ հասկընայիր հաւատացեալք թէ ինչ մեծ բարիք կը բերէ հոգւոյն սուրբ հաղորդութիւնը։ Յիսուս ամէն հարստութեանց տէրն է, վասն զի հայրն զինքը կացոյց ամենայնի տէր. գիտաց Յիսուս, զի զամենայն ինչ ետ հայր 'ի ձեռս նորա[2]։ Ուստի երբոր Յիսուս հոգւոյ մը հետ սուրբ հաղորդութեամբ կը միանայ, իր հետը կը բերէ զամէն շնորհքը, ինչպէս կըսէ Սողոմոն յաւիտենական իմաստութեան համար. եկին ինձ ամենայն բարութիւնք միանգամայն ընդ նմա[3]։ Սուրբն Դիոնեսիոս կըսէ թէ հաղորդութիւնն ունի զամենամեծ զօրութիւն կատարելոյ զսրբութիւն, և սուրբ Վինչենցիոս փերերեան կը գրէ թէ, աւելի կը շահի հոգին մէկ հաղորդութեամբ մը, քան թէ շաբաթ մը պաք պահելով հացիւ և ջրով։ Տրիդենտեան ժողովոյն վարդապետութիւնն է թէ հաղորդութիւնն է դեղթափ որով ազատ կըլլանք 'ի հանապազորդեան յանցուածոց, և կը պահուինք 'ի մահուչափ մեղաց. և սուրբ Իգնատիոս աստուածազգեացը աս սուրբ խորհուրդն դեղ անմահութեան կը կոչէ։ Իննովկենտիոս երրորդն ալ ըսաւ, Քրիստոս խորհրդով խաչին ազատեց զմեզ յիշխանութենէ մեղաց, և խորհրդով սուրբ հաղորդութեան կազատէ զմեզ 'ի կարողութենէ մեղանչելոյ։ Աս խորհուրդս կը վառէ ալ զհուր սիրոյն Աստուծոյ, ըստ այնմ թէ մուծէք զիս 'ի տուն գինւոյ, կարգեցէք 'ի վերայ իմ սէր, հաստատեցէք զիս իւղով. կուտեցէք յիս խնծոր, զի խանդակաթ եմ ես սիրով[4]. ուր սուրբ Գրիգոր Նիւսացին կըսէ թէ, իրաւցընէ հաղորդութիւնն է աստ տուն գինւոյ, ուր հոգին անանկ կը հարբենայ սիրովն Աստուծոյ, որ կը մոռնայ աշխարհքս ալ, ամէն արարածքն ալ, և աս է ինչպէս խանդակաթ ըլլալ սուրբ սիրով։ Պատուական հայրն Ֆրանչիսկոս Ոլեմոսս թէադինն ալ կըսէր թէ ուրիշ բան չկայ այնչափ զօրաւոր 'ի բորբոքել զմեզ 'ի սէրն Աստուծոյ, ինչպէս սուրբ հաղորդութիւնը։ Աստուած սէր է[5], տէր

1 Յովհ. Զ. 57։
2 Յովհ. ԺԴ. 3։
3 Իմաստ. Է. 11։
4 Երգ. Բ. 4. 5։
5 Ա. Յովհ. Դ. 8։

Աստուած մեր հուր ծախիչ է[1]։ Զայս սիրոյ կրակը երկրիս վրայ ձգելու համար եկաւ բանն հայրական․ հուր եկի արկանել յերկիր, և զի՞նչ կամիմ թէ արդէն իսկ բորբոքէր[2]։

Ո՛հ, որպիսի՜ սիրուն բոցեր սուրբ սիրոյ կը վառէ Յիսուս 'ի հոգիս՝ որոնք որ սաստիկ կարօտով կառնեն հաղորդութեան խորհուրդը։ Սրբուհին կատարինէ սենացի մէկ օր մը քահանայի մը ձեռքը տեսաւ զՅիսուս 'ի հաղորդութեան՝ սիրոյ հնոցի մը պէս, անանկ որ կը զարմանար թէ ինչպէս անանկ մեծ կրակէ չեն այրուիր և մոխիր դառնար բոլոր մարդկանց սիրտերը։ Սուրբն ոսկեբերան կըսէ թէ կայծակ է հաղորդութիւնը, և անանկ զմեզ կը բորբոքէ՝ որ իբրև կրակ փչող առիւծներու պէս կելլենք ան սեղանէն, սարսափելի ըլլալով սատանայի։ Բայց գուցէ մէկը ըսէ, ես անոր համար շատ չեմ հաղորդուիր, վասն զի զիս պաղ կը տեսնեմ 'ի սիրոյն Աստուծոյ․ անանկ մարդը Գերսոնի ըսածին պէս՝ նոյն է թէ ըսէր․ ես կրակի չեմ մօտենար, վասն զի զիս պաղ կը տեսնեմ։ Ուրեմն որչափ ցուրտ կըզգանք նէ, այնչափ աւելի պիտի մօտենանք սուրբ հաղորդութեան, թէ որ կը փափաքինք զԱստուած սիրել։ Աղէկ կըսէ սալեզացի սուրբն Ֆրանչիսկոս․ թէ որ քեզի հարցընեն թէ ինչո՞ւ այդչափ շուտ շուտ կը հաղորդուիս, ըսէ իրենց թէ, երկու ցեղ մարդիկ պէտք է որ անպակաս հաղորդուին, կատարեալները և անկատարները, կատարեալները որպէս զի պահուին 'ի կատարելութեան, և անկատարները որ կատարելութեան հասնին։ Նմանապէս սուրբն Բոնաւենդուրա ալ կըսէ․ թէպէտ և գաղջութեամբ, բայց վստահութեամբ յողորմութիւնն Աստուծոյ մօտեցիր․ այնչափ աւելի մարդս կարօտ կըլլայ բժշկի, որչափ որ աւելի հիւանդութեան նշաններ վրան կըզգայ։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով ազնուէր փրկիչ իմ Յիսուս, դուն բան չիթողուցիր որ չիցցընես մեզի 'ի նշան սիրոյդ, և ալ աւելի ինչ բան պիտի ցցընես թէ զմեզ կը սիրես․ ուստի ով անհուն բարութիւն, շնորհք տուր ինծի որ ես զքեզ

1 Բ․ Օր․ Դ․ 24։ 2 Ղուկ․ ԺԲ․ 49։

սիրեմ ասկից ետև՝ յամենայն զօրութենէ և ամէն փափաքանօք, և զմիտ պիտի սիրէ իմ սիրտս ամէն կերպով, բայց զքեզ միայն, ով փրկիչ իմ, որ կեանքդ տալէն ետև՝ զքեզ բոլոր կու տաս աս սուրբ խորհրդովս: Ով տէր իմ, տուր ինծի յիշել միշտ քու սէրդ, որ զիս բոլորովին մոռնամ և զքեզ միայն սիրեմ անպակաս սիրով: Կը սիրեմ զքեզ, Յիսուս իմ, ամէն բանէս վեր, և միայն զքեզ սիրել կուզեմ. կաղաչեմ, հեռացուր ինծմէ զամէն յօժարութիւն որն որ քեզի համար չէ: Շնորհակալ եմ որ ատեն կու տաս ինծի զքեզ սիրելու, և ողբալու ան բաները որովք քեզ վշտացուցեր եմ: Յիսուս իմ, իմ փափաքս ան է որ դուն ըլլաս մէկ հատիկ նպատակ ամէն սրտիս շարժմանցը. ձեռնտու եղիր ինձ փրկութեան, և բուն իմ փրկութիւնս ըլլայ զքեզ սիրել յամենայն սրտէ միշտ և յաւիտեանս: Մարիամ մայր իմ, օգնէ ինծի որ կարենամ սիրել զՅիսուս, և աղաչէ զինքը վասն իմ:

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԼԵ.

### ՍԻՐԵԼԻ ՀԱՃՈՒԹԻՒՆ ՅԻՍՈՒՍԻ ՄՆԱԼՈՅ Ի ԽՈՐԱՆՍ ՍՈՒՐԲ ԽՈՐՀՐԴՈՅՆ

*Ինծի եկէք ամենայն վաստակեալք և բեռնաւորք, ես ձեզի հանգիստ պիտի տամ[1].*

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

Փրկիչն որ զմեզ սիրեր էր, աս երկրէս երբոր պիտի բաժնուէր՝ իր մահուամբ փրկութեան գործքը լմընցընելէն ետև, չուզեց զմեզ մինաւորիկ թողնել յայսմ հովտի արտասուաց. ուստի կըսէ սուրբ Պետրոս ա-

1 Եկայք առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ. Մատթ. ԺԱ. 29:

գանթարացի, բնաւ լեզու մը հերիք չէ բացատրելու զմեծութիւն սիրոյն՝ զոր ունի Յիսուս առ ամենայն հոգիս։ Ուստի երբոր կուզէր սուրբ փեսայն ատ կեանքէս ելլել, որպէս զի զինքը չմոռնանք՝ յիշատակ թողուց մեզի աս սուրբ խորհուրդը, ուր անձամբ մնաց, չուզելով որ երկուքին մէջը ուրիշ գրաւական մնայ վառպահելու յիշատակը, բայց եթէ ինքը միայն։ Ուստի աս մեծ սէրս կը պահանջէ մեզմէ մեծ սէր մը առ փրրկիչն, ատոր համար վերջի ատեններս ուզեց որ դրուի տօն 'ի պատիւ սուրբ սրտի իւրոյ [1], որպէս զի մենք ալ մէկ նշան մը հատուցման ցցընենք իր սիրալիր հաճութեան մնալոյ 'ի սուրբ սեղան. և միանգամայն վճարք մը ընենք անարգանաց՝ որովք կը նախատեն իր սէրը հերետիկոսք և վատթար քրիստոնեայք։

Յիսուս կեցած է յայս սուրբ խորհուրդ, նախ որպէս զի ամէնքը զինքը գտնեն, երկրորդ որպէս զի ամէնքը կարենան գալ իրեն հետ տեսնուիլ, երրորդ որպէս զի ամենուն շնորհք ընէ. Քրիստոս կը գտնուի յամենայն զանազան խորանս, որպէս զի ամէնքը որոնք որ կուզեն կարող ըլլան զինքը գտնել։ Ան գիշերն որ փրկիչն աշակերտացմէ պիտոր բաժնուէր, և մեռնելու պիտի երթար, անոնք ցաւէն կու լային թէ ինչպէս պիտի զատուին իրենց սիրելի վարդապետէն. բայց Յիսուս կը մխիթարէր զանոնք ըսելով թէ. որդեակք իմ, ես կերթամ ձեզի համար մեռնելու, բայց մեռնելովս ալ՝ ձեզ չեմ ուզեր մինակ թողնել. քանի որ դուք երկրիս վրայ էք, կուզեմ ձեզի հետ մնալ սուրբ խորհրդով սեղանոյ, կը թողնեմ ձեզ իմ մարմինս ալ, հոգիս ալ, աստուածութիւնս ալ, և զիս բովանդակ. և քանի որ դուք աշխրքիս վրայ էք, ես, չեմ ուզեր ձեզմէ բաժնուիլ, ահաւասիկ ես ընդ ձեզ եմ մինչև 'ի կատարած աշխարհի [2]։ Սրբոյն Պետրոսի ալգանթարացւոյն ըսածին պէս, կուզէր փեսայն թողուլ իր հարսին ասչափ հեռաւորութեան ատեն ընկեր

1 Ըստ արևմտեան եկեղեցւոյ յինանց մէջ մասնաւոր յիշատակ սահմանուած է Քրիստոսի տեառն մերոյ սուրբ սրտին կամ սիրոյն, և առանձինն եղբայրութիւններ և ջերմեռանդութիւններ կան բարեպաշտ հաւատացելոց մէջ։

2 Մատ. ԻԸ. 20։

մը, որ մինակ չիմնայ, ասոր համար աս սուրբ խոր-հուրդս թողաւ, և քանի դայս ալ աւելի մեծ ընկեր չէր կրնար թողնել: Հեթանոսք որ այնչափ սուտ աստուած-ներ ունէին, չիկրցան Աստուած մը ձևացընել զի ամե-նայն սիրով մեր Աստուծոյն պէս, որ միշտ իրենց մօտ ըլլայ, և քովերնին կենայ այնչափ սիրով: Տես ինչ կըսէ սուրբ գիրքը. ով իցէ ազգ մեծ, որոյ իցէ 'ի նմա Աստուած մօտ 'ի նոսա, որպէս տէր Աստուած մեր: Աս բնութանս կը յարմարցընէ սուրբ եկեղեցին տօնի սուրբ հաղորդութեան: Կը տեսնես ինչպէս Փրկչատս տէրն մեր կեցած է 'ի վերայ սուրբ սեղանոյս, որպէս թէ ամփոփելով զինքը յայնչափ կալանս սիրոյ. քա-հանայք զինքը կը հանեն տաղաւարէն՝ բազմոցը դնե-լու, և զուրկիչները հաղորդելու, ետքը ներէն տեղը կը դնեն կը գոցեն, և Յիսուս զոհ կըլլայ հոն կենալու զի-շեր ցորեկ: Բայց փրկիչ իմ, ինչ պէտք էր այնչափ ժամերու մէջ զանուիլ գիշերով ալ, երբ մարդիկ դը-ներն ալ կը գոցեն, և քեզ միայն կը թողնեն. հերիք էր կենալդ սակ ցորեկ ատենը: Չէ, կըսէ, կուզէ ինքը գիշերն ալ կենալ, թէպէտև մինակուկ, սպասելով որ առաւօտը ուզողը շուտով զինքը գտնէ. սրբադան հարսը ժուռ կու գայ փնտռելով իր սիրականը և հար-ցընելով. միթէ զոր սիրեաց անձն իմ տեսէք[1]. չի գը-տածին պէս՝ ձայնը բարձրացընելով կը գոչէ առ փե-սայն. ցոյց ինձ՝ ո՞ւր հովուես, ո՞ւր հանգուցանես 'ի մի-ջօրէի[2]: Ատեն մը հարսը զփեսայն չէր գտնէր, վասն զի դեռ չիկար խորհուրդ սուրբ հաղորդութեան. բայց հիմա թէ որ հոգին գտնել կուզէ նէ զՅիսուս, հերիք է որ ժողովրդապետական ժամ մը երթայ, կամ վանք մը, ան տեղը կը գտնէ իր սիրականը՝ որ իրեն կըս-պասէ. չիկայ խեղճ գեղ մը, և ոչ կրօնաւորաց վանք մը, ուր սրբութիւն չպահուի, ամէն տեղ թագաւորն փառաց յանձն կառնէ փակուած կենալ տապանակի մը մէջ, փայտէ կամ քարէ, ուր հասարակօրէն մի-նաւորիկ դրած է՝ հազիւ մէկ եղի կանթեղ մը, և քովը ուրիշ մարդ չեղած. բայց սրբոյն Բեռնարդոսին ըսա-ծին պէս, ատ բանը, ով տէր, չէր վայլէր քու մեծ-վայելչութեանդ: Իսկ Յիսուս ինչ պատասխան կու

1 Երգ. Գ. 3:

2 Երգ. Ա. 6:

տայ. Թէ որ իմ մեծվայելչութեանս չի վայելեր նէ՝ կըւէ, բայց կը վայլէ իմ սիրոյս:

Գիտե՞ս ինչ անուշ սէր կիմանան ուխտաւորներն որ այցելութիւն կերթան Աստուածածնայ տունը 'ի Լորետոն՝ որ Նազարեթէն եկած է, կամ սուրբ երկրին Երուսաղէմայ ուխտատեղիքը, 'ի մսուրն Բեթղեհէմի, 'ի Գողգոթա, սուրբ գերեզմանը. կիմանան թէ Յիսուս հոս է ծներ, հոս բնակեր է, հոս չարչարուեր մեռեր է, հոս թաղուեր է. հապա որչափ մեծ բորբոք սիրոյ վառուի պիտոր մեր սիրտը, երբոր ժամու մը մէջ ներկայ կը տեսնենք փրկիչը 'ի սուրբ խորհուրդն: Աւիլա կըսէր թէ, չեմ գտներ անանկ սուրբ տեղ մը ջերմեռանդութեան և մխիթարութեան, ինչպէս մէկ ժամ մը՝ ուր կայ Յիսուս 'ի սեղան սրբութեան: Ասոր ներհակ հայրն Բաղտասար Ալուարէզ կու լար, երբոր կը տեսնէր թագաւորաց և իշխանաց պալատները լեցուն բազմութեամբ եկող գացողներով. իսկ ժամերը ուր Քրիստոս կեցեր է, երեսէ ձըգած դատարկ մնացած: Ո՜հ տէր Աստուած, թէ որ տէրն մեր մէկ ժամու մէջ միայն ըլլար երկրիս վրայ, զոր օրինակ 'ի սուրբ Պետրոս Հռոմայ, և տարին մէկ անգամ օր մը ըլլար զինքը հոն տեսնել, արդեօք որչափ ուխտաւորներ, որչափ ազնուականներ, որչափ թագաւորներ կը ջանային հոն գտնուիլ նոյն օրը՝ որ մեծարեն զերկնից թագաւորը երկիր իջած. արդեօք որպիսի տաղաւար իրեն շինած կըլլար, ոսկեզարդ և ականակապ. որպիսի ճրագալոյց կըլլար նոյն օրը: Բայց ինչ կըսէ Յիսուս. ես չեմ ուզեր մէկ ժամու մէջ միայն կենալ, և ոչ օր մը միայն, չեմ ալ ուզեր այնչափ հարստութիւն և այնչափ ճրագավառութիւն, հապա կուզեմ միշտ կենալ և ամէն օր և ամէն տեղ, ուր որ կը գտնուին իմ հաւատացեալքս, որպէս զի ամէնքը զիս դիւրաւ գտնեն, ան ալ միշտ ամէն ժամ երբոր ուզեն նէ: Ի՞նչ կըսես, թէ որ Յիսուս աստանկ մեծ սէր ցըցնել չուզենար, որու՞ն խելքէն կանցնէր աս բանս. իր համբարձմանէն ետև՝ մէկը ան ատեն ըսեր, թէ ով տէր, եթէ քու աղէկ սէրդ մեզի ցըցնել կուզես նէ, եկուր մեզի հետ կեցիր 'ի խորանս հացի տեսքով, որ հոն կարենանք զքեզ գտնել երբոր ուզենք նէ, որպիսի յանդգնութիւն կըլլար, համարձա-

կիլ ասանկ բան խնդրել։ Եւ ահա աս բանս՝ որ մարդուս խելքէն ալ չէր կրնար անցնիլ, փրկիչն մեր մտածեց և 'ի գործ դրաւ։ Այլ վայ մեզ, ու՞ր է մեր շնորհակալութիւնը և երախտագիտութիւնը ասանկ մեծ շնորհքի մը համար․ թէ որ թագաւորը հեռու տեղէ գար կամօք, որ մէկ գեղացին իրեն այցելութիւն կարենայ ընել, ինչ ապերախտութիւն կընէր ան գեղացին՝ թէ որ չուզենար գալ զինքը տեսնել, կամ ուզէր սոսկ վեր 'ի վերոյ տեսնել։

### ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով փրկիչ իմ Յիսուս, ով սէր հոգւոյս, ինչ ծանր բան էր քեզի համար մեզի հետ մնալ 'ի խորհուրդ սուրբ հաղորդութեան․ Նախ և առաջ պէտք էր որ մահ քաշէիր, որ կարենաս կենալ մեր խորաններուն վրայ․ ետքը այնչափ ալ անարգանք քաշէիր աս խորհրդովս զմեզ քեզի ներկայացընելու։ Իսկ մեք այսչափ ծայլ և անհոգ ենք գալ այցելութիւն ընել քեզի, գիտնալով ալ թէ դուն շատ կախորժիս մեր այցելութենէն, մեզ ամէն բարեօք լեցընել ուզելով երբոր գանք քեզ ներկայանանք։ Տէր թող ինձ, որովհետև աս ապերախտներուն մէկն ալ ես եմ․ աս օրէս սկսեալ, փրկիչ իմ, կուզեմ սաէպ քեզի այցելութիւն ընել, և կենալ որչափ կրնամ նէ քու առջևդ, գոհանալ զքէն, սիրել զքեզ և շնորհք խնդրել քեզմէ, վասն զի դուն աս վախճանիս համար կեցեր ես՝ երկրիս վրայ տաղաւարներուն և տապանակներու մէջ փակուած, որպէս թէ 'ի կալանս սիրոյ․ զքեզ կը սիրեմ անհուն բարութիւնդ․ զքեզ կը սիրեմ, ով Աստուածդ սիրոյ․ զքեզ կը սիրեմ ծայրագոյն բարիդ սիրելի 'ի վեր քան զամենայն բարի, շնորհք տուր ինծի որ հեռանամ ինծմէն և ամէն բանէ, որպէս զի զքեզ միայն յիշեմ և զքու սէրդ, և միացած կեանքս անցընեմ զքեզ հաճեցընելու, և ուրիշ մեծ զուարճութիւն չունենամ, բայց միայն քեզի հետ ըլլալ քու ոտքիդ առջևը, վառէ զիս բոլորովին քու սիրովդ։ Մարիամ մայր իմ, առ ինծի համար մեծ սէր մը առ սուրբ խորհուրդն, և երբոր զիս թուլցած կը տեսնես, յիշեցուր ինծի հիմակուան առաջադրութիւնս՝ որ կընեմ երթալու այցելութիւն ընելու ամէն օր։

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

Նայինք թէ Յիսուս ինչպէս յայս խորհուրդ, ամենուն համարձակութիւն կու տայ իր քովը գալու։ Սըրբուհին Թերեզա կըսէ թէ երկրաւոր թագաւորի հետ ամէն մարդ չի կրնար խօսակցիլ. աղքատները հազիւ կարող կըլլան մէկ ուրիշի մը ձեռքովը յոյս ունենալ խօսելու, և իրենց պիտոյքը հասկըցընելու. իսկ երկնից արքային հետ խօսելու ուրիշ միջնորդ մը հարկաւոր չէ, ամէնքը՝ թէ ազնուականք և թէ աղքատք կըրնան հետը խօսիլ երես առ երես 'ի սուրբ հաղորդութեան. աս է որ Յիսուս իրեն համար կըսէ, թէ ես ծաղիկ դաշտաց, շուշան հովտաց[1]։ Պարտէզի ծաղիկները գոց տեղ կը պահուին, դաշտինը ամէնուն առջևը կեցած է. ուստի Ուկոն կարդինալը կը գրէ թէ՝ ես ծաղիկ դաշտի, ըսաւ, վասն զի ես զիս ամենուն կընծայեմ դիւրաւ գտնելու՝ կըսէ։

Ուրեմն Յիսուսի հետ 'ի խորհուրդ հաղորդութեան ամէնքը կրնան խօսակից ըլլալ, ան ալ ամէն օր և ամէն ժամ. սուրբն Պետրոս ոսկիաբան խօսելով փըրկչին ծննդեան վրայ կըսէ թէ թագաւորները շատ անգամ թող չեն տար որ մէկը գայ հետերնին խօսի, դռնապանները կըսեն թէ հիմա տանը չէ, գնա և ետքը եկէ. բայց փրկիչն ուզեց բաց այրի մէջ ծնանիլ՝ առանց դրան և դռնապանի, որ ամէնքը ամէն ժամանակ կարենան իրեն համարձակ գալ, սպասաւոր չիկայ որ ըսէ թէ հիմա տանը չէ. սանկ է բանը Յիսուսի հետ 'ի սուրբ հաղորդութեան. միշտ բաց են ժամերն, ամէն մարդ կրնայ երթալ խօսակցիլ երկնից թագաւորին հետ երբոր ուզէ նէ, և Յիսուս ալ կուզէ որ գան հոն իրեն հետ համարձակ խօսին, ատոր համար կեցած է հացի տեսակաւը։ Թէ որ Յիսուս կերևնայ 'ի խորանս նըստած 'ի լուսեղէն աթոռ, ինչպէս պիտի երևնայ դատաստանին օրը, ո՞վ կրնայ ան ատեն համարձակիլ իր քովը մօտենալ. բայց սրբուհւոյն Թերեզայի ըսածին պէս՝ որովհետև տէրն մեր կը բաղձայ որ մենք իրեն հետ խօսինք և շնորհքներ խնդրենք համարձակ առանց

[1] Երգ. Բ. 1:

վախնալու, աստր համար իր մեծվայելչութիւնը ծածկեց հացի տեսքով. և Թովմա Գեմբացիին ըսածին պէս, կուզէ որ իրեն հետ տեսնուինք ինչպէս բարեկամ բարեկամի հետ: Երբոր հոգի մը խորանին առջև եկած է նէ, գիր թէ Յիսուս երգերգոցին ան խօսքը կըսէ իրեն, արի եկ մերձաւոր իմ, եղբօրորդի իմ, գեղեցիկ իմ [1]. եկէ, դուն իմ բարեկամս ես, թշնամի չես, վասն զի զղջացած ես քու մեղքերէդ: Գեղեցիկ իմ, ալ տգեղ չես իմ աչքիս առջևը. վասն զի իմ շնորհքս զքեզ գեղեցկացուց, ելիր եկէ, խնդրէ ինչ որ կուզես նէ, աստր համար կեցած եմ ես խորանիս վրայ: Սիրելի ընթերցող, թէ որ թագաւորը քեզ իր քովը կանչէր և ըսէր թէ ըսէ ինչ որ կուզես նէ, ինչ խնդիրք որ ունիս նէ, ես զքեզ կը սիրեմ և կը ցանկամ քեզի աղէկութիւն ընել, ինչ ուրախութիւն կըլլար քեզի: Ասանկ կըսէ Քրիստոս տէրն մեր ամենուն որ իրեն այցելութեան կու գան. եկայք առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ [2]. եկէք աղքատք, հիւանդք, նեղեալք, ես ձեզ կուզեմ հարստացընել, առողջացընել և մխիթարել, աստր համար կը կենամ խորանին վրայ. կարդացես դու; և նա ասասցէ, աւասիկ եմ [3]:

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Արդ որովհետև դուն սիրելիդ իմ Յիսուս, խորանը կեցած ես ողորմելիներուն խնդիրքը լսելու՝ որ քեզի կը դիմեն, լսէ այսօր և իմ աղաչանացս, որ եմ խեղճ մեղաւոր մը. ով գառն Աստուծոյ պատարագեալ և մեռեալ 'ի վերայ խաչի, ես ալ քու արեամբդ գնեալ հոգի մըն եմ. թող ամէն մեղքերս զոր քեզի դէմ ըրեր եմ, և հասիր ինծի քու շնորհքդ որ 'ի կորուստ չերթամ. մասնակից զիս ըրէ ան ցաւոց՝ որ իմ մեղքիս համար քաշեցիր 'ի Գեթսեմանի: Աստուած իմ, երանի թէ բնաւ զքեզ դառնացուցած չըլլայի: Սիրելիդ իմ տէր, թէ որ ես 'ի մեղս մեռնէի նէ, ալ չէի կրնար սիրել զքեզ, իսկ դուն աստր համար երկայնամիտ եղար առ իս, որպէս զի զքեզ կարենամ սիրել. գոհանամ զքէն վասն այս ժամանակիս որ ինծի տուիր. և որով-

1 Երգ. Բ. 10: 2 Մատ. ԺԱ. 29: 3 Ես. Թ. 58:

հետեւ հիմա կրնամ սիրել, ես ալ կուզեմ սիրել զքեզ ։ Տուր ինձ զշնորհս սուրբ սիրոյ քո, անանկ սիրոյ որ ամէն բան ինծի մոռնալ տայ, որպէս զի խելքս միտքս ըլլայ հաճոյանալ ամենասիրելի սրտի քում ։ Յիսուս փրկիչ իմ, որ բոլոր կեանքդ ինծի համար ծախեցիր, ես ալ գոնէ մնացած կեանքս քեզի համար ծախեմ. ձգէ զիս բոլորովին 'ի սէր քո, զիս բոլորովին քուկդ ըրէ մեռնելէս առաջ, ամէն բանի յոյս ունիմ արդեամբք չարչարանաց քոց. յոյս ունիմ, ով Մարիամ, 'ի քո բարեխօսութիւնդ ալ ։

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Յիսուս 'ի սուրբ հաղորդութեան ամենուն կը թողնէ զալ իրեն հետ խօսիլ, որպէս զի ամենուն շնորհքներ ընէ. սրբոյն Օգոստինոսի ըսածին պէս, ինքը աւելի կուզէ բարիք ընել քեզի՝ քան դքու փափաքիլդ առնելու ։ Պատճառն է, վասն զի Աստուած է անբաւ բարի. բարին ալ 'ի բնութենէ իւրմէ է հաղորդական և ծաւալական, որ իր բարիքը կուզէ ամենուն հաղորդել. կը գանգատի Աստուած, երբոր մարդիկ չեն գար շնորհք իրմէ խնդրելու. միթէ անապատ եղէ տանդ Իսրայելի, կամ աւեր երկիր խոպանացեալ, զի ասաց ժողովուրդ իմ, անտէրունչք շրջիցուք, և առ քեզ ոչ եկեսցուք[1] ։ Սուրբն Յովհաննէս 'ի տեսլեան գՔրիստոս տեսաւ, գօտեորեալ առ ստեամբքն գօտի ոսկեղէն[2]. վասն զի թէպէտ և Յիսուս միշտ պատրաստ է մեզ բարիք ընել, բայց աւելի 'ի խորհուրդ սուրբ հաղորդութեան առատապէս կը բաշխէ իր շնորհքը ։ Եւ երանելին Հենրիկոս Սուսոն կըսէր թէ, Յիսուս 'ի հաղորդութեան աւելի յօժարութեամբ կը լսէ մեր աղաչանքին ։

Ինչպէս մէկ մայր մը որուն կուրծքը կաթով լցուած ըլլալով կաթ ծծող տղայք կը փնտռէ որ թեթեւցընէ զինքը, անանկ ալ տէրն մեր 'ի սուրբ խորհուրդ յայս սիրոյ զամէնքը կը կանչէ՝ ըսելով. զի դիեցէք և յագիցիք 'ի ստեանց մխիթարութեան..... որպէս մայր՝ որ զմանուկ իւր գգուիցէ, այնպէս գգուեցից զձեզ[3] ։

1 Երեմ. Բ. 31 ։
2 Յայտ. Ա. 13 ։
3 Ես. ԿԶ. 11. 13 ։

Ալուարէզ տեսաւ որ Յիսուսին ձեռքերը շնորհքով լե-
ցուած էր որ տայ մարդկան, բայց ուզող մը չէր գըտ-
նէր։ Երանի այն հոգւոյն որ խորանի առջև կեցեր է
Յիսուսէն շնորհք խնդրելու։ Փերիայ կոմսուհին՝ որ
սրբոյ Քլարայի կուսանաց վանքը մտաւ, որչափ կըր-
նար նէ սրբութեան առջև աղօթք կընէր, մինչև անուն
դրին իրեն հարսն սրբութեան· և այն տեղը անդադար
կը դիզէր շնորհաց գանձերը։ Մէկ օր մը հարցուցին
իրեն թէ ի՞նչ կընես այնչափ ատեն սրբութեան առջև·
ան ալ ըսաւ, կարենայի նէ յաւիտեան հոն կը կենայի·
ի՞նչ կըլլայ ընել սրբութեան առջև· ի՞նչ բան կընէ աղ-
քատ մը մեծատան առջև· ի՞նչ կընէ հիւանդ մը բժըշ-
կին առջևը· ի՞նչ ընել կըլլայ, շնորհակալ ըլլալ, սի-
րել, և խնդիրք ընել։ Ասով կիմացուի թէ որչափ պըտ-
ուղ կելլէ սրբութեան առջև աղօթք ընելով։ Բայց
աւաղ· մարդիկ անոր համար չեն երթար Յիսուսի
հետ տեսնուելու, վասն զի զինքը չեն սիրեր· կա-
խորժին ժամերով խօսակցիլ բարեկամի մը հետ, և կը
ձանձրանան կէս ժամ Յիսուսի հետ խօսակից ըլլա-
լէն· ըսէ թէ ինչո՞ւ Յիսուս իր սէրը ինծի չի տար· թէ
որ աշխարհք սրտէդ չես հաներ նէ, ի՞նչպէս մտնէ
այն տեղը սէրն աստուածային· երանի թէ դուն ալ կա-
րենայիր իսկապէս սրտանց ըսել զայն, զոր կըսէր
սուրբն Փիլիպպոս Ներեան սրբութեան առջև· ահա
սէր իմ, ահա սէր իմ· ան ատեն չի կրնար ձանձրա-
նալ կենալու ժամերով, օրերով ալ հաղորդութեան
սուրբ խորհրդեան դիմացը։ Աստուծոյ սիրով բորբո-
քած հոգւոյն սրբութեան առջևը անցուցած ժամերը
մէյմէկ վայրկեան կերևնան· սուրբ Ֆրանչիսկոս Քսա-
ւերեան բոլոր օրը կաշխատէր հոգւոց համար, իսկ գի-
շերը ի՞նչ էր ըսես իր հանգիստը, բայց միայն սրբու-
թեան առջև քիչ մը ատեն աղօթք ընել։ Գաղղիացի
մեծ քարոզիչ մը բովանդակ ցորեկը խոստովանանք
լսելու և քարոզ տալու հետ ըլլալէն ետքը գիշերը ժամ
կերթար· երբեմն դուռը գոց գտնէր նէ, դրնէն դուրս
կը կենար ցրտուն հովին՝ որ գոնէ ատանկ հեռուանց
մեծարէ իր սիրելի տէրը։ Իսկ դու եղբայր, երբոր աս
սէրն առ Յիսուս չունիս, ջանա ամէն օր այցելութիւն
մը ընել, որով վառես քու սիրտդ իրեն սիրովը։ Ան
ատեն ալ չէիր սիրեր զաշխարհ· հապա ամէն բան ալ

կատէիր. Ծալէզեանին ըսածին պէս՝ երբոր կրակը տունէ զտունը, ամէն բան պատուհանէն զուրս կը նետեն:

### ԽՂՃ ԵՒ ԳՈՂՈՑՈՒՔ

Յիսուս փրկիչ իմ, շնորհք տուր որ զքեզ ճանչնամ և զքեզ սիրեմ: Դուն այսչափ սիրելի ես, դուն ուրիշ բան չունիս ընելու՝ որ մարդիկ քեզ սիրեն. ուրեմն ինչպէս կըլլայ որ քիչ կան զքեզ սիրողներ. վայ ինձ, ես ալ աս ապերախտներուն մէջ գտնուեցայ: Արարածոց շնորհակալ եղած եմ քանի որ ինծի բարիք մը ըրեր են, քեզ միայն ապերախտ եղայ՝ որ ինձի այնչափ պարգևներ ըրեր ես, ան ալ քեզ վշտացընելով շատ անգամ ծանր կերպով, և անիրաւելով իմ մեղքս: Բայց կը տեսնեմ որ զիս երեսէ ձգելու տեղը՝ ինծի կը մօտենաս, ու կը յորդորես սիրով ըսել, Թէ սիրեսցես զտէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ[1]: Արդ որովհետև ինծի պէս ապերախտէն ալ սիրուիլ կուզես, ես ալ կուզեմ զքեզ սիրել քու շնորհօքդ, և ուրիշ բան չեմ ուզեր սիրելէն 'ի զատ. սիրեմ զքեզ սէր իմ, որ ես ինծի համար ամէն բան, օգնէ ինծի սուրբ արեամբդ, զոր հեղեր վասն իմ: Սիրելիդ իմ փրկիչ, սուրբ արեանդ վրայ է իմ ամէն յոյսս, և 'ի բարեխօսութիւն անարատ մօր քո և կուսի, դուն ալ կուզես որ անոր աղաչանքը օգնէ մեր փրկութեանը. սուրբ Աստուածածին, բարեխօս եղիր ինծի համար առ Յիսուս. դուն ես որ կը բորբոքես Աստուծոյ սիրով զամէնքը որ քեզ կը սիրեն, զիս ալ վառէ բորբոքէ նոյն սիրով:

1 Բ. Օր. Զ. 5:

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԼԶ.

## ՀԱՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ ԸՆԴ ԿԱՄՍ ԱՍՏՈՒԾՈՅ

*կեանքը իրեն կամքէն է* [1].

---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

*Ընդհանրապէս մեր փրկութիւնը, կեանքը, կատարելութիւնը 'ի սէրն Աստուծոյ է. որ ոչն սիրէ, անդէն 'ի մահու մնայ* [2], *սէրն է զօդ կատարման* [3]. *իսկ կատարելութիւն սիրոյ, կայացեալ է 'ի համակերպութեան ընդ կամս Աստուծոյ, վասն զի աս է գլխաւոր գործ սիրոյ՝ արիսպագացւոյն ըսածին պէս, միացընել զկամս սիրելեաց. անանկ որ մէկ սիրտ ունենան, և մէկ ուզել մը: Ուստի այնչափ հաճոյ կըլլան Աստուծոյ մեր բարի գործքերը, ճգնութիւնը, հաղորդուիլը, ողորմութիւն տալը, ցորչափ որ ըստ Աստուծոյ կամացը կըլլան, չէ նէ առաքինական չեն, այլ պակասաւորք և պատժոյ արժանի: Ասոր համար գլխաւորաբար եկաւ փրկիչն մեր յերկնից երկիր իր օրինակաւ մեզ սորվեցընելու, և աս էր որ աշխարհք մտնելու ատեն ըսաւ՝ կըսէ առաքեալը. զզոհս և զպատարագս ոչ կամեցար, բայց մարմին հաստատեցեր ինձ... յայնժամ ասացի թէ ահաւասիկ եկի առնել զկամս քո Աստուած* [4]: *Եւ զայս շատ անգամ հասկըցուց ըսելով. իջի ես յերկնից ոչ զի զկամս իմ արարից, այլ զկամս այնորիկ որ առաքեաց զիս* [5]. *մեռնելու երթալու ատենն ալ ըսաւ. այլ զի ծանիցէ աշխարհս, եթէ սիրեմ զհայր, և որպէս պատուիրեաց ինձ հայր՝ այնպէս առնեմ, օն արիք գնասցուք աստի* [6]. *ինչպէս ուրիշներուն համար*

1 Կեանք են 'ի կամաց նորա: Սղ. ԻԹ. 6:
2 Ա. Յովհ. Գ. 14:
3 Կողոս. Գ. 14:
4 Եբր. Ժ. 5. 7:
5 Յովհ. Զ. 38:
6 Յովհ. ԺԴ. 31:

ալ կըսէր, որ առնիցէ զկամս Հօր իմոյ որ յերկինս է, նա է իմ եղբայր և քոյր և մայր[1]. և աս էր մէկ հատիկ նպատակը և փափաքը բոլոր սուրբերուն իրենց ամէն գործքին մէջ՝ կատարումն կամացն Աստուծոյ: Երանելին Հենրիկոս Սուսոն կըսէ, ես աւելի կուզեմ չնչին որդ մը երկրի ըլլալ կամքովն Աստուծոյ, քան թէ սերովբէ մը իմ կամքովս. և սրբուհին Թերեզա, աղօթք ընողին բոլոր ջանքը աս պիտոր ըլլայ, համակերպել զինքը ընդ կամս Աստուծոյ, և ստոյգ գիտնայ թէ աս բանիս վրայ կեցեր է աւելի բարձր կատարելութիւնը. ով որ զերազանց կերպով աս բանս կը բանեցընէ, մեծամեծ պարգևներ կառնէ Աստուծմէ, և աւելի կը զարգանայ 'ի ներքին կեանս. երանելիքն յերկինս ասով կատարելապէս զԱստուած կը սիրեն, վասն զի բոլորովին համակերպեալ են ընդ կամս Աստուծոյ, և աս է որ Քրիստոս մեզ սորվեցուց, եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի[2]: Աստուծոյ կամքն ընողը կըսուի այր ըստ սրտին Աստուծոյ. գտի զԴաւիթ ծառայ իմ այր ըստ սրտի իմում, որ արասցէ զամենայն զկամս իմ[3], ինչպէս որ ինքն Դաւիթ ալ կըսէր, պատրաստ է սիրտ իմ առ քեզ Աստուած, պատրաստ է սիրտ իմ[4], և աս միայն էր իր խնդիրքը Աստուծմէ, ուսո ինձ առնել զկամս քո[5]: Գիտեմ որչափ մենծ բան է կատարեալ համակերպութիւն ցցընել, յանձնելով զինքը Աստուծոյ կամացը. հերիք կըլլայ զմէկը սուրբ ընել: Երբոր Պօղոս հալածիչն եկեղեցւոյ զՅիսուս տեսաւ, և լուսաւորելով դարձաւ, աս բանս միայն ըսաւ՝ Աստուծոյ զինքը նուիրելով, տէր զի՞նչ կամիս զի արարից[6]: Ասով Քրիստոս զինքը մէկէն 'ի մէկ անօթ ընտրութեան ըրաւ, և առաքեալ հեթանոսաց. անօթ ընտրութեան է ինձ նա, կրել զանուն իմ առաջի հեթանոսաց[7]. պահք բռնողը, ողորմութիւն տուողը, զինքը մահացընողը Աստուծոյ համար, մաս մը իրմէ Աստուծոյ կընծայէ, բայց իր կամքը նուիրողը, բոլոր անձը կու տայ Աստուծոյ. և աս է բոլոր Աստուծոյ մեզմէ ուզածը՝ սըր-

1 Մատթ. ԺԲ. 50:
2 Մատթ. Զ. 10:
3 Ա. Թագ. ԺԳ. 14:
4 Սղ. ԾԶ. 1:
5 Սղ. ՃԽԲ. 10:
6 Գործ. Թ. 6:
7 Գործ. Թ. 15.

աներնիս կամ կամքերնիս. որովհետև տուր ցիս զսիրտ քո[1]. մէկ խօսքով, ան պիտի ըլլայ բոլոր նպատակը մեր ամենայն բաղձանաց, Ջերմեռանդութեանց, մտածութեանց, հաղորդութեանց, Աստուծոյ կամքը կատարելը, ան պիտի ըլլայ վախճան բոլոր մեր աղօթից. շնորհքը խնդրել կատարելոյ Աստուծոյ կամքը, և զայս պիտի խնդրենք միջնորդութեամբ [illegible] սըրբոց, մանաւանդ սուրբ աստուածածնի, որ առնէ մեզի համար լոյս և զօրութիւն համակերպելոյ [illegible] ընդ կամս Աստուծոյ յամենայնի, [illegible] ընդունելոյ մեր անձնատրութեամբ [illegible] եղած բանը: Աստուածային հայրն [illegible]. [illegible] կարծէ՝ փառք Աստուծոյ [illegible] է Աստուած մը ըսել ձախորդութեան ատենը, քան թէ վեց եօթն անգամ շնորհակալութիւնը մեր ուզած [illegible] ատենը:

Տէր Աստուած իմ, իմ բոլոր կործանումս անցածները ան եղաւ որ չէի ուզեր զիս համակերպել քու սուրբ կամքիդ հետ. կը զարշիմ և կը նզովեմ բիւր անգամ ան օրերը և ան րոպէները որ իմ կամքս ընելու համար դէմ կեցայ քու կամքիդ. ով Աստուած հոգւոյ իմոյ, հիմա զիս բոլոր քեզի կը նուիրեմ, ընդունէ տէր իմ, և այնպէս [illegible] կապէ քու սիրոյդ հետ, որ չկարենամ մէյմըն ալ քեզմէ ապստամբիլ. զքեզ կը սիրեմ անբաւ բարիդ, և զքեզ սիրելու համար զիս բոլոր քեզ կը նուիրեմ. դուն կարգաւորէ զիս և ամէն բաներս, ինչպէս որ [illegible] ամբողջովին զիս կը յանձնեմ [illegible] կամացդ, [illegible] կամքիդ դէմ բան մը ընեմ, և ինչպէս որ կուզես նէ զիս բանեցուր. հայր երկնաւոր, լուր ինձ վասն սիրոյ Յիսուսի օծելոյ քո. [illegible] չարչարանացդ: Ամենասուրբ [illegible] օգնեա ինձ, և առ ինձի համար [illegible] շնորհքս 'ի գործ դնելոյ յիս զկամս Աստուծոյ, [illegible] է բովանդակ իմ կեանքս և փրկութիւնս:

1 Առակ. ԻԳ. 26:

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ.

Պէտք է որ միաբանինք զմեզ ընդ Աստուծոյ, չէ թէ միայն ներհակ բաներուն մէջ որ ուղղակի Աստուծմէ առաջ կու գան, ինչպէս հիւանդութիւն, անմխիթարութիւն հոգւոր, կորուստ ընչից կամ ազգականաց, հապա անուղղակի Աստուծմէ եկածներուն մէջն ալ մարդկանց ձեռքով. ինչպէս վատահամբաւութիւն, անարգանք, զրկանք, և ամէն կերպ հալածանք: Ասալ գիտնալու է, որ երբոր մէկը մեր ընչիցը կամ պատուոյն կը դպչի, Աստուած չուզեր մեր վնասողին մեղքը, բայց կուզէ մեր աղքատնալը և խոնարհիլը. ուստի ինչ որ մեզի կը հանդիպի նէ, Աստուծոյ կամօքը կըլլայ. ես եմ որ հաստատեցի զլոյս և արարի զխաւար, ես եմ [illegible] չար, ես եմ [illegible] ինչպէս Սիրաք ալ ըսաւ, բարիք և չարիք, կեանք և մահ յԱստուծոյ են[2]:

Զարիք կըսուին երբոր մենք մեզի չար կընենք անբաները, չէ նէ, թէ որ սիրով ընդունինք ինչպէս որ պէտք էր միաբանելով զմեզ ընդ կամս Աստուծոյ, [illegible] չէին ըլլար մեզի համար, այլ բարի: Սուրբերուն գըլխուն պսակը զարդարող գոհարներն են այն նեղութիւնքը որ Աստուծոյ համար քաշեր են, գիտնալով որ անոնց ձեռամբն են եղանելի: Յոբ երբոր լսեց թէ սաբէացիք իրեն ամէն բանը յափշտակեցին ինչ ըսաւ. տէր ետ, և տէր [illegible] թէ Աստուած տուաւ, և թշնամիք առին, [illegible] ամէն բան կամօքն Աստուծոյ կըլլայ, որպէս [illegible] հաճոյ թուեցաւ, նոյնպէս և եղև, եղիցի անուն տեառն օրհնեալ[4]: Սուրբ վկայքն Եպիկտետոս և Անտոնիոս երբոր կը տանջուէին երկըթէ ճանկերով [illegible], զայս միայն կըսէին. տէր եղիցին 'ի մեզ [illegible], և հոգինին աւանդելու ատեն աս եղաւ իրենց վերջին [illegible] քը. օրհնեալ տէր Աստուած [illegible], [illegible] մեզ զայս շնորհ, զի լցցին 'ի մեզ հաճոյք քո. ստուբք:

1 Ես. ԽԵ. 7:
2 Սիր. ԺԵ. 14:
3 Յոբ. Ա. 22:
4 Անդ:

Կեսարիոսին պատմածին պէս, միայնակեցին մէկն որ քան զուրիշները աւելի խստակեաց մը չէր՝ շատ հրաշքներ կընէր, իր աբբան աս բանիս զարմանալով, հարցուց իրեն օր մը թէ դուն ինչ ջերմեռանդութիւն կընես։ Ան ալ ըսաւ. ես ամենէն անկատար եմ, միայն աս բանին խելք տուած եմ, որ ամէն բանի մէջ համակերպիմ իմ կամքս Աստուծոյ կամաց հետ։ Աբբան վրայ բերաւ. հապա դուն բնաւ չնեղացա՞ր քանի մը օր առաջ որ թշնամի մը այնչափ վնաս տուաւ մեր կալուածներուն։ Ան ալ ըսաւ. մանաւանդ գոհութիւն տուի Աստուծոյ, որ ամէն բանը ինքը կընէ, կամ թող կու տայ մեր բարւոյն համար։ Ասկից հասկըցաւ մեծաւորը թէ ինչ աստիճան սրբութիւն ունի եղեր ան անձը։ Մենք ալ սաանկ պիտոր ընենք. երբոր ձախորդ բաներ մեզ կը պատահին, բոլորը իբրև Աստուծոյ ձեռքէն ընդունինք, չէ թէ միայն համբերութեամբ, հապա ուրախութեամբ՝ առաքելոց պէս, որ գնացին խնդալով յերեսաց ատենին, զի վասն անուան տեառն արժանի եղեն անարգելոյ[1]. և ինչ մեծ ուրախութիւն քան զայս կրնայ ըլլալ, որ գիտնանք թէ խաչ մը քաշելով սիրով՝ Աստուծոյ հաճոյական բան կընենք։ Ուրեմն թէ որ կուզենք շարունակ խաղաղութիւն վայելել նէ, ասկից ետև ապաւինինք Աստուծոյ կամացը, ամէն դիպուածքին ատենը ըսելով. այո հայր, զի այսպէս հաճոյ եղև առաջի քո[2]։ Ասոր վախճանին պիտի ուղղենք մեր ամէն մտածականը, հաղորդութիւնը, սրբութեան այցելութիւնը, և աղօթքը, աղաչելով զԱստուած միշտ որ շնորհէ տայ մեզի համակերպիլ իր կամացը, և հանապազ զմեզ նուիրենք՝ ըսելով. Աստուած իմ, ահաւասիկ եմ, արա ընդ իս որ ինչ քեզ հաճոյ թուի։

ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

Ով Թագաւոր իմ և Աստուած իմ, սիրելիդ իմ փրկիչ, եկ և Թագաւորեա դուն միայն իմ վրաս աս օրէս ետև՝ հանգչելով յաթոռ հոգւոյս, բոլոր քեզի առ իմ կեանքս, անանկ որ բանի մը չբաղձամ, բան մը չուզեմ, բայց միայն քու ուզածդ։ Յիսուս իմ, ինչուան

1 Գործ. Ե. 41։ 2 Մատ. ԺԱ. 26։

Հիմա ես զքեզ այնչափ դառնացուցի՝ հակառակելով քու սուրբ կամքիդ, աս ինծի աւելի ցաւ կու տայ քան թէ ամէն չարիք քաշած ըլլայի, կը զղջամ և բոլոր սրտանց կը ցաւիմ: Պատժոյ արժանի եմ, ուստի սիրով յանձն կառնեմ ամէն վիշտ, միայն զիս խալըսէ զրկուելէն 'ի քու սիրոյդ: Ով կամք Աստուծոյ, դուն ես իմ սէրս. ով արիւն Յիսուսի դուն ես իմ յոյսս, 'ի քեզ կը յուսամ որ ասկից ետև միշտ և հանապազ միացեալ ըլլամ աստուածային կամացդ, ան ըլլայ իմ առաջնորդս, իմ փափաքս, իմ սէրս և իմ խաղաղութիւնս և հանգիստս. խաղաղութեամբ յայս և 'ի սոյն ննջեցից և հանգեայց[1]. ամէն բանի մէջ որ ինծի կը հանդիպի՝ ըսեմ, աստանկ ուզեցիր իմ վրաս ընել, ես ալ աստանկ կուզեմ. Աստուած իմ զայն միայն կուզեմ ինչ որ դուն կուզես միշտ. եղիցին յիս կամք քո[2]: Յիսուս իմ, վասն քու արդեանցդ աս շնորհքը ինծի պարգևէ որ հանապազ կրկնեմ և կրկնեմ զայս գեղեցիկ բան սիրոյ, եղիցին կամք քո, կամք քո եղիցին. Տիրամայր Մարիամ մայր իմ, երանի քեզ կու տամ, որ կատարեցիր միշտ յամենայնի զկամս Աստուծոյ, շնորհք խնդրէ ինծի համար ալ, որ աս օրէս սկսեալ միշտ զայն կատարեմ, Աստուծոյ կամքը կատարելու փոյթ ունենամ:

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

Ով որ Աստուծոյ կամացը հետ միացած է, աս երկրիս վրայ ալ շարունակ 'ի խաղաղութեան կը վայելէ, վասն զի չի կրնար հոգի մը աւելի գոհ ըլլալ, քան երբոր տեսնէ որ իր ամէն ուզածները կըլլան: Արդ ան որ ուրիշ բան մը չուզեր, բայց զոր Աստուած կուզէ և որչափ կուզէ, իր ամէն ուզածը ունի, որովհետև ինչ որ պատահի նէ, բոլորը Աստուծոյ կամօքը կըլլայ: Սաղուիանոսի ըսածին պէս, Աստուծոյ հետ համակերպ եղող անձինք, թէ որ խոնարհութիւն քաշեն նէ, իրենք ալ աս կուզեն. թէ որ աղքատութիւն քաշեն, իրենք ալ աղքատ ըլլալ կուզեն. մէկ խօսքով, ամէն բան կուզեն ինչ որ հանդիպի, որով երջանիկ

1 Սղ. Դ. 9:　　2 Մտթ. Զ. 10:

կեանք կը վարեն . պաղ ըլլայ , տաք ըլլայ , անձրև գայ , հով ըլլայ , Աստուծոյ կամացը հետ մէկ եղողը կըսէ . կուզեմ աս պաղը , տաքը և այլն , վասն զի Աստուած տանկ կուզէ . բան մը կորսուեր է , հալածանք քաշեր է , հիւանդութիւն վրան եկեր է , մահ եկեր է , անիկայ կըսէ թէ կուզեմ ես խեղճ ըլլալ , հալածեալ ըլլալ , հիւանդ ըլլալ , մեռնիլ ալ . վասն զի Աստուած տանկ կուզէ . 'ի կամս Աստուծոյ հանգչողը , և սիրողը Աստուծոյ ամէն ըրածին , ամպերէն վեր երկինքը նստած կը նմանի : Աս ան խաղաղութիւնն է , որ առաքելոյն ըսածին պէս , 'ի վեր է քան զամենայն միտըս[1] , և անանկ հաստատ խաղաղութիւն մըն է որ այլայլիլ չի գիտեր , անմիտը լուսնի պէս կը փոխի , խելացին իմաստութեան մէջ կը մնայ , կըսէ Սիրաք : Անխելք մեղաւորը լուսնի պէս կաճի ու կը պակսի . այսօր կը ծիծաղի , վաղը կու լայ . այսօր զուարթ և հեզուկ , վաղը դառնացեալ և կատաղի . մէկ խօսքով , փոփոխական է ամէն փոփոխական բաներու հետ՝ որ յաջող կամ ձախորդ կը հանդիպին : Իսկ արդարն արեգական կը նմանի , միշտ միակերպ հանդարտ ամէն դիպուածի մէջ , վասն զի իր խաղաղութիւնն է 'ի միութեան ընդ կամս Աստուծոյ . և յերկիր խաղաղութիւն , 'ի մարդիկ հաճութիւն : Սրբուհին Մարիամ մագդաղենացին Տէփացցի , երբոր կըսէր կամք Աստուծոյ , անանկ մխիթարանք մը կիմանար որ կարծես թէ իրմէ դուրս կելլէր յափշտակութեամբ սիրոյ . թէպէտև գրեթէ անկարելի է որ մարդ քիչ մըն ալ չդժկամակի ձախորդ բանէն , բայց գլխաւոր մասամբ միշտ կը վայելէ զթագաւորութիւն խաղաղութեան , երբոր կամքը միացած ըլլայ Աստուծոյ կամացը հետ . զուրախութիւնն ձեր ոչ ոք հանիցէ 'ի ձէնջ[2] . բայց որպիսի՞ խենթութիւն է անոնց ըրածն որ Աստուծոյ կամացը կը հակառակին . Աստուծոյ ուզածը պէտք է որ ըլլայ . կամաց նորա ոչ ոք կայ հակառակ[3] : Ուստի ողորմելիները պէտք է խաչը կրեն , բայց անպտուղ և առանց խաղաղութեան . ո՛ խստացաւ ընդդէմ նորա և հանդարտեաց[4] : Եւ ի՞նչ է Աստուծոյ ուզածը , եթէ ոչ մեր

1 Փիլիպ . Դ . 7 :
2 Յովհ . ԺԶ . 22 :
3 Հռ . Թ . 19 :
4 Յոբ . Թ . 4 :

բարին. այս են կամք Աստուծոյ՝ սրբութիւն ձեր[1]: Կու-
զե՞ս որ սուրբ ըլլանք, և զոհ կեանք հոս ունենանք և
երանելի ըլլանք անդին, պէտք հասկընանք թէ խաչը
Աստուծմէ կու գայ. յամենայնի գործակից լինի 'ի բա-
'րիս[2]: Պատիժներն ալ աս կեանքիս մէջ մեր վնասուն
համար չեն, հապա որպէս զի անոնցմով ճամբայ գանք
և յաւիտենից երանութիւնը ձեռք բերենք. որ յիւր որ-
դին ոչ խնայեաց, այլ վասն մեր ամենեցուն մատնեաց
զնա, զիա՞րդ ոչ նովաւ հանդերձ զամենայն շնորհեսցէ
մեզ[3]: Հապա բոլորովին զմեզ Աստուծոյ ձեռքը թող-
նենք միշտ, որ ամէն փոյթ ունի մեր բարւոյն համար.
զամենայն հոգս ձեր ընկեցէք 'ի նա, զի նա է որ հոգայ
վասն ձեր[4]: Սուրբ Նեղոս աբբան կըսէր, չնայինք
որ Աստուած մեր կամքը ընէ, հապա մենք Աստուծոյ
կամքը ընենք: Ով որ միշտ ասանկ ընէ՝ երջանիկ կեանք
կունենայ և երանելի մահ: Ով որ կը մեռնի համակերպ
բոլորովին Աստուծոյ կամացը, նշան է թէ որդի փըր-
կութեան է: Իսկ ով որ կենացը մէջ Աստուծոյ կամ-
քին հետ միացած չէ, մահուան ատենն ալ չըլլար և
փրկութեան չի հասնիր: Ուստի ջանանք որ սուրբ գրոց
քանի մը խօսքերը մեզի սովորական ընենք՝ մեզ միշտ
Աստուծոյ կամացը հետ միաբանելու. տէր զի՞նչ կա-
միս զի արարից[5]. ուսո ինձ առնել զկամս քո. ահա-
ւասիկ կամ աղախին տեառն[6]. քո եմ ես և կեցո
զիս[7]: Ինչ բան որ մեզի ծանր կու գայ, նոյն ատեն ը-
սենք. այո հայր, զի այսպէս հաճոյ եղև առաջի քո[8].
մանաւանդ տէրունական աղօթից ան խօսքը թէ, եղի-
ցին կամք քո որպէս յերկինս և յերկրի[9]: Երանի մե-
զի, թէ որ ապրինք և մեռնինք ըսելով, եղիցին կամք
քո:

1 Ա. Թես. Դ. 3:
2 Հռ. Ը. 28:
3 Հռ. Ը. 32:
4 Ա. Պետր. Ե. 7:
5 Գործ. Թ. 6:
6 Ղուկ. Ա. 38:
7 Սղ. ՃԺԸ. 94:
8 Մատ. ԺԱ. 26:
9 Մատ. Զ. 10:

## ԻՂՁ ԵՒ ՊԱՂԱՏԱՆՔ

*Փրկիչ իմ Յիսուս, դուն կեանքդ նուիրեցիր խաչի վրայ ծանր ցաւօք, որ պատճառ ըլլաս մեր կենացը և փրկութեան. ուստի գթա իմ վրաս և փրկէ զիս, և մի թողուր ան հոգին, զոր այնչափ չարչարանքով և այնչափ սիրով գնեցիր՝ որ առէ զքեզ յաւիտեան՛ի դժոխս. դուն բան չիթողուցիր որ պարտաւորես զմեզ զքեզ սիրելու, և աս ուզեցիր հասկըցընել վերջի խօսքովդ խաչին վրայ՝ ամենայն ինչ կատարեալ է. իսկ ես ինչ սէր ցցուցի սիրոյդ. ա՜հ, կրնամ ըսել թէ կենացս մէջ ուրիշ բան չըրի, բայց քու կամացդ դպչիլ, և ստիպել զքեզ յատելութիւն իմ: Սակայն շնորհակալ եմ որ երկայնմտութեամբ ինծի համբերեցիր, և հիմա ալ ինծի առեն կու տաս ճար ընել ապերախտութեանս, և սիրել զքեզ մեռնելէս առաջ: Այո այո, ես ալ կուզեմ զքեզ սիրել, սիրել կուզեմ Աստուած փրկիչս, սէր իմ և ամենայն ինչ. կը ցանկամ ընել զամենայն ինչ որ քեզ հաճոյ է. քեզ կը նուիրեմ բովանդակ ազատութիւնս և ուրիշ ամէն բանս. քեզ կը նուիրեմ ասկից ետև իմ կեանքս, յանձն առնելով ինչ մահ որ ինծի խաւրես նէ ամէն կերպ նեղութեամբ. հիմակուընէ կը միացընեմ աս իմ զոհս քու մեծ զոհիդ հետ որ խաչին վրայ կատարեցիր, կուզեմ մեռնիլ քու կամքդ կատարելու համար: Ուստի կաղաչեմ, վասն արդեանց չարչարանաց քոց՝ շնորհէք տուր ինծի համակերպեալ ըլլալու միշտ քու կամացդ հետ. և մահս հասնի նէ, շնորհէք տուր որ սիրով ընդունիմ և բոլորական համակերպութեամբ. կուզեմ մեռնիլ, փրկիչ իմ, քեզ ախորժելի բան մը ընելու համար, և կուզեմ մեռնիլ ըսելով, եղիցին կամք քո[1]: Սուրբ Աստուածածին, առանց մեռար, ուստի միջնորդ եղիր, որ ես ալ առանց մեռնիմ:*

1 Մ՚—թ. Զ. 10:

# ՑՈՒՑԱԿ

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՆԵՐ